ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԳԱՐԱՆ

ԺԶ.

ԳՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ ՀԱՅՈՑ

# ՄԵՏՐԱՊՈԼԻՍԸ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1896.




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Ընթերցողին առջեւ զուգէ շատ աչքի զարնող բան պիտի երեւնայ մատենիս ճակտին վրայ դրուած անունը:*

*Աս բանս ունի իր յատուկ պատճառն. ու հարկ է որ զայն մեր կողմանէ քիչ մը լուսաւորենք:*

*Դրանսիլուանիոյ Հայոց չորս գլխաւոր գաղթականութեանց ամենէն մեծը, քաղաքակիրթը, հարուստը՝, յառաջադէմն, ամենէն աւելի հայութեան ոգի ու բնակիչ ունեցողը՝ Կերլա Հայաքաղաքն է:*

*Մետրապոլիս կը կոչէ այս քաղաքս հենգնութեամբ, հունգարական ազգը. ու նաեւ "Հայոց բրոքականոտան„ կ'անուանէ ծաղրաբանութեամբ լատինական կղերը: Անտարակոյս անոր համար, վասն զի այս քաղքէն ելած են այլեւայլ ատեն, այնպիսի աշխարհական ու եկեղեցական անձինքներ, որոնք զազգն՝ իրեն պատշաճ տեղը զետեղել ուզած՝ — անոր իրաւունքները՝ եկեղեցական անկախութիւնը, պաշտպա-*

նած ու ազգը կլլել եւ իրենց մէջն ամփոփել ուզողներուն դէմ մաքառած են, գործով, բանիւ եւ գրով: —

Պատմութիւն չէ, նկարագիր մըն է առաջիկայ մատեանս, անանկ քաղքի մը, որուն բնակիչները,ատեն մը քաղաքաքար՝ իսկ հիմայ իր մեծ մասովն ազգային են. — քաղքի մը՝ որ յատկացեալ է Հայոց. որ Հայոցմէ հիմնուած է. որուն յատակագիծը յօրինած է ազգային ճարտարապետ մը (Ալէքսայեան), որուն հիմնաքարը դրած է հայ եպիսկոպոս մը՝ (Վրզարեան) ամէն իբր երկու հարիւր տարի յառաջ, 1700ին:

Ստորագրութիւն մըն է մատեանս, հին ու նոր Հայաքաղքին արուեստաւորաց ու առեւտրական եղբայրութեանց եւ հոգեւոր ընկերութեանց, հրապարակական շէնքերուն, հիմնարկութեանց, իր մէջը գտնուած հրապարակական յիշատակարաններուն, եկեղեցական հանդերձից, ունեցած հին ձեռագիրներուն. դարձեալ՝ ժողովրդական սովորութեանց, տեղական լեզուին, առասպելաց, ազգային առակաց ու երգոց բեկորներուն՝ մնացորդներուն...:

Եւ ինչպէս որ մենք, մեր բունէն՝ մեր կոճղէն անջատուած ազգայինքս, շատ հե-

տաքրքրութեամբ կը լսենք, կը խօսինք ու կը կարդանք, մեր հին հայրենեաց՝ ինչպէս նաեւ Արեւելք, Ռուսաստան եւ ուրիշ երկիրներն եւ տէրութեանց մէջ սփռուած Հայոց ու իրենց վերաբերեալ բաներուն վրայ, անանկ ալ կը համարինք, թէ այլ եւ այլ տեղերը գտնուած ազգայինք ալ, նոյն մտադրութեամբ ու հետաքրքրութեամբ կը կարդան, եւ այն սիրով տեղեկութիւն կ՚առնուն, իրենցմէ անջատուած ու Դրանսիլուանիոյ ազգայնոցմէ հաստատուած այս քաղքին գաղթականութեան պատկանեալ բաներուն վրայ:

Գրի առած ենք եւ մպտենի ձեւ տուած ենք գործոյս, անոր համար, որ, այն՝ ատեն մը այնչափ ծաղկած ու հիմայ այսպէս նուազելու եւ օր աւուր փճանալու վրայ եղած հայ գաղթականութիւնը, գոնէ գրով ու տպագրութեամբ անմահանայ: Որ ապագայ սերունդներուն համար ըլլայ յիշատակ մը, թէ ժամանակ մը Հայաքաղաք (Armenopolis) կոչուած տեղւոյն վրայ, միայն ազգայինք կը բնակին եղեր. որոնք՝ իրենց հեղինակութեամբը՝ մեծ ազդեցութիւն ունեցած են, շրջակայ ազգայնութեանց վրայ. — որոնք՝ իրենց ձեռնարկու

ոգւովը, կարողութեամբը, գործունէութեամբը, շրջահայեցութեամբը, առեւտրական աշխուժովն ու հարստութեամբը՝ մեծ բաներ ըրած, շատ բան թողուցած են իրենց սերնդոց: —

Ցաւալի գուշակութիւն մըն է, զոր ընել կը հարկադրինք: Ու երանի թէ չիրականանար ըսածնիս: Բայց պարագաներն ու յարաբերութիւնները, եւ անցեալն՝ ներկային հետ համեմատութիւնը, զմեզ գրեթէ կ՚ապահովցընեն, թէ դար մը պիտի չանցնի ու պիտ՚որ անհետանայ, նաեւ Դրանսիլուանիոյ Հայոց այս մայրաքաղաքին մէջէն հայութեան ոգին, հայ լեզուն, սովորութիւնները ... եւ գուցէ հայ արարողութիւնը, եթէ որ արտաքոյ կարգի պատահար մը, վերջին դիպուած մը — թերեւս ազգային եպիսկոպոսութեան վերականգնումը, եւ կամ ուրիշ տեղէ մը մեծ գաղթականութիւն մը — այս տեղւոյն ոգնութեան չհասնի: — — —

Մատենիս նկարագրութիւնն աւելի աչքի զարնող ու ձեռքով շօշափելի ընելու համար զանիկայ պատկերազարդ ըրած ենք, ամփոփելով անոր մէջ չէ թէ միայն քաղքիս կրկին թռչնահայեաց պատկերը, այլ

*նաեւ հրապարակական շէնքերուն, հիմնարկութիւններուն, եկեղեցիներուն, պարտէզներուն եւ այլն՝ աւելի նշանաւոր կտորները: Բաց ասկէ ժողովրդեան այլեւայլ աստիճանէն՝ զանազան անձանց լուսանկար պատկերներն ալ գործոյս մէջ առած ենք:*

*Պէտք ենք խոստովանիլ, թէ մեծ քաջալերութիւն մատուցած է մեզի՝ յանձն առնելու գործոյս թէ՛ մտաւորական աշխատութիւնը, եւ թէ՛ մանաւանդ նիւթական ծախքերն, ա՛յն ճանաչողութիւնն ու երախտագիտութիւնը՝ որուն արժանացած ենք մեծապատիւ Իզմիրլեան կտակին վերատեսչութեան կողմանէ, երբ երկու տարի յառաջ, նմանօրինակ գործք մը — "Հայք յՕղիսաքեթուպոլիս Դրանսիլուանիոյ,, — հրատարակելու ձեռք զարկած էինք:*

*Եւ ա՛յս է երկրորդ պատճառն, որուն համար փափաքեցանք՝ ազգիս մէկ քիչ ծանօթ գաղթականութեան վրայէն նորէն մոռացութեան քողը վերցընել եւ զանիկայ ընդհանուր ազգին, գոնէ ըստ մասին ծանօթացընել:*

*Սերլա, Հայաքաղաք. 1895 Աւգոստ. 10:*

Հ. ԳՐԻԳՈՐ Վ. ԳՈՎՐԻԿԵԱՆ



*ղեան կողմանէ նկատելով:*

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Դրանսիլուանիոյ ազգայինք Հայաստանի առաջին կարգի գերդաստաններէն սերած են։ Իրենց նախնիքը Անի քաղաքին բնակիչներէն են։ — Արեւելքին այս նշանաւոր ազգը՝ սփռեց քաղաքականութիւնը, ծաղկեցուց գիտութիւնը, երեւելի ըրաւ իր մատենագրութիւնը, տածեց արուեստները եւ հեռու երկիրներ տարաւ իր ծաղկեալ առեւտուրը . . . ։

Խրիմ՝ Թերակղզին գնացին, որ նոյն միջոցին ճենովացւոցն էր։ Հոս քանի մը գաղթականութիւն հաստատեցին եւ հեռաւոր գաւառներու հետ սկսան առեւտուր ընել։ Սակայն որովհետեւ հոն ալ իրենց հանգիստ չունին, հարկադրեցան Լեհաստան անցնիլ։ Լեհաց թագաւորը սիրով ընդունեցաւ օտարականներն ու իրենց այլեւայլ ազատութիւններ շնորհեց։ Բայց գրգռուած պատերազմներու պատճառաւն ասկէ ալ ելլելու ստիպուելով՝ գնացին Մոլտաւիա, ուր եօթը քաղաք հիմնեցին։ Ի սկզբան բաներնին շատ լաւ էր. սակայն քիչ մը ետքը՝ երկրին իշխանները անպատմելի տանջանքներով չարչարեցին զիրենք, որ լեզունին, սովորութիւննին ու կրօննին

թողուն։ Մեր պապերն աւելի սիրով երկիրը թողուցին, քան թէ իրենց կրօնը։ Ուստի դէպ ի Արեւմուտք գնացին եւ կարպաթեան լերանց մէջ քաշուեցան։ Ասկէ՝ Միքայէլ Աբաֆի իշխանը զիրենք 1672ին Տրանսիլուանիա հրաւիրեց։

Մեր նախնիքն 1239ին ելան Անիէն․ ուստի եւ 433 տարի բնակեցան Խրիմ, Լեհաստան ու Մոլտաւիա։ Այսչափ ժամանակի մէջ՝ չորս անգամ ստիպուեցան թողուլ իրենց կալուածները, իրենց տներն ու նոյն իսկ իրենց շարժական ստացուածներուն մէկ մասը, մինչեւ որ ոտքերնին Տրանսիլուանիա դրին։ Եւ զարմանալին ա՛ն է, որ մինչդեռ այս երկիրը գաղթող օտար ազգերը ձրի երկիրներ, տեղեր ու կալուածներ ընդունեցան, մեր նախնիքը՝ բարձր գնով գնեցին այն երկիրներն, ուր իրենց քաղաքներ ու տներ շինեցին։ Այսպէս՝ օրինակի աղագաւ այն կտոր մ'երկրին համար, ուր որ Հայաքաղաքը հիմնուեցաւ — չհասկընալով հօս, տէրութենէն գնած կալուածները — 12.000 ֆիորին վճարեցին։

Իմաստուն իշխանը շուտ համոզուեցաւ թէ շատ օգտակար տարր մը վաստըկեցաւ երկիրը՝ ներս գաղթող Հայոց ձեռօք․ որոնք իրենց բնածին սուր կարողութենէն զատ, ստացուածք ու գործունէութիւն ալ բերին Տրանսիլուանիա։ Այո․ որովհետեւ Հայք, որ առեւտրական յարաբերութեան մէջ էին Արեւելքի հետ, դէպ ի Արեւմուտք՝ Վիեննայի, Լայբցիկի, Տանցիկի միջոցաւը վաճառականութիւն մտցուցին Տրան-

սիլուանիա։ Մէկալ կողմանէ իրենց քաղաքներուն մէջ՝ այն միջոցին շատ փնտռուած առեւտրոյ նիւթով մը՝ բազմաթիւ գործարաններ կանգնեցին։ Այս գործարաններուն մէջ կը շինուէր կարմիր ու սեւ սեկը, ուսկից Հունգարացի ազնուականք կը շինէին իրենց կօշիկները։

Սաքսոնք ու Սըգոյները հաշտ աչքով չնայեցան Հայերուն յաջողութեան։ Ուստի տէրութեան խորհրդանոցին մէջ ամէն բան ըրին, որ իրենց նախանձորդները — Հայերը — չառնուին տէրութեան մէջ իբրեւ անդրէնածին։ Իրենց փափաքը յաջողեցաւ. որովհետեւ Հայերը՝ հազիւ 168 տարի ետքն ընդունուեցան երկրին անդրէնածին բնակիչներուն կարգը։

Ազգայնոց մէջ վարձակալ, երկրագործ, գեղացի մարդ ամենեւին չկար։ Անոր համար ան որ քահանայ կամ բժիշկ չէր՝ իբրեւ վաճառական իր ստացուածքն աճեցուց։ Հայոց՝ սեկի գործարաններուն մէջ — որոնք դեռ ասկէ իբր 50 տարի յառաջ մեծ ժրութեամբ կը գործէին — ըստ մեծի մասին այնպիսիները կը բանէին, որ ազգաւ հայ չէին։ — Երկրին օրինաց համեմատ՝ այն տեղերէն դուրս, ուր իրենք կը բնակէին՝ մշտնջենապէս երկիր գնել չէին կրնար. հապա այն երկիրները միայն գրաւով կամ վարձու կրնային բռնել։ Այս է պատճառն, որ անցած դարուն մէջ եւ այս դարուն սկիզբներն արջառի առեւտուր ընող Հայերը՝ վարձու կը բռնէին Հունգարիոյ մէջ ընդարձակ տարածութիւն ունեցող դաշտավայրեր (puszta)։

Երբ Նուգինէոս Սաւոյացին՝ Հարաւային Հունգարիայէն Թշնամին վռնտեց, այս երկրաբաժինն ըստ մեծի մասին առանց բնակութեան մնաց: Գետինն անչափելի տարածութեամբ ճախինով պատած էր՝ հեղեղներուն պատճառաւ: Հոս միայն եղէգ, կնիւն եւ եղեգնախոտ կը բուսնէր: Այս երկիրներէն գնելու հրաման կար որեւէ մարդու. աժան կը տրուէր. բայց պէտք չէր մէկու մը: Սակայն ի՞նչ կ'ըսենք... պէտք էր Հայոց: Այն միջոցին գաղթեցին Սերլա Հայաքաղքէն այս կողմերը Գարաչոնի, Կորովէ, Տանիէլ, Եագապֆի ..., Եղիսաբեթուպոլսէն՝ Գիշ, Վոդան, Խսիգուց ..., Ճուրճովէն՝ Նովագ, Զարան, Լազար .. գերդաստանները. եւ իրենց հոս ընդարձակ տեղեր գնեցին: Ասոր վրայ լեցընելու սկսան այն տեղերը: Մնացական թումբեր, առուակներ շինեցին. զանոնք հերկեցին ցանեցին ..: Հիմակ այս գետինները Հունգարիոյ ամենէն պատուական ու պտղաբեր տեղերն են. կաթ ու մեղր կը բխեն: — Այս կողմի Հայերը՝ Հունգարիոյ եւ Տրանսիլուանիոյ ազգայնոց մէջէն ամենէն հարուստներն են:

---

# ԱՌԱՋԻՆ ՄԱՍՆ

## ՀԱՅԱՔԱՂԱՔԻՆ ԱՆՑՆԱԼԸ

### 1. Հռոմէական գաղթականութիւն Հայաքաղաքին շրջակայքը:

*Գիտնականք — որոնք այն ճամբան որ* Salinae-*էն կը սկսէր ու* Patavissa-Napoca-*էն անցնելով՝ դէպ ի* Optatiana-Largia-Certia *կը տանէր, նոյն կը համարէին այն ուղղոյն հետ, որ այժմեան Թուրտայէն դէպ ի Գլուժ, Հայաքաղաք, Տէժ եւ Չիչոյ-Գէրէսդուր կը տարածի — երկայն ժամանակ կը տարակուսէին, թէ արդեօք Նաբոգա անունն, որուն վրայ Բայդինկէրի կոչուած տախտակը յիշատակութիւն կ'ընէ, Գլուժի՞ թէ Հայաքաղաքի կը պատկանի:*

*Ի սկզբան այնպէս կը կարծուէր, թէ Նաբոգան Կերլա Հայաքաղաքն է: — Այս կարծիքը կը պաշտպանէին նախորդ դարուն մէջ Սամուէլ Դիմոն,*[1] *Մարտինոս Ֆէլմէր,*[2] *Յովսէփ Պէնգէօ*[3] *եւ Ընտոն Պարդալիշ.*[4] *մանաւանդ*

---

1 Imago antiquae Hungariae. Tyrnaviae **1735**.

2 Primae lineae Magni Principatus Transilvaniae historiam antiqui, medii et recentioris aevi exhibentes, Cibinii, **1780**.

3 Specialis Transilvania. Մաս. Ա. գլ. Թ. **124**:

4 Ortus et Progressus Imperii Romanorum in Dacia mediterranea. Posonii. **1778**.

թէ վերջին ատենները՝ նոյն իսկ Կարոլոս Գոր-մա:[1] — Բայց ետքէն սկսան ասոր դէմ տարա-կոյսներ հանել. ի մէջ այլոց Քրիստափորոս Գե-ղարիոս[2], Նայկէպաուր ուսուցիչը.[3] եւ Կարոլոս Գորմա:[4] — Վերջապէս Թէոդորոս Մոմզէն,[5] Գլուժ գտնուած Նապոգա անուն վերնագիր ու-նեցող առարկաներուն վրայ հիմնուելով՝ այս խնդիրն ի նպաստ Գլուժի որոշեց: Ըստ այսմ՝ Նապոգան Գլուժն էր: Ընդ հակառակն Հայաքա-ղաքին կից գտնուող հռոմէական գաղթականու-թեան անունը՝ դեռ չենք գիտեր. մինչեւ որ բախ-տաւոր հնախոյզ մը զասիկայ ալ երեւան չհանէ:

Թէ արդեամբք Հայաքաղաքին հիւսիսային մասին վրայ հռոմէական գաղթականութիւն մը կար, կը ցուցընեն հին ու նոր ժամանակն եղած պեղումները, որոնք շատ բան երեւան հանեցին:

Այս հռոմէական գաղթականութիւնն՝ այժմեան մեծ-Անտառակին, քաղաքին ջրանցքին վերի մասին եւ դէպ ի Գլուժ տանող արքունի ճամբուն մէջի միջոցը կը բռնէ: Հոս տեղս գըտ-նուած բազմաթիւ A. II. P. նշան ունեցող ա-ղիւսներուն նայելով հաւանական է որ ձիաւոր վաշտի մը բանակատեղն եղած ըլլայ: Հին շէն-քերուն քարեղէն նիւթերը՝ Մարդինուցցի բեր-

---

1 Դրանսիլուանիոյ թանգարանի ընկերութեան տա-րեգիրները. Ա. Հատ. 1861:

2 Notitia orbis antiqui cum observationibus Con-radi Schwartz. Lipsiae 1731. Հատ. Ա, էջ 478.

3 Dacien aus Ueberresten des klassischen Alter-thums, mit besonderer Rücksicht auf Siebenbürgen, Kronstadt 1851, էջ 232.

4 Հնախօսական տեղեկութիւններ. Դ. Հատ. 1864. 16:

5 C. I. L. III. էջ 169, Թիւ Թ.:

դին, քաղաքը հիմնադրող Հայոց տներուն, իրենց մայր եկեղեցւոյն եւ Թերեւս Գարաչոնեան անկելանոցին շինութեանը գործածուած ըլլան: Բաղանիք ալ կար, զոր կը ստուգեն տեղ տեղ գտնուած ջրուղւոյ խողովակները, փայտի, ածխոյ մնացորդները, վառարանի տեղն եւ այլն: Գըլեկին՝ աւերեալ տներուն հետքերն ալ դեռ կը տեսնուին:

Գտնուած գերեզմանաքարերուն, անօթներուն, պղնձէ ու արծաթէ դրամներուն, կիսաքանդակներուն, քարէ ու պղնձէ արձանիկներուն թիւն երեսունէն աւելի է:

Ասոնց մէջէն ամենէն աւելի մտադրութեան արժանի է Աթենասայ այն ճարտարարուեստ պղձէ փոքրիկ արձանը, զոր գործավարք եղերաթմբին մօտերը՝ մանրախիճ փորած ատեննին գտան: Ասոր վրայ Օռնշդայն հազարապետը յաջորդ տեղեկութիւնները կու տայ: "Այս պղնձէ արձանիկը 1892, Յուլիս 21ին կերլա քաղաքին կից՝ հռոմէական գաղթականութեան հարաւ. դին եղող Գիշ Սամոշ գետին քով՝ խիճերէն հանեցին: Արձանիկն պղնձէ խարսխովն մէկտեղ 20 սանդիմէտր է: Արձանը զԱթենաս կը ներկայացընէ, յառաջացող դիրքի մէջ: Կուրծքն ու կռնակը լանջապահակ (aegis) մը կը ծածկէ, որուն մէջ տեղը կեցած է գորգոնեան գլուխ մը. իսկ շրջականները՝ իրարու փաթթուած օձեր: Աստուածուհւոյն գլուխը սաղաւարտ կայ, զոր բու եւ կրկին փետուրներէ կազմուած բբուկ կը զարդարեն:„

## 2. Մարդինուցցի դղեակը:

Հայաքաղաքին հիւսիսային կողման հին բերդը հիմակ տէրութեան բանտ է: Հին ատենները Նոր դղեակ (Arx nova) կը կոչուէր: Աս մեծագործ շէնքը Մարդինուցցի կարդինալը շինել տուած է Սամոշ գետին արեւելեան եզերքը: Շէնքին ճակտին վրայ հիմակ ալ ընթեռնլի է յաջորդ յիշատակարանը. PAVLO BANK VNGARO DE COMITATV BATSIENSI PROCVRANTE HOC OPVS COEPTVM ET PERFECTVM EST 1540. Այսինքն՝ "Պաչ գաւառէն սերած Պաւղոս Պանգ հունգարացւոյն վերակացութեամբ սկսուեցաւ այս շէնքը եւ աւարտեցաւ 1540ին:"

Մարդինուցցի դղեկին մէկ մասը 1652ին Գէորգ Բ. Ռագոցի քսան ձողաչափ ընդարձակեց: — Այս տեղս սպանուեցան 1594 Սեպտ. 11ին Սիկիսմունդոս Պաթորի իշխանին հրամանաւն՝ իւր եղբօրորդին, Պաղտասար Պաթորի, Պաւղոս Պէլտիի ամուսինն. որուն էրիկը դաւաճանութիւն նիւթելով՝ Կոստանդնուպոլիս փախաւ, բայց կնիկը բռնուեցաւ, բանտարկուեցաւ բերդին մէջ եւ ետքէն գլխատուեցաւ: — Գէորգ Ռաց ապստամբն, զոր իշխանը Մունքաչ առաքած էր հաշտութիւն ընելու համար, ժողովուրդն ապստամբութեան գրգռեց իշխանին դէմ: Իրը չյաջողեցաւ. բռնուելով հոս բանտարկուեցաւ եւ մինչեւ մահը՝ շղթաները կրեց:

Այս դղեակը շատ անգամ նորոգուեցաւ։ 1844ին Պետրոս Ռաց վերատեսուչն բերդն՝ ամուր եւ բարձր պարսպով մը շրջապատել տուաւ։ Եւ որովհետեւ տէրութիւնը բանտարկելոց տեղերը վատառողջ ու անյարմար կը համարէր, անոր համար 1859ին — յատկապէս Մարգինուցցի դղեակ կոչուած մասը դուրս առնելով — որմերը վար առնուեցան եւ կրկին դստիկոնով գեղեցիկ ու թիթեղածածկ նոր շէնք մը շինուեցաւ։

Միջին հաշուով՝ 550—700 ծանր բանտարկեալ կայ միշտ այս տեղս։ Սրահի մը մէջ 16—40 մարդ կը պառկի։ Իւրաքանչիւրն ունի իւր յատուկ անկողինն ու մաքուր սպիտակեղէնը։ Անկողնոյն վրայ կեցած է երեսի սրբիչ մը, թիթեղէ տախտակի մը վրայ բանտարկելոյն թիւն ու անունը, կերակուր ուտելու սպասք եւ այլն։ Դրան վրայ դրսի կողմը տախտակ մը՝ վրան տեղեկութիւններ։ Սենեակք՝ ամէն մէկ դստիկոնին մէջ կարգաւ քովէ քով կեցած են։ Դռները՝ մաքուր գաւիթներու վրայ կը նային, որոնք ամուր երկաթէ վանդակներով փակուած են։

Բանտարկեալք ցերեկն ամենեւին պարապ չեն կենար. իւրաքանչիւրը մէյ մէկ արուեստաճիւղի մը դրուած է գործելու համար։

Կարդինալին կէս կոթական ոճով շինած ընդարձակ աղօթարանէն զատ, որ այժմ ուղղափառ եկեղեցի է, ունին միացեալ՝ ինչպէս նաեւ չմիացեալ Յոյնք, Բողոքականք ու Հրեայք աղօթատեղիներ։ Ասոնց մէջ ամէն կիրակի ու տօն

օրերը պատարագ կը մատուցուի. իսկ կէս օրէն ետեւ երեկոյեան աստուածային պաշտամունք կը կատարուին: Հոգ տարուած է միանգամայն, որ իւրաքանչիւր դաւանանք իւր յատուկ կրօնագիտութեան ուսման ժամերն ունենայ:

## 3. Հայաքաղաքին հիմնարկութիւնը:

Ծանօթ բան է որ Դրանսիլուանիա գաղթող ազգայնոց մեծագոյն մասը Ճուրճով (Gyergyó Szt. Miklos) ու փոքրագոյն մասը՝ Չիք-Սիբվիզ գաղթած է: Ընդ հակառակն ազնուականք Մինաս եպիսկոպոսին առաջնորդութեամբն, քահանայից բազմութեամբ եւ պաշտօնատեարց խմբով մը Պիստրից քաղաքը գնացած եւ հոն իրենց բնակութիւն դրած են:[1] Մինաս հռոմէականութեան դարձաւ. եւ քիչ մը ետքը վախճանեցաւ: Իր մեծանուն յաջորդը՝ Աւքսենտիոս Վրզարեան 1700ին Լէոպոլտոս Կայսրմէն հրաման ընդունեցաւ, որ Կերլա դղեկին քովերը Հայաքաղաքը շինէ:[2]

---

1 Pars maxima in sede Gyergyó, pago Szt. Miklos substitit, minor in sedis superioris Csik, pago Szépviz dicto constitit. Pars nobilitatis praerogativa praecellens, non ab Episcopo sejuncta, cum Clero, officialibus et Laicis Bistricii gratiosa in Transilvaniae finibus ad septemtrionem sita urbicula consederunt. Episcopo nomen Minasz; hospitia ipsis praetio conducta concedebantur. Hist. domus.

2 Laudavit in specie Oxendii virtutem proborum aestimator aequissimus imperator Leopoldus, ac in Praesulem Deo, Caesari Religioni fidelem augustos contestaturus favores jus extruendae Armenopoleos ad arcem Szamosújvár, petenti concessit anno a Christo nato 1700. Քրիստ. Լուքաչեան. „Hist. armenorum Trans-

Քաղաքն, որ Սամոշ գետին արեւելեան կողմն է, հին արձանագրութեանց մէջ Հայաքաղաք (Armenopolis, Armenierstadt) կը կոչուի։ Արդի — Szamosújvár — անունը տէրութեան իբրեւ բանտ ծառայող Arx-nova-էն ընդունած է։ Այս Սամոշույվար անուանակոչութիւնը սկսած է 1838ին։ — Կերլա (Gerlon, Gyerla, Gerla) գաղթականութիւնը՝ կը շրջապատէր Մարգինուցցի գղեակն (այսօրուան Գանտիա արուարձանն), որ ցայսօր ալ վալաքերէն Gerla կ'անուանուի։

Հայաքաղաքին գեղեցիկ յատակագիծը շինած է հայազգի երկրաչափն Ալէքսա, զոր Վերզարեան իրեն հետ Հռոմէն բերած էր։ Քաղաքին հիմնաքարը 1700ին դրին։ Առաջին հիմնադիրք այն Հայերն էին, որոնք Պիստրիցէն, Ճուրճովէն, Սիբվիզէն, Ֆիլֆալուէն, Կէօրկինյէն, Բէդէլէէն, Պադօշէն ու Վիցէէն եկած էին։ Ամենէն շատուոր՝ Պիստրիցէն էին։ — Ճուրճովէն, Սիբ-

---

sylvaniae" էջ 18։ — Իսկ Կապրուչեան Հայաքաղաքին հիմնարկութեանը վրայօք այսպէս կ'ըսէ։

"Այս երկրին մէջ Օքսէնտիոս,
Հայոց օծեալ եպիսկոպոս,
Փառաւոր Վրծարեան ազգէ,
Գալով մեծ Հռոմա քաղքէ,
Քաղեց հայ ազգիս մօտէն պան
Եւ գընեց մեզ գետին Կերլան.
Ուր շինվեցար արտասվելի
Հայոց քաղաք տուն սոսկալի.
Ուրուխ ձըգվեց հօս քո հիմըտ
Փայ եղան համ օրմըներըտ.
Հայոց քաղաք անվանվեցար
Եւ սուրբ Գրիգորի օծվեցար։
Զըգար հոս հիմ արեւելեան
Ջերմեռանդ արարողութեան.
Թողար գհերետիկոսութիւն
Արիր ըղուղափառութիւն" էջ 64։

վիզէն, Բէդէլէէն եկած գերդաստաններն ընդհանուր անուանակոչութեամբ մը՝ ճուրճովցի, սիբվիզցի, բէդէլցի կ'անուանուէին, որ հետզհետէ մականուններ եղան։

Այն տեղն որուն վրայ յետոյ գեղեցիկ ու կանոնաւորեալ քաղաք մը շինուեցաւ, տէրութենէն գնեցին մեր պապերը։ Ետքէն այս երկիրը հաւասար կտորներու բաժնուեցաւ, եւ իւրաքանչիւր գերդաստան գնեց իրեն համար յարմար տեղ մը։ Գերդաստաններէն ոմանք՝ երկրին գինն անմիջապէս իրական դրամով վճարեցին. ուրիշներն՝ պարտքերնին ետքէն հատուցին։ Բայց այսօր ալ կան այնպիսի տեղեր, որ դեռ վճարուած չեն։ Ամէն մէկ տեղ հարիւր փիորին էր։ Իւրաքանչիւր փողոց ունէր յատուկ հարկակալ մը (taxae collector)։ Ասոնց գործքն էր՝ պահանջքները ժողովել եւ քաղաքին գանձապետութեան մատուցանել։ Քաղաքը այս երկրին գինն ամբողջապէս վճարեց 1758ին Մարիամ Թերեզիա Կայսրուհւոյն։[1]

Ամէն մէկ գերդաստան իր տան հետ պարտիզի եւ բաց ասկէ մնացորենի եւ այգւոյ տեղ մ'ալ ընդունեցաւ ի գործածութիւն։ Այգիները ետքէն փճացուցին եւ սկսան իբրեւ արօտատեղի գործածել։[2] — Մեր պապերը գիտէին, որ այս Նորաշէն քաղաքն ժամանակաւ

---

1 "1758ին մէջ պէտք է պատուել քաղքին ըստակ, որ ըզընդրէկ դագշան ին բէրբէգուում թագուհունմէ րէտիմագ անէ։,,

2 Էգըսդընուն վար ասիլինք,
որ ամարը կով մը ըըրնինք։

շատ յաճախորդ ունեցող դուարավաճառի տեղ մը պիտի ըլլայ, անոր համար քաղաքին պարտէզներուն եւ դրսի "Դաշտի փողոց„ին երկայնութեամբն անանկ ընդարձակ վաճառանոց մը շինեցին՝ որ — մեծութեան կողմանէ — Դրանսիլուանիոյ մէջ Պիստրիցինէն ետքը՝ առաջինն է։ Աշխարհք ճանչցող ազգայինները գեղեցիկ տեղ մը ընտրեցին իրենց քաղաքը հիմնելու, որ առողջ ու շքեղ դիրք մ'ունի, Սամոշ գետին կից է. եւ ամէն կողմանէ լեռներով շրջապատած։ Իւր մօտերը հարուստ անտառներ կան։

Մինչեւ որ քաղաքը շինուեցաւ՝ մեր պապերը Կերլա գեղը բնակեցան։ — Այս հայաքաղաքին վրայօք այսպէս կ'ըսէ ժամանակակից օտար յիշատակարան մը։ "Բազմացած բնակիչներն այս հաճոյարար տեղն այնպէս բաժնեցին իրենց մէջ, որ կանոնաւորեալ եւ աղէկ կարգաւորուած քաղաքը՝ իր ընտիր ու գեղեցիկ շէնքերովը քառանկիւնի հրապարակովը, շիտակ փողոցներովը՝ բոլոր իշխանութեան նախանձը գրգռեց։ Իր գեղեցիկ դիրքը տեսութեան արժանի է։ Քարաշէն զարդարուն շէնքերուն ապակեայ պատուհանները՝ փողոցի վրայ կը նային։ Պատուհաններուն լոյսը՝ երկաթեայ վանդակները կը մթացընեն . . . ։ Այս՝ վաճառականութեան ամէն ճիւղին մէջ վարժ ազգն, իրեն արտաքոյ կարգի շատ եզանց նախիրներուն համար լաւ վաճառանոցներ գտաւ դրսի գաւառները։ Հայերը տարուէ տարի այլեւայլ երկիրներ՝ 100.000 կտորէն աւելի դուար կը

ծախեն։ Եւ եթէ խափան մը (հիւանդութիւն, պատերազմ, ջրոց ողողում) վաստակին առջեւ արգելք մը չի դներ՝ կ'երթան Հունգարիայի ու Գերմանիայի սահմանեալ երկիրներն ալ։ Զիտալիա ալ կը հոգայ այս շահ փնտռող ազգը՝ յիշեալ ապրանքներով։ Հայոց մէջէն ազնուականները — զորոնք կամ բախտը կամ պատերազմի փառքն եւ կամ արքունեաց մատուցած ահագին դրամոց գումարն, ըրաւ ազնուական — իրենց վեհ մտածմունքին, ազնուութեան ու բարեգործութեանցը համար, — մեծ մարդիկներ են։ Արեւելեան տարազ չեն գործածեր, այլ՝ ինչպէս ազնուականաց կը վայելէ՝ հունգարական զգեստ կը հագնին։ Փորձառու եւ շրջահայեաց են։ Պատերազմի մէջ արտաքոյ կարգի յանդուգն են, մանաւանդ երբ արագ ու կեղծեալ ասպատակի հարկաւորութիւն կայ։ Շատ ծախք ըրին իրենց քաղաքին ազատութեանն ու արտօնութեանց համար։ Հայք՝ շատ կը սիրեն ձի. որոնց մէջէն լաւ քալողներն ու ծանր բեռ տանիլ կրցողներն աւելի կ'ընտրեն։ Շատ կը սիրեն բարեկամութիւնը։ Հետզհետէ ընդարձակեալ քաղաքը բանի մ'այնչափ հոգ չտարաւ՝ որչափ անոր, որ իր հաւատքին օրէնքներն ամենախիստ կերպով պահէ եւ զայն որ աստուածային է՝ պատուէ, ու ջերմեռանդութիւնը յառաջացընէ։ Շատ կը յաճախեն ապաշխարութեան խորհրդին։„[1]

1 Hist. domus ... Fratrum Minor ... ad inserandam rerum memoriam inchoata anno Dni 1775.

Հայաքաղաքը միշտ օգնեց տէրութեան՝ երբ ասիկայ իր օգնութեանը կը կարօտէր։ Վկայ է ըսածիս՝ յաջորդ յիշատակարանը։

Հապա Նի շատ օգնութիւնը.
Զոր հասցուցիլէ Հայ ազգը.
Ի ժամու մեծ հեծելութեան
Խոնթիքարին սրտէ լըման։
Ժամը՝ օսգօվ եւ արծըթով,
Քաղաքը՝ Թանկ ձիաններով
Քաղ.քըցիքը՝ պարըխատով
Ու շատ անգամ համ դէր պանով
. . . . . . . . .
Բօլոր երկիր ըղայս գիտէ։
Միթէ հայք շատ չի օգնեցա՞ն
Զխոնթիքար զերկիր միաբան.[1]

Շատ մեծ մարդիկ ընծայեց տէրութեան Կերլա հայաքաղաքը։ Ասոնց մէջէն միայն զանոնք յառաջ կը բերեմ որոնց անունները 1840ին յօրինուած ոտանաւոր մը կը յիշէ։

Կեցիլին, ու այսօր ալ կան,
Զինոր Հայեր ինտաս ինտան։
Նայէ Պէչը զԱղա Պալդան,
Խօնթիքարին մաճրի Կարտան։
Հապա Մալին ինչ խալտընցաւ,
Որ ինճիներութիւն սորվաւ.
Ով այսօր ալ կի ծառայէ
Երկրին, գիտնաք ի մեծ սրտէ.
Եագօպֆին գօնսիլիարը։

---

1 Կապրուչեան "Կատարեալ է,, էջ 144։

Հապա Լասլօն կօրօվէյը . . .
Հապա ատխա շատ քաՀանայք
Տեառն Աստուծոյ բարի ծառայք.
Որոնք շատ դի կի ծառային
Տեառն էգուն մէջ կի բանին:
Երկու ջավուշ գանօնօք կա
Մալը մը դէր սէգրէդար ա
Գանօնօգ է պէլըկրատը,
Էրէօշը Ալէքսանտէրը:
Քանի բըժիշկ ինտաս ինտան.
Մաճարք, Բէշդը ու Համ կերլան.
Անոր մէջ քըրտմամբ կաշխատին
Օր ըզէրկիրն արօղէ բըրնին . . .
Միթէ դաքա բրէջ Հայեր չի՞ն:[1]

### 4. *Երկու Աբաֆիները, Հապսպուրկեան-լոթարինկեան տան կայսրներն եւ Հայաքաղաքի ազգայինք:*

Մեր պապերն Աբաֆի Ա.ի առեն՝ 1672ին եկան Դրանսիլուանիա: Իմաստուն իշխանն, որ տեսաւ թէ երկիրը շատ ինկած է օտար աւերմանց Հետեւութեամբն ու ժողովրդեան նուազելովը՝ Հայոց ներս գաղթելէն ութը տարի ետքն — 1680 Հոկտ. 26ին — յաջորդ գրութիւնն ուղղեց իր ժողովրդեանը. "Միքայէլ Աբաֆի շնորՀօքն Աստուծոյ իշխան Դրանսիլուանիոյ. տէր Հունգարական մասին. եւ այլն: Մեր պատուաւոր ստորակարգելոց աղաչանքը

1 Կապրուշեան "Կատարեալ է,,. էջ 141:

գթածաբար լսելով՝ թէ Պուրտա գաւառին Բէդէլէ անուն գեղին մէջ բնակութիւննին դնող Հայ վաճառականաց թոյլ տրուի, որ մեր տէրութեան մէջ ամէն տեղ, ամէն քաղաք եւ տօնավաճառ՝ իրենց արուեստին համեմատ յարդարուած կաշեղէն ծախեն, եւ ուրիշ տեսակ ապրանքներով եւ դուարաւ ազատապէս վաճառականութիւն կարենան ընել: — Երբ իրենց աղաչանքը կը լսենք, կը յայտնենք թէ պարտաւորուած են մեզի հարիւր կտոր սեկ տալու: Կէօրկէնի դղեակը կը հոգայ ասոր հարկաւոր սկումբիան, զոր առաջիկայ գրութեամբ ծանրաբար կը հրամայենք տալու: — Ուստի մեր ամէն կարգի հպատակացը գթածաբար ու ծանրութեամբ կը հրամայենք, որ վերը յիշուած Հայերուն նկատմամբ ցուցըցած գթութիւննիս լաւ հասկընալով՝ թոյլ տան իրենց, որ ամէն տեղ մեր պետութեանը մէջ ազատապէս առուտուր ընեն. եւ այս բանիս մէջ՝ ոչ իրենց անձը եւ ոչ ստացուածքը վրդովել եւ կամ իրենց վնաս ընել յանդգնին: — Տուեալ ի մեր քաղաքն Ալպա Եուլիա. յամի Տեառն 1680. ի 26 Հոկտեմբերի. Մ. Աբաֆի. յ. ձ.:„

Աբաֆի Բ. ալ չմոռցաւ իր երկրին խաղաղասէր Հայերը, որ իւր հօրը ժամանակն բնակած առուտուրն այնպէս յառաջացուցին Դրանսիլուանիոյ մէջ: Ինքն ալ Հայոց շատ մ'ազատութիւններ տուաւ:

Աբաֆի Բ.էն ետքը Դրանսիլուանիա՝ Հապսպուրկեան տան իշխանութեանը տակ մնաց:

Մեր նպատակը չէ մի առ մի յառաջ բերել այն ամէն բարիքները՝ զոր արքունական տունն ըրած ու ցուցըցած է միշտ Հայոց։ Կը շատանանք անով՝ որ համառօտիւ մը յիշենք թէ այս կայսրներն՝ ի մասնաւորի որչափ բան ըրած են Հայաքաղաքի ազգայնոց։

Լէոփոլտոս շատ աշխատեցաւ, որ Հայերն որ Մինաս եպիսկոպոսին առաջնորդութեամբ Տրանսիլուանիա եկած էին՝ Հռոմայ գահուն հետ միանան։ Եւ իր ազնուական աշխատութիւնը պարապի չելաւ։ Վասն զի Աւքսենտիոս Վրզարեան, Տրանսիլուանիոյ Հայոց առաքելական փոխանորդը — (1691 Յուլ. 30ին) Վարդան Յունանեանէն ձեռնադրուելով — Ալատինոյ եպիսկոպոս անուանուեցաւ։ — Մեծին Լէոփոլտոսի ամուսինն, Էլէոնորա՝ Վրզարեանին փառաւոր եպիսկոպոսական հանդերձ եւ խել մը եկեղեցական սպասներ պարգեւեց։ Ասոնք դեռ ցայսօր իբրեւ գանձ Հայաքաղքին մայր եկեղեցւոյն մէջ կը պահուին։ — Կարոլոս Զ. չէ թէ միայն հրաման տուաւ Հայոց, որ մէջերնէն ազատութեամբ դատաւոր մը կարենան ընտրել, հապա նաեւ շատ մ՚առանձնաշնորհութիւններ ըրաւ իրենց։ 1737 Մարտ 28ին, Սիպինի պատճէնովը Սամոշույվարի արքունական ստացուածքը՝ Հայաքաղքի ազգայնոց վրայ գրուեցաւ յիսուն տարուան համար 100.000 ֆիորինով։ Որուն վրայ — 1887ին — քաղաքը դեռ 31.514 ֆիորին տալով՝ այն կալուածները մշտնջենապէս գնեց։ — Կարոլոսի դուստրը՝ Մարիամ Թերե-

զիա՝ իր նախորդներուն տուած առանձնաշնորհութիւններն ամրացուց։ Շինուելու եկեղեցւոյն համար արքունի բոլերէն ձրի երկաթ, Հայ եպիսկոպոսին սեղանին համար 12.000 ֆիորին, եւ ազգայիններէն շատերուն ազնուականութեան պատիւ տուաւ։ — Փրանկիսկոս պարգեւեց Կերլացւոց՝ Ռուպէնսի — փրկչին խաչափայտէն վար առնուելուն — գեղեցիկ նկարը՝ որ ժողովրդապետական եկեղեցւոյն մէկ մատուռն ամենէն գեղեցիկ զարդն է։ — Ֆերդինանդոս Ե. ըրաւ զԿերլա ազատ արքունական քաղաք։ — Վերջապէս Փրանկ. Ա. Յովսէփայ ատեն օրինօք ճանչցուեցաւ Հայ եկեղեցւոյ անկախութիւնը։

## 5. Հայաքաղաքին առաջին ընտրեալ խորհրդարանը։

Արեւելեան պատերազմներուն ապականիչ ալէկոծութեան հետեւութեամբը — ԺԷ. դարուն վերջերը — Տրանսիլուանիոյ ժայռերուն զարնուող Հայոց երկու գլխաւոր խմբերն՝ երկրին մէկ նշանաւոր հիւս. արեւելեան ամրութեան ստորոտն՝ իրարմէ բաւական հեռու հաստատուեցան։ Թէպէտ իրարմէ հեռու, բայց միութիւնը մնաց անկէ ետքն ալ իրենց մէջ։ Այս միութեան կապին անունը “Հայ Գոմբանիա„ էր, որ բաժնուած խումբերն իրարու կցեց։ Գոմբանիային դատաւորն ընկերութեան գլուխն էր։ 1730ին այս պաշտօնը տակաւին կը յիշուի։ Մանաւանդ թէ երկու տարի ետքը Հայոց մեծամեծները խորհրդակցելով միաբանեցան որ հասարակաց

ծախուց, պարգեւաց եւ ծանրաբեռնութեանց երեք հինգերորդականը՝ Կերլացիք ու երկու հինգերորդականը՝ Եղիսաբեթուպոլսեցիք կրեն:

Ասկէ իբր տասնուհինգ տարի յառաջ կարգաւորած էին իրենց վարչական իշխանութիւնը: Իրենց ատենական ու տնտեսական գործոց կարգադրութիւնն՝ ընտրեալ պաշտօնէից ձեռքը յանձնեցին, երբ 1713ին վերջերը՝ Դրանսիլուանիոյ վերին կառավարին գրած աղերսագրին մէջ՝ ծանուցանելէն ետքը թէ հայ ազգէն բաւական թուով խումբ մը Կերլա հայաքաղաքը գաղթեց. — եւ որովհետեւ այսպիսի հասարակութիւն մ'առանց կանոնաւորեալ ատենակալութեան չի կրնար կենալ, — կը խնդրէ զօրաց վերին հրամանատարէն որ Կերլա քաղքին տայ հրաման ատենակալութեան պաշտօն վարել կարենալու: Շըդայնվիլ կոմսը՝ 1714 Հոկտ. 10ին տուած հրամանագրովն Հայաքաղքին դատաւորին եւ իւր երդուեալներուն հրաման կու տայ իրենց պատշաճ համարածին համեմատ վճիռ տալու: Շըդայնվիլ այս հրամանագիրը Սասշէպէշէն — 1715 փետր. 14ին — տուած երկրորդ պատճէնովն ամբողջացուց: Ասով Հայոց գաղթականութեան խնդրուածքին համեմատ՝ Հայաքաղքի հասարակութեան յատուկ դատաւոր մ'ընտրելու իշխանութիւն կը տրուի. որուն պէտք է — կ'ըսէ — պատշաճ յարգանքն ու պատիւը տալ՝ մինչեւ որ հասարակութիւնն այս խնդիրը պարզող կայսերական արտօնագիրն ընդունի:

Բայց հրամանագրին հրատարակուելէն յառաջ — 1714 Դեկտ. 14ին — կերլա Հայաքաղաքն ընդհանուր ժողով մը գումարուելով՝ կանոնաւորեց քաղաքին ներքին կարգադրութեանց քանի մը խնդիրներն. ի մասնաւորի տնտեսական խնդրոյն գործադրական մասը. եւ կազմեց առաջին պաշտօնատեարց խումբը՝ դատաւորով եւ տասուերկու ծերով՝ այս ինքն խորհրդականով: "Մենք Հայաքաղաքացիք եւ ուրիշ ազգայինք միաբանեցանք, կ'ըսէ նոյն ատենուան արձանագիրն, որ մեր յատուկ կամօքն եւ հաւանութեամբն ընտրենք մենք մեր դատաւորը, քաղքին գլուխը: Խնդրեցինք եւ ընտրեցինք տասուերկու ծեր, եւ գլխաւորին Ակոբշա՝ դատաւոր. որ ինչ որոշմունք որ գայ խորհրդանոցէն՝ հնազանդինք. եւ ով որ զայս չկատարէ կամ ասոր ընդդիմանայ, ունենան անոնք իշխանութիւն վճիռ բերելու՝ սխալման մեծութեան համեմատ:„

## 6. Հայաքաղաքի մշակագործաց եղբայրութիւնը:

Դրանսիլուանիոյ բնակիչներն, ինչպէս վերն ըսինք, ԺԷ. դարուն մէջ խաղաղ օրեր չունեցան: Թշնամւոյն սուրը չէ թէ միայն շատ արիւն թափեց, այլ նաեւ ծաղկեալ տեղերն աւերեց: Երկրին հոգատար իշխաններն այս բանիս դարմանն հոգացին այնու՝ որ ժրաջան գործավարներու գաղթականութիւն մը բերին Դրանսիլուանիա:

Մեծապէս օգտուեցաւ երկիրը գաղթող 3000 հայ գերդաստանէն. որովհետեւ այս

գերդաստաններուն մէջ բազմաթիւ արուեստաւորներ կային: Նոր գաղթականներն իրենց հետ ստացուածք — ոսկեղէն ու արծաթեղէն — բերին: Ասոնցմէ ոմանք գիտնական, այլք՝ զինուորական վիճակն ընտրեցին: Ճարտար վաճառականք՝ ոչ լոկ առեւտուրը ծաղկեցուցին, այլ նաեւ հաղորդակցութեան մէջ մտան օտար երկիրներու վաճառանոցներուն հետ: Ասկէ անգործ նիւթ դուրս կը տանէին, եւ անկէ՝ գործուած արուեստակերտ վաճառքներ ներս կը բերէին:

Հայաքաղաքի, Եղիսաբեթուպոլսոյ եւ Ճուրճովի խաղախորդները շարունակեցին այն շահաբեր արուեստը — սեկի չինութիւնը — զոր իրենց պապերէն սորված էին յառաջ քան Տրանսիլուանիա գաղթելը: Հայ խաղախորդք ([illegible]) այն ատենուան սովորութեան համեմատ իւրաքանչիւր հասարակութեան մէջ ընկերութիւններ կազմեցին: Հայաքաղաքի խաղախորդաց ընկերութիւնը 1700ին մեծանուն Վըրզարեան եպիսկոպոսը հաստատեց:

Կարեւոր կը համարիմ տուած կանոնադրութեան բնագիրն ընթերցողաց առջեւ դնել:

"Հաստատութիւն[1] մաշկագործի եղբայրակցութեան այսինքն. սուրուկճոց. եւ նոցին իսկ Եղբայրակցացն Սահմանաց եւ կանօնաց ներպարունակող: Նմանապէս Ուխտակատարութեան

---

[1] Բնագրին՝ շատ մը կէտերն ու մանուանդ բութերն՝ առանց աւելցնելու եւ առանց պակսեցնելու՝ ճշդիւ ընդօրինակած եմ, ինչպէս որ են: — Գրութիւնը յայտնապէս Վըզարեան եպիսկոպոսինն է:

իւրեանց Եկամտիցն ծախուցն եւ Եղբայրակցաց անուանաց խնկութեանն մատենագրութիւն: Զորս կարգեաց Գերապայծառ եւ ամենապատիւ Տէր Օգսէնտիոս վրծրէսգուլ վարդապետ Եպիսկոպոս Աղատինոյ եւ առ մերազինս որ են ի սփիւռս Դրանսիլվանիոյ. Սրբազան փափին վեգիլ եւ փախանորդ: Ի խնդրոյ նոցին իսկ Եղբայրակցացն ըստ աւարտի հնոց իւրեանց աւանդութեանց եւ սովորութեանց: Յամի Ներմարմնութեան փրկչին ՌՉ եւ ըստ Հայոց ՌՃԽԸ. Օգ՞ի Ա:„

“Ի փառս մշտնջենականս. էին միակի եւ Եռակի: Հօրն Անսկզբի բայց սկզբանն Որդւոյ եւ Որդւոյ ծնեցելոյն ի Հօրէ եւ Ոգւոյն ն՞բյ նոցունց իբր ի միակէ սկզբանէ յաւիտենականապէս բղխեցելոյ: Որպէս զի՝ Նոյն Միակն եւ Եռակն գոլով յամենից եղանակաց՝ սկիզբն եւ պատճառ յեղանիլն՝ պահօղ պահպանօղն. եւ ամենիմաստաբար կառավարօղն ի գոլն եւ վերջ անսկիզբ ի սպառիլն: զսիրով սկսեցեալս ի Նմին զեղբայրակցութիւնս զմաշկագործս, Նոյն ինքն պահիցէ, պահպանիցէ, եւ կառավարիցէ ի գոլն սորին. մինչեւ իցէ սմա ժամանել ի Նա: իբրեւ առ միայնակ եւ ևթ դիմելոյն իւրոյ մշտնջենահանգ եզրն եւ գործառութեանցն իւրոց Նպատակն Յիսուս որ որպէս եղեւն եւ է այժմ, Նոյնպէս եւ ի յաւիտենից յաւիտեանս միշտ օրհնեցեալ եղիցի. Ամէն:

Արդ գիտելի է, զի որպէս տունկն առանց արմատոյ, ոչ թէ միայն անպտուղ է, չորանայ,

*եւ հնոցն հրոյն արժանանայ: այլ եւս՝ անվայելչութիւն է պարտիզին: Եւ որպէս տունկն արմատացեալ որ յեցեալ կայ յարմատս իւրս. ոչ թէ միայն ծաղկազարդի, պտղաբերէ, եւ օր ըստ օրէ աճի: այլեւս՝ է մեծ վայելչութիւն պարտիզին. եւ մեծ պարծանք եւ փառ. այլեւ՝ ուրախութիւն պարտիզպանին:*

*Նոյնպէս՝ Եղբայրակցութիւնս մաշկագործաց, որ է իբրեւ՝ բարեբողբոջ տունկ, մինչեւ ի մերայինս ժամանակս պտղաբերեալ միշտ ըստ հոգաբարձութեան եւ ջանի դիտակացն իւրոց պարտիզպանաց, եթէ ոչ ունիցի զիւրս արմատս այսինքն, զսահմանս, եւ զկանոնս (որոյ եւ իցէ Եղբայրակցութեանն, են իբրեւ արմատք) արդարեւ՝ հարկ իցէ նմա նուազիլ, անպտղանալ, չորանալ, եւ համահետեւապէս՝ հատանիլն, եւ հրոյ արժանանալն ի յանվայելչութիւն պարտիզին Եկեղեցւոյն մերոյ, եւ ի նախատինս անընդունակաց, եւ ծուլամորթից պարտիզպանաց. այսինքն հոգեւորաց հովուացն իւրեանց. (յորմէ փրկիչն մեր Յիսուս փրկեսցէ զսա). իսկ եթէ ունիցի զարմատս իւրս. այսինքն զսահմանս, եւ զկանոնս, եւ հաստատնիւ պահպանութեամբն առյեննուցու նոցին: արդարեւ՝ յոյս մեծ գուցէ մեզ եւ հետեւողաց մերոց, եթէ ի հաստատապահից սահմանաց. եւ կանոնացն հետեւիցի Եղբայրակցութիւնս Մաշկագործաց աճումն, զարգանալն, ծաղկիլն, պտղաբերիլն, եւ օրըստօրէ պայծառանալն առատատրիւ ողորմութեամբն, աստուածափափաքիւ խոնարհու-*

թեամբն, սիրալրականիւ երկիւղածութեամբն, յօժարաջանիւ դէպ ի յաստուածայինս ջերմեռանդութեամբն եւ այլն: Եւ այս ամենայն ի փառս. եւ ի պարծանս ազգին մերոյ ի վայելչութիւն Եկեղեցւոյն մերոյ, եւ ի գովեստ Հոգաբարձուաց Հովուացն մերոց:

Աստանօր՝ կարի յոյժ արժան իցէր զմեծամեծս շարահիւսել ի գովս կարգաց, եւ կանոնացն. որպէս զի՝ ամենքն Եղբայրակիցք, եւ միաբանք, յորդորիցին նոքօք առ ի մեծաւ ջանիւ, եւ խոնարհութեամբ պահել զկարգսն, եւ զկանոնս իւրս, սակայն՝ (համառօտութեան սակս) զայս եւեթ ասացից. եթէ կարգքն, եւ կանոնքն՝ հիմն եւ հոգի են ամենից Եղբայրակցութեանց: զի որպէս հոգին սկիզբ է՝ ամենից ներգործութեանց կենդանականաց ի մէջ մարմնոյ, եւ հիմն հաստատութիւն է շինուածոյն: Նոյնպէս՝ եւ կարգքն, եւ կանոնքն են ի մէջ Եղբայրակցութեանցն: Եւ որպէս շինուածն առանց հիման կործանելի է. եւ մարմինն առանց հոգւոյ մեռեալ է, նոյնպէս՝ են ամենքն Եղբայրակցութիւնք. եւ միաբանութիւնք, առանց կարգաց, եւ կանոնաց: Ապա ուրեմն՝ հարկ է, զի ունիցին զկարգս, եւ զկանոնս, իբրեւ՝ զհիմն հաստատութեան իւրեանց՝ եւ Սուրուկճիքն:

Արդ՝ գիտել պարտ է, զի այսօրիկ՝ Եղբայրակցութեան երկուօրեակք են, ոմանք են հաստատեալք վասն ընտրողութեան Մեծաւորաց Եղբայրակցութեան, եւ կատարման հոգեւոր ուխտին իւրեանց: եւ ոմանք են հաստատեցեալք

վասն բարւոք կառավարելոյ զԵղբայրակիցս, ընդ մշտապահ միակրօնութեան Եղբայրակցութեան եւ արհեստին իւրեանց:

Կանոնք վասն ընտրողութեան մեծաւորաց:

Ա. Առաջներորդ կանոն: Որպէս ամենայն Եղբայրակցութիւն ի սրբոյ Եկեղեցւոյն, եւ ի յԱռաջնորդէն ունի զիւր սկիզբն, եւ զհաստատութիւնն: Նմանապէս եւ Սուրուկճոց Եղբայրակցութիւնս անդուստ ունելով զիւրն ամենայն: Վասն այսորիկ՝ ի հարկէ պարտի՝ թէ Եղբայրակցութիւնս, թէ Եղբայրակցապետն եւ թէ ամենայն ոք Եղբայրակից՝ հնազանդ լինել Մօրն մերոյ Կաթուղիկէ Եկեղեցւոյն եւ Առաջնորդին: Ուստի՝ պարտական լիցի ամենայն վարպետ, եւ աշակերտ ի ժամանակի ներընդունելութեան իւրոյ ի գործս արհեստիս, կամ սարօսթայն, եւ կամ վաղահն, ի ժամանակի ընտրութեան իւրոյ խոստանալ առաջի Աստուծոյ եւ Եղբայրակցութեան, կալ եւ մնալ հնազանդ սրբոյ Եկեղեցւոյն եւ Առաջնորդին, եւ եթէ ոք ոչ կամիցի յանձն առնուլ զխոստումն զայս, յայնժամ ընկեցեալ լիցի Սարօսդայն ի սարօսթութենէ, վաղահն ի վաղահութենէ, վարպետն՝ ի վարպետութենէ եւ աշակերտն յաշակերտութենէ իւրմէ: եւ տասվերկու մաճրի տուգանս տայցէ Առաջնորդական:

Բ. Երկրորդ. Որովհետեւ ամենայն մարմին անգլուխ մեռեալ է: վասն այսորիկ՝ պարտական լիցի Եղբայրակցութիւնն՝ ո՛չ աչառութեամբ կամ կաշառօք, այլ ճշմարտութեամբ, ըստ

անձանց արժանաւորութեանն կամաւոր եւ ազատական ընտրողութեամբ ընտրել յինքենէ ինքեան զգլուխ մի Եղբայրակցապետ, որ աշխարհօրէն սարօստայ ասի։ եւ սմա եւս՝ զփոխանորդ մի, որ վաղահ կոչի։ եւ զընտրեալն ցուցանել Առաջնորդին զի հաստատիցէ եւ խոստանայցէ նմա իբրեւ Հօր զորդիական խոնարհութիւն, եւ պատրաստ հնազանդութիւն յիրս Եղբայրակցութեան ըստ կանոնաց սորին, եւ եթէ ոք ընդդէմ հնազանդութեան, կամ խոնարհութեան յանդուգն գտանիցի բանիւ կամ գործով, պատժեսցի ըստ մեծութեան կամ փոքրութեան յանդգնութեանն իւրոյ։

Գ. Երրորդ. Մնալն սարօստային ի սարօստայութեանն իւրում եւ փոխանորդին ի փոխանորդութեան իւրում անշարժ եւ անխախտ եղիցի զամ մի բուն, եւ ժամանակ ընտրութեանն նոցա լիցէ զկնի ուխտին իւրեանց մինչեւ ի շաբաթ մի։ իսկ եթէ Եղբայրակիցքն յայնմ շաբաթու, զանց առնիցեն, չընտրելով իւրեանց զայլ ոմն սարօստայ կամ զնոյնն եւս համակամութեամբ վարպետացն չհաստատելով։ յայնժամ իշխանութիւն լիցէ եպիսկոպոսին ընտրել նոցա, զորն կամիցէ Եպիսկոպոսն եւ նոքա ըստ վերոգրեալ պատժոյն պարտաւորիցին հնազանդիլ ընտրութեան Առաջնորդին։

Դ. Չորրորդ. Ամենքն Եղբայրակիցքն ի ժամանակի ներընդունելութեան եւ ներագրութեանն իւրեանց ի մէջ արհեստախումբ Եղբայրակցութեանս եւ ամք եւս՝ որք ի վաղուց

հետէ Եղբայրակիցք, պարտաւորին մի ըստ միոջէ խոստանալ զհնազանդութիւնն սարօստային ըստ կանոնաց Եղբայրակցութեանն: եւ եւս՝ խոստանալ եւ յանձն առնուլ՝ կատարել զամենայն սահմանս եւ զկանոնս աստանօր՝ գրեցեալս: մանաւանդ՝ թէ յամենայնում տարւոջ ի տօնի սրբոյն այնորիկ, ըստ որոյ խնամածութեամբն՝ լինել եւ մնալ, հաստատեալ է Եղբայրակցութիւնս՝ ջերմեռանդութիւնն, այսինքն ի Մեծի եւ ամենահռչակ Տօնի հանդիսութեան Տիրամօր կուսին Մարիամու վերափոխմանն. եւ յաւուր յորում Ներագրի ոք ի վարպետ կամ աշկերտ ի մէջ Եղբայրակցութեանս, խոստովանիցին զյանցանս իւրեանց եւ արժանապէս հաղորդիցին կենսաբեր Մարմնոյ եւ արեան փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի: Վասն զի այս է իսկականն այն եւ սեփական ուխտն եւ ուխտակատարումն, զոր օր ըստ օրէ ի բերանս ունիմք: եւ ոչ թէ ուտելն եւ ըմպելն, արբենալն եւ մոլիլն, որ որովայնամոլութիւն է եւ որկրամոլութիւն ասի. եւ է իսկ եւ ոչ ուխտ, կամ ուխտակատարութիւն, որպէս յայսմիկ ժամանակիս՝ ախմարութիւնն կարծէ, թէ յայնժամ մեծ է ուխտն յորժամ ուտելն եւ ըմպելն է մինչ ի յիմարանալն եւ յորկրամոլիլն. զոր տէրն մեր բարձցէ ամենեւին ի միջոյ:

Ե. Հինգերորդ. Տեսանեմք լեալ մինչեւ առ մեզ զմեծ իմն թէ մարմնաւոր եւ թէ հոգեւոր վնասաբերութիւն Եղբայրակցութեանն վասն առնելոյ զմեծամեծս խրախճանս եւ զպա-

տիւս անօգուտս այլեւ՝ վնասաբերս Եղբայրակցացն Քրիստոսի: Քանզի վասն առնլոյ զփառս անցաւորս ի ժողովրդենէն, զբոլոր տարեկան եկամուտն, դարձուցանեն ի կերակուրս եւ յըմպելիս որ է զեխական որկրամոլութիւն եւ մի ի մեղաց մահուչափից: վասն որոյ՝ հաստատեմք ի Քրիստոս զի Եղբայրակիցքս, յաւուր վերոգրեալ հանդիսութեանն, լցեալ ի բարութենէ անմահական սեղանոյն, արասցեն յարդեանց իւրեանց զճաշ իմ մարմնաւոր կերակրոյ, ոչ վասն բնաւից ժողովրդականացն, այլ միայն վասն տասանց կամ քսանից աղքատաց: Եւ վասն օրհնութեան սեղանոյն, հանդիպիցի անդ եւ հովիւն ժողովրդեանն: այսինքն յատուկ Քահանայն ժողովրդեանն: Եւ աստ՝ ամցն գիտելի է, զի եթէ կանոնս այս հաստատ պահեսցի, ոչ մնասցեն պարտապանք Եղբայրակիցքն, որպէս մնան եւ մնային ցայժմ. այլ կարօղ լինելոց են աճեցուցանել զգոյս Եղբայրակցութեանն իւրեանց:

Զ. Վեցերորդ. Վասն աճման գոյից եւ առաւելութեան զարդուց Եկեղեցւոյն Քրիստոսի հաստատեմ զկանոնս զայս, որ առ ամենայն բարեկարգ ազգ գտանի, զի Եղբայրակցութիւնս այս, պարտիցի ն՚ամնուամ տարւոջ հանել Եկեղեցւոյն Քրիստոսի զբաժին ինչ յարդեանց աշխատանաց իւրոց այսինքն կամ զյիշատակ իմն թողուլ ըստ կարեաց իւրոց, կամ հրամանաւ Առաջնորդին զայլ իմն շինուած շինել կամ նորոգել շուրջ զԵկեղեցեաւն:

Է. Եօթներորդ. Ամենայն Եղբայրակից ըստ կրօնի քրիստոնէութեան մինչ տքնին զցայգ եւ զցերեկ ի վերայ արհեստագործութեանն իւրեանց, պարտին տքնիլ եւս ի վերայ միմեանց, աղօթիւք եւ պահօք, յիշելով զնախնիս վարպետս իւրեանց, որք հանգուցեալ են. եւ ջանալ զներողութիւնս վասն մեղաց նոցա: այլեւ՝ վասն աճման Եղբայրակցութեանն, կենդանութեան, սիրոյ, միաբանութեան, հնազանդութեան, անփորձութեան, պահպանութեան, հնաղանդութեան, պարկեշտութեան, արդարութեան եւ այլոց առաքինութեանց սակս հայցել առ Աստուած եւ պաղատիլ: Բայց քանզի՝ վասն զբաղմանց կենցաղականաց աշխարհիս այսորիկ, ոչ կարեն լցուցանել եւ հաստուցանել միմեանց փոխարինապէս՝ զվերոյ յիշեցեալ եղբայրական պարտաւորութիւնն եւ հետեւապէս՝ պարտական գտանին, վասն որոյ՝ առ ի լնուլ զպէտս հարկաւորութեանն այսորիկ, հաստատեմք զկանոնս զայս զի Եղբայրակցութիւնս այս, պարտիցի հանել յարդեանց եւ ի յեկամտէ Եղբայրակցացն իւրոց զմասն եւ զբաժին միոյ Պատարագի յամենայն շաբաթւոջ, յաւուր չորեքշաբթի, որ է օր Տիրամօր կուսին, զտարին ի բուն: Որպէս զի ի մէջ ահեղ ատենին սեղանոյն Աստուծոյ ի մէջ Պատարագին յիշատակեսցին ա̃մքն վարպետքն, թէ մեռեալքն եւ թէ կենդանիքն: Եւ այս է այն ընտիր հոգեւոր զենումն գառին Քրիստոսի, որ ի մէջ սրբոյ Պատարագին իբրեւ ի մէջ ոսկիակազմ

բուրվառի է անհունապէս եւ անթուելաբար օգտակարագոյն իւղ անուշ եւ խունկ ընդունելի։ որոյ՝ բուրմամբն հաշտի ընդ մեզ Աստուած, ցնծան դասք հրեշտակաց, հրճուին արդարքն, քաւին մեղաւորքն, պարտեաց մուրհակքն պատառին, աճի սէրն, մեծանայ հաւատն, հաստատի յոյսն, յորդորի բարեգործութիւնն, սուգքն մխիթարին եւ այլք անթիւք օգտութիւնք եւ շահաւետութիւնք առբերին, թէ հոգւոյ եւ թէ մարմնոյ։

Ը. Ութերորդ. Առ ի օր ըստ օրէ աճեցուցանել զսէր եւ զջերմեռանդութիւնն Եղբայրակցացն՝ դէպ յայս փրկարար սրբազնութիւն Պատարագին, եւ եւս՝ զի սա արդիւնաւորագոյնապէս եւ օգտակարագունապէս մատուցանիցի ի Քահանայէ վասն նոցա հաստատեմք զկանոնս զայս. Զի ամքն Եղբայրակիցք ի տան հանդիպօղքն, գտանիցին յեկեղեցւոջն ներկայք նուիրման Պատարագին իւրեանց եւ ի ժամու հայր մերին երկուք ի նոցունց ունելով ի ձեռին զլապտերս լուցեալս, ծնկադրիցեն յատենի սեղանոյն մինչեւ ի լցաքն։ այսու խորհրդով, զի նշանակիցեն զԵղբայրակցութեանն իւրեանց լապտերս հոգեւորս, սիրոյ, յուսոյ, հաւատոյ եւ այլոց բարեգործութեանցն, ոչ գոլ շիջեալս այլ միշտ եւ յամենայն ժամու վառեալս մինչեւ ցայժմ եւ յայսմ հետէ վառելիս եւս՝ աննուազելաբար՝ մինչեւ ի ժամանակ մտանելոյ ընդ իմաստուն կուսանսն ի հարսանիս անմահի վերնոյն փեսայի, խնդալ եւ հրճուիլ ի յառագաստ անդրանկաց գրելոց յերկինս։

Թ. Իններորդ. Որովհետեւ սարօստայն ի վերայ բարեպաշտութեան Եղբայրակցացն՝ պարտի հսկել եւ ճգնիլ որպէս հայր գթած ի վերայ սիրելի զաւակաց իւրոց եւ լինել նոցա նախ օրինակաւ եւ ապա բանիւ յորդորիչ առ ի աճումն բարեպաշտութեանն իւրեանց: Վասն այսորիկ՝ հաստատեմք զկանոնս զայս, զի յամէն աւուր Կիրակէի եւ կամ այլ ինչ հռչակաւոր յաւուր, թէ սարօստայն եւ թէ վարպետքն, որք ի տան գտանիցին, իցեն ներկայք յեկեղեցւոյն ի լսել ամենասրբոյ խորհրդոյն Պատարագի եւ. եթէ հնարին ինչ լինիցի, յորդորել զնոսա ի մասնաւորակցութիւն մարմնոյ եւ արեան փրկչին, միջնորդութեամբ խոստովանութեան եւ ապաշխարութեան, գործելով զփրկութիւն հոգւոց իւրեանց, մինչդեռ ժամանակս ի ձեռս ունին եւ այնպէս գտանելով զարդիւնս, թէ առաջի Աստուծոյ եւ թէ առաջի մարդկան:

Ժ. Տասներորդ. Որովհետեւ ընդ նախահարցն մերոց Ադամայ եւ Եւայի ամենքն ճաշակեցաք զմահ եւ յանդուստ զպարտաւորութիւն մահու, մահուամբ վճարել յանձն առաք: Վասն այսորիկ՝ հանդիպելով մահ վարպետի ուրուք, յայսմանէ Եղբայրակցութենէս, արդարեւ՝ արժանի է, զի առաւել եւս՝ եղբայրակիցքն՝ ցուցանիցեն յայնժամ զեղբայրագութ ողորմածութիւնն իւրեանց զառ ընդ միմեանս առաքինութիւնս: Ուստի՝ հաստատեմք զկանոնս զայս՝ զի ի պատահել մահու ուրուք Եղբայրակցի իւրեանց, ամենքն վարպետք, Սարօս-

տային եւ վաղահիւն հանդերձ, հանդիպեցին մահուն հանգուցելոյն եւ աղօթիւք իւրեանց ջանալ նմա ի վերուստ զներողութիւն մեղաց, եւ զհանգիստ յաւիտենական։ Եւ զայս այնչափ առաւել իւրաքանչիւր ոք մեծաւ ջերմեռանդութեամբ եւ սիրով կատարել պարտ է, որչափ առաւել եւս՝ եւ ինքն կարօտագոյն գտանելի լինելոց է ի ժամանակի մահու իւրոյ։

Եւ այս չափս իսկզբան Նորատնկի բուսոյ աւանդասկսմանս եւ ըստ տիոյ հրաբորբոք պատերազմական ժամանակիս, այլ եւս՝ ըստ ալէկոծութեան կարկտախառնից հողմոց բնութեան այժմակայից մարդկանց, բաւականացին վերագրեալ տասնպատիկ ցանկ կանոնացս՝ կասկածականաց եւ նախախնամականաց առ ի աճումն եւ ի պտղաբերութիւն տնկոյս, թողլով զապագայս, ապագայից պարագայից։ Եւ համահետեւելեաց հանճարեղից վերատեսչաց, առ ի կատարելագունապէս՝ զարդարել, բրել, հերկել եւ առոգել զտունկն մեր ըստ դիպուածոյ ժամանակի իւրեանց։ Ուստի՝ սկսցուք զկանոնս աւանդեցեալս ի հնոց սովորութեանց վասն բարուք եւ պինդ պահելոյ զեղբայրութիւնն եւ կառավարելոյ զեղբայրակիցս ըն՝ միակրօնութեան արհեստին իւրեանց։

Կանոնք վասն բարուք կառավարելոյ զեղբայրակիցս ըն՝ մշտապահ միակրօնութեանն արհեստին իւրեանց. Կանոն Առաջին։„[1] — —

[1] Ցաւալի է որ այս կանոնները կորուած հանուած են մատենին առաջին մասէն։ Կը յուսանք թէ ժամանակն

Կարոլոս Զ. 1706՝ Մայիս 24ին, Լաքսենպուրկի հրամանագրով ամրացուց[1] ընկերութեան կանոնադրութիւնը, զոր հաստատելու համար կայսեր ներկայացուցին Յովհ. Նիկոլ, Խաչիկ Գոսա, Թորոս Պետրոսի եւ Աստուածատուր Մալի՝ Կերլայի կողմանէ. եւ Յակովբ Աբրահամի՝ Կէօրկէնի կողմանէ:

Արտօնագիրը՝ յաջորդ կէտերը կը պարունակէ:

1. Հայաքաղաքի եւ Կէօրկէն Սէնդ-Իմրէի գղտորայծենի եւ սեկ չինող Հայ արուեստաւորներն ամէն տարի՝ որոշեալ օր մը հաւաքուելով՝ ընտրեն իրենց գլխաւոր — եւ փոխանորդ վարպետ մը: Ասոնք, տարի մը կը պարտաւորին ընկերութեան հոգ տանելու: Երբ որ հարկաւոր է՝ հրաւիրանաց տախտակը պտըտցընելով՝ վարպետները ժողովեն:

2. Ընկերութեան վարպետները՝ արհեստի վերաբերեալ դէպքերու մէջ դատաստան կարենան կտրել. իսկ ուրիշ ծանրագոյն բաներու մէջ՝ հրաման ըլլայ խնդիրը քաղաքին խորհըրդանոցին առջեւ հանելու:

3. Եթէ Հայ վարպետ մ'որ ուրիշ տեղ սորված է, այս ընկերութեան մէջ մտնել փափաքի, յառաջ տասուերկու Ֆիորին տայ ու յետոյ ընկերութեան մէջ առնուի:

---

այս երկրորդ մասն ալ տեղէ մը կամ անկիւնէ մ'երեւան պիտի հանէ:

[1] Ասոր մէջ Հայ խաղախորդները. Armeni artis sui opificii, tingendarum et elaborandarum alutarum crispatarum, vulgo kordovány et aliis vilioris sortis szattyán dictarum magistri կ'անուանուին:

4. Ընկերութեան մէջ չառնուի այնպիսին, որ երեք տարի իբրեւ աշակերտ (աշակերտ մտնելը մէկ ֆիորին է) յառաջագոյն արուեստը սորված չէ: Այս ժամանակը պատշաճապէս անցընելէն ետեւ — եթէ օտար է, նախորդ յօդուածին համեմատ 12 ֆիորին վճարելով առնուի. — եթէ վարպետի մ'որդի է, կամ եթէ օտար է, բայց վարպետի մը դուստրը կամ այրին կնութեան առած է, միայն կէսն, այսինքն՝ վեց ֆիորին պարտական ըլլայ ընկերութեան վճարելու: Ընկերութեան մէջ առնըածն՝ եթէ ամուսնացեալ չէ, նայի որ տարին չանցած ամուսնանայ:

5. Եթէ վարպետ մ'երկու որդիէ աւելի ունի, իւր արուեստը սորվելու համար զանոնք իր քովը չպահէ, այլ ուրիշ վարպետի տայ, որ արուեստը սորվին:

6. Որդի չունեցող վարպետը հրաման ունենայ երկու աշակերտ բռնելու: Որդի ունեցողը՝ մէկ աշակերտէ աւելի պահելու հրաման չունի:

7. Թէ որ սատար մը օտար տեղէ գայ՝ միայն այն մարդուն քով կրնայ աշխատիլ, ուր ղինքն ընկերութեան գլխաւորը դրած է:

8. Եթէ ծերագոյն վարպետներն ուզեն այս արուեստին համար՝ իրենց հարկաւոր գործավարներ առնուլ, այն ատեն կրտսերագոյն վարպետները հրաման չունենան անոնցմէ յառաջ առնելու:

9. Եթէ վարպետ կամ սատար, կամ աշակերտ մը այս տեղէն ուրիշ տեղ երթալով՝

ընկերութենէն վկայութեան թուղթ առնուլ չուզէ (զոր ընկերութիւնն անոր տալու պարտական է), երբ յետոյ ետ կը դառնայ, այնպէս նկատուի իբրեւ թէ ընկերութենէն չըլլար:

10. Վարպետ մ'ամենեւին հրաման չունի Մոլտավիայէն ու Պուգովինայէն եւ կամ ուրիշ օտար երկրէ եկած սատարներ կամ աշակերտներ ընդունելու՝ առանց գլխաւորին եւ ամբողջ ընկերութեան գիտութեանը:

11. Այս երկու քաղաքին մէջ ամենեւին վաճառական մը հրաման չունենայ տօնավաճառներէն դուրս կէս մը յարդարուած, ճերմակ եւ կամ բոլորովին յարդարուած գղտորայծենի կամ սեկ ծախելու: Ով որ ասոր դէմ կ'ընէ անով պատժուի, որ կաշիներն իրմէն առնուին: Նմանապէս.

12. Հրաման չունենայ այս երկու քաղաքին մէջ որեւէ վաճառական մարդ, վեց կամ եօթը կտոր գղտորայծենիէ ու սեկէ աւելի չինելու (եւ զասոնք ալ իւր տան գործածութեան համար):

13. Որեւիցէ քաղաք ու գեղն ըլլալու տարեկան կամ շաբաթական տօնավաճառներու առթիւ՝ այս տեղւոյ ընկերութեան արուեստաւորներն ալ այն արտօնութիւններն ունենան, զորոնք ունին ուրիշ արտօնացեալ ընկերութիւններէ եղողները: Այսինքն թէ, ամէն բան՝ ինչ որ իրենց արուեստին կը վերաբերի, ազատութեամբ կարենան գնել: Տօնավաճառի

*հարկն ալ չվճարեն, եթէ ուրիշ ընկերութիւնները չեն վճարեր։*

14. *Եթէ ընկերութենէն արուեստաւոր մը մեռնի՝ ցորչափ ժամանակ որ իւր ամուսինն իր վախճանեալ էրկանն անունը կը կրէ՝ կարենայ արուեստը բանեցընել. եւ ընկերութեան ամէն արտօնութիւններն ու ազատութիւնները վայելել։*

15. *Եթէ ընկերութենէն արուեստաւոր մը՝ եւ կամ անոր գերդաստանէն մէկը մեռնի՝ ընկերութիւնը հոգ տանի, որ անիկայ ըստ պատշաճի թաղուի. եւ ամէն արուեստաւոր, կա՛մ անձամբ եւ կա՛մ փոխանորդ մ'առաջելով անոր թաղման ներկայ ըլլայ։*

16. *Աղքատ վարպետներուն, սատարներուն եւ աշակերտներուն նկատմամբ՝ ընկերութեան գլխաւորը հոգ տանելու եւ ընկերութեան դրամով անոնց պարէն եւ այլ կարեւորները տալու է։*

17. *Եթէ գլխաւորք՝ վարպետները տեղ մը կանչել կամ ժողովել ուզեն եւ անոնցմէ մէկը կա՛մ անձամբ եւ կա՛մ իրեն փոխանորդովը անոր մասնակից չըլլայ, ընկերութեան առաջնորդները պատժեն զիրենք տասուերկու սոլկով։„*

*

*Խաղախորդաց ընկերութիւնը* 1736*ին Կարոլոսէն ուրիշ արտօնութիւն մըն ալ ընդունեցաւ այս լատիներէն տիտղոսով* „Ceha privilegiata cerdonum Armenopolitanum“ (*Արտօնա-*

ցեալ ընկերութիւն խաղախորդաց Հայաքաղաքի):

Այս հայկական արուեստաճիւղը շատ շահաբեր էր: Օտարք այս արուեստին կերպը աղէկ չէին գիտեր: Ոչ ոք կրնար անանկ լաւ ու գեղեցիկ գղտորայծենի ու սեկ չինել, ինչպէս Հայերը:

Ազգայինք այս գաղտնիքը չյայտնեցին երբեք: Մարիամ Թերեզիայի կառավարութեան ատեն՝ 1770ին Յուլ. 24ին յանձնաժողով մը խրկուեցաւ ի Հայաքաղաք, որ Ալեքսիոս Հայդէր արքունական խորհրդականին (consiliarius Aulicus) ստորագրութեամբն յաջորդ գրութիւնը մատոյց Հայաքաղաքի խաղախորդաց ընկերութեանը.

Հայաքաղաքին խաղախորդաց կը հրամայուի, որ գերապատիւ գանձապետէն հոն խրկուած պատգամաւորութեան՝ գրով ծանուցանեն.

1. "Թէ քանի՞ խաղախորդ կայ հոն. ի՞նչ է անոնց անունը. եւ ո՞ր կարգին կը վերաբերին իւրաքանչիւրը. առաջինի՞ն, միջինի՞ն, թէ ստորինին:

2. Ի՞նչ տեսակ նիւթեր կը պահանջուին այծու մորթը խաղախելու համար. եւ ի՞նչ գնով կրնան անոնք գնուիլ:

3. Ուսկի՞ց սովոր են այն խաղախելու կարեւոր նիւթերը գնել, եւ ո՞ւր կը բուսնին: Մեր մեծափառ դշխոյին երկիրներո՞ւն մէջ, թէ Լեհաստան կամ Մոսկուա կամ Տաճկաստան:

4. Ի՞նչ ճամբով եւ ո՞ր ժամանակ սովոր են զանոնք հոգալ:

5․ Ո՞ւր կը գնեն խաղախորդներն՝ իրենց արուեստին այնչափ հարկաւոր այծու մորթերն․ եւ ի՞նչ է անոնց գինը։

6․ Ո՞ւր կը տանին յարդարուած կաշիները․ եւ ի՞նչ գնով կը ծախեն լաւագոյնը, միջինն ու ստորինը։ Մե՞ծ քանակութեամբ կը տանին զանոնք օտար երկիրները․ եւ ո՞ր երկիրները կը տանին սովորաբար։ Նմանապէս՝ ո՞րչափ է քանակութիւնն այն կաշիներուն, զոր օտար երկիր կը տանին։

7․ Ամէն վարպետ առանձի՞նն կը բանի, թէ ուրիշներուն ընկերութեամբ։

8․ Քանի՞ կտոր կրնայ պատրաստել ամբողջ ընկերութիւնն ամէն տարի։

9․ Քանի՞ գոյն կայ․ եւ ո՞ր տեսակ գոյնը կրնայ ամէնէն դիւրաւ պատրաստուիլ։ Նմանապէս ո՞ր գունին պատրաստութեանը մէջ պակասութիւն կայ։

10․ Ո՞ր գունովը կը ծախուի ամէնէն աւելի։

11․ Ի՞նչ բանի կը գործածեն այծու մազը։

12․ Ամէն տեսակ գունին ամէնէն լաւ տեսակէն բերեն ինծի ընկերութեան գլխաւորն եւ ընկերութեան ծերագոյնն երկ՚երկու կտոր եւ ըսեն միանգամայն թէ ինչ է պատճառն որ Դրանսիլուանիոյ սեւը չի կրնար այնպէս լաւ պատրաստուիլ՝ ինչպէս Տաճկաստանինը։

13․ Գրով ծանուցանէ ընկերութիւնը թէ ինչ միջոցներով կարելի է այս արուեստը

բարձրացընել եւ լաւագոյն վիճակի մէջ մուծանել։, Տ. Կ.

Այս հրամանագրին յաջորդ պատասխանը տուաւ ընկերութիւնը։

1. «Մեր աղնուական ընկերութիւնն 96 անդամ ունի. անուններն ալ կը գրենք հոս։ Ասոնց մէջէն հինգն՝ առաջին, տասն'ութն՝ երկրորդ, երեսունուերեքն՝ երրորդ կարգին մէջ կը դասեն իրենք զիրենք. իսկ քառասուն հոգի ուրիշներու հաշուոյն կը բանին։

2. Ճերմակ մորթը պատրաստելու համար պէտք է յարմար լաւ ջուր, մոխիր, կիր, շանփին, սքումբիա, փայտ, առասան։ Կարմիր կաշւոյն պատրաստութեան նիւթերն են՝ որթատնկի եւ վայրի խնձորենւոյ տերեւ, պաղլեղ, առասան, փայտ։ Սեւին պէտք է վերոգրեալներէն զատ koroboj։ Այս նիւթը հանքերէն կ'ելլէ։ Մէկ չափ (Metzen) մոխրին գինը վեց ստակ է. մէկ չափ կիրը՝ 20 ստակ, մէկ չափ շանփին 15 ստակ է, սքումբիային մէկ օխան 16 ստակ, մէկ սայլ փայտը՝ 9 մարիաշ, մէկ տրցակ առասանը 18 ստակ է։

3. Սքումբիան ու պաղլեղը՝ Սիպին ու Պրաշով բնակող յոյն վաճառականները Տաճկաստանէն կը բերեն. մենք իրենցմէ կը գնենք այս նիւթերը։ Սքումբիան քիչ չափով մեր մեծափառ տիկնոջ երկիրներուն մէջ ալ Պանատ ու Նկէր քաղաքը կը բուսնի։ Բայց եղածը հոն կը սպառեն։ Հոն ալ կաշեգործութիւն կ'ընեն։ — Մէկալ նիւթերը հոս կը գնենք։

4. Որթատնկի եւ վայրի խնձորենւոյ տերեւն ամառը կը գնենք գեղացիներէն: Աքում-բիային համար կամ մենք կ'երթանք Սիպին ու Պրաշով եւ կամ յոյն վաճառականները կը բերեն զանոնք մեզի հոս:

5. Այծու մազոտ մորթը Դրանսիլուանիայի ու Հունգարիայի (Պանադ, Մարմորուշ) մէջ կը գնենք: Ամէնէն լաւ նոխազի մորթին կու տանք 7—8 մարիաշ, միջինին՝ 5—6, ստորնագունին՝ չորս մարիաշ: Այծու մորթին կտորը 4—3 մարիաշ է: Կը գնենք՝ Պուգովինայէն Սիպին ու Պրաշով խրկուած ճերմակ (մաշտ, անմազ) մորթեր ալ, որովհետեւ երկիրը բաւական չէ մեր կարօտութիւնը գոհ ընելու: Ասոնց կտորը երկու հունգարական ֆիորին է, երբեմն աւելի աժան:

6. Յարդարուած կաշիները Դրանսիլուանիոյ եւ Հունգարիոյ տօնավաճառները կը տանինք կը ծախենք: Դրանսիլուանիոյ մէջ նոխազի ամէնէն լաւ պատրաստուած կաշւոյն համար կը գտնենք 10—11 մարիաշ, միջինին համար 7—8, իսկ երրորդ կարգինին համար 6 մարիաշ: Մանրները կը ծախենք ինչպէս որ կրնանք: — Դրանսիլուանիոյ մէջ կը ծախուի 30.000, իսկ Հունգարիոյ մէջ իբր 20.000 կտոր: Պուգովինայէն բերուած սպիտակ կաշւոյն համար, զոր մենք կը յարդարենք, կ'ընդունինք ամէնէն լաւագունին համար ութը, միջինին համար՝ եօթը, իսկ երրորդ կարգինին համար՝ հինգ մարիաշ:

7. Մեր ընկերութեանը մէջ կան անկախ տէրեր, որոնք իրենց սեպհական գործարանին մէջ՝ իրենց համար կը բանին։ Սեպհական գործատուն չունեցողներն ուրիշներուն հաշուին կը բանին — սորկով։ Այս արուեստը մէկ հոգի առանձինն չի կրնար վարել։

8. Ամբողջ ընկերութիւնը — եթէ կայ առատ նիւթ գործելու — բոլոր տարին՝ մազոտ մորթէն կրնայ 15.000 կտոր յարդարել։ Պուգովինայէն բերուած սպիտակ մորթէն կրնայ սեւ ներկել 40.000 կտոր, եթէ գնող ըլլայ՝ աւելի ալ։

9. Մենք երեք գունով կաշի կրնանք պատրաստել.սեւ, շիկակարմիր եւ դեղին։ Ամէնէն դիւրինը սեւ ներկելն է. սովորութիւն չունինք բոսորային, վարդագոյն կարմիր եւ կապոյտ կաշի պատրաստելու։

10. Դրանսիլուանիոյ եւ Հունգարիոյ մէջ ամէնէն աւելի կը գնեն կարմիրը։ Անոր համար է որ ամէն մէկ կապոցին մէջ չորս կարմիր ու երկու սեւ կաշի կը դնենք։

11. Այծու մազը բրդագործներուն կը ծախենք։ Ասոնք անկէ թաղէք, պայուսակ, պախուրց եւ այլն կը շինեն։

12. Մեծապատիւ պատգամաւորութեան կը խրկենք՝ մեր յարդարած երեք տեսակ կաշիէն ալ՝ երկու ծեր վարպետի ձեռօք։ Բոսորագոյն եւ կապոյտ գունով սեկ մենք չենք կրնար շինել։

13. Եթէ մեր քաղաքն աւելի ընդարձակ շրջակայ դաշտեր ունենար, կրնայինք մեր արուեստն աւելի յառաջացընել եւ լաւագոյն վիճակի բերել, վասն զի այն ատեն ամէն վարպետ կրնար այծ բուծանել դաշտերուն վրայ։ Ան ալ մեծապէս օգտակար կրնար ըլլալ մեզի՝ եթէ որ Պուգովինայէն ուղղակի մեզի բերէին սպիտակ մորթերը, որովհետեւ այն ժամանակ՝ վաստակը, զոր Սիպինի եւ Պրաշովի վաճառականները կը շահին, մեր գրպանը կը մնար։„

*

Ընմռուաց յիշատակաց արժանի եպիսկոպոսին մահուանէն ետեւ (1715)՝ քաղաքային վարչութիւնը կը քննէր ընկերութեան հաշիւները։ Ընկերութիւնն ունէր իւր յատուկ քահանան։ 1788ին խաղախորդները 50 պատարագ մատուցանել տուին ընկերութեան հանգուցեալ անդամոց համար։ Ամէն տարի ընկերութիւնը Վրզարեան եպիսկոպոսին հոգւոյն համար մոխրոց օրը պատարագ մատուցանել կու տար։ — Խաղախորդք շատ անգամ քաղքին օգնութիւն մատուցին։ Այսպէս 1729ին՝ 84, 1736ին՝ 600, 1742ին՝ 100, 1757ին՝ 310 ֆիորին տուին քաղաքին։ Ընկերութիւնը՝ իւր կարողութեանը համեմատ՝ մայր եկեղեցւոյ շինութեան օգնեց։ 1802ին Վերափոխման խորանը կանգնել տուաւ։

Հանգուցեալ անդամի մը թաղման չգնացողը 50 ստակ, ժողովքին չներկայացողը՝ մէկ ֆիորին տուգանք կը վճարէր։ — Խաչիկ Ջա-

պուլեք՝ ծխելուն համար մէկ ֆիորին, Սիմոն Վոյթ՝ վարդապետի առջեւ ոտք չելլելուն համար՝ մէկ ֆիորին, Պետրոս Բըրինդ՝ որովհետեւ ընկերին գլխէն գդակը վար առաւ, չորս ֆիորին պատիժ վճարեցին:

Ցառաջագոյն չորս գործարանի (բանտուն) մէջ կը բանէին խաղախորդները: Բայց հիմակ ասոնք պարապ կեցած են: Դարուս երկրորդ կիսուն սկիզբները դադրեցուցին Հայք սեկի պատրաստութիւնը. վասն զի ոչ թէ միայն կարմիր կօշկին գործածութիւնը դադրեցաւ, հապա նաեւ ընդհանրապէս այծու կաշիէ պատրաստուած կօշիկ գործածելը շատ ցանցառ ըլլալու սկսաւ:

## 7. Վաճառականաց եղբայրութիւնը:

Ծանօթ է, որ Նորեկ Հայոց մեծագոյն մասը վաճառական էր: — Ասոնք իրենց հաստատուն բնակութիւն կանգնելէն ետեւ՝ անմիջապէս վաճառականաց եղբայրութիւնը հիմնեցին: Իրենց ժողովքներուն արձանագրութիւնը՝ մինչեւ 1801 հայերէն լեզուաւ կ'ըլլար: Ամէնէն հին արձանագրութիւնը 1718էն է: Այս միջոցին ընկերութեան նախագահն էր Բան Ալէքսա՝ Տէր Գրիգորին որդին:

1801ին ժողովոյն արձանագրութիւնն ի մէջ այլոց կ'ըսէ. "Անժխտելի ճշմարտութիւն է, թէ այս հոյակապ քաղաքին մէջ ի սկզբանէ հետէ — ինչպէս արձանագրութիւնները կը վկայեն — առեւտրական ընկերութիւն մը

կազմուած էր՝ Նախագահի եւ որոշեալ թուով վադահներու առաջնորդութեանը տակ։ Մեր հայրերն — առանց զանազանութիւն ընելու — ամէն՝ դուարով, ինչպէս նաեւ վիեննական ապրանքով, արուեստակերտներով ու բնութեան բերքերով առուտուր ընող ազգայիններն ընկերութեան մէջ կ'ընդունէին, եթէ որ ասոնք՝ ներս ընդունուելուն որոշեալ վճարքը (պէրպընցա) հատուցանէին։ — Եկամուտն ընկերութեան պիտոյքները հոգալու կը գործածուէր։ Մնացած դրամն Աստուծոյ մեծագոյն փառաց, հոգեւոր բաներու . . . ։ Ամէն տարի ընդհանուր ժողով մը կը գումարուէր։ Այս ժամանակ կ'ընտրուէին պաշտօնատեարք, եւ կը կատարուէին ընկերութեան մէջ գրուիլները։ Ա՛յնչափ անգամ մասնաժողով կը կազմուէր, որչափ որ հարկաւոր ըլլար։ Մեր նախնիքն՝ ընդունեցան առեւտուր ընելու արտօնութիւն։ 1791ին՝ տէրութեան ժողովոյն կարգերն զմեզ օրինօք՝ երկրին անդրէնածիններուն, երկրին որդիներուն կարգը դասեցին։„

Նախագահն այն վաճառականներէն կ'ընտրուէր, որ հասարակութեան ընտրեալ անդամներն էին։

Մասնաժողովը՝ հասարակօրէն տասը վադահէ կը կազմուէր։ Ասոնցմէ վեցը տուն կը մնար, չորսը՝ վաճառանոցները կ'երթար։ — Ամէն վաճառական իւր յատուկ վրանն ունէր, ոչ թէ միայն Վերլա քաղաքն, այլ նաեւ օտար վաճառանոցները։ Ծերագոյն կամ հնագոյն

անդամը կարգին մէջ նախագոյն էր։ Կարգին վրայ կը հսկէր վաղահը։ Երբ ամէնքն տօնավաճառանոց կը հասնէին, վաղահն անուանց ցանկը ձեռքը կ'առնուր եւ այսպէս կ'ըսէր. “Բ.ը կը սկսի կարգը, որովհետեւ Ա.ը հոս չէ։ Երկրորդ տեղը կը կանգնէ իր վրանը Գ.։ Վաղահը՝ հրամանին անսաստողը պատժելու իրաւունք ունէր՝ որոշելով “Տալ եկեղեցւոյն վեց փունտ մոմ. աղքատաց՝ տասը փիորին։„ Եւ պատիժը կը կատարուէր։ Ընկերութիւնն ունէր իւր գաւառի վաղահներն ալ։ Հասարակօրէն քա՛րտուղարը կ'երթար անոնց եւ կը ծանուցանէր ընտրութիւնն՝ ընկերութեան ներկայ գտնուող անդամներուն առջեւ. անոնց երդում ընել կուտար եւ հրահանգներն ու պարտաւորութիւններն առջեւնին կը կարդար։ Ասոնք կը հաւաքէին գաւառին մէջ՝ ընկերութեան մէջ մտնելու վճարքը, պատիժներուն դրամն եւ այլն ու կուտային ընկերութեան։

Մայր եկեղեցւոյն՝ Ս. Գրիգոր Լուսաւորչի խորանն այս ընկերութիւնը կանգնեց 1799ին։ “Վասն պատուելի պրաստավային բեմին սէպը, որն որ կարվի սուրբ Գրիգոր լուսաւորչու խոստացած է 1500 գլօթ։ Տրվեց գերյարգելուն ձերքը 1799 juuii 6 մինչեւ այսօրվանօրը 650 ըգլօթ։ Ավէշ տըվանք՝ այս վերին տադումին եւ սէսիային 300 գլօթ։„

Այն վաճառականք՝ որ իրենց ժողովները մինչեւ նոյն ատեն եկեղեցւոյն կից եղող մանչ տղոց դպրոցին սրահները կը կատարէին,

1802ին կառավարութենէն խնդրեցին, որ այնուհետեւ իրենց ժողովքը կարենան ընել քաղաքին խորհրդանոցը եւ թէ դուարավաճառներն, որոնք՝ Դեկտեմբ., Յունուար եւ Փետրուար ամիսները քաղաք կը գտնուին, այնուհետեւ ալ կարենան ընկերութեան անդամներն ըլլալ: — Ընկերութիւնն ունէր իւր յատուկ քահանան: Ասիկայ ամէն ամիս պատարագ մը կը մատուցանէր. ամիս մը կենդանի, ամիս մը մեռեալ անդամոց համար: Ամէն անդամ պատարագին ներկայ գտնուելու պարտական էր: Եթէ մէկն առանց բանաւոր պատճառի պատարագի ներկայ չգտնուէր, տուգանք կը վճարէր: Ամսական պատարագներէն զատ՝ ուրիշ առիթներու ալ պատարագ ըսել կու տար ընկերութիւնը: Իւր պատրաստ դրամովն ապրանք կը գնէր իւր անդամներուն անոնց ձեռօք, որոնք Վիեննա ու Բեշթ կ'երթային. ու որոնք իրենց աշխատանքին համար ամէնէն նուազ հարիւրչէքը կ'ուզէին: Այսպէս Յովհաննէս Միրզա 1500 ֆիորինի ապրանք գնեց ընկերութեան 1822ին եւ կառաց դրամովն հանդերձ 38 ֆիորին ընդունեցաւ ընկերութենէն իբրեւ վարձք: Այս գնած ապրանքները իրական դրամով 8% վաստակով կը ծախէր ընկերութիւնը: Բայց ժամանակ ալ կար, որ 12% կը շահէր իւր ծախած ապրանքներէն: — 1824ին՝ Յովսէփ Կաղսագեան, որովհետեւ գէշ կշռեց ծախած ապրանքը, վճռեց ընկերութիւնն, որ վճարէ մէկ — Թէոդորոս Հարակայ՝ յիշոց տալուն համար

չորս ֆիորին, Լատիզլաւոս Ազպէյ՝ կուիւ ընելուն՝ 2 ֆիորին 30 քոնդն։ Գրիգոր Միռոնեան անհնազանդ ըլլալուն համար՝ երեք ժամ փակը նստաւ։ Սողոմոն Մորուշանէն գէշ չափած ապրանքն ընկերութիւնն առաւ ու աղքատաց բաշխեց. բաց ասկէ ֆունտ մը մեղրամոմ տալու հարկադրեցաւ Սողոմոնեան եկեղեցւոյն։ 1826ին փետր. 16ին Գրիգոր Կարապետ եւ Յովսէփ Կամէնցի՝ Ռօտնայի եկեղեցւոյն մէջ ծիծաղեցան։ Երբ դուրս ելան, մէկն այս բանս իրենց երեսը զարկաւ. բայց իրենք լուռ կենալու տեղ, վիճելու սկսան ըսողին հետ։ Այս բանս հոնտեղի ժողո-վըրդապետին ականջը հասաւ, որ զիրենք Հայա-քաղաքի վաճառականաց ընկերութեան ամբաս-տանեց։ Ասիկայ պատիժ դրաւ վրանին. „Վճա-րեն մէյ մէկ ֆունտ մեղրամոմ (Ռօտնայի) եկե-ղեցւոյն ու երկու օր երկաթի զարնուելով զի-նուորական բանտն անցընեն՝ հացով ու ջրով։„ Պատիժը կատարեցին։

Ընկերութիւնը հոգ տարաւ, որ քաղաքէն դուրս գաղթող ազգայինները տարուէ տարի Ս. Գրիգորի օրը տօնախմբեն։ Գլուժի վաճա-ռականները 1823 Յունիս 13ին — թէպէտ Ս. Անտոնի կոչուած տարեկան տօնավաճառն այն օրն ինկաւ, երբ Հայք իրենց պաշտպան Սրբոյն տօնը կը կատարէին, — ո՛չ խանութ բացին, եւ ո՛չ վրան կանգնեցին մինչեւ ժամը եօթնուկէս, հապա եկեղեցի գնացին եւ Ս. Գրիգորի պատուոյն մատուցուած պատարագը լսեցին ու վերջէն մինչեւ ութը՝ աղօթեցին։ —

Զըլահի հայ վաճառականները՝ տեղւոյն լատինածէս հռոմէական եկեղեցւոյն մէջ Ս. Գրիգորի խորան կանգնեցին (1823ին), որուն Հայաքաղաքին Հայերն ալ 25 ֆիորինով օգնեցին:

Հայ վաճառականք իրենց հաշիւները հայերէն կը գրէին: Բայց 1830ի հրամանագրովն այս բանս արգելուեցաւ: Անոր համար քաղաքը կառավարութեան աղերսագիր գրելով խնդրեց որ ներուի իրենց այսուհետեւ ալ հաշուեգըրքերն իրենց մայրենի լեզուաւը շարունակել. վասն զի ո՛չ վաճառականք, ո՛չ սատարք, ո՛չ աշակերտք եւ ո՛չ պարտապանք հայ լեզուէն զատ ուրիշ լեզու գիտեն: Բաց ասկէ՝ այս քաղաքին մէջ առեւտուրն ըստ մեծի մասին Հայոց մէջ կ'ըլլայ: Իրենց դատաստանը հօտեղի առաջին ատենին առջեւը կ'ըլլուի. իսկ խորհրդանոցն ու խորհրդականք հայ լեզուն լաւ կը հասկընան:

1845ին Վիեննա գնացող վաճառականք գեղեցիկ դրօշ մը բերին հետերնին, որ 650 ֆիորինի եկաւ: Աս գումարէն 400 ֆիորինը՝ վաճառականաց ընկերութիւնը տուաւ: "Համոզուած ենք, կ'ըսէ ընկերութիւնը քաղաքին մատուցած աղերսագրին մէջ, թէ քրիստոնէական ջերմեռանդութիւնն — որ վաղեմի ժամանակները մեր քաղաքին մէջ այնչափ կը ծաղկէր, — օգնեց մեր նախնիներուն իրենց առեւտուրին մէջ: Ասկէ դրդեալ՝ որոշեցինք որ հին դրօշին տեղ,. որ գրեթէ հարիւր տարի մը ծառայեց՝ նոր մը շինել տանք: Համոզուած ենք, որ ասոր միջոցաւը չէ թէ միայն ջերմեռանդութիւնը

[illegible] ծոյ։
[illegible] ստեփաննեան Ռօշգայ Սրբա-
[illegible] նութեան Վարդապետ, Վի-
[illegible] դոս Սգանիսլաւօվու, աստա-
[illegible] ցեացս Հայոց Դրանզիլվանիոյ։
[illegible] ետութեան Սրբազան փափին
[illegible] րեքտասաններորդի, յԵպիսկո-
[illegible] անզիլվանիոյ եւ Առաջնորդին
[illegible] օրկէր Գրիգորին, յԱրհիտխա-
[illegible] այոց Դրանզիլվանիոյ եւ առաջին
[illegible] այաքաղաքիս Տեառն Մինասայ Թո-
[illegible] յսերութեան անյաղթելի եւ Քրիս-
[illegible] կայսերն Գարօլոսի Վեցերորդին,
[illegible] ոյ. ի կուպէրնադօրութեան Ուղղա-
[illegible] ն Ջիկխմունտին Գորնիշենց. յԵկե-
[illegible] թեան Աղայ Խաչիկին Յակոբշայենց.
[illegible] օվութեան Աղայ Սողոմոնին Դոտէրին
[illegible] ց. սահմանեցաւ Եղբայրութիւնս։

[illegible] րովհետեւ եկեղեցական Հոգաբարձու-
[illegible] պատկանի զփառըս Աստուծոյ, զպատիւ
[illegible] նորին եւ զվայելչութիւն Սուրբ Եկեղե-
[illegible] ն յառաջարկել. ի մէջ այլոց հոգեւոր
[illegible] ցն, որք զԱստուածային փառաբանութիւն
զՍրբոց բարեխօսութիւն վասն մեր, նաեւ
[illegible] կեղեցեաց պայծառութիւնս մեծապէս բար-
[illegible] ւաճեն, համաթուին եւ Աշխարհականաց
յարգելի Եղբայրութիւնքն, որովք Սուրբ Եկե-
ղեցին հարսն Քրիստոսի, իբր զանազան Քառա-
մանեկօք վայելչացեալ, այնքան գեղեցկագոյն
երեւի, որքան նոցին իսկ Եղբայրութեանցն հաս-

վաճառականաց մէջ պիտի վառի եւ Աստուծոյ փառքը պիտի յառաջացուի, այլ նաեւ Թափօրներու առթիւ ժողովուրդն ալ ջերմեռանդութեամբ պիտի լեցուի:„ Քաղաքը տուաւ առանց ընդդիմութեան՝ խնդրեալ 250 ֆիորինը: — Գեղեցիկ դրօշին նիւթը ծանր դամասկեան մետաքս է: Մէկ երեսին վրայ նկարուած են՝ մէջ տեղը Ս. Գրիգոր Լուսաւորիչ ու չորս ծայրը չորս Աւետարանիչները: Միւս կողմը կեցած է Ս. Վենտելինոս (վաճառականաց պաշտպանը) ու չորս ծայրը՝ Ս. Փլորիանոս Ս. Յովհ. Նեպոմուկ, Ս. Միքայէլ Հրեշտակապետ եւ Աւետումն:

8. Հոգեւոր Եղբայրութիւններ:

Հայոց ջերմեռանդութիւնն ու աստուածպաշտութիւնն առակ եղած է: Հայազգին իր տղուն ամէն բանէ յառաջ աստուածպաշտութիւն կը սորվեցընէ: — Հայոց ջերմեռանդութիւնը շատ յառաջացուցին հոգեւոր ընկերութիւնները: Հոս երեքին կանոնները կը դնեմ միայն, ըստ բնագրին, զորոնք Ստեփ. Ռոշքա, յօրինած ու տուած է, Հայաքաղաքին, ըստ խնդրոյ ժողովրդեան եւ բարեպաշտ կանանց: Աս եղբայրութեանց մէջէն հիմակ միայն Սրբուհւոյն Աննային մնացած է:

Ա.

Եղբայրութիւնս Սրբոց Յովակիմայ եւ Աննայի: Յամի Տեառն 1729. եւ Հայոց ՌՃՀԸ. Ուլիսի Ամսոյ. 15:

Յանուն Աստուծոյ։

Ստեփաննոս Ստեփանեան Ռօշգայ Սրբազանի Աստուածաբանութեան Վարդապետ, Վիգարիոս եւ Բրեբոզիդոս Սդանիսլաւօվու, աստանօր այցարար Եկեղեցեացս Հայոց Դրանզիլվանիոյ։

Ի Հայրապետութեան Սրբազան փափին Պէնէտիքդոսի Երեքտասաններորդի, յԵպիսկոպոսութեան Դրանսիլվանիոյ եւ Առաջնորդին մերոյ Տեառն Զօրկէր Գրիգորին, յԱրհիտիագօնութեան Հայոց Դրանզիլվանիոյ եւ առաջին Բլէպանոսի Հայաքաղաքիս Տեառն Մինասայ Թորոսենց։ Ի կայսերութեան անյաղթելի եւ Քրիստոսապսակ կայսերն Գարօլոսի Վեցերորդին, Տեառն մերոյ. ի կուպէրնադօրութեան Ուղղափառ պարօն Զիկիսմունտին Գոռնիշենց. յԵկեղեցպանութեան Աղայ խաչիկին Ցակոբշայենց. եւ ի պիրօվութեան Աղայ Սողոմոնին Դօտէրին Շըմայենց. սահմանեցաւ Եղբայրութիւնս։

Որովհետեւ եկեղեցական Հոգաբարձութեան պատկանի զփառըս Աստուծոյ, զպատիւ Սրբոց Նորին եւ զվայելչութիւն Սուրբ Եկեղեցեացն յառաջարկել. ի մէջ այլոց հոգեւոր իրացն, որք զԱստուածային փառաբանութիւն եւ զՍրբոց բարեխօսութիւն վասն մեր, նաեւ զԵկեղեցեաց պայծառութիւնսն մեծապէս բարգաւաճեն, համաթուին եւ Աշխարհականաց յարգելի Եղբայրութիւնքն, որովք Սուրբ Եկեղեցին հարսն Քրիստոսի, իբր զանազան քառամանեկօք վայելչացեալ, այնքան գեղեցկագոյն երեւի, որքան նոցին իսկ Եղբայրութեանցն հաս-

տատեալ բարեկարգութեամբն, որբազան հիմնու-
ղութեամբ Պատարագացն եւ հաւատարիմ
կառավարութեամբն գեղազարդեալ պայծա-
ռանայ։ Եւ զի գալով մեր այսր ի տես սիրելի
Ազգականաց եւ բարեկամաց մերոց. եւ ունելով
առ այս եւս զյանձնարարութիւն յԱմենապա-
տիւ կարգապետէն տեղւոյս, բարեպաշտուհիք
եւ ի Քրիստոս սիրելի Տանտիկնայքն Նորաշէն
Հայաքաղաքիս մեծ փափաքանօք խնդրեցին ի
մէնջ ի զԵղբայրութիւնն ընդ անուանադրու-
թեամբ Սրբուհւոյն Աննայի Մօր Ամենօրհնեալ
միշտ Կուսին Մարիամու Աստուածածնին, զոր ի
վաղուց հետէ ունել փափաքէին, սահմանել
եւ կանօնօք հաստատել յանձն առնուաք։
Վասն որոյ մեք ի յաճեցուցանել զջերմեռան-
դութիւն հաւատացեալ ժողովրդեանս այսորիկ
դէպ յերիցս Երանեալ ծնօղսն Ամենասուրբ
Կուսին, Յովակիմ եւ Աննայ, զիջեալք ի բարե-
պաշտ մաղթանս նոցա զԵղբայրութիւնն Սրբու-
հւոյն Աննայի, վերոյգրեալ Տանտիկնայց եւ
Քերց եւ Եղբարց սահմանել, կառուցանել եւ
հաստատել յանձն առաք, որպէս արդէն իսկ
յանձնարարական եւ գօմիսարական Հեղինակու-
թեամբ մերով, զնոյն Եղբայրութիւնն Սրբու-
հւոյն Աննայի ի մեծագոյն փառս Ամենակարօղին
Աստուծոյ եւ ի պատիւ Երանուհւոյ միշտ կուսին
Մարիամու Աստուածածնին որ ի Հայաքաղաքս
է, սահմանեմք, կառուցանեմք եւ հաստատեմք
եւ զի Եղբայրութիւնս այս զամենայն իրաւունս
եւ զազատութիւն որպէս եւ այլք ճշմարիտ եւ

օրինաւոր Եղբայրութիւնք ունին միշտ եւ յամենայն ուրեք ունիցի այսու կոնդակաւս վճռեմք եւ զսա ընդ ստորագրեալ կանոնօքն եւ պարտաւորութեամբքն ստորագրեմք, ըստ պատշաճին զոր յԱռաքելական սուրբ Աթոռոյն Հռոմայ ունիմք: Ցորդորելով ի Քրիստոս զամենայն Քոյրս եւ զեղբայրս մի ըստ միոջէ, զի զպարտաւորութիւնս իւրեանց անխափան կատարեսցեն միշտ, եւ ջերմեռանդք ի բարեգործութիւնս եղիցին. որպէս զի բարեխօսութեամբ Սրբոցն Յովակիմայ եւ Աննայի արժանասցին երկնային Եղբայրակցութեամբն ընդ ամենայն սուրբս ի միասին զուարճանալ: Ամէն:

Կանոնք եւ Պարտաւորութիւնք Եղբայրութեանս Սրբուհւոյն Աննայի:

ա) Հայաքաղքիս Տանտիկնաց Եղբայրութիւնը պի ունենայ իրեն պաշտպան զսուրբ Յովակիմ ու զսուրբ Աննայ, ծընողքը Ամէն օրհնեալ սուրբ Կուսին Մարիամու Աստուածածնայ: Քըրվըտիքը կտօնը Սուրբ Աննային մեծ ջերմեռանդութիւնով ու պայծառութիւնով, Սրբութիւն գնելով, Թափօրներով ու Քարոզով իրենց սընկին խարճովըն պի կատարին: Այս տօնիս ամէն քոյր պի խոստովանի ու պի հաղորդի:

բ) Ամէն քոյր պի ասէ ամէն օր հինկ Հայր մեր ու հինկ Ողջոյն քեզ ի պատիւ հինկ խոցերու Քրիստոսի, աղաչելով զԱստուած, որ բարեխօս ունենալով զսուրբ Յովակիմ ու զսուրբ Աննայ, որ օգնէ այս եղբայրութեանս ու կսուրբ

ուղղափառ հաւատն անհաւատից ու հերետիկոսաց մէջ տարածէ։

գ) Ով որ ուզենայ այս եղբայրութեանս մէջ գըրվելու, յառաջ պի խնդրէ զՔըրվըտիքը, որ զինք ընդունին. յետոյ պի խոստանայ զիրեն տարեկան հախը ամէն տարի տալու, ինչ որ իրեն կամքն ըլլայ։ Ու զայս տարեկան հախը պի գրին իրենց Գրքին մէջ կարգով, ինչպէս որ այն գիրքն կու ցըցնու։

դ) Այն օրն, որ ուզենայ գրվէլու, պիտոր յառաջ խոստովանի ու հաղորդըվի, հապա թէ ինքն ու մէկ քանի քոյր պի խնդրին զիրենց Պատուելի գաբէլլանը, որ ինքն իրեն ձեռօքն գրէ զնա Եղբայրութեան կոնտակին մէջ սուրբ Աննայի բեմին վրայ. Ու գրված քոյրը հետ մէկալ քըրվըտոցը չոքման պի ասէ հինկ Հայր մեր ու հինկ Ողջոյն քեզ ի պատիւ սուրբ Յովակիմայ ու սուրբ Աննայի. ու Տէր Գաբէլլանին հետ պի ասէ զսուրբ Աննայի աղօթքը՝ որն որ այս կոնդակին վերջը գրած է։

ե) Այս Եղբայրութեան քըրվըտիքը պի ունենան իրենց ութը մեծաւոր։ Առաջին մեծաւորին անունը պիլայ Աւագ քոյր. երկուսումինը պիլայ Գանձապահ. մէկալ մեծաւորաց անունը պիլայ խորհրդակից։ Ամէն սէսիայի մէջ այս վեց խորհրդակիցը պիտոր գտվին. ու Աւագ քըրոջ ու Գանձապահին էտեւանց պի նստին կարգով. ինչպէս որ գրվիլին այս եղբայրութեան կոնտակին մէջ։

դ) Գանձապահը պի ունենայ մէկ խումպարա մը կուպղակով, զայս խումպարան ամէն իրեքշաբթի սուրբ Պատարագին ատենը պիտայ գանձապահը մէկ քրոջ ձեռքը, որ միայն տանտիկնացը մէջ քալցընու, որ մէջն ողորմութիւն ձըգին իրենց կամացը գօրայ։ Ու ինչ որ քաղվի նայ քըրվըտիքը պի խարձին իրենց բեմին, մոմի եւ օզկայ բանի վրայ։

ե) Զայս ութը մեծաւորաքը պի ընտրին ամէն տարի իրեք օր յառաջ քան զտօնը սուրբ Աննային, Ցարգելի Տէր Աւագէրիցուն տունը. ու իրեն դիմաց յառաջ անցած տարվեն Մեծաւորաքը զիրենց Մեծաւորութեան տարեկան սէպն լման պիտան ու զՍնտուկն ալ իրեն աղէկովն ու գըքերովն յետ պիտան. հապա թէ Քըրվըտիքը պի ընտրին իրենց նոր մեծաւորաք վօղումներով։ Ով որ ալ շատ վօղում ունենայ նա, Աւագ քոյր պիլայ։ Աւագ քրոջ ետեւանց այլվի որն որ ալ շատ վօղումն ունենայ նա, գանձապահ պիլայ։ Մէկալ մեծաւորաքն ալ վօղումներուն գօրայ խորհրդակից պիլան։ Թէ որ քըտվըտիքն անցած տարվեն Մեծաւորացը հաւնին, այլվի զիրենք պի հաստատին։ Զընտրութիւնը գըքին մէջ պի գրին. ու զստումման ըսդկինը, զորն որ նոր մեծաւորացը ձեռքը կուտան, պի յայտնին։ Տէր աւագէրեցը իրեն ձեռօքն պի հաստատէ զընտրութիւնը ու պի գրէ այն գըքին մէջ այսպէս. Զայս վերոյ գրեալ ընտրութիւնն, որովհետեւ առաջի իմ օրինաւորապէս եղեւ, հաստատեմ. ի Հայաքա-

ղաքս. Թուլին Ա.Ն. եւ այլն: Ես Տէր Ա.Ն. եւ այլն:

ը) Պաշխայ պի ընտրին չորս բարեպաշտ քոյր. որոնք Հիւանդ Քըրվըտոց Հոգս տանին. ինչպէս որ ալ վայր գրած է:

թ) Եղբայրութեան Սընտուկը պիլայ Աւագ քրոջը մօտ. երկու բալինքի տակ, գոցով ու կուպղաքով: Գոցին բալինքն պիլայ Գանձապահին մօտ ու կուպղաքին բալինքն պիլայ առաջին խորհրդակցին մօտ: Այս սընկին մէջ պի պահին վայս կոնտակըս. զորն որ ամիսը մէկ անգամ պի տան կարդալու որ գիտենան Քըրվըտիքն ու Աղբըրտիքն զիրենց պարտաւորութիւնը:

ժ) Պաշխայ պի ունենան այս Սընկին մէջ հինկ Գիրք: Մէկին մէջ պի գրին զՔըրվըտաց ու զաղբըրտաց անըներն ու զաւելի անըներն: Երկուսում գըքին մէջ պի գրին զՊատարագնուն փունտացիաներն ու զկարգաւորութիւն պատարագնուն: Իրեքումին մէջ զընտրութիւնը ու զգրակվաներն պի գրին: Չորսումին մէջ զկելուրն եւ զխարճն: Հինկումին մէջ զտարեկան հախն:

ժա) Երբոր բանան զսնտուկն, ամէնքը ոտից վրայ մէկ Ողջոյն քեզ պի ասին. ու երբ փակին, Հայր մեր ու մէկ Ողջոյն քեզ պի ասին մեռած Քըրվըտոց հոգուն:

ժբ) Սընկին ըսգակն մարդու ալ չիպի տան առանց գրակվանի: Գրակվանը ոսկի, արծաթ մագրիտ ու ակնեղէն ըլլայ. ու երկու տակ աժէնայ զտված ըստակը: Պարապ թղթի վրայ

հէչ չի տան։ Հարուրին շահ միայն վեց պի առնուն։

ծգ) Թէօր գրակվանին տէրն տարեն վրայ զիրեն առած սդըկին շահը չիտայ. կամ չի կարնայ զգրակվանը հանէլու, ան ատենը յառաջ իրեք անգամ իմաց պանին իրեն ու հապա թէ պի խնդրին զաղբրտիքը, որոնք այս Եղբայրութեանը մէջ գրված ին, որ զգրակվանը գին պի կտրին ու դաքսային գօրայ պի ծախին զգըլուխն ու եւ զշահը սնտուկն պի դնին. ու ինչօր աւելնայ, գրակվանին տիրոջը պիտան։

ծդ) Ասոր համար պէտք է, որ մէկ քանի խելօք եւ Աստուածավախ տանուտէր եղբայր ունենան այս Եղբայրութեանը մէջ, որ իրենք զգրակվանուն սէպն առնուն ու զհօգսը քաշըլնուն։

ծե) Մեծաւորաքը իքմն յիշատակ եկեղեցւոյ որ ուզենան անելու, առանց Քըրվըտոց խըըէրին չիպի անին։ Զսընկին ստակն միայն վասն բարեպաշտ գործոց ու ողորմութեան պի խարճին, ինչպէս որ ալ վար գրած է։

Պարտաւորութիւնք եւ գործք ողորմութեան Եղբայրութեանս այսորիկ։

ա) Քըրվըտիքն պարտականին զիրենց բեմը սուրբ Յովակիմայ եւ զսուրբ Աննայի, զորն որ Աւետման սուրբ Աստուածածնայ եկեղեցին ունին յիստակ պահելու. ու ինչ որ պէտք է այս բեմիս թէ զարդարանք, թէ մոմեղէն, մէնը հոգալու։ Զտօնը սուրբ Աննայինը, ինչպէս որ ալ վեր առաջին բունդդին մէջ գրած է, իրենց խարճօվն

կատարելու: Սուրբ Աննայի տօնին ձայնաւոր Պատարագին մէկ զլօթ պիտան:

բ) Պի ունենան մէկ տարեկան Գաբէլլան քահանայ, զորն որ իրենց Տէր Աւագերեցն տայ: Տէր Գաբէլլանը պարտական է յամէն երեքշաբթի սուրբ Աննայի բեմն տարին յիսուն պատարագ ասելու. մէկ իրեքշաբթին վասն կենդանեաց ու մէկալ իրեքշաբթին վասն ննջեցելոց այս Եղբայրութեանը, ու Տէր Գաբէլլանին ամէն տարի պիտան իե նէմեցի զլօդ: Երբօր Աստուած տայ որ իրենց սընտուկը ալ շատ ստակ ունէնայ, ան ատենը պիտան Տէր Գաբէլլանին յիսուն զլօդ որ տարին հարուր պատարագ ասէ սուրբ Աննայի բեմը, յամէն իրեքշաբթի յիսուն պատարագ վասն կենդանեաց եւ յամէն Ուրբաթ յիսուն պատարագ վասն ննջեցելոց քըրօվըտացն:

գ) Դարձեալ՝ Տէր Գաբէլլանը տարին չորս ձայնաւոր պատարագ պի ունենայ սուրբ Աննայի բեմը, Մարտի, Յունիսի, Սեպտեմբերի ու Դեկտեմբերի ամսուն վասն մեռած Քըրօվըտաց ու աղքըրտացը հոգուն: Այս չորս Պատարագնուն ատենը պի դրվի մեծ բեմին դիմաց պարապ գերեզման ու գերեզմանին վրայ խաչ ու բոլորը պի վառին վեց կերոն ճիրախգալու վրայ. զոր կերոններն Քըրօվըտիքն պի հոգան. Տէր Գաբէլլանը Հայր մերին դիմաց պի դառնայ դէպ ի ժողովուրդը. յառաջ կարճ խրատ պի տայ վասն օգնելոյ ննջեցելոց ու յետոյ պի կարդայ սեւ կողով գրքէն զմեռած Քըրօվըտաց ու Աղքըրտաց անըներն. ու ամէնքըն ամէն անընի էտեւ

պի ասին. Աստուած ողորմի Հոգուն։ Զայս սեւ կողով գիրքը Տէր Գաբէլլանը իրեն քով պի ունենայ, որ երբոր մէկնիոր քոյրը կամ Աղբարը մեռնի, նայ մէկու մը զիրեն անունը մէջը գրէ։ Այս չորս ձայնաւոր Պատարագին սէպն պիտան Քըրվըտիքն տարին չորս նէմէցի զլօդ Տէր Գաբէլլանին ու տիրացուին, որ սպասաւորութիւն կանէ, երկուսական շիշտակ մէկ Պատարագին։

դ) Պաշխայ Տիրացուին, որ զաղքատ մարդիկաց տըղայքը կու սորվեցնու կարդալու, պիտան յամէն տարի վեց նէմէցի զլօդ։

ե) Քըրվըտիքն, որ կամ կենդանութեան ժամանակն, կամ մահուան էտեւանց մէմէկի վրայ զՔրիստոնէական սէրն կարնան ցըցնելու, անոր համար այս չորս ընտրած Քըրօջը մէջէն երկուս, որոնք ալ վեր, ութնում բունքդին մէջ գրած ին, երբոր մէկնըվոր Քոյրը հիւանդանայ ու աղքատութեան համար անճարակ մնայ, տես պի երթան հիւանդին ու պի հոգան, որ իրենց եղբայրութեան սընկէն հիւանդին ողորմութիւն տան. ու դեղըանք ալ պի հոգան նորա առողջութեան սէպն։ Երբոր ծանրանայ հիւանդը, պի խնդրին Քահանայ որ խոստովանի ու հաղորդըվի. ու երբոր Քոյրը մեռնի նա Քըրվըտիքըն իրեն թաղմանը պիտոր գտվին ու զիրենց առաջին խոստովանութիւնը ու հաղորդութիւնը մեռածին հոգուն համար Աստուծոյ պի մատուցանին։ Թէօր մեռած Քոյրն այնպէս աղքատ է որ չիկենայ ուսկից զինքն թաղելու, Եղբայրու-

թեան սրնկէն պի հոգան զնորա թաղումն ու
Պատարագի ալ պիտան։

դ) Զատկին ու Քրիստոսի ծննդեանը դի-
մաց որբովայրի ու անճար կընտոց Եղբայրու-
թեան սրնկէն ողորմութիւն պիտան։

ե) Ամենապատիւ Տէր Օգսէնտիոս Եպիս-
կոպոսին հոգուն համար, որն որ այս Հայա-
քաղքիս շինմանը ու ժողովրդեան հոգեւոր
աղէկին պատճառ էղիլէ. պիտան ամէն տարի
երկու Պատարագի։

Զայս ուրեմն Եղբայրութիւնն Սրբուհւոյն
Աննայի մօր Երանուհւոյ միշտ կուսին Մարիա-
մայ Աստուածածնին, որ յԵկեղեցւոջն Աւետ-
ման Նորին սուրբ Աստուածածնին Հայաքաղաքիս,
ի Հայրապետութեան Սրբազան փափին Տեառն
Պէնէտիքդոսի Երեքտասաներորդին, յամի Հին-
գերորդին, եւ յԵպիսկոպոսութեան Դրանզիլ-
վանիոյ Ամենապատիւ Տեառն Զօրկէր Գրիգորին
յառաջին ամի, սահմանեցաւ եւ հաստատեցաւ
մերով այցարարական Հեղինակութեամբն յա-
մենայն, եւ յիւրաքանչիւր վերոյգրեալ կէտս
կանոնացն եւ պարտաւորութեանցն ըստ Նոցին
զօրութեանն պատճէնին եւ իմացողութեանն
հաստատեմք, եւ ստուգեցուցանեմք ի ձեռն
կոնդակիս այսորիկ։ Որոց վասն մեծագոյն ամրու-
թեան եւ հաստատութեանն զկոնտակս զայս
յատուկ ձեռամբ մերով ստորագրեցաք եւ
կնքով ամրացուցանել արարաք։ Ի Հայաքաղաքս
կէռլայու. Ցամի Տեառն Հազարերորդի Եօթն
հարիւրերորդի Քսանեւիններորդի։ Իսկ Հայոց

թուին Հազարերորդի հարիւրերորդի: Եօթանասուն եւ ութերորդ: Ուլիսի ամսոյ յաւուր Հնգետասաներորդի:

Տէր Ստեփաննոս Ստեփանեան Ռօշքա
Սր. Ա. Վարդապետ եւ Եկեղեցեացս Հայոց
Գրանսիլվանիոյ Այցարար. յ. ձ. Տ. Կ.

Տէր Յօհաննէս Միքլոսը Յօհաննեան
գեր. Վարդապետին Այցարարութեան
Նօդար. Յ. Զ.

Բ.

Եղբայրութիւն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին. Յամի Տեառն 1729 եւ Հայոց ռճհը. Ուլիսի ամսոյ 26:

Յանուն Աստուծոյ:

Ստեփաննոս Ստեփանեան Ռօշքայ Սրբազան Աստուածաբանութեան վարդապետ. վիգարիոս եւ բրէբոզիդոս Սդանիսլաւովու աստանօր Այցարար Եկեղեցեաց Հայոց Գրանզիլվանիոյ:

Ի յերջանիկ Հայրապետութեան Սրբազան փափին Տեառն մերոյ Պէնէտիքդոսի երեքտասաններորդի, յեպիսկոպոսութեան Գրանզիլվանիոյ եւ Առաջնորդին մերոյ Տեառն Ջօրկէր Գրիգորին, յԱրհիտիագօնութեան Հայոց Գրանսիլվանիոյ եւ առաջին բլէպանոսի Հայաքաղաքիս Տեառն Մինասայ Թորոսեանց. ի կայսերութեան անյաղթելի եւ Քրիստոսապսակ կայսերն Գարօլոսի Վեցերորդին ամենագթած Տեառն մերոյ. ի կուպէրնադօրութեան ուղղափառ Ջիկիղ-

մունտին գործիչենց, յԵկեղեցպանութեան Աղայ խաչիկին Ցակոբշայենց եւ ի Պիրօվութեան Աղայ Սողոմոնին Դոտէրին Շիմայենց, սահմանեցաւ Եղբայրութիւնս այս:

Զոր ի մէնջ այցարարական պաշտօնն պահանջէ, զայնպիսի ջան յանձն կալաք, զի որքան Աստուծոյ օգնութեամբն լինել կարէ, ըստ Թրիտէնդինոյ սուրբ ժողովոյն, զփառս Աստուծոյ եւ զնորին զսրբոց պատիւն, նաեւ զԵկեղեցեաց պայծառութիւնն յառաջարկել կարողասցուք: Եւ քանզի ի մէջ այլոց հոգեւոր իրացն, որք առ այս պատշաճին եւ Աշխարհականաց յարգելի Եղբայրութիւնքն համաթուին, որովք փառաբանութիւնն Աստուծոյ, մեծարանքն սրբոց հաչակաւորագոյնս առաւելանան եւ սուրբ Եկեղեցին նոցին հաստատեալ բարեկարգութեամբն, սրբազան Պատարագաց հիմնողութեամբքն եւ հաւատարիմ կառավարութեամբն. որպէս մայր որդւովք բերկրեալ բարգաւաճեալ պայծառանայ. եւ գոլով մեք աստէն ի տես սիրելի ազգականաց եւ բարեկամաց մերոց. եւ ունելով չյանձնարարութիւն Աստուածասէր եւ սիրելի որդիքն մեր ի Քրիստոս նորաշէն Հայաքաղաքիս, մեծաւ ջերմեռանդութեամբ խընդրեցին ի մէնջ զԵղբայրութիւնն ընդ անուանակոչութեամբ եւ պաշտպանութեամբ մեծի եւ Սուրբոյ Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին, զոր ի վաղուց հետէ ունիլ փափաքէին, սահմանել եւ կանոնօք հաստատել յանձն առնուաք: Վասն այսորիկ ի յաճեցուցանել զջերմեռանդութիւն

Քրիստոսի հաւատացեալ ժողովրդեանս այսորիկ դէպ յԱմենասուրբ Հայրն եւ լուսաւորիչն մեր կատարելով զբարեպաշտ խնդրուածս նոցա. զնոյն Եղբայրութիւնն սահմանել, հիմնել, կառուցանել եւ կանոնօք հաստատել յանձն առաք. որպէս արդէն իսկ յանձնարարական հեղինակութեամբ մերով զնոյն Եղբայրութիւնն Սրբոյն Գրիգորի Հօր եւ Լուսաւորչին մերոյ յԵկեղեցւոջս Աւետման Սուրբ Աստուածածնին որ ի Հայաքաղաքս է եւ յեկեղեցւոջն Ամենասուրբ Երրորդութեան, զոր շինելոց է ժողովուրդն ի Հայաքաղաքիս յայսմիկ, սահմանեմք, հիմնեմք, կառուցանեմք եւ հաստատեմք ի փառս եւ ի գովեստ ամենակարողին Աստուծոյ եւ ի պատիւ Երիցս երանուհւոյ միշտ կուսին Մարիամայ Աստուածածնին եւ նոյն Հօր մերոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին: Եւ այսու կոնդակաւս վճռեմք զի Եղբայրութիւնս այս իբրեւ զճշմարիտ եւ զօրինաւոր Եղբայրութիւն զամենայն իրաւունս եւ զազատութիւնս որպէս եւ այլք ճշմարիտ եւ .օրինաւոր Եղբայրութիւնք ունին եւ վայելեն միշտ եւ յամենայն տեղիս ունիցի եւ վայելեսցէ. սդորադրելով զսա ընդ ստորագրեալ կանոնօքն եւ Պարտաւորութեամբքն ըստ պատշաճին զոր ի յԱռաքելական սուրբ Աթոռոյն ունին Եղբայրութիւնք մեր Հայոց ի Լեհաստան, զորս աշխարհական բարբառով ի հասկացումն ամենեցուն գրել հրամայեցաք: Այլեւ յորդորեմք ի Քրիստոս զամենայն եղբարս մի ըստ միոջէ, զի ի պատիւ այսքան մեծի եւ սուրբ

Հօր մերոյ, որոյ քրտնաջան եւ մարտիրոսական արդեամբքն բովանդակ ազգս Հայոց ի լոյս Աստուածգիտութեան ածաւ. նաեւ ի շահաւէտութիւն հոգւոց իւրեանց եւ ի Քրիստոս հանգուցեալ ննջեցելոցն, զպարտաւորութիւնս իւրեանց անխափան կատարեսցեն, ժիրք եւ ջերմեռանդք եւ յաճախք ի բարեգործութիւնս եղիցին, որպէս զի յետոյ զբարեպաշտ աշխատանաց իւրեանց վարձս ընդունիլ եւ ընդ սուրբ Հօր մերում իբրեւ զհարազատ որդիք զարքայութիւնն երկնից ժառանգել արժանասցին։ Ամէն։

Կանոնք եւ Պարտաւորութիւնք Եղբայրութեան Սրբոյն Գրիգորի մեծի Հայրապետին, Պաշտպանին եւ Լուսաւորչին ամենայն Հայոց։

ա) Այս Հայաքաղքիս Տանուտիրաց Եղբայրութիւնը պիտի ունենայ իրեն պաշտպան զմեր սուրբ Հայրը, զԳրիգոր Լուսաւորիչն։ Եղբայրքը զտօնը գիւտ նշխարաց սուրբ Լուսաւորչին մեծ պայծառութենով եւ ջերմեռանդութենով պիտի կատարեն. ինչպէս որ ալ վար գրած է պարտաւորութեանը մէջ։ Այս տօնիս ամէն Եղբայր պիտի խոստովանի ու պիտի հաղորդըւի, որ զներողութիւնը այս տօնիս, զորն որ այս Եկեղեցիս Աւետման սուրբ Աստուածածնայ յաւիտենական ունի, կարենայ ընդունելոյ։ Որ եղբայրը այս տօնիս տունը չի գտւի, պարտական է օզկայ ալ մօտիկ տօնի խոստովանելու ու հաղորդըւելու։

բ) Ամէն Եղբայր պիտի ասէ ամէն օր հինգ Հայր մեր ու հինգ Ողջոյն քեզ ի յիշատակ

հինկ խոցերուն Քրիստոսի Տեառն մերոյ, աղաչելով զԱստուած, ու բարեխօս ունելով զՍուրբ Լուսաւորիչն մեր, որ այս Եղբայրութեանս օգնէ ու զսուրբ ուղղափառ հաւատն անհաւատից ու հերետիկոսաց մէջ տարածէ։

գ) Ով որ ուզենայ այս Եղբայրութեանս մէջ գրվելու, յառաջ պի խնդրէ զմէկ Եղբայր մը, որ զինք ապըսբըրէ եղբայրութեան մեծաւորացը։ Երբոր ընդունին զինքը, պի տայ սընկին գրելչէք ինչ որ իւր կամքն ըլայ. յետոյ պի խոստանայ զիրեն տարեկան հախը ամէն տարի սընկին տալու. ու ինչ որ իրեն բարի կամօքն խոստանայ տալու, Եղբայրութեան Նօթարիուշն պի գրէ կարգով այն գրքին մէջ՝ ուրուխ օր զտարեկան հախը կու գրին։

դ) Այն օրն որ ուզենայ գրվելու, պիտոր յառաջ խոստովանի ու հաղորդըլվի. հապա թէ Բրօվիզօրներն պարտականին խնդրելու զԵղբայրութեան Տէր Գաբէլլանը, որ ինքն իրեն ձեռօքը գրէ զնա Եղբայրութեան կոնտակին մէջ սուրբ Գրիգորի Լուսաւորչին բեմին վրայ ու Տէր Գաբէլլանը պի գրէ. ու նոր գրված Եղբայրը հետ Բրօվիզօրնուն չոքման պի ասէ հինկ Հայր մեր ու հինկ Ողջոյն քեզ ի պատիւ սուրբ Լուսաւորչին։ Յետոյ Տէր Գաբէլլանին հետ պի ասէ զաղօթքը առ Սուրբ Լուսաւորիչն մեր, որն որ այն Կոնտակին վերջը գրած է։

ե) Ամէն Եղբայր պարտական է չորս շաբաթը մէկ անգամ կամ ինչ խատար պէտք

ըլայ՝ Մէսիան գալու ու հոգալու հետ Եղբարցը ինչոր պէտք ըլայ Եղբայրութեան Մընկին։

դ) Այս Եղբայրութիւնը պի ունենայ վեց մեծաւոր։ Ալ մեծին անունը պիլայ Տիրէքդօր. մէկալնոնցը Բրօվիզոր։ Զայս վեց մեծաւորաքը պի ընտրին յամէն տարի իրեք օր յառաջ քան զտօնը Գիւտ Նշխարաց սուրբ Լուսաւորչին։ Տիրէքդօրը մէկ օրով յառաջ քան զընտրութիւնը իմաց պի տայ Եղբարցը, որ ընտրութեան օրը ամէնքը գան յԵկեղեցին ու զուխտական Պատարագն լսին զորն որ իրենց Տէր Գաբէլլանը Սուրբ Լուսաւորչին բեմը պի ասէ զՀոգւոյն Սրբոյ։ Յետոյ պի քաղվին Տիրէքդօրին տունը ու յառաջ անցած տարվեն Մեծաւորաքը զիրենց մեծաւորութեան տարեկան սէպն լըման պի տան Տէր Աւագերիցուն գիմաց ու եղբարցը. ու զՄընտուկն ալ իրեն աղէկօվը ու գրքերօվը յետ պիտան. հապա թէ Եղբարքը պի ընտրին իրենց Նոր Մեծաւորաք վօղումներով. ու ո՛ր մեծաւորը ալ շատ վօղում՝ ունենայ, նա Տիրէքդօր պիլայ։ Թէ օր Աղբրտիքը անցած տարվեն մեծաւորացը հաւնին, կըլան այլվի զնոքա հաստատելու։ Զընտրութիւնը պի գրին ընտրութեան գրքին մէջ ու զՍումման սըրկինը, զորն որ մեծաւորաց ձեռքն կու տան, պի յայտնին։ Տէր Աւագերէցը իրեն ձեռօքը՝ պի հաստատէ զընտրութիւնը ու պի ստորագրէ այն գրքին մէջ այսպէս. Զայս վերոյ գրեալ ընտրութիւն, որովհետեւ առաջի իմ օրինաւորապէս եղեւ, հաստատեմ եւ ստորագրեմ.ի Հայաքաղաքս. թուին Ան. ես Տէր Ան.

է) Պաշխայ պի ընտրին երկու բարեպաշտ Եղբայր․ որոնք ամէն ունեւոր մարդոյ մահուան ատենը նային զդէսդամէնդը ու այս Եղբայրութեան Ընկին վրան բարեպաշտ գործոց ողորմութիւն խնդրին. ու հիւանդ Աղքրտաց հոգս տանին, ինչպէս որ ալ վար գրած է Պարտաւորութեանը մէջ։

ը) Եղբայրութեան Ընտուկը պիլայ Տիրէքդորին մօտ երկու բալինքի տակ, գոցով ու կուպղակով։ Գոցին բալինքը պիլայ ալ մեծ Բրօվիզորին մօտ. կուպղակին բալինքը պիլայ երկուսում բրօվիզորին մօտ։ Թէ որ այս Բրօվիզորնունմէ, որոնք զԸնկին բալինքներն ունին, մէկնըվորն ճամբայ երթայ, նայ զիրեն բալինքն պիտայ այլ վարի Բրօվիզորի ձեռքը, ինչուրի ինքն դառնայ։ Այս Ընկին մէջ պի պահին զայս կոնտակըս, զորն որ ամէն ամիս մէմը պի կարդան, որ գիտենան Եղբարքը զիրենց պարտաւորութիւնը։ Պաշխայ հինկ գիրք պի ունենան այս ընկին մէջ։ Մէկին մէջ պի գրին զԱղքրտաց ու զՔըրվըտաց անուններն ու զաւելի անըններն։ Երկուսում գրքին մէջ պի գրին զՊատարագնուն ֆունտացիաններն ու զկարգաւորութիւնը պատարագաց։ Իրեքումին մէջ պի գրին զընտրութիւնը ու զԳրակվաններն։ Չորսումին մէջ զկելուրն ու զխարճն։ Հինկումին մէջ զտարեկան Հախը։

թ) Երբ որ բանան ըզԸնտուկն, ամէնքը գլխիբաց ու ոտից վրայ մէկ Ողջոյն քեզ պի ասին ու երբոր փակին մէկ Հայր մեր ու մէկ

Ողջոյն քեզ պի ասին մեռած Եղբարցը ու Քըր-վըտոցը Հոգուն համար։

ժ) Տիրէքդօրն ու բրօվիզորներն պարտական են իժօվ աղէկ նայելու, որ Եղբայրութեան Սընկին էքմը զէն չիլայ։ Ոչ մէկ հարկաւորութեան համար թէ քաղքին, թէ օզկայ բանի սէպն չիշխեն սընկին սդկէն տալու, զարտ մէկ ողորմութեան գործոց համար, ինչպէս որ ալ վար Պարտաւորութեանը մէջ գրած է։

ժա) Սընկին սդակն միայն Եղբօր պի տան ու երբոր չի գտվի այլ եղբայր որ շահու առնու, կըլան ան ատենը մէկնըվոր եղբօր ձեռօքը օզկայի տալու ու գրակվանուն գըքին մէջ պի գրին կամ զեղբօրը կամ առնօղին անունը։ Առանց գրակվանի մարդու ալ չի տան։ Գրակվանը միայն ոսկի, արծաթ, մարգրիտ ու ակնեղէն ըլայ, որն որ երկու տակ աժէնայ զտված ստակն։ Հարուրէն շահ միայն վեց պի առնուն տարին։

ժբ) Թէ որ գրակվանին տէրը տարեն վըրայ չիտայ ըզսդըկին շահը, ոչ կարնայ զիրեն գրակվանը հանելու, ան ատենը բրօվիզորներն յառաջ իրեն իրէք անգամ՝ իմաց պանին ու չի հանէ նա զգրակվանը գին պի կտրին ու պի ծախին զգլուխն, ու զշահն Սընտուկը պի դնին ու ինչ որ պարտքին սումմայէն ու շահէն աւելնայ, գրակվանին տիրոջն պի տան։ Թէ որ այս բանը աղէկ չի նային Բրօվիզորներն ու երեսպաշտութեան կամ ազգութեան համար գրակվանին տիրոջէն պակաս առնուն ըզշահն, պարտական պիլան իրենց յատուկ սդըկէն լըման վիճարելու ըզշահն։

Պարտաւորութիւնք եւ գործք ողորմութեան Եղբայրութեանս սուրբ Լուսաւորչին։

Սուրբ Լուսաւորչին Եղբայրութիւնը պիտի ունենայ զիրեն յատուկ բեմը սուրբ Լուսաւորչին, նախ Աւետման Սուրբ Աստուածածնայ Եկեղեցին, զէրամ Սրբազան փափին այս Եկեղեցուս սուրբ Լուսաւորչին բեմին մշտնջենաւոր ներողութիւն տվիլէ, կամ Գիւտ Նշխարաց տօնին, կամ ամէն Ուրբաթ վասն ննջեցելոց քաւարանին։ Երկուսումը ինչպէս որ շինվի սուրբ Երրորդութեան եկեղեցին, ի հոն ալ պիտի դնին սուրբ Լուսաւորչին բեմ. ու այս երկու բեմերուն զարդարանքն ու զմոմեղէնն պիտի հոգայ։ Եղբայրքը զտօնը գիւտ Նշխարաց սուրբ Լուսաւորչին պարտականին մեծ հանդիսաւորութիւնով եւ ջերմեռանդութիւնով կատարելու։ Ամենասուրբ Հաղորդութիւնն Մօսդրանցիայով պիտի դրվի, Թափօրներ ու Քարոզներ պիլան ու ասոնց զամենայն խարճըն Եղբայրութեան սընկէն պիլան։ Այս տօնիս վասն ձայնաւոր Պատարագին պիտան մէկ զլօդ։

բ) Պի ունենան իրենց տարեկան Գաբէլլան Քահանայ, զորն որ իրենց Տէր Աւագերէցն տայ։ Տէր Գաբէլլանը պարտական է յամէն հինկշաբթի սուրբ Լուսաւորչի բեմը տարին յիսուն Պատարագ ասելու. մէկ հինկշաբթին վասն կենդանեաց ու մէկալ հինկշաբթին վասն ննջեցելոց այս Եղբայրութեանը. ու Տէր Գաբէլլանին պի վիճարին ամէն տարի ԻԵ նեմէցի զլօդ, այս

յիսուն պատարագին սէպն։ Երբոր Աստուած տայ, որ իրենց սընտուկն խօճանայ, ան ատենը Տէր Գաբէլլանը ամէն տարի պի ասէ հարուր պատարագ սուրբ Լուսաւորչին բեմը. յամէն չորեքշաբթի վասն ննջեցելոց ու յամէն հինգշաբթի վասն կենդանեաց. ու պիտան Տէր Գաբէլլանին յիսուն նէմէցի ղըօշ։

է) Դարձեալ Տէր Գաբէլլանը, տարին չորս ձայնաւոր պատարագ պի ունենայ Սուրբ Լուսաւորչին բեմը. Մարտի, Յունիսի, Սեպտեմբերի ու Դեկտեմբերի ամսուն վասն մեռած Աղբրտացը ու Քըրվըտաց հոգուն։ Այս Պատարագնուն ատենը պի դրվի մեծ բեմին դիմաց պարապ գերեզման ու գերեզմանին վրայ խաչ ու բոլորը պի վառին վեց կերոն մեծ ճիրախգալնու վրայ. զոր կերոններն Աղբրտիքը պի հոգան։ Տէր Գաբէլլանը Հայր մերին դիմաց պի դառնայ դէպ ի ժողովուրդը. յառաջ կարճ խրատ պի տայ վասն օգնելոյ ննջեցելոց ու յետոյ պի կարդայ սեւ կողով գրքէն զմեռած Եղբարց ու Քըրվըտաց անըներն ու ամէնքը ամէն անընի ետեւ պի ասին. Աստուած ողորմի հոգուն։ Զայս սեւ կողով գիրքը Տէր Գաբէլլանը իրեն քով պի ունենայ որ երբոր մէկնիվոր Եղբայրը կամ Քոյրը մեռնի. նա մէկու մը զիրեն անունը մէջը գրէ։ Այս չորս ձայնաւոր. պատարագին սէպն պիտան Եղբայրքը տարին չորս նէմէցի ղըօշ Տէր Գաբէլլանին, ու Տիրացուին որ այս Պատարագնուն Սպասաւորութիւն կանէ էրկուսական շէշտակ մէկ Պատարագին։

դ) Ուխտական Պատարագին սէպն, որն որ մեծաւորաց ընտրութեան դիմաց կլայ, պիտան Տէր Գաբէլլանին ինչպէս ասաթն է կէս գլօթ։

ե) Պաշխայ տիրացուին, որ զաղքատ մարդիկաց տըղաքը կու սորվեցնու կարդալու, պիտան յամէն տարի վեց Նէմէցի գլօդ։

զ) Եղբայրքը որ կամ կենդանութեան ժամանակն կամ մահուան ետեւանց մէմէկի վրայ գՔրիստոնէական սէրն կարնան ցըցնելու, անոր համար այն երկու ընտրած եղբայրը, որոնք որ ալ վեր օխդնում բունդդին մէջ գրած են. կամ դաքա որ տունը չիլան օզկայ Եղբարց ասելու. երբօր մէկնիվոր Եղբայրը հիւանդանայ ու աղքատութեան համար անճարակ մնայ, տես պի երթան հիւանդին ու պի հոգան որ իրենց Եղբայրութեան Սընկէն այն հիւանդին ողորմութիւն տան ու դեղըանքն ալ պի հոգան նորա առողջութեան սէպն։ Երբոր ծանրանայ հիւանդը, պի խնդրին քահանայ որ խոստովանի ու հաղորդըվի. ու երբոր Եղբայրը մեռնի նա Աղբրտիքն իրեն թաղնմանը պիտոր գտվին ու զիրենց առաջին խոստովանութիւնը ու հաղորդութիւնը մեռածին հոգուն համար Աստուծոյ պի մատուցանին։ Թէ օր մեռած Եղբայրը այնպէս աղքատ է որ չի կենայ ուսկից զինքն թաղելու, Եղբայրութեան սընկէն պի հոգան զնորա թաղումն ու Պատարագի ալ պիտան։

է) Ամէն աղքատ մարդոյ եւ անճար որբովայրի կընտոց մեր Հայոց ազգէն, որոնք կամիչնան ողորմութիւն խնդրելու, բրօվիզորներն

Ջատկին ու Քրիստոսի Ծննդեան, Եղբայրութեան սընկէն կէլուրին գօրայ ողորմութիւն պիտան: Ասոր համար տարին մէկ անգամ յԱւագ երեքշաբթի երկու ալ յետին՝ բրօվիզորներն տապախով տնէրուն պի քալին. խնդրելով ողորմութիւն աղքատաց համար: Ինչոր յետոյ քաղին պի տանին Տիրէքդօրին ու մէկալ բրօվիզօրնուն մօտ ու այն քաղած սդըկին վրայ ալ ալ սդակ պի դնին Սընկէն ու այնպէս պի բաժնին աղքատ Հայերուն իրենց հարկաւորութեանը գօրայ:

ը) Պի ունենան մէկ սընտուկ մը յեկեղեցին. որին մէջ պի պահին զիրենց կերոններն, զորոնք կամ իրեն բէմին վրան Պատարագին ատենը պի վառին կամ երբոր գվարդաընի չորս ձայնաւոր Պատարագն ըլլայ, պարապ գերեզմանին բոլորը պի վառին: Ասոր համար մէկ սպասաւոր մը հախով պի բռնին, որ այս Սընկին ու Սուրբ Լուսաւորչին բեմին ծառայութիւն անէ:

Զայս ուրեմն Եղբայրութիւնս Սրբոյն Գրիգորի Ազգիս Հայոց Լուսաւորչին, որ յԵկեղեցիս Աւետման Սուրբ Աստուածածնին եւ Սուրբ Երրորդութեան Հայաքաղաքիս ի հայրապետութեան Սրբազան փափին Պէնէտիքդոսի երեքտասաներորդի յամի հինգերորդի եւ յԵպիսկոպոսութեան Գրանզիլվանիոյ Ամենապատիւ Տեառն Զօրկէր Գրիգորին յառաջին ամի, սահմանեցաւ եւ հաստատեցաւ մերով այցարարական հեղինակութեամբն յամենայն եւ յիւրաքանչիւր վերոյ գրեալ կէտս կանոնացն եւ Պարտաւորութեանցն ըստ նոցին զօրութեան պատ-

ճէնին եւ իմացողութեանն հաստատեմք. եւ ստուգեցուցանեմք ի ձեռն կոնտակիս այսորիկ: Որոց վասն Մեծագոյն ամրութեան եւ հաստատութեան զկոնտակս զայս յատուկ ձեռամբ մերով ստորագրեցաք եւ կնքով ամրացուցանել արարաք: Ի Հայաքաղաքս Կէռլայու Ցամի Տեառն Հազարերորդի Եօթն հարիւրերորդի Քսանեւիններորդի: Իսկ Հայոց թուին Հազարերորդի Հարիւրերորդի Եօթանասուն եւ ութերորդի: Ուլիսի ամսոյ յաւուր Քսան եւ վեցերորդի:

Տէր Ստեփաննոս Ստեփանեան Ռօշքա Ս. Ա.
Վարդապետ եւ Եկեղեցեաց Հայոց
Դրանսիլվանիոյ Այցարար. յ. ձ.

Տ. Կ.

Տէր Յօհաննէս Միխլիոս Յօհանեան
գեր. Վարդապետին Այցարարութեան
Նօտար. Յատ. Զ:

Գ.

Եղբայրութիւն Ամենասուրբ Երրորդութեան. Յամի Տեառն 1729 եւ Հայոց ռճհը. Օգոստոսի ամսոյ 20.

Յանուն Ամենասուրբ Երրորդութեան:

Ստեփաննոս Ստեփանեան Ռօշգայ Սրբազանի Աստուածաբանութեան վարդապետ վիգարիոս եւ բրէբոզիտոս Սդանիսլաւովը աստանօր Այցարար Եկեղեցեաց Հայոց Դրանզիլվանիոյ:

Ի յերջանիկ Հայրապետութեան Սրբազան փափին Տեառն Պենետիկտոսի Երեքտասաններորդի, յԵպիսկոպոսութեան Դրանզիլվանիոյ եւ Առաջնորդին մերոյ Տեառն Զօրկէր Գրիգորին, յԱրհիտիագօնութեան Հայոց Դրանսիլվանիոյ եւ առաջին Բլէպանոսի Հայաքաղաքիս Տեառն Մինասայ Թորոսեանց ի Կայսրութեան անյաղթելի եւ Քրիստոսապսակ կայսերն Գարօլոսի վեցերորդին ամենագթած Տեառն մերոյ. ի կուպէռնադօրութեան ուղղափառ Ջիկիսմունտին Գօրնիշենց. յԵկեղեցպանութեան Աղա խաչիկին Ցակոբշայենց եւ ի Պիրօվութեան Աղայ Սաղոմոնին Դօտէրին Շիմայենց սահմանեցաւ եղբայրութիւնս:

Առ այցարարական Պաշտօն մեր պատկանի, զի ըստ Թրիտէնդինոյ սուրբ Ժողովոյն վճռոցն, զփառս Աստուծոյ եւ զնորին Սրբոց պատիւն այլեւ զբարեկարգութիւն Եկեղեցեաց, որքան Աստուածային օգնութեամբն կարեմք, յառաջարկել ջանասցուք: Եւ զի ի մէջ այլոց հոգեւոր իրացն, որք առ այն պատշաճին եւ Աշխարհականաց պատուելի Եղբայրութիւնքն համաթուին, որովք փառաբանութիւնն Աստուծոյ եւ սրբոց մեծարանքն օրըստօրէ առաւելանան եւ սուրբ Եկեղեցին Նոցին ուղղապէս սահմանեալ կանոնաւորութեամբն, Սրբազան Պատարագաց հիմնողութեամբն եւ հաւատարիմ կառավարութեամբն, որպէս մայր որդւովքն բերկրեալ եւս առաւել պայծառանայ. մեք գոլով աստէն ի տես Սիրելի Ազգականաց եւ

բարեկամաց մերոց եւ ունելով զյանձնարարութիւն. սիրելի որդիքն մեր ի Քրիստոս Նորաշէն Հայաքաղաքիս Ազատ Երիտասարդքն խոնարհաբար խնդրեցին ի մէնջ, զի զԵղբայրութիւնն իւրեանց. զոր ի վաղուց հետէ ունէին, բայց առանց հաւաստի եկեղեցական կանոնաց, սահմանել, եւ կանոնօք հաստատել յանձն առնուաք: Վասն որոյ Մեք ի յաճեցուցանել զջերմեռանդութիւնն ոչ միայն վերոյ ասացեալ Երիտասարդացն այլեւ ընդհանուր հաւատացեալ ժողովրդեանս Հայաքաղաքիս այսօրիկ դէպ յԱմենասուրբ Երրորդութիւնն, զիջեալք ի բարեսէր մաղթանս նոցա, զնոյն Եղբայրութիւնն Երիտասարդաց սահմանել, հիմնել, կառուցանել եւ հաստատել յանձն առաք. որպէս արդէն իսկ այցարարական հեղինակութեամբ մերով զնոյն Եղբայրութիւնքն ընդ անուանադրութեամբ Ամենասուրբ Երրորդութեան ի մեծագոյն փառս նոյն Ամենակարողին Աստուծոյ Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, իբրեւ զճշմարիտ եւ զօրինաւոր Եղբայրութիւն յԵկեղեցւոջն սուրբ Երրորդութեան, զոր բարեպաշտ ժողովուրդն Հայաքաղաքիս նորապէս է շինելոց քարաշէն, սահմանեմք, հիմնեմք, կառուցանեմք, եւ հաստատեմք: Եւ այսու կոնդակաւս վճռեմք, զի Եղբայրութիւնս այս իբրեւ ճշմարիտ եւ զօրինաւոր Եղբայրութիւն զամենայն իրաւունս եւ զազատութիւնս որպէս եւ այլք ճշմարիտ եւ օրինաւոր Եղբայրութիւնք ունին, եւ վայելեն միշտ եւ յամենայն տեղիս ունիցի եւ վայելեսցէ.

ստորադրելով զնա ընդ ի վայր գրեալ կանոնօքն եւ պարտաւորութեամբք ըստ պատշաճին զոր յԱռաքելական սուրբ Աթոռոյն Հռոմայ ունին եւ մեր Եղբայրութիւնքն Հայոց ի Լեհաստան. զորս աշխարհական բարբառով ի հասկացումն ամենեցուն գրել հրամայեցաք։ Յորդորելով ի Քրիստոս զամենայն Եղբարս մի ըստ միոջէ, զի ի փառս Ամենասուրբ Երրորդութեանն, յորմէ ամենայն տուրք բարիք եւ ամենայն պարգեւք ի վերուստ իջանեն, նաեւ ի շահաւետութիւն հոգւոց իւրեանց, անխափանապէս զկանոնս պահեսցեն. եւ զպարտաւորութիւնս իւրեանց լիով կատարեսցեն. Ժիրք, ջերմեռանդք եւ յաճախք ի գործս բարիս եղիցին, զի զկնի ստեացս այսոցիկ զաշխատանաց իւրեանց զվարձս ընդունիլ եւ ընդ ամենայն Սուրբս յերկնային խորանսն լուսոյ արժանասցին փառաւորել զԱմենասուրբ Երրորդութիւնն զՀայր եւ զՈրդի եւ զՍուրբ Հոգին յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։

Կանոնք եւ Պարտաւորութիւնք Երիտասարդաց Եղբայրութեանն Ամենասուրբ Երրորդութեանն։

*) Այս Հայաքաղաքիս կըտրիճվորաց Եղբայրութիւնը պիլայ սուրբ Երրորդութեան խնամակալութեան տակը։ Եղբարքը ըղսուրբ Երրորդութեան տօնը պի կատարին, ինչպէս որ ալ վար Պարտաւորութեանը մէջ գրած է։ Ամէն Եղբայր այս տօնիս պի խոստովանի ու պի հա-

ղորդըվի։ Որ Եղբայրը որ այս տօնիս տունը չի գտվի, երբոր տուն գայ պի խոստովանի ու պի հաղորդըվի այլ մօտիկ կիրակին։

բ) Ամէն Եղբայր պիտի ասէ ամէն օր իրեք Հայր մեր իրեք Ողջոյն քեզ, իրեք Փառք Հօր ու ամէն անգամ զկարճ հաւատամքը ի պատիւ սուրբ Երրորդութեանը, խնդրելով որ օգնէ այս Եղբայրութեանս ու զսուրբ ուղղափառ հաւատը տարածէ անհաւատից ու հերետիկոսաց մէջ։

գ) Ով որ ուզենայ այս Եղբայրութեանը մէջ գրվելու, յառաջ պի խնդրէ զմէկնիոր Եղբայրը, որ զինքն պի յանձնէ Եղբարցը Սէսիային ատենը ու պի խնդրէ, որ զինքն ընդունին. ու ինչպէս որ ինչվաս ատաթն եղիլ է, պիտայ հօնօրարիում Սընկին, առաջին ձեռքն, երեք մաճրի, երկուսում ձեռքն, երկու մաճրի, իրեքում ձեռքն պի տայ մէկ մաճրի։ Պաշխայ պի յայտնէ զիրեն տարեկան հախը, ինչպէս որ ալ վար գրած է ժբ. բունգդին մէջ. ու Եղբայրութեան Նօդարիուշն պի գրէ զայս տարեկան հախը իրենց գրքին մէջ կարգով։

դ) Այն օրն որ ուզենայ գրվելու, պիտոր յառաջ խոստովանի ու հաղորդըվի, հապա թէ ինքն ու մէկ քանի Եղբայր մեծաւորացը խորէրովն պի խնդրին զիրենց Տէր Գաբելլանը, որ ինքն իրեն ձեռօքն գրէ զնա Եղբայրութեան կոնդակին մէջ սուրբ Երրորդութեան Բէմին վրայ ու գրված Եղբայրը հետ մէկալ Եղբարց

չոքման պի ասէ իրեք Հայր մեր, իրեք Ողջոյն քեզ ու իրեք փառք Հօր ի պատիւ Սուրբ Երրորդութեան ու Տէր Գաբէլլանին հետ պի ասէ զաղօթքը, որն որ այն կոնտակին վերջը գրած է։

է) Այս Եղբայրութիւնը պի ունենայ իրեք մեծաւոր։ Առաջին մեծաւորին անունը պիլայ Բրէֆէքդ. Երկուսումինը վիցէբրէֆէքդ. իրեքումը մարշալէք։ Զայս իրեք մեծաւորաքը պի ընտրին յամէն տարի իրեք օր յառաջ քան զսուրբ Երրորդութեան տօնը։ Բրէֆէքդն մէկ օրով յառաջ քան զընտրութիւնը իմաց պիտայ Եղբարցը, որ ընտրութեան օրը ամէնքը յեկեղեցին գան ու զուխտական պատարագն լսին, զորն որ իրենց Տէր Գաբէլլանը սուրբ Երրորդութեան բեմը պի ասէ զհոգւոյն սրբոյ։ Յետոյ պի քաղվին Բրէֆէքդին տունը ու փունտադօրներուն դիմաց. ու զՍնտուկն ալ իրեն աղէկօվը ու Գրքերօվը յետ պիտան. Հապա թէ Եղբարքը ու Փունտադօրները պի ընտրին Նոր Մեծաւորաք վօդումներով ու որ մեծաւորը ալ շատ վօդում ունենայ. նա Բրէֆէքդ պիլայ ու մէկալը վիցէբրէֆէքդ։ ԶՄարշալէքն ալ նոյնպէս վօդումներով պի ընտրին, որն որ ալ շատ վօդում ունենայ, նա մարշալէք պիլայ։ Թէ օր Եղբարքը անցած տարվեն մեծաւորաքը հաւնին, կըլան այլվի զնոքա հաստատիլու։ Զընտրութիւնը պի գրին ընտրութեան գրքին մէջ ու զՍումման ըստըկինը, զորն որ Մեծաւորաց ձեռքն կու տան, պի յայտնին։

Տէր Աւագէրեցը յետոյ իրեն ձեռքը պի հաստատէ զընտրութիւնը ու պի ստորագրէ այն գրքին մէջ այսպէս. Զայս վերոյգրեալ ընտրութիւնն որովհետեւ առաջի իմ օրինաւորապէս եղեւ, հաստատեմ եւ ստորագրեմ. ի Հայաքաղաքս թուին ԱՆ: Ես Տէր ԱՆ: Որ կտրիճն չուզենայ յայս ընտրութիւնը գալու, իրեք փունտ մոմ անպատճառ ճուրում պիտայ:

դ) Մարշալէքին բանն է, որ թափօրին առենը զեղբայրութեան գաւազանը ձեռքն ունենալով, զկտրիճները շարէ, որ կարգով երկուս երկուս երթան ու երբ ծննդեան Քրիստոսի ու Զատկին Հայր մեր ասելու կու քալին ու երբ զՀարսն ու զփեսայն պըսակին ժամ կուղաւորին, զգաւազանը միշտ ձեռքն ունենայ: Զանհնազանդ կըտրիճը ինքն ինչպէս ինտիկադօր տալի պիտոր անէ Եղբայրութեան մեծաւորացը: Ասոր համար Եղբայրութիւնը պի ունենայ մէկ գաւազան մը. որին գլուխն ըլլայ արծաթէ պատկերք, մէկ դիհաց Սուրբ Երրորդութեան պատկերքը, մէկալ դիհաց սուրբ Աստուածածնայ Անարատ Յղութեան պատկերքը:

ե) Յայս ընտրութեան առենը պի ընտրին չորս Եղբայր, որոնց երկուսը զհիւանդաց հոգսը պի քալցընուն ինչպէս որ ալ վար Պարտաւորութեանը մէջ գրած է, ու մէկալ երկուսը զեղբայրութեան մոմերն, զգեստն ու բեմի բաները պի պահին. ու երբ որ պէտք ըլլայ պի տանին ու պի բերին:

Ը) Եղբայրութեան Սընտուկը պիլայ Բրէ-ֆէքդին մօտ. երկու բալինքի տակ, գոցով ու կուպղակով. գոցին բալինքը պիլայ վիցէ բրէ-ֆէքդին մօտ. կուպղակին բալինքը պիլայ ալ մեծ եղբօր մօտ: Թէօր դացամէ, որոնք զՍնկին բալինքներն ունին, մէկնըվորն ճամփայ երթայ, նայ զիրեն բալինքը պիտայ օղկայ Եղբօր ձեռքը, ինչուրի ինքն դառնայ: Այս սընկին մէջ պի պահին զայս Կոնդակս, զորն որ ամէն ամիս մէյ մը պի կարդան, որ Եղբարքը զիրենց պարտաւո-րութինը գիտենան: Պաշխայ հինկ գիրք պի ունենան այս Սընկին մէջ: Մէկին մէջ պի գրին զԵղբարց ու զՔըրվըտաց անըներն ու զաւելի անըներն. ու որ Եղբայրն կամ Քոյրն որ մեռնի, նա քովն խաչ պի գրին ու զմեռածին անունը պի գրին սեւ կողով գըքին մէջ, որ գվարդալի Պատարագնու մէջ յիշվի: Երկուսում գըքին մէջ պի գրին զՊատարագնուն ֆունտացիաներն ու զկարգաւորութինը պատարագաց: Իրեքումին մէջ պի գրին զընտրութինը ու զգրակվաներն: Չորսումին մէջ զկէլուրն ու զխարճն: Հինկումին մէջ զտարեկան հախը:

Ի) Սէսիայն ամէն երկու շաբաթը մէմը (կամ ալ թէզ երբ որ պէտք ըլայ) պիլայ Կիրակի օր Պատարագին ետեւ բրէֆէքդին տունը, ուրուխ որ սընտուկն է: Որ եղբայրն առանց արդար պատճառի չուզենայ գալու Սէ-սիայն ժե պան ճուրում պիտայ: Թէ օր ալ բիզտի Եղբայրը Սէսիային ատենը յառաջ ելէ զրուցելով առանց դաստուրի, մէկ ֆունտ մոմ

ճուրում պիտայ։ Որ Եղբայրը յառաջ քան զբանալն Սընկին առանց դաստուրի երթայ, մէկ փունտ մոմ ճուրում պիտայ։

ծ) Երբոր բանան ըղսընտուկն ամէնքը գլխիբաց ու ոտից վրայ մէկ Ողջոյն քեզ ու մէկ փառք Հօր պի ասին. ու երբ որ փակին, մէկ Հայր մեր, մէկ Ողջոյն քեզ ու Փառք Հօր պի ասին մեռած Եղբարց ու Քըրվըտացը հոգուն համար։

ծա) Այն Եղբայրն, որ զիրեն պարտքն Սընկին, կամ զտարեկան հախն կամ ըզգըրած ճուրումն չուզենայ տալու, զարտ զայն, ինչ որ պարտական է տալու, մէկ փունտ մոմ ճուրում պիտայ իրեն անհնազանդութեան համար։

ծբ) Տարեկան հախն ամէնուն հաւանութենովն հաստատվեցաւ, որ ամէն եղբայր, ինչպէս ալ վաղուց ատաթ եղիլէ, ամէն տարի ունենայ տալու Սընկին տարեկան հախ, խօճան 50 պան, ալ աղքատ եղբայրը երսուն պան, կամ քսան ՚պան, ինչպէս որ մեծաւորաքը իրենց հոգովը գտնուն։

ծգ) Սընկին ոդակն միայն Եղբօր պի տան· ու երբոր չի գտվի այնպէս Եղբայր, որ շահու առնու, կըլան ան ատենը մէկնըվօր Եղբօր ձեռօքը օղկայի տալու. ու գրակվանուն Գրգին մէջ պի գրին համ եղբօրը, համ առնողին անունը։ Առանց գրակվանի մարդու ալ չի տան։ Գրակվանը միայն ոսկի, արծաթ, մարգրիտ ու ակնեղէն ըլլայ, որն որ երկու տակ աժէնայ

ղռված սղակն: Հարուրին շահ միայն վեց պի առնուն տարին:

ծդ) Թէ որ գրակվանին տէրը տարեն վրայ չի տայ ըղըդըկին շահը. ոչ կարնայ զիրեն գրակվանը հանելու, ան ատենը փունտադորներն հետ այս Եղբայրութեան Մեծաւորացը, յառաջ իրեն երեք անգամ իմաց պանին. ու չի հանէ նայ, զգրակվանը գին պի կորին ու պի ծախին զգլուխն. ու զշահն Սընտուկը պի դնին. ու ինչ որ պարտքին Սումմայէն ու շահէն աւելնայ, գրակվանին տիրոջն պի տան: Թէ որ այս բանըս աղէկ չի նային փունտադօրներն ու մեծաւորքը ու երեսպաշտութեան կամ ազգութեան համար գրակվանին տիրոջէն պակաս առնուն ըղշահն, պարտական պիլան իրենց յատուկ ստըրկէն լըման վիճարելու ըղշահն:

ծե) Այս Եղբայրութիւնս պի ունենայ վեց փունտադօր, որոնք Տանուտէր, խելօք ու Աստուածավախ մարդիկ ըլլան. դաքա մինչեւ ի մահ փունտադօր պիլան: Երբոր մէկնիվոր փունտադօրն մեռնի նա, մէկալ փունտադօրներն հետ բրէֆէքդնուն նարա տեղն օզկայ փունտադօր պի ընտրին, այնպէս տանուտէր, որն որ գրած ըլայ այս կորիճվորաց Եղբայրութեանը կոնտակին մէջ, որ միշտ վեց ըլլան: Զայս փունտադօրներն պիտոր Տէր Աւագէրէցն հաստատէ ու աբրօպօվադ անէ: Փունտադօրներն պարտական ին ամիսն մէկ անգամ կամ ինչխտար պէտք ըլայ, Սէսիայն գալու, զտարեկան հախը Սընկին տալու, ընտրութեան ատենը գտնելու. պի նային որ

Սընկին ստակը անպէտք խալիճով չի պաքսի։ Բայց որ աւելնայ նայ ու սիրով աղէկ պի կառավարին զԵղբայրութիւնը։ Ասոր համար ոչ մէկ հարկաւորութեան համար թէ քաղքին թէ օղկայ բանի չիշխին Սընկին սդըկէն տալու. զատ մէկ ողորմութեան գործոց համար, ինչպէս որ ալ վար գրած է։

ծղ) Որ կտրիճն հարսնիք ունէնայ անէլու, պի խնդրէ զԵղբայրութիւնը, որ հարսնեցն, ինչպէս որ հիմպիկ ատաթն է, կըտրիճներն ասխադօվադ անին։ Պարտական պիլայ այս Եղբայրութեանս Սընկին իրեն կարօղութեանը գօրայ, հօնօրարիում տալու, առաջին ձեռքն պիտայ վեց մաճրի, երկուսումը չորս մաճրի, իրեքում ձեռքն երկու մաճրի. յաղքտէն իք մալ չի պի առնուն։ Նմանապէս երբ օր օղկայ քաղքէ գայ փեսայ. կամ իրեն մարդիքն ասկից հարս առնելու նայ, այս գրած իրեք ձեռքին սէպօվը, Սընկին հօնօրարիում պի տան։ Բայց երբ որ այս քաղքէն կըտրիճմն յօղկայ քաղաք երթայ հարսն առնելու, ի հոս միայն զկէսն պիտայ, ինչոր տալու էր. ու ի հոն ուսկից զհարսն կառնու, լըման պիտայ զհօնօրարիումն։

ծէ) Կտրիճմն որ կու կարգըվի, հարսնեցն էտեւ մէկ տարի այս Եղբայրութենէս չիպի զատվի։ Բայց ազատ պիլայ յամէն ծառայութենէ։ Տարին որ լըմնայ, շնորհակալ պի գայ Եղբայրութեանը Սէսիայի ատենը։ Բայց պարտական պիլայ յամէն տարի զիրեն տարեկան հախը տալու Սընկին, որ զեղբայրութեան

վարձքն չի կորսընու ընտրութեանն ատենը․ ու երբ զինքն Եղբայրութիւնը ձէնէ իքմը հարկաւորութեանն սէպն, պէտք է որ Սէսիայն գտվի։

ժը) Ցետքը նային Եղբարքն, որ ժիր ըլլան ու սիրով զիրենց պարտաւորութիւնը ու զգործք ողորմութեան, ինչպէս որ գրած է, կատարին, որ ի սուրբ Երրորդութենէն զիրենց աշխատանաց վարձքն ու զօրհնութիւնն արժանի ըլլան առնէլու։

Պարտաւորութիւնք եւ գործք ողորմութեան Եղբայրութեան Ամենասուրբ Երրորդութեան։

ա) Սուրբ Երրորդութեան կորիճվորաց Եղբայրութիւնը զարտ զայն, ինչ որ վեր գրած է, պի ունենայ Նոր Եկեղեցուն մէջ զմեծ բեմն Սուրբ Երրորդութեանը իրեն յատուկ խարճովն չինելու, զոր եկեղեցին հինտիկուց Աստուածասէր ժողովուրդն կամք ունի չինելու։ Եղբարքը զայս բեմին զարդարանքն ու զմոմեղէնն ու ինչ որ հարկաւոր է, պի հոգան։ Ջսուրբ Երրորդութեան տօնը մեծ պայծառութիւնով ու ջերմեռանդութիւնով պի կատարին։ Ամենասուրբ Հաղորդութիւնը Մօնսդրանցիայով պի դրվի։ Թափօրներ ու քարոզներ պիլան. ու ասոնց զամենայն խարճն եղբայրութեան Սընկէն պիտան։ Այս տօնիս, վասն ձայնաւոր պատարագին պիտան մէկ զլօթ։

բ) Պի ունենան իրենց տարեկան Գաբէլլան քահանայ, զորն որ իրենց Տէր Աւագէրէցն տայ.

Տէր Գաբէլլանը պարտական է յամէն երկու-
շաբթի Սուրբ Երրորդութեան բեմը տարին
յիսուն պատարագ ասելու. մէկ երկուշաբթին
վասն կենդանեաց ու մէկալ երկուշաբթին վասն
ննջեցելոց այս Եղբայրութեանը. ու Տէր Գաբէլ-
լանին այս յիսուն պատարագին սէպն պի վի-
ճարին ամէն տարի ԻԵ. նէմէցի ղլօթ: Երբ որ
Աստուած տայ, որ իրենց Սընտուկն խօճանայ,
ան ատենը Տէր Գաբէլլանը ամէն տարի պի
ասէ Հարուր պատարագ Սուրբ Երրորդութեան
բեմն. յամէն երկուշաբթի յիսուն պատարագ
վասն կենդանեաց ու յամէն ուրբաթ յիսուն
պատարագ վասն ննջեցելոց. ու պի տան Տէր
Գաբելլանին այս Հարուր պատարագնուն սէպն
յիսուն նէմէցի ղլօղ: Որ կորիճը այս պատա-
րագնուն առանց արդար պատճառի որ չի գտվի,
պիտայ վէց պան ճուրում:

Գ) Դարձեալ որ վաղուցու յիշատակն ի
պատիւ Սրբոց Եվստաատիոսեանց Մարտիրո-
սացն, որոնց անընումն այս կորիճվօրաց Եղբայ-
րութիւնը լոկ միայն կը յիշվէր, ամենեւին չի
խափանվի, պիտան մէկ պատարագի իրենց Տէր
Գաբէլլանին այն օրն, երբոր որ տօնը սուրբ
Եվստաատիոսեանցն կու կատարվի. ու պի ու-
նենան մէկ պատկերք մը, որին մէջ այս Հինգ
Սրբերն մէկտեղ քաշած ըլլան. ու զայս պատ-
կերքս պի դնին իրենց բեմին մօտի պատըն:

Դ) Դարձեալ՝ Տէր Գաբէլլանը տարին
չորս ձայնաւոր պատարագ պի ունենայ Սուրբ
Երրորդութեան բեմը, Մարտի, Յունիսի, Սեպ-

տեմպերի ու Դեկտեմբերի ամսուն վասն մեռած Եղբարց ու Քրվըտաց Հոգուն: Այս պատարագնուն ատենը պի դրվի մեծ բեմին դիմաց պարապ գերեզման ու գերեզմանին վրայ խաչ. ու բոլորը պի վառին վեց կերոն մեծ ճիրախկալնու վերայ. զոր կերոններ Եղբարքը պի հոգան: Տէր Գաբէլլանը Հայր մերին դիմաց պի դառնայ դէպ ի ժողովուրդը. յառաջ կարճ խրատ պիտայ վասն օգնելոյ ննջեցելոցն ու յետոյ պի կարդայ սեւ կողով գրքէն զմեռած Եղբարց ու Քըրվըտոց անըներն ու ամէնքը ամէն անընին ետեւ պի ասին. Աստուած ողորմի Հոգուն: Զայս սեւ կողով գիրքը Տէր Գաբելլանը իրեն քով պի ունենայ ու. երբոր մէկնիվոր եղբայրը կամ Քոյրը մեռնի նա, մէկու մը զիրեն անունը մէջը գրէ: Այս չորս ձայնաւոր պատարագին սէպն պիտան Եղբարքն տարին չորս նէմէցի զլօդ Տէր Գաբելլանին. ու Տիրացուին որ այս պատարագնուն սպասաւորութիւն կանէ երկուսկան շիշտակ մէկ պատարագին:

ե) Պատարագին սէպն, որն որ ուխտական կասվի ու կըլայ յառաջ քան զմեծաւորաց ընտրութիւնը, պիտան Տէր Գաբելլանին ինչպէս ատալթն է, կէս զլօդ:

զ) Պաշխայ տիրացուին, որ զաղքատ մարդիկաց տղաքը կու սորվեցնու կարդալու, պիտան յամէն տարի վեց նէմէցի զլօդ:

է) Եղբարքը պի ունենան վեց ջահ, այսինքն քամու կէրոններ, որ ամէն ատեն, երբ Սրբութենով թափօր կըլայ, վեց կտրիճ վառ-

*ման ջահերով պալտախինին քով երթան ու ամէն հանդիսաւոր տօն օրերուն ու ամէն կիրակի ձայնաւոր պատարագին Հայր մերէն, մինչեւ ի սուրբ սուրբն լըմնայ, վեց կամ չորս կտրիճ չոքման զվառման ջահերն բռնին, Նոքա, զորոնք իրենց Մարշալէքն օրինօվադ անէ։ Որ կտրիճը չուզենայ զայս ջահը բռնելու, մէկ ֆունտ մոմ ճուրում պիտայ։ Պաշխայ պի ունենան անխտար կերոններ որ համ ֆունտադօրներն համ Եղբարքը, որոնք ամէն տարի զիրենց տարեկան հախն կու տան, ամէն թափօրի ձեռվըներն վառման ունենան։*

ը) *Կտրիճներն ամէնքը պարտականին, ամէն թափօրի գտվելու ու երկուս երկուս կարգով ու ջերմեռանդութիւնով երթալու, ինչպէս որ զիրենք շարէ իրենց մարշալէքն. որն որ զգաւազանը, ինչպէս ալ վեր գրած է, ձեռն պիտոր ունենայ ու կտրիճնուն մէջ պիտոր երթայ։ Որ կտրիճը չի հնազանդի մարշալէքին, թափօրին ատենը, մէկ ֆունտ մոմ ճուրում պիտայ։*

թ) *Երբոր Քրիստոսի ծննդեան աւետիս ասելու քալին ու Զատկին երկուշաբթի Հայր մեր, Բրէֆէքդներն յառաջ պի երթան ու իրենց մէջ մարշալէքն դաւազանը ձեռքը. դոցա ետեւանց կտրիճները խառն պի երթան։ Այս ատենը նային որ չի հարբին, հուք չանին, պարկեշտութիւնով ժաժին։ Ասոր համար կարգիլինք, որ հէչ մէկ մարդու տուն մալ ան ատենը խում չի խմին։*

ժ) Երբ Ամենապատիւ Եպիսկոպոսն, Առաջնորդն այս երկրիս, այս քաղաքս գալու ըլլայ, պարտական են կտրիճներն ձիաւոր իրեն դիմաց ելլելու. Նոյնպէս երբ երթալու ըլլայ, զէնք ուղարկելու. ու մէկ քանի կտրիճ օրտինօվար անելու որ զառաջնորդն մինչեւ ուրիշ քաղաք ուղարկեն: Որ կտրիճն այս առենը չի հնազանդի Բրէֆէքդնուն, երեք փունտ մոմ ճուրում պի տայ: Նմանապէս Տէր Աւագերիցուն ամենայն հոգեւոր բանի, ինչպէս որ ատաթն էղիլէ ինչվաս, պարտականին հնազանդելու կտրիճներն նոյն ճուրումին պատժուին:

ժա) Եղբարքը որ կամ իրենց կենդանութեան ժամանակն, կամ ալ իժօվ մահուան էտեւանց, մէկմէկի վրայ զքրիստոնէական սէրն կարենան ցըցնելու, անոր համար, այն երկու ընտրած եղբայրն, որոնք ալ վեր օխդնում բունդգին մէջ գրած են (կամ դոքա որ տունը չիլան, օզկայ Եղբարց պի ասին,) երբոր մէկնըվոր Եղբայրը հիւանդանայ ու աղքատութեան համար անճարակ մնայ, տես պի երթան հիւանդին ու պի հոգան որ իրենց Եղբայրութեան Սընկէն այն հիւանդին ողորմութիւն տան ու դեղըրանքն ալ պի հոգան նարա առողջութեանը սէպն: Երբ որ ծանրանայ հիւանդը պի խնդրին Քահանայ, որ խոստովանի ու սրբութիւն առնու. ու մէկ քանի կտրիճ մը վառած կերոններով Սրբութեանը ասխդօվար պի անին. ու երբոր հիւանդ Եղբայրը մեռնի նայ, ամէն Եղբարքը թաղմանը պէտոր գովին ու Եղբայրութեան

կերոներոմն զմեռնալ մարմինն պի ուղաւորին ու զիրենց առաջին խոստովանութիւնն ու Հաղորդութիւնը մեռածին հոգուն համար Աստուծոյ պի մատուցանին։ Թէ որ մեռնալն ունեւոր է, իրեն Տէրքերը պիտան Սընկին ըստակ իրենց կարեացը գօրայ. ու թէ օր մեռած եղբայրը, այնպէս աղքատ է, որ չի կենայ ուսկից զինքն թաղելու, Եղբայրութեան Սընկէն պի հոգան զնարա թաղումն ու Պատարագի ալ պի տան։

ծե) Որովհետեւ մեռելոց փոս փորելն ու թաղելն թէ մեռած եղբօր ու թէ օզկայ մեռելի, գործ ողորմութեան է, կու յորդորինք ի Քրիստոս, զկտրիճներն, որ զայս գովելի ատաթը միշտ պահին, ինչպէս որ ինչվաս պահիլին։ Որ կտրիճն թէ Եղբօր թէ օզկայի փոս փորելու ու թաղելու չուզենայ գալու, մէկ փունտ մոմ ճուրում պիտայ։

ծզ) Այս եղբայրութեան մեծաւորաքը նային, որ սիրով կառավարին զկտրիճներն ու հի ինչ թեթեւ բանի սէպն մէկու մը չի ճուրումին զիրենք։ Բայց այն Եղբայրն որ խալտէնայ նա, յառաջ պի խրատին, նայ երկուսումն ու իրէքումը պի ճուրումին զինքն ու թէ որ իրեքում ալ չուզենայ հնազանդելու, ան ատենը պի խնդրին զՏէր Աւագէրէցը իրենց Սէսիայն ու պի խրատէ զինքն ու անժումն ալ չուզենայ հնազանդելու, նա Տէր Աւագէրէցն իրեն ձեռօքն փունտագօրնուն ու բրէֆէքդնուն դիմաց պի ջնջէ զանհնազանդին անունը Եղբայրութեան կոնդակին մէջէն ու ալ շատ չիպի ընդունի զնա։

ԺԴ) Թէ որ երկու կամ աւելի կորիճներ Եկեղեցուն մէջ կամ եկեղեցուն ազպարն ծեծկըվին ու կռիւ անին, պիտոր Տէր Աւագէրէցը իրենց դատաստան անէ։ Թէ որ եկեղեցուն ազպարէն դուս ըլլայ իրենց ծեծն կամ կռիւն, եղբայրութեան փունտադորներն ու բըէֆէքդներն պի դատին զմեղապարտը։ Թէ որ Եղբայրութենէն դուս կորիճներն ծեծկըվին կամ զարար անին, զայնպիսի մեղապարտն մեծարելի Աղաներն պի դատին։

ԺԵ) Որ կորիճն եղբայրութեան մեծաւորաց տէքուէդին չի հաւնի, ծանրութիւն իրեն իմանալով, կըլայ աբէլօվադ անէլու Տէր Աւագիրիցուն դատաստանին. ու Տէր Աւագիրիցու դատաստանին ալ չի հաւնի, կըլայ ետքը Գերապայծառ Եպիսկոպոսին մօտ աբէլօվադ անէլու։ Դարձեալ՝ կու հրամայինք որ կորիճն որ իւղաբերից Աւետարանին չի գովի նայ. մէկ չիշտակ զայս ճուրում պիտայ։

Զայս ուրեմն Եղբայրութիւնս Ամենասուրբ Երրորդութեան Երիտասարդաց Հայաքաղաքիս, որ յԵկեղեցւոջն նոյն Ամենասուրբ Երրորդութեանն, զոր բարեպաշտ ժողովուրդն շինելոց է, ի Հայրապետութեան Սրբազան փափին Տեառն Պէնէտիքդոսի Երեքտասաներորդին յամի Հինգերորդին եւ յԵպիսկոպոսութեան Դրանզիլվանիոյ Ամենապատիւ Տեառն Զօրկէր Գրիգորին յառաջին ամի. սահմանեցաւ եւ հաստատեցաւ մերով այցարարական հեղինակութեամբն յամենայն եւ յիւրաքանչիւր վերոյգրեալ կէտս կա-

նոնացն եւ Պարտաւորութեանցն ըստ նոցին զօրութեանն պատճէնին եւ իմացողութեանն հաստատեմք եւ ստուգեցուցանեմք ի ձեռն կոնտակիս այսորիկ։ Որոց վասն մեծագոյն ամրութեան եւ հաստատութեանն զկոնտակս զայս յատուկ ձեռամբ մերով ստորագրեցաք եւ կնքով ամրացուցանել արարաք։ Ի Հայաքաղաքս Կեռլայու Ցամի Տեառն Հազարերորդի Եօթն հարիւրերորդի քսանեւիններորդին։ Իսկ Հայոց թուին Հազարերորդի Հարիւրերորդի Եօթանասուն եւ ութերորդի. Օգոստոս ամսոյ. աւուր քսաներորդի։

Տէր Ստեփաննոս Ստեփանեան Ռօշքա Սր. Ա. վարդապետ. եւ Եկեղեցեացս Հայոց Տրանսիլվանիոյ Այցարար. m. p. Տ. Կ.

Տէր Յովհաննէս Մխիթար Յօհանեան գ.եր. վարդապետին Այցարարութեան նոտար. Յատ. Զ.։„

*

Եթէ ընթերցողը մտադրութեամբ դիտած է, տեսած պիտ՝ որ ըլլայ, որ երեք ընկերութեան կանոններն ու պարտաւորութիւններն ալ նոյն անձէն յօրինուած ըլլալուն ու նոյն նպատակն ունենալուն, շատ քիչ կամ ոչինչ փոփոխութեամբ միեւնոյներն են։

Ասոնց ամենուն վրայ աւելի ամփոփ գաղափար մ'ունենալու համար պատշաճ կը համարիմ ասոնց գլխաւորները՝ հոս համառօտել, այնչափ աւելի՝ որչափ լեզուն Տրանսիլուանիոյ հայոց

*տեղական բարբառովն ըլլալով՝ գուցէ ընթերցողներէն ոմանք ճշդիւ չեն կրցած հասկընալ։*

*Երեքին ալ յատուկ են. 1. Եղբայրք ու քորք՝ եղբայրութեան տօնը մեծ պայծառութեամբ ու ջերմեռանդութեամբ կատարեն։ Իւրաքանչիւր անդամ խոստովանի ու հաղորդուի։ Չկրցող հիւանդը կամ ճանապարհորդն առաջին տօնին նոյն պարտաւորութիւնը կատարէ։ 2. Իւրաքանչիւր եղբայր՝ ամէն օր՝ հինգ Հայր մեր ու նոյնչափ Ողջոյն պէտք է ըսել Քրիստոսի Տեառն մերոյ հինգ վէրացը համար, աղաչելով զԱստուած՝ որ ուղղափառ հաւատքն անհաւատից ու հերետիկոսաց մէջ տարածէ։ 3. Եղբայրութեան մէջ գրուիլ ուզողն, ինք զինք եղբօր կամ քրոջ մը ձեռօք եղբայրութեան մեծաւորին պիտի յանձնէ. եղբայրութեան մէջ գրուելուն սակը պիտի հատուցանէ յետոյ պիտի խոստովանի ու հաղորդուի։ Ասոր վրայ մատրանապետն, իր անունն եղբայրութեան մատենին մէջ պիտ'որ անցընէ. — խորանին վրայ — ինք, առաջնորդներն եւ նոր ընտրած անդամը, չոքած՝ հինգ Հայր մեր ու հինգ Ողջոյն քեզ պիտի ըսեն՝ յատկացեալ աղօթքովը։ Ամէն եղբայր ու քոյր որոշեալ ատենին ժողովքի պէտք է որ գայ։ 4. Կ'որոշուի՝ թէ երբ ու ինչպէս, իւրաքանչիւր եղբայրութիւն իր մեծաւորները պիտի ընտրէ։ Կը սահմանուի ամէն մէկ մեծաւորին անունն ու պաշտօնը։ Ընտրութիւնը՝ տեղւոյն աւագերէցէն պիտի ամրացուի։ 5. Կ'որոշուի թէ եղբայրութեան արկղը որուն քով*

պիտի ըլլայ եւ թէ անոր բանալին ո՛վ պիտի պահէ: 6. Իւրաքանչիւր եղբայրութիւն՝ ունի հինգ մասեան: Առաջինին մէջ կ'անցնին եղբարց ու քերց անունները. երկրորդին մէջ՝ մշտնջենաւոր պատարագներն ու անոնց կարգը. երրորդին մէջ՝ առաջնորդաց ընտրութեան կերպն ու գրաւականները. չորրորդին մէջ՝ մուտքերն ու ելքերը. հինգերորդին մէջ տարեկան վճարքը: 7. Եղբայրութեան արկղը բանալու եւ գոցելու ատեն, իւրաքանչիւր ոք, ոտքի վրայ կեցած Հայր մեր ու Ողջոյն մ'ըսելու է: Կը զգուշացուին առաջնորդներն որ արկեղ վրայ լաւ հսկեն. անկէ՝ առանց հարկաւորութեան մէկու մը ստակ չտան: Շահու ստակ մի՛այն եղբօր կրնայ տրուիլ. բայց երբ որ շահու առնող եղբայր չըլլայ, եղբօր մը միջնորդութեամբ օտարի ալ՝ տրուի, սակայն գրաւականով, որ — ոսկի, արծաթ, մարգարիտ ու ակնեղէն ըլլալով — փոխ առած ստըկին կրկին արժէքը պիտի ունենայ: Թէ որ պարտականը չի կրնար ո՛չ դրամագլուխն եւ ո՛չ անոր շահը՝ տարուան մը մէջ վճարել. իրեն երեք անգամ իմաց տալէն ետեւ, գրաւականը պիտի ծախուի, պարտքէն ու անոր շահէն մնացած աւելորդ ստակը տիրոջ պիտի յանձնուի: Կը հրամայուի առաջնորդաց, որ չըլլայ թէ երեսպաշտութիւն ընեն. վասն զի պարտական պիտի ըլլան, իրենց յատուկ քսակէն ստակը հատուցանելու:

Եղբայրութեանց պարտաւորութիւնները յաջորդներու մէջ կրնանք ամփոփել: 1. Իւ-

րաքանչիւր եղբայրութիւն ունի իր յատուկ բեմը, որուն բոլոր ծախքերն իր արկղէն պիտի հոգայ: 2. Ամէն եղբայրութիւն ունի իր յատուկ քահանան, որ տարուէ տարի 50ական պատարագ ընելու է. մէկ շաբթուն որոշեալ օրը՝ կենդանեաց, ու մէկալ շաբթուն որոշեալ օրը՝ ննջեցելոց համար: Ասկէ զատ 4 ձայնաւոր պատարագ պիտի ընէ մեռած եղբարցու քերց հոգւոյն համար: Ատ պատարագներէն ետեւ՝ ննջեցելոց պաշտօն պիտի կատարուի՝ տալով ամէն մեռած եղբօր կամ քրոջ անունը. որուն վրայ ներկայ եղօղները պիտի ըսեն թէ. "Աստուած ողորմի հոգւոյն": 3. Եղբայրութեան անդամներն, իրարու, կենդանութեան ատեն՝ ինչպէս նաեւ մահուանէն ետեւ քրիստոնէական սէրը պիտի ցուցընեն, այնու՝ որ հիւանդ եղբօր այցելութեան պիտ'որ երթան: Եթէ հիւանդ եղբայրն աղքատ է, բժիշկ ու դեղեր պիտի հոգան իրեն: Եթէ հիւանդը ծանրանայ, քահանայ բերեն. ու թէ որ մեռնի՝ թաղմանը ներկայ պիտի գտնուին: Եթէ մեռած եղբայրն այն աստիճանի աղքատ է, որ զինք թաղելու բան չունի, եղբայրութիւնը պէտք է որ հոգայ անոր թաղումը, ու պատարագցու ալ տայ հոգւոյն համար: 4. Առաջնորդներն՝ որոշեալ ժամանակի մը մէջ, ամէն՝ մուրանալու ամըչցող աղքատ մարդու ու որբեւարի կնոջ, եղբայրութեան արկղէն ողորմութիւն բաշխելու են:

Ս. Երրորդութեան եղբայրութեան վեց ջահերը՝ թափօրի ատեն այն երիտասարդները

— սրբութեան քով, պիտի տանին ու կիրակի եւ տօներու օրերը պատարագի ժամանակ՝ Հայր մերէն, մինչեւ ի Սուրբ ի սուրբին լմըննալը ձեռուըննին վառած — պիտի բռնեն, որոնց՝ ընկերութեան երրորդ մեծաւորը կամ Մարշալէքը պիտի հրամայէ։ Զհնազանդողը՝ մէկ ֆունտ մոմ պիտի տայ եկեղեցւոյ։ 2. Երիտասարդները՝ կարգաւ երկու երկու, թափօրի առեն, ջերմեռանդութեամբ պիտի քալեն, մարշալէքն առջեւնին, գաւազանը՝ ձեռքը։ 3. Այս եղբայրութեան անդամները կը յորդորուին, ի մասնաւորի, որ հանգուցեալ եղբօր փոս փորելու հին սովորութիւնը չթողուն։ Կը յանձնուի մեծաւորաց ալ, որ ամէն ոչինչ բանի համար զեղբայրները տուգանօք չպատժեն։ 4. Անհնազանդն՝ աւագերէցը ժողովքի մէջ պիտի խրատէ։ Եթէ խրատն օգուտ չ՚ըներ, պատժուի։ Եթէ աս ալ ուղղութեան չի բերեր զեղբայրը՝ ընկերութենէն մերժուի ու անունը կոնդակէն ջընջուի։ 5. Եկեղեցւոյ բակը կռիւ ընող եղբայրն՝ աւագերիցուն դատաստանին առջեւը տարուի։ Եթէ բակէն դուրս ըլլայ կռիւը՝ առաջնորդներուն կ՚իյնայ դատաստանը։ 6. Եղբայրը կրնայ բողոքել առ աւագերէցն, նաեւ առ եպիսկոպոսն։

### 9. Հայ եպիսկոպոսութիւնը։

Գրանսիլուանիոյ Հայոց վերջին եպիսկոպոսը՝ մեծանուն Աւքսենտիոս Վըզարեան — որ 1715ին սկիզբներն ըստ ոմանց բնական

մահուամբ վախճանած է Պիսդրից քաղաքը, բայց ըստ Ս. Ռօշքայի թունաւորուած է հունգարացի մեծամեծներէն անոր համար, որ իւր ազգը շատ սիրած եւ շրջակայ ազգայնութեանց հետ հաւասար իրաւանց ու վիճակի բարձրացընել ուզած է, — իւր կտակին մէջ իրեն յաջորդ թողուց զՍտեփանոս Ստեփանեան Ռօշքա վարդապետը: Հայոց եկեղեցականներն ու ժողովրդեան պատգամաւորները Կէօրկէն ժողովեցան 1715 Մայիս 20ին, որ նոր եպիսկոպոս մը ընտրեն. բայց չկրցան մէջերնին միաբանիլ: Վերջապէս որոշեցին որ անոր հնազանդին, զոր Հռովմ իրենց ղրկէ: Սակայն երբ սուրբ Գահն այս նիւթիս մէջ բան մը չորոշեց, Մարիամ Թերեզիա Դրանսիլուանիոյ Հայոց եպիսկոպոս անուանեց զՄինաս Թորոսեան: Բայց հակառակորդաց խարդախութիւնն ալ հոգ տարաւ, որ չըլլայ թէ քահանայապետն այս բանս հաստատէ:

Մինաս Թորոսեան՝ Զուագեղ գերդաստանէն էր: Ի սկզբան վաճառականի մը սատար էր՝ Սիպինը, ուր որ չէ թէ միայն լաւ սորվեցաւ գերմաներէն, այլ նաեւ Պարոն Պրուքէնթալին հետ — որ ետքէն Դրանսիլուանիոյ կառավար եղաւ — բարեկամութիւն սեղմեց: Թորոսեան Կերլայ եկաւ. ուր ի սկզբան տիրացու, ետքէն քահանայ ու կարգերէց եղաւ: Իր արժանիքը միայն վարձատրել ուզեց մեծ կայսրուհին, երբ այս տաղանդաւոր քահանան Դրանսիլուանիոյ եպիսկոպոս ըրաւ: Բայց Թէոդորոս Խնկանոսեան

*խորհրդականը, Նախանձէն գրգռուած (իւր եղբայրն ուզեց Դրանսիլուանիոյ Հայ եպիսկոպոսութեան աթոռը նստեցընել,) իրեն դէմ անհիմն ամբաստանութիւններ հանեց։ Իրը քննելու համար Գարլսպուրկէն երկու կանոնիկոս խրկուեցաւ Հայաքաղաք։ Ասոնք ուզեցին որ քննութիւնը Սողոմոնեան եկեղեցին ըլլայ։ Սակայն Հայ տիկնայք, որոնք կը կարծէին թէ խրկուած եկեղեցականք կ'ուզեն Հայերն ստիպել որ լատին արարողութիւնն ընդունին. "Մեզի պէտք չէ լատին արարողութիւն„* (nu trebuje la noi saecula saeculorum) *ըսելով՝ ճամբանին բռնեցին ու եկեղեցի մտնելու չթողուցին։ Քննիչք չկրցան եկեղեցի մտնել. եւ առանց բան մը լմնցընելու ետ դարձան*[1]*։ — Մինաս Թորոսեան. — որուն անմեղութիւնն ետքէն երեւան ելաւ — թէպէտ եպիսկոպոս չձեռնադրուե-*

---

[1] *Այս դէպքը յաջորդ տանաւորով կը գտնենք անցուած տարեգրոց մէջ.*

*"Զգեղյարգելի Տէր Մինասը,*
Bajtai *Եպիսկոպոսը,*
*կամեց իբմով մը պատժելու։*
*Ժողովուրդը պայս անելու*
*Չի թողաւ։ Զէ ամէն պիբա*
*քարկոծել կամեց զնաքա,*
*որք եկին զքահանան դատել*
*եւ ըզիւր բանը քըլընտել։*
*Նու դըրպույ լա նոյ* secula
seculorum*։ Զայն կու ողբա*
*ամէն քաղքըցոց ողբ, բերան.*
*որով քըլընտօղքըն փախան։*
*Խապար վարդապետին տարան,*
*ըզՏէր Մինաս արդարձուցան,*
*համ ըզհայ արարողութեան*
*սէրն վարդապետին, պատմեցան։„*

*Խօսակցութիւնը վալաքերէն լեզուաւ ըլլալուն պատճառն անտարակոյս այն է, որ քննիչք՝ Հայերէն ու Հայ տիկնայք Հունգարերէն լեզուն չէին հասկընար։*

ցաւ, սակայն այն 12.000 ֆիորինին դրամա-գլխոյն շահը, զոր բարեպաշտ Մարիամ Թերեզիա՝ ըլլալու Հայ եպիսկոպոսական սեղանին համար դրած էր — մինչեւ իր մահը վայելեց։

Ասանկով՝ կախ մնացած Հայ եպիսկոպո-սութեան վերականգումը չգործադրուեցաւ երբեք։

Ասոր վրայ քանի մը տարի անցաւ՝ ու (1733 Աւգ. 11ին) որբ մնացած Հայ կղերը կայսերական հրամանագրաւ Տրանսիլուանիոյ լատին եպիսկոպոսին իրաւասութեանը տակ դրուեցաւ առժամանակեայ կերպով, մինչեւ որ նոր եպիսկոպոս մը կարգուի իրենց։ Թէ-պէտ եղած են երբեմն երեւելի մարդիկ, որ նորոգել ուզած են Հայ եպիսկոպոսութիւնը Տրանսիլուանիոյ մէջ, բայց մէկ կողմանէ ներքին անմիաբանութիւնը, միւս կողմանէ գե-րագոյն իշխանութեանց չէզոք դիրք բռնելը, բայց մանաւանդ Հունգարիոյ կողմանէ գրով, խօսքով ու գործով ցուցուած սաստիկ հակա-ռակութիւնն ու ընդդիմադրութիւնն, այն վե-ճակի հասուցած են Տրանսիլուանիոյ Հայոց եկեղեցւոյն իրերն, որ կղերը բաւական ժա-մանակ այս բանիս դէմ յուսահատ պատերազմ մը մղելէն ետեւ՝ տեսնելով թէ ամէն բան անօգուտ է, ստիպուեցաւ լռել եւ լատին եպիս-կոպոսին վերին իրաւասութիւնն ընդունիլ։[1]

---

1 Տրանսիլուանիոյ Հայոց՝ եպիսկոպոսութեան չնորո-գուելուն պատճառներէն մէկուն վրայ, ընդարձակ տեղե-կութիւն կը գտնենք "Հայք Եղիսաբեթուպոլիս Տրան-

Ուստի այսօրուան օրս՝ թէպէտ լատին եպիսկոպոսը վաղեմի սովորութեան համեմատ Հայ եկեղեցին կը կառավարէ, ժամանակ ժամանակ շրջաբերական թղթերով այս եկեղեցւոյն ներքին վարչութեան վերաբերեալ հրամաններ կու տայ, պաշտօնական այցելութիւններ կ'ընէ եւ այլն. այսու ամենայնիւ հարիւր ութսուն տարուան պարապութեան միջոցին մէջ պատահած չէ, որ լատին եպիսկոպոս մը՝ հայածէս կղերիկոսի մը վրայ ձեռք դրած ու զինք օծած ըլլայ։

Դարուս երկրորդ կիսուն՝ նորէն ելաւ Լուքաչեան մը, որ Հայ եպիսկոպոսութիւնը Դրանսիլուանիոյ մէջ վերականգնէ։ Անձնուրաց ու մեծախորհ անձն ամէն միջոց բանեցուց, ամէն քար շարժեց. Հռոմ գնաց, խօսեցաւ, գրեց, գործեց։ Իւր մեծագումար ստացուածքն՝ ըլլալու Հայ եպիսկոպոսութեան թողուց — եթէ որ իր մահուանէն հաշուելով՝ տասը տարուան միջոցի մէջ Հայ եպիսկոպոսութիւնն եւ կամ գոնէ Հայ տեղապահութիւն (vicariat) մը հաստատուի Դրանսիլուանիոյ մէջ. — բայց իւր բոլոր ջանքը պարապի ելաւ. ամէն կողմանէ ընդդիմութեանց հանդիպեցաւ։ Այսպէսով Հայ եպիսկոպոսութեան խնդիրն դարձեալ առկախեալ վիճակի մէջ թաղուեցաւ. եւ Հայ եկեղեցին մնաց որբ ու լքեալ, եւ զուրկ ամէն օգնութենէ։

---

սիլուանիոյ կոչուած մատենին մէջ. էջ 222—229. — Վիեննա. 1893։

## 10. Ազգային եկեղեցիներ:

Հայաքաղքին մէջ կար եկեղեցի մը, այսօրուան կաթուղիկէին տեղը: Ասիկայ գերանաշէն պզտիկ բան մըն էր, որ կանգնուեցաւ այն միջոցին երբ ազգայինք ԺԷ. դարուն վերջերն — կամ աւելի ճշդիւ 1675ին — հոն գաղթելէն ետեւ անմիջապէս կանգնեցին:

Այս էր այն միջոցին աստուածային հրապարակական պաշտաման մի միայն տեղին: Շրջակայքն էր գերեզմանոցը: Ասոր՝ այսպէս ըլլալուն նշանն ու հետքերը կը տեսնուին դեռ մեր օրերը՝ հոն եղած պեղումներուն առթիւ. ուսկից շատ մը մարդկային ոսկրներ կ'ելլեն: Աս եկեղեցւոյն կամ՝ մատրան եւ ոչ իսկ հետքը կայ, որովհետեւ անցած դարուն երկրորդ կիսուն գետնայատակ եղաւ:

Այսօրուան Հայաքաղքին ամէնէն հին եկեղեցէն է Աւետման եկեղեցին. զոր Սիմայեան երկու եղբարք իրենց յատուկ ծախքովը կանգնել տուած են 1724ին: Եւ որպէս զի եկեղեցին միշտ կանգուն մնայ ու պահպանուի, հիմնարկութիւն դրին, որ դրամագլխուն շահէն տարուէ տարի հարկաւոր նորոգութիւններն ըլլուին ու պատշաճ պատարագները մատուցուին:

Եկեղեցւոյս վրայօք յաջորդները կը գտնենք գրուած.

“ԸզԵկեղեցին Աւետման
շինել տըվաւ ազգ Շիմայեան:

Ահ, կի մըտածիմ, ինչ սիրով,
   ահով ու ջերմեռանդութիւնով
Ի մէջ այս ժամին երգեցին.
   առաջ ամէն հայք կարդացին,
ԸզԱւետիս քեզ Մարիամ
   երգն: Ահ գիտեննաս բարեկամ,
Ըլարտըսուքըն բըռնելու.
   կարող չիմ չի յարաջելու:
Հայ լեզվով հօս կի պաշտըվէր
   Աստուած սըրտանց կի պատվըվէր.
Մէկ բերան զէնկի խօճաէն,
   որպէս աղքտէն, աղաէն:
Աղան դասը մէկ կի նըստէր
   հետ տիրացունուն կի երգէր.
Ըզպատվական շարականներ
   եւ ըզժամասացութիւններ:
Ով զըսթեփանոսին գիրքը
   գարդալու պարտըքին տակը
Խըսմաթ ունէր, նա կի ըլնէր,
   օսգի գըրքինը կի շարէր:
Ու ասորը կանցըվէին
   աղաներն ու կի բախշէին
Նորա, ով զայն կի գընտըվէր
   որ զգիրքը կերոնով երգէր:»

Բայց Սողոմոնեան եկեղեցին բաւական չէր հաւատացելոց բազմութիւնն իր մէջն ընդունելու: Ուստի եւ հասարակութիւնն որոշեց որ ի պատիւ Ս. Երրորդութեան, քաղքին կենդրոնը — գլխաւոր հրապարակին մէջ — մեծագործ

կաթուղիկէ մը կանգնէ: Հարկաւոր նիւթերը պատրաստուեցան, ու 1748ին սկսաւ եկեղեցւոյն շինութիւնը: Յովհ. Գասդալ եպիսկոպոսական փոխանորդն ու կանոնիկոսապետը (Domprobst), մայր եկեղեցւոյն հիմնաքարն օծեց նոյն տարւոյն Հոկտ. 8ին: Գործին վրայ հսկողն էր Խաչիկ Եսայեան հայ քահանան: Ասոր յանկարծական մահուանէն ետեւ վերակեցութիւնը մինչեւ շէնքին լմնալը՝ վրան առաւ Տէր Խաչիկ Տուհայեան:

Ազգայինք՝ ժողովածոյք մ՚ըրին մէջերնին. ու առաջին տարին քաղուեցաւ եկեղեցւոյն շինութեանը համար 11.671 ֆիորին, 78 քառանդան: Ամենէն շատը տուաւ Ալէքսա եկեղեցպանը, 9376 ֆիորին: — Մարիամ Թերեզիա տուաւ 1754ին՝ 3600 ֆիորին: Մինչեւ 1776, ժողվեցին մեր պապերը 81.836 ֆիորին ու 22 քառանդան: Քաղաքը տուաւ մինչեւ յիշեալ տարին 22.752 ֆլ. 96 քառանդան: — Ասանկով՝ մինչեւ 1776, ծախքն եղաւ ընդ ամէնը, 108.189 ֆիորին 18 քառանդան: — Սրբարանին (sanctuarium) գմբէթը ներկելու համար, տուաւ Գր. Գաբադան 85 կտոր ոսկի, կամ 425 հունգ. ֆիորին: Մեծ տապանակն եւ քարակոփ վանդակը (cancelli) շինել տուաւ Պետրոս Պալըդայեան ու վճարեց 876 ֆիորին: Յովհաննէս Յակոբշայի ծախքովը շինուեցաւ աւանդատան պզտիկ երկաթէ դուռը 159 ֆիորին 55 քառանդանով: Ութը մեծ քարէ սիւներն, որոնց վրայ

յատկապէս կը յենու եկեղեցւոյն բուն կամարը՝ շինել տուաւ Վարդան Վօղարեան։ — Ս. Գրիգոր Լուսաւորչի խորանը շինուեցաւ վաճառականաց ընկերութեան ծախիւքը։ Աստուածածնի Վերափոխման խորանը կանգնեց խաղախորդաց ընկերութիւնը։ — Այս հրաշակերտ շէնքին շինութեանը համար ազգայիններէն զատ — Մարիամ Թերեզեան դուրս առնելով — ոչ ոք դանկ մը տուաւ։ Միայն քաղաքը՝ մեր կրօնասէր հայրերն ու աստուածապաշտ տիկնայք — որոնք կամովին իրենց գոհարներն ու ոսկեղէնները եկեղեցւոյ խորանին վրայ դրին — կանգնեցին այս փառաւոր կաթուղիկէն։

Թէպէտ առաջին պատարագն ըսուեցաւ 1759 Սեպտ. 8ին, սակայն այս միջոցին միայն սրբարանը լմընցած էր։ Մեծագործ շէնքին, գեղեցիկ աշտարակն ալ, պատրաստ կեցած էր 1801ին երբ յանկարծ Մայիսի 4ին, կէս օրէն յառաջ՝ ժամը 10ին, ամբողջն ինկաւ կործանեցաւ։ — 1804ին. Յունիս 17ին Յովսէփ Մարդոնֆի եպիսկոպոսն օծեց զեկեղեցին։ Նոյն տարւոյն Օգոստ. 2ին, Թագուհւոյն հրեշտակաց օրը՝ նորէն կայծակը զարկաւ աշտարակին ու այրեցաւ։ — Արդէն 1800ին Ս. Երրորդութեան օրը զարկած էր, բայց մեծ վնաս մը չըրաւ։ — Կոտրած մեծ զանգակը նորէն ձուլելու հարկ եղաւ։ Այն օրէն մինչեւ հիմայ բան մը չպատահեցաւ, վասն զի աշտարակին վրայ լաւ շանթաձիգ դրուեցաւ, ու մէկալ կողմանէ եկեղեցին ապահովագրուեցաւ։

Կը դնեմ հոս, թէ՝ Սողոմոնեան ու թէ մայր եկեղեցւոյն պատկերները։ — Վերջինին մեծութեանը վրայ գաղափար մ՚ունենալու հա-



ՍՈՂՈՄՈՆԵԱՆ ԵԿԵՂԵՑԻ

մար գիտնալու ենք, որ երկայնութիւնը 58 մեդր. ներքին լայնութիւնը — մէկ պատէն մինչեւ մէկալ պատ — 22 մեդր եւ 80 սան-տիմեդր, իսկ պատերուն հաստութիւնը մէկ մեդր



ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ (ԷՋ 104)

եւ 25 սանդիմէդր է։ Եկեղեցւոյն դրսի չորս պատերուն բարձրութիւնը՝ մինչեւ դարեւանդը, կամ աշտարակներուն հիմը 22ական մէդր է։ Անկէ մինչեւ մեծ աշտարակին ծայրը՝ 29 մէդր ու 18 սանդիմէդր. ըսել է թէ եկեղեցւոյն բարձրութիւնը՝ աշտարակովը հանդերձ 51 մէդր ու 18 սանդիմէդր է։ Եկեղեցւոյն ճակտին դիմացի ճարտարարուեստ վանդակապատին սիւներուն վրայ կեցած են, տասուերկու առաքեալներուն քարէ քանդակները։

Այս երկու ազգային եկեղեցիէն զատ ունի Հայաքաղաք երկու մատուռ ալ։ Մէկն է, քաղքին հիւսիսային ծայրը Ջրի կոչուած փողոցին ամենէն հիւսիսային ծագէն ալ անդին՝ Գերեզմանոցին մէջ։ Ասիկայ շատ հին մատուռ մըն է։ Ունի ի մէջ այլոց 1640 թուականով՝ աղուոր պատարագի սկիհ մը։ Յաճախ պատարագ կ՚ըլլուի հոս, մանաւանդ ամառները։ — Իսկ միւսը՝ ասոր բոլորովին հակառակ կողմը կ՚իյնայ, ճշդիւ մէկ գիլոմէդր հեռու, դէպ ի հարաւ, վերջիշեալ փողոցին մէկալ ծայրը։ Ասիկայ նորաշէն գեղեցիկ ու կէս գոթական ճարտարապետութեամբ շինուած սիրուն մատուռ մըն է, Յիսուսի սրտին նուիրուած։ Այս՝ Ս. Գրիգոր Լուսաւորչի որբանոցին ստացուածքն եղած մատրան հիմը թէպէտ՝ 1885ին դրուեցաւ, սակայն 1894ին օրհնուեցաւ։ Չէ թէ միայն որբանոցի աշակերտաց, այլ նաեւ անոր շրջակայքն եղած հաւատացելոց հոգեւոր մխիթարութեան կը ծառայէ։

## 11. Եկեղեցւոյ ու բարոյական կենաց վերաբերեալ կարեւոր որոշմունքներ:

Քաղաքային խորհրդանոցն իր դատաւորն ու խորհրդականներն ընտրելէն ետեւ, առաջին գործքն եղաւ՝ եկեղեցւոյ ու բարոյական կենաց վերաբերեալ քանի մը օրէնքներ ու կանոնադրութիւններ դնել. ու անոնց պահպանութեանը վրայ խստիւ հսկել տալ եւ չպահողները տուգանօք պատժել:

Կը համառօտեմ հոս, եկեղեցական ու աշխարհական առաջնորդաց վերատեսչութեամբ 1727ին Կերլա գումարուած ընդհանուր ժողովոյն կանոնադրութեանց գլխաւորները:

1. Թէ որ Ս. Յակոբայ պահքը ծննդեան պահքին հետ մէկտեղ հանդիպի, մնայ անշարժ, ինչպէս որ է: — Եթէ Քրիստոսի ծնունդը չորեքշաբթի կամ ուրբաթ ալ գայ, միս ուտուի: Բայց ծննդեան ութ օրն ալ միս ուտել չ'ըլլար. կաթնեղէն կրնայ ուտուիլ: 2. Յայտնութեան ճրագալուցին պահք բռնելու է, սուրբ Եկեղեցւոյ հրամանին համեմատ: — Թէ որ Մկրտութիւնն ու Աստուածայայտնութիւնը չորեքշաբթի կամ ուրբաթ ըլլայ, միս ուտելու հրաման չկայ: — Ով որ հին սովորութեան համեմատ՝ Յայտնութենէն ետեւ ութը կամ տասն օր միս կ'ուտէ, եկեղեցւոյ երկու ֆունտ մոմ տալով պատժուի: 3. Բուն բարեկենդանին յաջորդող երկուշաբթին ու երեքշաբթին — Հայոց սահմանած օրինացը դէմ — միս ուտողը՝

հինգ ֆիորին տուգանք վճարէ։ — Մէկն որ Զատկէն ետքը չորեքշաբթի եւ ուրբաթ մսեղէն ուտէ մինչեւ Համբարձում, պատժուի։ — Նոյն իսկ ճամբորդութեան մէջ՝ պահքի օրերն առանց հրամանի միս ուտել չ'ըլլար։ 5. Կիրակի օրերը եկեղեցի չգնացողը, քարոզ չլսողը եւ կամ տօնի օրերն առանց մասնաւոր հրամանի սուրբ չբռնողը՝ պատժուի։ — Ծննդեան յիսնակին (advent) մէջ հարսնախօսութիւն ու երաժշտութեամբ մեծահաց սեղան ընողն՝ եկեղեցւոյ հինգ, իսկ քաղաքային վարչութեան երկու ֆիորին տուգանք վճարէ։ 6. Ծառազատիկն — 1729ին — շտկուի, ըստ Լեհաստանի Հայոց։ Հակառակ կեցող թէ եկեղեցականն ու թէ աշխարհականը տասն ոսկի վճարէ։ 7. Ամէն երեք տարի մէյ մը ընդհանուր ժողովք գումարուի. հեղ մը Կերլա, հեղ մը Եղիսաբեթուպոլիս։ 8. Թէ որ մէկը՝ հին սովորութեան համեմատ, այն դիտաւորութեամբ, որ իր մեղացը թողութիւն պիտի ըլլայ՝ տուար մորթէ, կամ մատաղ ընէ, տասուերկու հունգարական ֆիորին տուգանք վճարէ։ Եթէ տուգանքը չի վճարեր, երկրէն աքսորուի։ 9. Կախարդութիւն ընողը, կամ կախարդական ջուր գործածողը, կամ ուրիշին ընել տուողն ու խրատողը՝ քսանուչորս ֆիորին վճարէ։ 10. Գիտնայ ամէն մարդ, որ իր դուստրը միա՛յն այն ատեն կրնայ նշանել, երբ տասուերկու տարին լմնցուցած է. ու տասուիրեք տարեկան եղած ատեն կրնայ հարսնացընել։ Քահանան, որ վերոյգրեալ ժամանակէն

յառաջ նշանն օրհնէ կամ պսակէ, տարի մը իր թեմէն ու եկամուտէն զրկուի։ 11. Ամէն մարդ գիտնայ, որ երեք տարի ետքը գլխուն վրայ մարգարիտ ու ակնեղէն կրելն արգելուած է։ Երեք տարին անցնելէն ետեւ — գլխուն վրայ գտնուած — մարգարիտն ու ակնեղէններն՝ եկեղեցւոյն պիտի տրուին։ 12. Հարսանեաց առթիւ ոչ ոք պարտական է կերակրեղէն խրկելու։ Բայց փեսային օգնութիւն ընելն արգելեալ չէ։ Ո՛չ զփեսան եւ ո՛չ զհարսը պէտք է բաղանիք տանիլ։ Ասկից ետքը թաշկինակ ալ պէտք չէ բաժնել․ բայց եթէ հատ մը փեսաւէրին, հատ մը փեսային, հատ մը փեսային հօրն ու հատ մը վարդահին։ Ո՛չ քահանային, ո՛չ պիրովին եւ ո՛չ մէկու մը խալաճ խրկուի։ Հարսն սքօղելու հրաման չկայ․ եւ ոչ ալ փեսան գտակին վրայ նարօտ դնէ։ Սակայն պսակ կրնայ դրուիլ հարսին գլխուն վրայ։ Ամէն մարդ հարսնիք չհրաւիրեն․ հապա զանոնք միայն, զորոնք հարսին ու փեսային հայրն ուզէ։ Պսակուելու ատեն, եկեղեցին՝ կերոն եւ այլն տանիլ չ՛ըլլար․ եւ ո՛չ ալ հարսին ու փեսային մեղր տրուի որ ուտեն։ Պսակէն դառնալէն ետքն, ո՛չ եկեղեցւոյն բակն եւ ո՛չ ուրիշ տեղ խունկ ծխելու հրաման կայ։ Փեսան սրով չերթայ պսակուելու։ Հարսանիք գնացողը՝ փեսային ու հարսին պարգեւ չտանի։ Բայց հայրն ու մայրը կրնան իրենց կարողութեանը համեմատ պարգեւ տալ։ Ասոնց դէմ ընողն երեք ոսկի տուգանք վճարէ։ 13. Հինգ հարիւր ոսկիէ նուազ

ունեցողը բարակ չուխայէ հագուստ չգործածէ. եւ ոչ ալ այսպիսիններուն ամուսիններն դամասկէ եւ ուրիշ թանկագին նիւթէ զգեստեղէններ հագնին։ — Բայց իւրաքանչիւր ոք, ինչ որ մինչեւ հիմակ ունեցած է եւ կամ ծնողացմէ ընդունած է՝ զանոնք կրնայ գործածել։ Սակայն եթէ իմացուի, որ մէկը հիմակ ասանկ հագուստ կարած կամ կարել տուած է, եկեղեցւոյն տասուերկու ֆլորին, իսկ դատաւորաց մէկ ոսկի տուգանք վճարէ։

Կը յաւելում հոս, համառօտիւ յիշուած օրէնքներուն բուն բնագիրն, ըստ ժողովոյն արձանագրութեան, որ գումարուած է Կերլա հայաքաղաքն 1727ին։

"Թվ. ՌՃՀԶ. օգոստոսի իա. եւ ի թվոյն քրիստոսի 1727. սեպտեմ. ա.։

Շնորհօքն աստուծոյ կամեցողին փարեաց ժողովեցանք մինք հայոց ազգըս, թէ քահանայք, թէ աշխարհականք ի քաղաքըս հայոց կեռլա. ու հաստատեցինք մեր մէջ զսուրբ միաբանութիւնը, որ այս ներգոյ գրեալ կանոններն ու բունդդերն մնան անշարժ ու հաստատ մեր մէջ մշտնջենապէս։ Ու վօվ որ այս կանոններուն ընդէմ կաննի, թէ քահանայ, թէ աշխարհական նա, ունենայ պատիժ քաշելու, կամ թէ ճուրում տալու, ինչպէս որ ալ վար գրած է։

ա) Նախեւառաջ, թէ օր հանդըպի Ս. յակօբա հետ ծնընդեան պասուցը մէկտեղ, նա,

տեղը մընայ անխախտ։ Ասոր ընդդէմ կաննօղը, ճուրում ունենայ տալու ՝եկեղեցուն բ. օսդի։

բ) Ծընունդը թէ որ դշ. կամ ուր. Հանդըպի. ուտիս ուտվի եկեղեցոյն ատադին գօրա։

գ) Ծնընդեան ետեւ ութն օր, մարդ ալ Հըրց[1] չուտէ. ինչպէս որ ալ վաղուց Հաստատած է զայս բանըս։ Միայն ճերմակ ուտելու թողութիւն կայ. ու թէ որ Հըրց ուտէ նայ, ունենայ ճուրում տալու բ. մաճրի։

դ) Թէ որ ջուր օրՀնեաց ճրագալուծն, այսինքն խդումըն, ուտեաց որ ըննի, նա, պարտ է պաս ուտելու, սուրբ եկեղեցուն Հրամանին գօրա։ Վօվօրն դէմ ըլլայ, ունենայ բ. մաճրի եկեղեցուն ճուրում տալու ու ա. ալ դատաւորաց։

ե) Թէ որ ջուր օրնէնքն պասուց որ ըննի, ինչպէս դշ. կամ ուր. նայ պարտական ըլլայ ամէն մարդ, զպասը տեղը բըռնէլու. ու ուտիս չիուտելու, սուրբ եկեղեցոյն ատադին գօրայ։ ՁիՀնազանդօղն ունէնայ ճուրում տալու, սուրբ եկեղեցուն գ. փունդ մօմ. ու դատաւորաց ա. մաճրի։

զ) Թէ գտվի մեր մէջըն, որ վաղուցու սովորութեան գօրայ ջուր օրՀնեացն ետեւ ը. կամ ժ. որ Հըրց ուտէ, ունենայ եկեղեցուն ճուրում տալու բ. փունտ կերօն. ու դատաւորայ բ. մաճրի։

---

[1] Harṭi, վալաքերէն բառ է։ Կը նշանակէ այն ժամանակն, որուն մէջ պաՀքի օրերն ալ միս ուտելու Հրաման կայ։

է) Թէ որ մէկնիվօրն բուն բարկենդանին՝ բշ. ու գշ. ուտիս ուտէ ընդդէմ մեր Հայոց սահմանքին, նայ ունենայ ճուրում տալու եկեղեցուն գ. մաճրի ու դատաւորաց բ. մաճրի:

ը) Թէ որ մարդ գտվի, որ զատկին ետեւանց, զարտ զճերմակ ուտիսն կամ զխդակ պասն մըսէղէն ուտէ մէկնիվօրն դշ. կամ ուրբաթն, կամ ինչուրի համբարձում, ըստ հին սովորութեան, նայ ունենայ ճուրում տալու եկեղեցուն ե. մաճրի. եւս դատաւորաց ե.:

թ) Թէ որ մարդ ճամբօքն, կամ ուրիշ տեղ պասուց օրն ճերմակ ուտիս կամ թէ միս ուտէ, առանց թողութեան, նա, ունենայ ճուրում տալու եկեղեցոյ բ. փունտ մօմ ու դատաւորաց գ. մաճրի:

ժ) Վօվօր տօն օրն կամ թէ կիրակիքն ժամ չիքա, պատարագ եւ քարոզ չի լսէ, կամ թէ զունըն չիբըռնէ արանց պատճըռի եւ հրամանի, նայ, ունենայ եկեղեցոյն բ. փունտ մօմ տալու ու դատաւորաց բ. մաճրի:

ժա) Վօվօր ատվէնդին հարմնիք կամ թէ շանվօք, կամ թէ հարկ լաւուչոցմով անէ,[1] նա, ունենայ եկեղեցւոյ ե. մաճրի ճուրում տալու ու դատաւորաց բ. մաճրի:

ժբ) Ջուազատիկըն, որն որ կուգայ Հայոց թվին ուճհ.ին. եւ ըստ լաթինացոց 1729ին, Ջ.ին տարին ունենանք կատարելու. այնպէս

---

1 Դրանսիլուանիայի Հայոց լեզուաւը՝ Հարկ կընշանակէ սեղան, ճաշ. — լաւուչի՝ կը նշանակէ երաժշտութիւն, նուագարան: Իմաստն է. Թէ որ մէկը սեղան տայ երաժշտութեամբ հանդերձ:

ինչպէս օր լեհցի հայերն կի կատարին․ այսինքն Շ․ին տեղը զհօն բանեցնելու, որ չիտակ գայ զատիկն։ Օվ օր առոր հակառակ ըլայ, թէ քահանայ, թէ աշխարհական, ունենայ ճուրում տալու եկեղեցւոյն ե․ օսգի ու դատաւորաց եւս ե․ օսգի։

ծգ) Ամէն իրեք տարի ընդանրական ժողովք ըլայ մեր մէջ․ ա․ անգամը ի Կեօլան․ ուրիշ անգամը ի Պաշֆալօմն կարգօվ, օր թէ քահանայ, թէ աշխարհական ըլայ, ունենայ իք մը մեծ տարտ կամ պակասութիւն, թէ հոգեւոր ու թէ մարմնաւոր, նայ, ընտրըվի ժողովին մէջ։ Ու վօր քաղքըցիքըն հակառակ ըլան այս ժողովքին, նա ունենան ճուրում տալու իե․ մաճրի․ արնատ գումբանիային։

ծդ) Թէ օր մարդ տավար մօրթէ, վատ դիտաւորութեամբ, հին սօվօրութեան գօրայ, թէ անօվ մեղաց թողութիւն պի գտնու, կամ թէ իւղ անուշ անէ, կամ մատաղ նայ, ունենայ ժբ․ մաճրի ճուրում տալու եկեղեցուն, ու թէ թարկը չիտայ, աս ատաթինը, աս երկրէն աքսորվի ու դուս ելէ։

ծե) Վօվօր կախարդութիւն անէ, կամ աղօթէ, կամ երկու զաբնաւոր ջուր արնու․ եւ ուրիշ բան ալ, ասոնց գօրայ կախարդական անէ, կամ օզկային անել տայ, կամ խրատէ, կամ մահանայ ըլայ, այնպիսի մարդն իդ․ մճրի․ ճուրում տայ եկեղեցուն։ Իրեքում բայը ըլայ մեծաւորացը։

ծդ) Հինտիկուց ինտան, գիտնայ ամէն մարդ, որ այնպէս շանվէ ղդուստըրն, որ երբոր ըլլայ ժբ. տարեկան լըման, որհնըվի նշանըն. ու երբօր ժգ. տարեկան ըլլայ նայ պըսակ երթայ։ Չէ, ինչպէս ինչվաս էղիլէ, որ դաս մը ժա. տարեկան ու դեր ալ վար շանվիլին, գարգիլին. նայ համ ընդդէմ աստուծոյ ու օրինաց ու համ ընդդէմ աշխարհիս սովորութեան գօրայ էղիլէ. Որ քահանան գտվի, որ ալ առաջ քան զժբ. տարին նշան օրհնէ, կամ թէ քան զժգ. տարուն մուտը առաջ պսակ տայ, նայ, ա. տարիմն իրեն ժողովորթենէն ու կէլուրէն զըկըված ըլլայ։

ծե) Ամէն մարդ գիտնայ, որ ասգից գ. տարեն վրայ վարդն ու մաքրիտն կարգիլվի, որ չիգտվի մազկըփի վրայ ու թէ մարդ ընդդէմ գտվի ասօր վրայ, իրեք տարին լմնայ նայ, վարդերը ու մաքրիտը եկեղեցուն առնուն. ու չորսին իրեքում բայըն դատաւորաց է։

ծզ) Հարսնեց կողմանէ խալած մարդ ալ պարտական չիլայ տալու, ոչ խաշլուն, ոչ օզկաներն։ Միայն թէ վօվ կամենայ փեսին օգնութիւն անելու, կըլայ։ Ջհարսն ու զփեսան ալ շատ սըօպօտ չըլայ բաղնիք տանելու։ Ղալեխ մարդու ալ չիտան, զարտօր մէնմը խաշլուին, մէմը փեսին. մէմը փեսին հօրը ու մէմմը վադահին։ Ոչ քահանու, ոչ եկեղեցընայ, ոչ պիրօվին եւ ոչ կորիճվորաց խալած չի տրվի. միան թէ քահանու հարսնիքէն նասիպ պի խըռկվի։ Ջհարսը ալ շատ չի քօղին. փեսին

եւս գոտկին վրայ նարօտ չիդնին. միայն թէ վէնէց դրվի, կամ թէ գօրունա հարսինը գլխուն վրայ զարդարած. ուրիշ բաներով ալ ըստ կարի: Եբօր ըլայ հինադրօնք ձէնելու, միայն զվօվ օր հարսինը հարը ու մարը սիրէ, զնոքա պի ցենին. ու հարկին օրըն զփեսին հարըն կամ փեսան զորոնք սիրէ, զնաքա հարսնիք հրամեցէք պանէ: Նոր կարգուածնուն հինտիկուց ինտան սլօպօտ չիլայ մազկապ հագնէլու: Ոտնվորաց հարկ մարդ ալ չանէ. բայց թէ կամենայ փեսան, նա, պի հարկէ զոտնվորաքն: Պսակ երթան նա, կերոններ, խալա չիտանին եկեղեցի, ոչ մեղը ուտեցնուն հարսին ու փեսին, ժամն: Ժամին ազպարն կամ ուրիշ տեղ, պսակէն դառնան նայ, խնկով չի ծխին. հաւ ու խալաճ չի թապլին հարսին ու փեսին գլխուն վրայօվն. ոչ ալ հարսին գլխուն վրայ խալաճ կախ անին: Փեսան թռօվ պսակ չերթա, ոչ օզկայ տեղ թռօվ քալէ: Վօվ օր հարսնիք երթայ նայ, պէրնա չիտայ, զարտ օր փեսին ու հարսին մարը ու հարը հարկին օրը պիտան պաշխըշ հարսին ու փեսին իրենց կարեացը գօրայ: Վօվ օր ընդդէմ կաննի այս բանիս. ունենայ եկեղեցոյ բ. օսգի ու դատաւորաց ա. օսգի ճուրում տալու:

ԺԹ) Եճ. մաճրի օսգի սէրմիյա չունեցօղն, բարակ չուխէ հագուստ չիհագնի: Իրենց կնտիքն ալ սլօպօտ չիլան ատամասդէ կազու հապաշու կամ սուգնա կամ խաֆդան հագնէլու, ոչ արծըլթէ գօտի կապելու: Բայց ինչ որ ինչվաս

*կարած հագուստ ունենան, զան սլօպօտ ըլլայ հագնելու. ու ան ալ ինչ օր ծնօղացմու տված ունենան։ Տարը հինտիկուց ինտան, իմանան ըզորը այսպիսի հագուստ կարելով, ունենայ եկեղեցյ ժբ. մաճրի ճուրում տալու ու դատաւորաց ա. օսգի։*

*Եւ վասն հաստատութեան եւ ամրութեան այս վերոյգրեալ կանօնացս, մինք Հայոց քաղքըրցիքըրս, ի պաշֆալօվցիքս եւ ճուրճօվցիքս, թէ քահանայք, թէ աշխարհականք մեր յօժար կամօքն ըստօրագրեցանք. ի քաղաքս Կեռլա։*

Մինաս Պարոնեան.
*աստուածաբանութեան վարդապետ։*

Ես Տէր Մինաս Թորոսն.
*բրէպանոշ Կեռլայի.*

Ես Տ. Օհաննէս.
Ի *պաշֆալովի բլէպանուշ.*

Ես Տէր Սիմոն Թորոսն,
*բլէպանուշ հայոց ճուրճովու*
Սէնդ *միքլուշի.*

Ես *եկեղեցպան* Կեռլայի *հայաքաղաքի,*
Խաչիկ Ցակօբեայէ.

Ես ղուրէք Օհաննէս
*եկեղեցպան իպաշֆալօվու.*

Ես *ճուրճօվու վիցէ եկեղեցպան*
Մանուկ Աբրահամի.

Ես պիրով Հայուքաղաքի կեռլաի
Սողոմոն Դոտէրլէ Շիմոյեանց

Ես Զոռէն պիրով գումբանիայի.

Ես Օհանէս որդի Ակօբշայի պիրով ճուրճովլի.

## 12. Հայաքաղքին երեւելիները:

Կերլա Հայաքաղքին մօտաւոր յառաջադիմութեան ու բարոյական կենաց զարգացման մեծապէս նպաստամատոյց եղած են, խել մը գիտնական ու քաղաքագէտ եկեղեցականներ, տէրութեան բարձրագոյն պաշտօնատէրներ, պատգամաւորներ, բժիշկներ, դատաւորներ, ուսուցիչներ ու հարուստ ազգային վաճառականներ: Ասոնք Հայաքաղքին աճման ու զարգացման շէնքին մէջ իբրեւ թէ մէյ մէկ պատուական քարեր են, եւ ըստ այսմ յիշատակաց արժանի: Սակայն մենք միայն յաջորդներուն վրայ կ'ուզենք այստեղ յիշատակութիւն ընել:

### Ա. Աւքսենտիոս Վրզարեան:

Ընթերցողներն արդէն առիթ ունեցած են կարդալու եւ ինչ ինչ տեղեկութիւններ ստանալու Աւքսենտիոս վարդապետ Վրզարեան Ալատինայ եպիսկոպոսին, առաքելական փոխանորդին ու Դրանսիլուանիոյ Հայոց առաջնորդին վրայ: — Ինք անտարակոյս, չէ թէ միայն Հայաքաղքին, այլ նաեւ բոլոր Դրանսիլուանիոյ ազգայնոց առաջին կարգի աստղն է, որ իւր ընդարձակ գիտութեամբն, ձեռնարկութեան





ԱՒՔՍԵՆՏԻՈՍ ՎՐԶԱՐԵԱՆ (ԷՋ 116)

ոգւոյն ու հեղինակութեամբը՝ շարունակ ու մեծ յաջողութեամբ գործած է ինպաստ Դրանսիլուանիոյ Հայոց. որ պաշտպանեց զիրենք ամէն բանի մէջ ու զանազան դժուարութիւններու յաղթելով՝ հիմնեց իրենց համար յատուկ Հայաքաղաք մը։

Այս մեծ մարդուն յիշատակն ու անմոռանալի արդիւնքներն ոսկեղէն անջնջելի տառերով դրոշմուած են ամենուն սրտին մէջ։ Արժանի է ուրեմն, որ Հայաքաղքին արդիւնաւոր մարդիկներու շարքն իրմով սկսինք։

Ապահովապէս չենք կրնար ըսել, թէ այս երեւելի ու գիտնական անձն ուր եւ երբ ծնած է։ Շատ հաւանական է, որ Մոլտավիայի Պօդուշան քաղաքն եկած ըլլայ աշխարհ. որովհետեւ հին արձանագրութեանց մէջ, իր տոհմային անունին քով հասարակօրէն պօդուշանցի մականունն ալ դրուած կը գտնենք։ Ճուրճովի ուղղ. ժողովրդապետութեան շատ ճշդութեամբ գրուած պատմութեան երկրորդ գլխոյն մէջ՝ Օգսէնտիոս Վրզարենց՝ Պօջանցի, կ'անուանուի։ Նոյնպէս Հայաքաղքի ժողովրդապետական եկեղեցւոյն մէջ պահուած արձանագրութեան համեմատ՝ պոչանցի կը կոչուի։ Դարձեալ՝ Վարդան Յունանեան, Լէմպէրկի արքեպիսկոպոսն (1681—1715) իր մէկ նամակին մէջ՝ զինք, Պոդուշանցի Աւքսենտիոս Վրզարեանց կ'անուանէ։[1]

---

1 Doctor Oxendius Botsanensis Verzeresko, col-

*Իր ծննդեան տարին աւելի դիւրաւ կրնանք — հաւանականապէս — գտնել, պատմական յիշատակագիրներէն առնելով։ Անդրէաս Իլյէշ*[1], *Փրանկ. Ֆաշինկ*[2] *ու Յոկս. Պէնգէօ*[3] *Վրզարեան եպիսկոպոսին վրայ խօսելով՝ կ'ըսեն թէ* 1684*ին, Հռոմէն դարձաւ իբրեւ ձեռնադրուած քահանայ, հոն տասնուչորս տարի գեղեցիկ դպրութեան ու եկեղեցական գիտութեանց մէջ կըրթուելէն ետեւ։ Գոնէ* 15 *տարեկան մը կար, երբ Հռոմ գնաց* (1670*ին*)*։ Ուստի ըստ այսմ՝ իր ծննդեան տարին կրնանք* 1655*ին դնել։*

*Նմանապէս չենք գիտեր, թէ ինչ էր իր ծնողացն անունը. որովհետեւ մկրտութեանց ամենէն հին մատեանը կորսուած է։ Վարդան Յունանեան, իր մէկ մուրհակին մէջ* (1687*ին*) *կ'ըսէ թէ Աւքսենտիոս՝ Լուսիկին որդին էր։ Ուրեմն իր հայրը՝ Լուսիկ Վրզարեան էր։ Իսկ մօրն ո՛չ ցեղական եւ ո՛չ մկրտութեան անունը կը յիշուի տեղ մը։*

*Աւքսենտիոս, ինչպէս վերն ըսինք,* 1684*ին Հռոմէն, իբրեւ առաքելական քարոզիչ՝ Տրանսիլուանիա անցաւ, այն բացորոշ կամօք, որ Մոլտավիայէն հոն գաղթող ազգայիններուն՝ ուղղափառութեան ճշմարտութիւնները ճանչ-*

---

legii urbaniani alumnus, per me consecratus est in Episcopum Aladiensem, anno Dni. **1691**.

[1] Ortus et Progressus variarum in Dacia gentium ac religionum. Claudiopoli. **1794**. **էջ. 64**.

[2] Nova Dacia, sub R. P. Francisco Fasching, Claudiopoli. **1743**. **էջ. 25, 29**.

[3] Transsylvania. Auctore Josepho Benkö. Claudiopoli. **1833**. **Հատ. Բ. էջ. 560—561**.

ցընէ։ Իր այս դիտման ամենէն յառաջ ու ամենէն աւելի ընդդիմացաւ Մինաս, Ջիլիֆտար Օղլու եպիսկոպոսն։ Եւ ինչպէս որ հասարակօրէն ամէն նոր տեսակ շինուածքի, ամէն նոր կարգադրութեան պտուղն՝ աշխատութիւն, վշտակրութիւն ու կասկածանք է. անանկ ալ պատահեցաւ Աւքսենտիոսի հետ։ Իրենները՝ զինք իբրեւ խաղաղութեան վրդովիչ ու հաւատքի խռովարար Դրանսիլուանիոյ կառավարութեան ամբաստանեցին։ Բայց չվախցաւ. սկսած գործքէն ետ չկեցաւ։ Չորս տարի անսուաղ գործեց բանիւ եւ գործով։ Վերջապէս իր աշխատութիւնը վարձատրուեցաւ, այնու՝ որ նոյն իսկ անոնք՝ որոնք իր ամենէն մեծ թշնամիներն էին — ի մէջ այլոց Մինաս, քահանայից բազմութեամբ մը — յայտնեցին իր առջեւը թէ ուղղափառ եկեղեցին դառնալու կը փափաքին։ Մինասի դարձը պատահեցաւ 1686ին Լէմպէրկ. ուր հրապարակաւ Բալլավիչինի Կարդինալին՝ Իննովկենտիոս ԺԱ. պատին նուիրակին առջեւ դրաւ հաւատոյ դաւանանքը[1]։ Մինաս, որ ուղղափառ հաւատքին ամենէն մեծ պաշտպաններէն մէկը դարձաւ, մեռաւ Պիսդրից քաղաքը մեծ սրբութեամբ։ Ստեփ. Ռօշքա իր տարեգիրներուն մէջ կ'ըսէ իրեն վրայօք. “Մինաս, Մոլտավիոյ եպիսկոպոսը Լէմպէրկէն՝ հունգա-

1 Doctor Minas Eudoxiensis Cillifdar-Oghlu cognominatus, Episc. Moldaviae, venit mecum Leopolim, et coram Cardinale Pallavicini, Innocentii XI legato catholicam professus est fidem, a. Dni. **1686**. aerae Armenorum **1135**. — Hist. arm. Viennae. էջ. **68**.

րական լեռներէն անցնելով՝ Առտեալ դարձաւ: Հիւանդութիւնն . . . որուն պատճառաւ շատ կը տանջուէր — վերջ տուաւ իր կեանքը: Վալաքներուն գերեզմաննոցը թաղուեցաւ: Շատ սրբակեաց անձ մըն էր. ինք զինք կը ձաղկէր: Շարունակ պահք կը պահէր ու կ՚աղօթէր: Ժամասացութիւնն ամէն օր կ՚ըսէր: Գիշերները շատ անգամ՝ կ՚ելլէր ու իր խցին մէջ պտըտելով կ՚աղօթէր. Աս բանս՝ շատ հեղ իմ աչուըներովս տեսայ:„

Յունանեան — Լէմպէրկի արքեպիսկոպոսն — որ Գրանսիլուանիոյ Հայոց վրայ եկեղեցական իշխանութիւն մը կը բանեցընէր, իրենց հոգեւոր հովուէն զրկուած հաւատացելոց հոգեւոր պիտոյքները հոգալու համար զՎըղարեան վրանին ընդհանուր փոխանորդ ու հոգաբարձու դրաւ, մինչեւ որ առաքելական գահն, ննջեցելոյն տեղն ուրիշ եպիսկոպոս մ՚անուանէ. հրամայելով իրեն, որ մեռնող եպիսկոպոսին ստացուածքները ժողովէ եւ քովը պահէ, մինչեւ որ անոնց վրայօք նոր կարգադրութիւն մ՚ըլլուի:

Աւքսենտիոս, իբրեւ եպիսկոպոսական փոխանորդ աւելի ընդարձակ իշխանութեամբ ու հեղինակութեամբ զգեստաւորուած՝ ալ յառաջուան ընդդիմադրութիւնները չգտաւ: Դարձի գործքը՝ դիւրացաւ, որ քան զօր յառաջացաւ ու աւելի տարածութիւն ստացաւ: Եկեղեցականաց այն մասն ալ, որ մինչեւ հիմակ ուղղ. հաւատքին սկզբունքներն ընդունելու կ՚ընդդի-

մանար, յայտնեց թէ Հռոմայ գահուն հետ կը միանայ։ Աս ըլլալէն ետեւ՝ հաւատացեալց ժողովն, զՄնտրուլ գլխաւոր քահանան ութ ուրիշ քահանայի հետ Լէմպէրկ ղրկեց։ Ասոնք՝ Կանտելմոսի — Բալլավիչինիի յաջորդին — հաւանութեամբը, Վարդան Յունանեան արքեպիսկոպոսին առջեւն՝ յանուն բոլոր Դրանսիլուանիոյ հայոց, Ս. Հօր հաւատարմութիւն խոստացան։ Խնդրեցին միանգամայն Իննովկենտիոս ԺԱ. պապէն որ իրենց վրայ եպիսկոպոս դնէ զՎըզարեան։[1] — Իննովկենտիոս բարեհաճութեամբ ընդունեցաւ իրենց աղաչանքը։ Սակայն, իր — 1689ին պատահած — մահն արգելեց որ խնդիրքնին կատարէ։ Այսու ամենայնիւ իւր յաջորդը՝ Աղէքսանդր Ը. զԱւքսենտիոս — 1690. Հոկտ. 3ին — համառօտագրով մը Դրանսիլուանիոյ հայոց առաքելական փոխանորդ ու երեսփոխան անուանեց։

Կը ներփակեմ հոս քահանայապետական համառօտագրութեան ժամանակակից հայերէն թարգմանութիւնն, որուն վրայօք այսպէս կ'ըսէ

---

1 Eliam sacerdotem armenum, cum octo aliis Leopolim, ad nuntium apostolicum ablegarunt, ubi annuente Cardinale Cantelmo, Pallavicini successore, coram Archiepiscopo Leopolitano, Vartano Hunaniano totius armenae nationis Daciam incolentis nomine. perennem Romano Pontifici subjectionem jurejurando promiserunt. Litteras etiam ad Innocentium XI . . . exararunt, quibus ut armenis novello Ecclesiae germini, fidelium Pater bene precaretur, et Oxendium de se quam optime meritum episcopali honore insigniret. imis precibus exorarunt. Անդ. Իւլյէլ. Ortus et progressus. Claudiopoli. 1764. էջ. 66.

Վ. Ցունանեան. "վկայեմ, թէ հաւատարմաբար թարգմանեալ է ի լատինականէն ի հայկական բարբառ:" —

## ԱՂԵՔՍԱՆԴՐ ՓԱՓ Ը. ԵՐԴ.

*Սիրելի որդի մեր, օգսենտիէ Ողջոյն եւ առաքելական օրհնութիւն:*

Վասն աւանդելոյն մեզ յաստուածուստ հովուական դիտապետութեանս, եւ Հոգաբարձութեան, ըստ տուեցելոցն մեզ ի վերուստ, կամելով օգնել ոգեւոր հարկաւորութեանցն Հայոց Պուղտանու, որք են այժմ ի սփիւռս Սիգուլիաց եւ Թռանսիլվանիոյ. ակնկալելով մեք. ի հաւատ քո. ի խոհեմութիւնդ. յանարատութիւնդ. ի վարդապետութիւնդ. յարթնութիւնդ. եւ ի նախանձդ ուղղափառ օրինաց Աստուծոյ ամենից արդելմանց եկեղեցականաց. բանադրանաց նզովից. եւ այլոց որոց եւ իցէ իրաւանց Աստուծոյ. կամ կանոնաց. եթէ ի նոսա որով եւ իցէ աղագաւ գուցէ անկեալ իցես. գործադրութեամբ սոյնոյ կոնդակիս. արձակեմք զքեզ, եւ արձակեալ գոլ համարեալք. խորհրդով ոմանց գերապատուելեաց եղբարց մերոց Գարտինալաց սրբոյ եկեղեցւոյս Հռոմէականի, որք են վերակացուք պաշտաման աճմանն հաւատոյ. եւ մանաւանդ վերադիտողք իրաց պատուելի ազգին հայոց. զքեզ վասն. հայոց պուղտանայ. որք այժմ գտանին ի սփիւռս Սիգուլեաց, եւ Թռանսիլվանիոյ. վէքիլ եւ երեսփոխան առաքեմք. կարգեմք եւ հաստատեմք. ամենայն իշխանութեամբ. որք են հարկաւորք. սակայն զի դու ամենայն հնազանդութեամբ ստորադրեցեալ լիցիս իշխանութեան նախասացեալ ժողովյն Գարտինալաց: Վասն որոյ հրամայեմք ամենեցուն. եւ իւրաքանչիւրոց. առ

որս պատկանի. եւ որով եւ իցէ պատճառաւ պատկանելոց իցէ առյապայ. զի ընդունիցին զքեզ ամենայն պատուով. եւ մեծարանօք. զոր կարգեցաք ի գործ առաքելական Երեսփոխանութեան. Գործակալութեան. եւ Վէքիլութեան. այսու մերով կոնդակաւ աւանդեցեալ: Եւ ճանաչիցեն զքեզ ինքեանց հովիւ. եւ առաջնորդ: Եւ յամենայն իրս. որք առ այդ իշխանութիւնդ պատկանին. եղիցին քեզ հնազանդք ձեռնտուք. օգնականք. եւ ընթերակայք եւ զքոյս խրատս. զքարոզութիւնս. զվարդապետութիւնս. եւ զպատուերսդ խոնարհութեամբ. եւ ամենայն հպատակութեամբ ընդունիցին. եւ գործունակօրէն կատարել ջանայցեն: Ապա թէ ոչ զվճիռս. զպատիժս. զորս դու ըստ իրաւանց եւ կանոնաց սրբոց սահմանիցես կամ հրատարակիցես. ընդդէմ հակարակաց քոց. եւ արանց անհնազանդից. մեք եւս զայնոսիկ հաստատելոց եմք եւ հրամանաւն Աստուծոյ հաստատ պահել ջանալոց եմք անխախտապէս եւ անարատ մինչեւ ի վերահատուցումն ըստ արժանեաց: Ոչ ընդդիմանալով այսմիկ. ոչ Առաքելականաց ոչ Ընդհանրականաց եւ ոչ գաւառականաց Սինհոդոսաց արարեցելոց, թէ ընդհանրական. եւ թէ մասնաւանդական սահմանադրութեամբք. կամ օրինադրութեամբք. որովք եւ իցէ ընդդիմականօք:

Զօրս ամենայնս, եւ զիւրաքանչիւրս ի նոցանէ. եւ զզգացմունս, կամ զիմացուածս իւրեանց. լիապէս եւ բաւանակաբար յայտնեցեալս. եւ մի ըստ միոջէ ծանօթացեալս. եւ յայլս իրս զիւրեանց ամրութիւն պահելով. սակայն վասն վերոգրելոցս գործունակութիւն, այժմ, միայն մասնաւանդապէս, եւ յայտնապէս լուծանեմք, ընդդէմ ամենից. որոց եւ իցէ հակառակաց:

Գրեցաւ ի Հռոմ ի Սուրբն Մարիամ Մայիոր. ընդ կնքով Չկնորսին:

Յերրորդում աւուր Հոկտեմբերի ամսոյն:
Յամի ներմարմնութեան տեառն. Ռ. Ո. Գ.:
Վեհապետութեան մերոյ Յառաջնոյ Ամին:

Տ. Կ.:

Յաջորդ տարին, յուլիսի 30ին ձեռնադրուելով՝ աթոռը Պիսդրից դրաւ: Բայց շատ չանցաւ ու իմացաւ որ հոս հանգիստ պիտի չունենայ Սաքսոններէն, որոնք՝ ծուռ աչքով կը նայէին հայոց հոն տեղաւորուիլը: Ասոր վրայօք, 1692 յունուար 30ին գրած մէկ նամակին մէջ դառնապէս կը գանգատի:[1]

Աւքսենտիոս, որ իր ազգին՝ չէ թէ միայն անձուկ մտօք առած՝ հովուապետն էր, այլ նաեւ ամէն կերպ յարաբերութեանց մէջ անոր խորհրդատուն ու առաջնորդը՝ իր բոլոր հոգն, իւր ազգին ընկերական յարաբերութեանցը, մնացականութեան ու հաստատութեանը վրայ դարձուց: Ուստի եւ ուզեց որ հայք անանկ նոր քաղաք մ'ունենան, ուր որ բոլոր ազգայինք — իբրեւ թէ կենդրոնի մը մէջ ժողոված — միացեալ զօրութեամբ՝ հասարակաց շէնքեր ու մարդասիրական հիմնարկութիւններ կարենան հաստատել. որովհետեւ, ինչպէս յայտնապէս կը տեսնէր, Պիսդրից, Սաքսոններուն մէջ, ապահովութիւն, խաղաղութիւն ու հանգիստ պիտի չունենային:

Բայց երբ, իր ժողովրդեան օգտին համար կը յոգնէր, ճանապարհորդելով ու խրատելով՝

1 Nic. Nilles. Symbolae. Ինսպրուք. 1885. Հատ. Բ. 922.

գերի ինկաւ ու Տաճկաստան տարուեցաւ, ուս-
կից միայն — երեք տարի խեղճութեամբ կեանք
անցընելէն ետեւ — Գարլովիցի (1699 Յու-
նուար 26) հաշտութեամբ ազատելով՝ Վիեն-
նա գնաց ու Լէոբոլտոս Ա.էն հրաման ընդու-
նեցաւ հայ քաղքի մը հիմնարկութեանը: Իսկ
Էլէոնորա կայսրուհին, շատ վշտացած ու նեղու-
թիւններ կրած եպիսկոպոսին, եկեղեցական
հանդերձներ պարգեւեց. որոնք հիմակ ալ մայր
եկեղեցւոյն ամենափառաւոր զարդարանքները
կը կացուցանեն:[1]

Հայ քաղքի մը հիմնարկութեան հրամա-
նագիրը ձեռքն ունենալէն ետեւ, սկսաւ
մտածել թէ ուր տեղ շինէ այն քաղաքը: Ըն-
տրութիւնն ի սկզբան Կէօրկէն գեղին վրայ ին-
կաւ. ուր որ քիչ ատենի համար աթոռը դրած
էր՝ Պիսդրիցի սաքսոններուն ընդդիմադրու-
թեանցը համար: Հոս՝ տուն, ջաղացք ու կա-
լուած ունէր: — Սակայն ետքէն, աւելի յար-
մար տեսաւ Կերլա գեղը: Ուստի եւ որոշեց որ

---

[1] Այս բանս յաջորդ խօսքերով կը դնէ առջեւնիս Անդ.-Իւլյէշ պատմագիրը. Dum ita pro salute gregis Domini praesul vigilantissimus excubat, vinctus pro Deo, pro Caesare, pro Religione, in Turciam abducitur; ubi triennium integrum iis conflictatus miseriis, quas barbari christianis inferre solent, libertate demum donatus est. Laudavit Oxendii virtutem Imperator Leopoldus ac in Praesulem Deo, Caesari, Religioni fidelem, augustos contestaturus favores jus extruendae Armenopoleos in Transylvania petenti concessit. Probavit quoque digna tanto Caesare conjunx Eleonora, et episcopalibus ornatum indumentis Vienna demisit. Extant a hodiedum Armenopoli et luculentum Augustissimi in Oxendium, armenamque gentem favoris exhibent monumentum. — Ortus et progressus, Claud. **1764. էջ. 67.**

այս տեղ դնէ Նորաշէն հայաքաղքին հիմը։ Ինք եղաւ առաջինն, որ իրեն տան տեղ ընտրեց, հիմակուան մայր եկեղեցւոյն աջ կողմը. որ իր մահուանէն ետեւ եկեղեցի եղաւ։ Ասոր վրայ իր ճաշակին համեմատ ձեւել ու չափել տուաւ, Հռոմէն հետը բերած ճարտարապետի մը ձեռօք հրապարակներն ու փողոցները. ու հրաւէր խրկեց իր հաւատացեալներուն՝ Պիսդրից, Կէօրկէն, Ֆէլֆալու, Բէդէլէ, Պադօշ եւ այլն, որ հոն գան ու իրենց տներ շինեն։ Ազգայնոցմէ շատոնք իրեն հնազանդելով՝ քիչ ատենի մէջ, վաղեմի Կերլա գեղին տեղը, շիտակ փողոցներով ու ընդարձակ հրապարակներով պզտի գեղեցիկ քաղաք մը կանգնուեցաւ։[1]

Իր եպիսկոպոսական գործառնութեան շատ յիշատակները դեռ կեցած են։ Հայաքաղաքն ունի շարժական խորան մը, զոր ինք օրհնեց։[2] — Ինք ձեռնադրեց զԼուսիկ Յակովբ Զարդարեան, որ տասը տարի ճուրճով ժողովրդապետութիւն ըրաւ։ Ինք անուանեց 1708ին Յուլ. 20ին Եղիսաբեթուպոլսոյ ժողովրդապետ զՅովհ. Ըտէլպէյ։

Բայց չէ թէ միայն ազգայնոց, այլ նաեւ լատինական եկեղեցւոյն մեծ ծառայութիւններ

---

1 Ասկէ դեռ 15 տարի յառաջ կեցած էր քաղքին այն միջնակէտն, ուր որ Աւքսենտիոս, ինչպէս կ'ըսուի, առջեւը կոգնոցով՝ հրամայած ըլլայ գործավարին մէկուն թէ "Հոս զարկ զխոզախը։"

2 Խորանի կողմն այս յիշատակարանը կը կարդանք. Altare hoc consecratum est a Rev. P. Oxendio V. Eppo. Al. et Vic. Aplico; cui inclusae sunt reliquiae SS. M. M. եւ այլն. 1695. 2. 7 bris.

ըրաւ. ու եպիսկոպոսական պաշտօն կատարեց։ Որովհետեւ հարկ եղաւ որ այն միջոցին (1697) Դրանսիլուանիոյ լատին եպիսկոպոսն Անդրէաս Իլյէշ, թագաւորական վերին կառավարութեան հրամանագրին համեմատ Դրանսիլուանիայէն ելլէ,[1] Աւքսենտիոս օրհնեց փրանկիսկեան հարց Միգհազի եկեղեցին. Սըգուչներու երկրին մէջ օրհնեց ու օծեց զանգակներ։ Ուրիշ տեղեր ալ եպիսկոպոսական պաշտօն վարեց։[2]

Թէ մէկալ կողմանէ ինչ հեղինակութիւն ու ազդեցութիւն ունէր Աւքսենտիոս, չէ թէ միայն ազգայնոց այլ նաեւ օտարաց առջին, կը տեսնուի, ա՛յն՝ հաւատքի արժանի յիշատակներէն, որոնք իրեն տրուած մեծակշիռ յանձնարարութիւններուն վրայ կը խօսին։[3]

---

1 Զասոնք կը գրէ ի մէջ այլոց կառավարութիւնն եպիսկոպոսին. «Աղերսանօք կը խնդրենք Գերապ. տէրութենէդ ex officio nostro et commissione Dominorum statuum et Ordinum, որ չվշտանայ ու ծանր չգայ, մեր երկրէն րոպէ մը յառաջ ելլելու։

2 Նիլէս, վերին Հունգարիոյ զինուորական առաքելութեանց (missio castrensis) վրայ խօսելով կ'ըսէ թէ, տարեգրութեանց նայելով՝ 1699 մարմնոյ եւ արեան տօնին, Հայոց եպիսկոպոսը, շատ հեռու երկրէ, առաքելութեան տեղն եկաւ ու երեք առընթերակաց քահանայի օգնութեամբ թափօր կատարեց ու սրբութիւնը տարաւ։ — Anno 1699. — Processio theophorica ab anno 1542 non visa, hoc anno coepto . . . solemniter ad disposita debito ornatu altaria deducta est . . . In ea primum Illmus. et Rvmus D. Armenorum Episcopus a compluribus milliaribus huc advena adstitibus tribus presbiteris inter collucentia copiosa luminaria venerabile Sacramentum detulit, pietatem catholicam demirantibus et depraedicantibus ipsis acatholicis. — Վիեննայի արքունական տան դիւանատանը 11.968 թուական ունեցող ձեռագրին մէջ։

3 Symbolae. — Տեղեկութիւնք եւ վճիռք՝ Գաբրիէլ Գարի. Դակիայի առաքելութեանց առաջնորդին։ Ինսպրուք. 1885. Հատ. Ա. էջ. 263։

Ռապուդին զօրապետը 1703ին սըգոյներուն ապստամբութիւնը զսպել ուզելով՝ զԱւքսենտիոս, Միքայէլ Միքէշի հետ խրկեց, որ երթան ու ապստամբները հանդարտեցընեն։ Սակայն Հէրման անուն սաքսոնական գեղին մէջ գուրուցները զիրենք բռնեցին ու Հունգարիա, Ռաքոցիի տարին. ուր Միքէշ ապստամբ գուրուցներու կողմն անցաւ։ ԶԱւսենտիոս ալ շատ ստիպեց Ռաքոցի, որ իր կողմն անցնի. բայց ի զուր։ Զինք երկայն ատեն բանտարկելէն ետեւ, երբ որ տեսաւ թէ կայսեր ունեցած հաւատարմութենէն չի կրնար ետ կեցընել՝ ազատ թողուց։ Ասոր վրայ Աւքսենտիոս, Վիէննա, անկից՝ Դրանսիլուանիա անցաւ։[1]

Վորզարեան մեծ գործունէութիւն ցուցուց ամէն ուղղութեամբ։ — Որպէս զի համակրութիւնը, փութեռանդութիւնն ու բարոյական կեանքն իրեններուն մէջ տարածէ, ընկերութիւններ հաստատեց, որոնց կանոններ ալ տուաւ։[2]

Ինչպէս գիտենք, Աւքսենտիոս, որ արքունեացառջեւ մեծապէս պատուուած ու սիրելի անձ մըն էր, երրորդ անգամ — 1712ին —

---

1 Ասոր վրայօք յաջորդները կը կարդանք հայ տարեգրոց մէջ. „Գուրուցչակին — ժամանակը այսպէս կը կոչուէր ԺԸ. դարուն երկրորդ կիսուն ապստամբութիւնը — զագսէնտ եպիսկոպոսը գուրուցները բռնելով հետ միքէշ միհային, ուրուխ միքէշ միհայը գուրուց դարձիլէ. եւ զագսէնտ վարդապետը երեք տարի փակ բռնելին մունգաչը, որ գուրուց դառնայ. մինչեւ որ խաղաղութիւն դառնալով խալըսիլէ։„

2 Տես էջ 22—33։

Վիէննա գնաց, որպէս զի իր ազգին տրոց ու առեւտրական յարաբերութիւններն ի կարգի բերէ, գրեթէ լմնցած Նորաշէն քաղքին համար արտօնութիւններ ընդունի. եւ գլխաւորաբար, որ Հայ եպիսկոպոսութեան համար եկամուտներ յաջողցընէ։ — Ազգայինք — որ թէպէտ տեղւով իրարմէ հեռու, այսու ամենայնիւ, Հայ գոմբանիա անունի տակ, իրարու հետ միացած մարմին մը կը կազմէին՝ իրենց ներքին գործառնութիւնները մէջերնին կը լմընցընէին, տուրքերն իրարու մէջ կը բաժնէին եւ հասարակաց արկղէն կը հոգային իրենց եպիսկոպոսին վարձքը — իրենց գործքին պաշտպանութիւնն՝ իրենց սիրելի եպիսկոպոսին յանձնեցին, զոր իբրեւ մեծ հեղինակութիւն ու փորձառութիւն ունեցող, արդարակորով ու անձնանուէր մարդ մը կը ճանչնային։ Ու չխաբուեցան այս բանիս մէջ. վասն զի կը գտնենք, թէ շուտ մը վաստըկեցաւ Դրանսիլուանիոյ նորընտիր կառավարին, զպարոն Սիկիսմունտոս Գոլնիժ. զինուորական վերին հրամանատարին՝ զպարոն Ստեփ. Շդայնվիլ. զԻգնատիոս Հան՝ կայսերական տան ներքին խորհրդականն (Caesareae camerae aulicae consiliarius) եւ Դրանսիլուանիոյ արքունեաց կալուածատէրութեան վերատեսուչը։

Իր հաւատացելոցն օգտին համար քրտնող հովուապետն երեք տարիի չափ մնաց Վիէննա։ Այս միջոցին՝ մեծ շրջահայեցութեամբ գործեց ի նպաստ Դրանսիլուանիոյ ազգայնոց. եւ ի մասնաւորի իրմէն հիմնուած հայաքաղքին համար։

Ազգայինք՝ շատ կը սպասէին իր՝ Վիեննայէն վերադառնալուն։ 1714, Յունուար 2ին, առ Վրզարեան գրուած Թուղթ մը կը յայտնէ թէ ինչպէս կը կարօտին իր ժամ մը յառաջ ետ դառնալուն. չէ թէ միայն անոր համար, որ զինք կարենան տեսնել, հապա նաեւ անոր համար, որ իր խորհրդոցն, իր խօսքերուն եւ հրահանգացը համեմատ գործեն։ "Հոգեւոր հօր մերոյ Օգսենտիոս Վարդապետի ի թվին ռճկգ. յունվարի բ. — փափաքինք ու կարօտինք — կը գրեն — տեսուդ խիստ. եւ ըսբասեմք գալըտ ընդ մեզ. եւ տեսանել զտառապեալ ժողովուրդն Արտեալու, ամենից Կերլայու, կամ Կուրկինու, իպաշֆալօվու կամ ճուրճովու։ Մինք ամենքը անպէս գիտինք, որ սրբութիւնդ ամենիս սէպը կաշխատիս ու կուքալիս ու քալելիս Կիսարին մօտ բան հաստատելու. ինչ եւ իցէ. կամ թէ ուժէ հաստատած է. թէ տալեց, թէ ուրիշ բաներու։ Նա հիմի երկրին պարտտաքը զմեզ կու բաժնին Կերլացոցը մէ, թէ Կուրկինցի, թէ ի պաշֆալովցի, թէ ճուրճովցի. ու մեր վրայ տալիք կուզին ձգելու։ Նա մինք խնդրինք զսըրբութիւնդ, որ կարնաս նա, քանի ինչ թէզ իգաս, որ տեսնունք թէ ինչ բանի ճոթ պի բռնինք։„

Սակայն պարապ տեղ սպասեցին։ Զինք՝ ա՛լ չտեսան։ Ա՛լ չկրցաւ հաշիւ տալ իր ըրած կարգադրութիւններուն ու կատարած գործքերուն վրայօք։ Ու քաղաքն, ուրուն հիմը դրաւ, եւ ոչ ան շնորհմունքն ունեցաւ, որ իր նշխարհ-

ները կարենայ իր ծոցն ընդունելու։ Վիէննա, իր վախճանած տեղը թաղուեցաւ։

Իր մահուանը նախընթաց պատահարներուն եւ պարագայից վրայ ամենեւին տեղեկութիւն չունինք։ “Դակիայի ժողովրդոց սկիզբն ու յառաջադիմութիւնը„ գրոյն մատենագիրն, այնչափ կը յիշէ, որ Վիէննա, երբ իր ժողովրդեան համար արտօնութիւններ կը հոգար, ընդ կասկածանօք թունաւորութեան վախճանեցաւ։ Իսկ Ստեփ. Ռօշքա, որ Աւքսենտիոսի ժամանակակից ու ընկեր էր, եւ անոր գործքերն իր աչքերը բոլորովին ծանօթ էին, իւր՝ շատ խնամքով ժողոված ժամանակագրութեան մէջ զասոնք կ'ըսէ. 1715. Օգսենտիոս Վրծրէսգուլ եպիսկոպոսն Ալատինոյ, առաջնորդն Հայոց Դրանսիլվանիոյ, մարտի 10 վճարէ զկեանս իւր, ոչ առանց կասկածանօք թունից . . . ի հունգարացւոց ի Վիէննա. ուր իբր զամս երիս յամեցեալ վասն ընդունելոյ զըրիվիլէկս ի կայսերէն հաստատելոյ զազատութիւն նորաշէն քաղաքին Սամօշույվար (Կերլայ), որ այժմ Հայաքաղաք կոչի։„

Հայաքաղաքին ազգային մայր եկեղեցւոյն մէջ կեցած է իր կտակին մէկ ընդօրինակութիւնը, զոր 1715 մարտ 4ին գրած է։ Ասոր մէջ՝ իր ստացուածոյը վրայօք մանրամասն կարգադրութիւններ կ'ընէ ու կը սահմանէ, որ Կէօրկէնի ջաղացքն ու կալուածը ծախուի եւ անկէ եկած գումարէն ամէն մէկ քահանայի հարիւրական ֆիորին տրուի։ — Մանաւորաց

Թողուցած գումարէն մնացած ստակը չորս հաւասար մաս բաժնուի եւ կենդանի եղբօրն Ստեփանի ու երեք մեռնող եղբարցն որբերուն տրուի։ Կը խնդրէ միանգամայն կտակին մէջ հպատակներն. որ այն պարտքերն, զորոնք իրենց գործքը յառաջ տանելու համար, Վիէննա՝ երեք տարուան մէջ ըրած է, հաւասարցընեն։

— Անկից զատ, ինչպէս ուրիշ տեղ ալ յիշած ենք, իրեն յաջորդ կը թողու զՍտեփ. Ռօշքա։ “Առաջի Աստուծոյ կը յանձնեմ Ձեզի, կ'ըսէ, որ ամէնքնիդ ժողովիք եւ խնդրէք հաւատոյ տարածման ժողովքէն, որ ձեզի եպիսկոպոս ու փոխանորդ անուանէ զՎ. Տ. Ստեփանոս Ռօշքա։ Աս մարդն ու իր գերտաստանը լաւ կը ճանչնաք. այնպէս որ եթէ զձեզ զրկեն Ստեփ. Վարդապետէն, չէք կրնար ուրիշ մը գտնել, որ ձեզի արժանաւոր հովիւ ըլլայ։ Եթէ — այսպէս կը շարունակուի կտակը — Ստեփ. Վարդապետ կ'ըլլայ իմ յաջորդս, իրեն կը թողում երկու խաչ. մէկը՝ զոր վրաս կը կրեմ, առանց ակն պատուականի, մէկալը՝ քարերով զարդարուած ... ու երկու մատանի։„ Վերջապէս կ'օրհնէ իւր ժողովուրդն ու կը յայտնէ թէ, առաջի Աստուծոյ, ողջ մտօք, հաստատուն հաւատքով, ամուր յուսով եւ ճշմարիտ սիրով՝ ըստ մասին ինք, ըստ մասին — իւր անձին տկարութեանը համար, բայց իւր կամացը համեմատ — Թէոդորոս Պուզէսգուլ քահանան գրեց իր վերջին կամքը, զոր իւր սեպհական կնքովը կնքած ու յատուկ ձեռամբն ստորագրած է։

Թէ ուր տեղ թաղուած է եւ թէ ուր կը հանգչին իր մարմնոյն մնացորդները, չենք գիտեր։ Ասոր վրայօք յիշատակութիւն միայն Լուքաչի կ'ընէ, երբ կ'ըսէ թէ, զինք, Վիեննայի ողորմած եղբարց եկեղեցին թաղած են։[1] — Սակայն առաջիկայ տողերը գրողն անձամբ գացած, ետեւէն ինկած ու քննած է ասոր ստուգութիւնը, բայց առանց արդիւնքի։ Վասն զի յիշեալ տարիներն այս տեղ մեռած ու թաղուածներուն մէջ Վրզարեանին անունը գտած չէ։ Հոն՝ ասանկ մեծ մարդու մը վախճանելուն ու թաղուելուն հետքերն ամենեւին չկան. ուր որ կրնար եւ պէտք էր, եթէ կրօնին տարեգիրներուն մէջ ու եկեղեցւոյ որմերուն վրայ՝ ոչ, գոնէ անոր ստորերկրեայ դամբաններուն մէջ բան մը գտնուիլ։

Սգոյ հագուստ զգեցած Դրանսիլուանիոյ ազգայիններն՝ որոնք, յանձին Վրզարեանի չէ թէ միայն հովուապետնին, այլ նաեւ խորհրդատունին ու ամէն գործքերնուն յառաջապահն ու պաշտպանը կորսնցուցին . . . փնտռեցին, բայց չգտան յաջորդ՝ որ նմանօրինակ զօրութեամբ ու հեղինակութեամբ անոր սկսած փրկակաս գործքը շարունակէ։

### Բ. Զաքարիա Կապըռաչեան։

Մարդկային ընկերութեան ամենէն կարեւոր անդամները, մանաւանդ թէ, մարդկու-

[1] Sepultus est Viennae, in suburbio Leopoldino, in templo F. F. S. Joannis de Deo a Misericordia nuncupatorum. Hist. Armenorum. էջ 72.

թեան ճշմարիտ բարերարներն անոնք են, որոնք իրենց մտաւոր ու դրամական կարողութեան գումարը՝ մարդկութեան մտաւոր յառաջադիմութեան ու բարոյական կենաց զարգացման, հասարակաց բարօրութեան եւ կրթութեան յառաջացմանը կը գործածեն։ Այս բանս կ՚ընէ գիտնականը՝ իր մտաց ծնունդը հաղորդելով, ուսուցիչը՝ նորաբոյս մտքերը կրթելով, արուեստաւորը գեղեցիկն արտադրելով ու ատենաբանը՝ ճշմարտութիւնը քարոզելով։ — Զայս՝ լրաւ Զաքարիա Կապրուշեան։ Ինք չէ թէ միայն իբրեւ նշանաւոր ուսուցիչ մեծ ծառայութիւն մատոյց իր ազգին ու հայրենեացն, այլ նաեւ իբրեւ երեւելի գիտնական, իբրեւ բանաստեղծ, իբրեւ նկարիչ ու մեքենագործ շատ օգնեց համակրթութեան զարգացմանը։

Ծնաւ Կապրուշեան Կերլա հայաքաղաքը 1794 Աւգ. 18ին։ Հայրը՝ Յովսէփ, մայրը՝ Վարդերես Աննա Մարիամ կը կոչուէր։ Տարրական դպրոցները՝ իր ծննդեան քաղաքն աւարտեց. միջնադպրոցներն ու փիլիսոփայութիւնը՝ Գլուժ։ 1815ին աստուածաբանութիւն սորվելու համար Գարլսպուրկ գնաց։ Հոն՝ ազատ եղած ժամանակ, Ռայխլինկ պարոնին, Զէլէնգոյի քարտուղարին եւ ուրիշներուն զաւկըները կը սորվեցընէր։ 1817ին հրաժեշտ տուաւ Գարլսպուրկի ու միանգամայն քահանայական վիճակին, որուն տղայութենէն մեծ փափաք ունէր. բայց չափազանց կարճ հասակին համար՝ անյարմար գտնուեցաւ։ Յիշեալ տարին իւր



*ԶԱՔԱՐԻԱ ԿԱՊՐՈՒՃԵԱՆ*

քաղաքին մէջ՝ հարկաց յանձնակատար (rectificator commissarius) անուանուեցաւ։ Տարի մը ետքը քաղաքն իրեն յանձնեց տղոց կրթութիւնը։ Եւ որովհետեւ երկու պաշտօնն ալ չէր կրնար պահել, անոր համար առաջինէն հրաժարելու հարկադրեցաւ՝ պահելով վերջինը։ — Այսպէս՝ Կապրուշեան մտաւ այն գեղեցիկ, բայց միանգամայն դժուարին ասպարէզն, ուր 42 տարուան մէջ՝ 2425 տղայ կրթեց ազգին համար։ — Ամէն օր 8 ժամ կը սորվեցընէր. չորս՝ դպրոցին մէջ. չորս՝ իր տունը։ Առտնին դասախօսութեան առած տղաքն, ամէն տարի 10—15 հոգի, չէ թէ միայն ձրի կը սորվեցընէր, հապա նաեւ, իր կարողութեանը համեմատ՝ անոնց մարմնաւոր պիտոյքը կը հոգար։ Անոնցմէ մէկը ետքէն լաւ եկեղեցական, մէկալն՝ ընտիր ուսուցիչ, երրորդը՝ ճարտար դատաւոր եղաւ։ Անոնք՝ ընկերութեան համար թերեւս կորսուած էին, եթէ Կապրուշեան, անխոնջ աշխատութեամբ՝ ուսմունքնին շարունակելու համար իրենց հնարկութիւններ չհոգար եւ իրենց ապրելու կերպին վրայ չմտածէր։ Ինք չէ թէ միայն դպրոցի մէջ խօսքով կը հաղորդէր ու կը սորվեցընէր մարդկային պարտքերն, այլ նաեւ շատ անգամ՝ կենաց մէջ գործքով ցուցուց, թէ ի՛նչպէս կը կատարէ քրիստոնեայ մարդ մը իր առ Աստուած ու առ մարդիկ ունեցած պարտաւորութիւնը։ Ցուցուց, թէ ինչ է պարտքը ստորակարգելոյ մը, եւ ինչ կը սպասէ ազգն իր զաւկըներէն։

Թէպէտ իր պաշտօնին պարտաւորութիւնները միշտ մեծ խղճմտանքով կը կատարէր, այսու ամենայնիւ գիտցաւ՝ իբրեւ անխոնջ մարդ մը, իրեն ժամանակ գտնել՝ ատեն ատեն գործելու այն ասպարիզին մէջ ալ, որ Թէպէտ իր շրջանին չէր վերաբերէր, բայց ասոնցմով իրեն մեծ գովութիւն ու պարծանք բերաւ։

Այսպէս, օրինակի աղագաւ, շինեց երկու գեղեցիկ երկրագունդ. Հարիւր տարի գործածելու համարտումար (calendaria saecularia). արեգակնային շրջանական դրութիւն. երկու արուեստակերտ արկղ, (մէկը՝ 51, մէկալը՝ 100 ձգոցով։ Ասոնք գաղտնի զսպանակներու ձեռօք կը բացուին ու կը գոցուին)։ Վերջինը՝ Լոնտոնի համաշխարհական արուեստահանդիսին համար շինուեցաւ։ Եկեղեցւոյ մէջ երկու խորան կանգնեց իր ձեռքովը։ Բաց ասկէ, շինեց ամպհովանի մը, եկեղեցական լապտերներ, փայտէ աղուոր աշտանակներ. ասղնագործեց ամբողջ եկեղեցական հանդերձանք մը. գծագրեց 37 հատ Թափանցիկ նկար (transparent illuminator), Թատերական զարդարանքներ, 40 կտոր մեծ պատկեր. քաղքին խնդրելովը՝ 12 յաղթական դուռ, դամբաններ եւ այլն։

Յօրինեց յաջորդ գրքերը. Հարիւր եկեղեցական երգ։ — Հայ. հունգարերէն Այբբենարան. — Հայերէն քրիստոնէական։ Չորրորդ պատուիրան հայերէն, ոտանաւոր. Երկու հատոր։ — Երգիծական բանաստեղծութիւն՝ Աղուէսու եւ շնջրւոյ (castor) վրայ։ —

*Ողբ, ոտանաւոր չափով, հայերէն: — Կատարեալ է, հայերէն՝ ոտանաւոր բանաստեղծութիւնն ազգային խնդրոց վրայ. Մէկ հատոր: — Նախախնամութիւն. Երեք հատոր: — Խառն բանաստեղծութիւնք, հայերէն. Երկու հատոր: — Պատասխանատուութիւն* (apologia): — *Աստուծոյ նախախնամութիւնը, հայերէն, արձակ. Ինը հատոր: — Կնքագիտութիւն* (Heraldica) *լատիներէն. Չորս հատոր:*[1] *— Նորագոյն եկեղեցական տաղեր, հայերէն. Չորս մեծ հատոր: — Հայերէն, լատիներէն, հունգարերէն բառարան. Հինգ հատոր: Ասոնցմէ զատ ունի դեռ շատ մը գրուածքներ, թատերախաղութիւններ, բարոյական վէպեր. եւ այլն:*

*Իր պաշտած ազգին, իր սաստիկ սիրելի քաղքին նկատմամբ ունեցած սիրոյն եւ միութեան յայտնի նշանները ցուցուց, երբ Ռուտնայի, ինչպէս նաեւ Սէբէշի, Դրանսիլուանիոյ եպիսկոպոսներուն՝ իրեն մատուցած պատուաւոր եւ աւելի եկամուտ բերող պաշտօնները չընդունեցաւ: Մնաց այն խեղճ ու փառք չբերող պաշտօնին մէջ, որպէս զի անկից ետքն ալ՝ իր կարողութեանը համեմատ՝ իւր խոնարհ ծառայութիւնը նախ ա՛յն քաղքին մատուցանէ, որուն պատերուն մէջ իր օրրոցն օրօրեցաւ....: Եւ ո՛վ կրնայ իր բազմաթիւ գործքերուն նոյն իսկ անունները մէկիկ մէկիկ յառաջ բերել: Թող*

---

1 *Այս տիտղոսով.* MDCCCXCIII scuta heraldica totius mundi, imperiorum, regnorum, principatuum, provinciarum, ducatuum ac comitatuum insignia in se continentia.

Հայաքաղքին կաթուղիկէն, Փրանկիսկեանց եկեղեցին, քաղքին խորհրդանոցն ու խել մը մասնաւորաց տներն վկայեն թէ ինչ գործքեր գործեց անոնց մէջ Կապրուշեան:

Չեկաւ երբեւէ մարդ մը Կերլա Հայաքաղքն, որ գնացած չըլլայ, կամ տարած չըլլան Կապրուշեանի: Այսպէս ի մէջ այլոց, այցելութեան եկաւ իրեն հռչակաւոր պատմագիրն Լատիզլաւոս Գէօվարի. որ իւր շաբաթաթերթին մէջ "Քանի մը խօսք Կերլայ քաղքին վրայ" — յաջորդները կ'ըսէ Կապրուշեանի վրայօք. "Հնութեանց մօտաւորութեանը (հռոմէական գաղթականութեան) քով՝ ունի Կերլայ քաղաքն ուրիշ ոչ նուազ երեւելի գանձ մը, զՋաքարիա Կապրուշեան: Որո՞ն միտքը կրնայ գալ, որ այս անունն արտաբերած ատեննիս, մոռցուած, մեռած հանճարի մ'անունը կու տանք: — Քաղքին մէկ ողորմելի տանը — իբրեւ թէ նախագաւթի մը պէս բանի մը — մէջ կը մտնենք: Հոս՝ կեցած է պզտիկ պատուհաններու դիմացը՝ գեղեցիկ մատենադարան մը. աջ ու ձախ հանքային ու հնութեանց ժողովածոյքներ. — մեծագոյն սենեակի մը մէջ՝ շատ մը լմնցած ու չլմնցած մեքենական արուեստակերտներ: Անոնց մէջ՝ շարժական արեգակնային դրութիւն մը՝ տղոց գործածութեանը համար. արկղիկ մը 51 ձգոցով, որոնց երեքը դուրս առնելով՝ մէկն զմէկալը կը փակեն ու կը բանան. — անկիւնի մը մէջ՝ երկրագունդ մը, գեղեցիկ ու ճիշդ գծագրութեամբ: — Բաց

*տանցմէ, ամէն սեղան լեցուն է արուեստակերտներով։ Հոս է գրասեղանն ալ, վրան՝ Հունգարերէն ու Հայերէն գրքերով. — Հայերէն-լատիներէն-Հունգարերէն բառարան մը, որ իր երկասիրութիւնն է։ Հոն՝ վէպի մը եօթներորդ հատորը, Հայերէն լեզուաւ, բովանդակութիւնը՝ կրօնական է, եթէ աղէկ կը յիշեմ, տիտղոսն է. "Գիրք Աստուծոյ Նախախնամութեանը վրայ։" Մեղուի փեթակի պէս լեցուն սենեակը՝ յինքեան թանգարան մըն է։ Հոս կը նստի, կը գործէ, մազերը ճերմկնալու սկսած, պզտիկ մարդն, իր վառվռուն ու կենդանի աչուըներովն, սպիտակ մօրուքովն ու շոյտ շարժումներովը։ Այսպէս կ'ապրին, այսպէս կը պանդխտին դէպ ի շիրիմ, դէպ ի սպառումն քու հանճարներդ. որոնք ապրած ատեննին՝ քիչերէն ճանչցուած, իսկ մեռնելէն ետեւ՝ մոռցուած են։ Ինքն է, հոստեղի Հայոց դաւթեան Սիոմնը։ Իր ջերմ ոգւոյն տաղերուն ձայները այսօր ալ կը հնչեն հայ քաղքին եկեղեցեացը մէջ։ Ու քանինե՞րը կան այսօր, մեր երկրին մէջ, որոնք այս պատկերահանին, այս մեքենագործին, այս բանաստեղծին անունն անգամ չեն գիտեր . . . ։"*

*Դառնանք Կապրուշեան ուսուցչին։ Թէ իր ծանր պաշտօնին մէջ ինչպէս վարուեցաւ, ապացոյց են այն վկայագիրներն, զորոնք ուսումնական վերին տեսչութիւնը, հայ կղերը, քաղաքը, ընկերութիւններ ու մասնաւորք իրեն համար տուած են։*

Վերջին անգամ՝ 1858/59 երորդ ուսումնական տարին՝ կոխեց այն սրահին սեամքն, որն որ իր բարեզգած գործունէութեան 42 տարուան վաւերացեալ վկան էր. ասկից ետքը քաշուեցաւ հանգչելու: Քաղաքն՝ իր հաւատարիմ ծառային — որ բազմաթիւ գեղեցիկ, ազնուական ու անմոռանալի գործքերովն անգին ծառայութիւն մատուցած էր իրեն — մինչեւ ցմահ եկամուտ կապեց: Այս գեղեցիկ գործքովն՝ այս առթիւ ալ ցուցուց, որ Նոր սերընդեան կրթութեանը մէջ յոգնած մարդուն ազնուական աշխատութիւնները ճանչնալ ու վարձատրել գիտէ:

Քաղքին որոշմունքն, արքունական կառավարութիւնն ընդունեցաւ: Եւ որովհետեւ տէրութիւնն ալ իւր կողմանէ վարձատրել ուզեց զանիկայ, որն որ ուսուցչութեան ասպարիզին մէջ չէ թէ միայն քաղքին, այլ նաեւ տէրութեան մեծ ծառայութիւններ մատուցած էր, Կայսրմէ — որ ճշմարիտ արդիւնքը՝ նոյն իսկ ամէնէն ստորին հպատակին վրայ ալ գիտէ յարգել, — Կայրուշեանին համար Ոսկիէ Արժանեաց խաչը խնդրեց: Յիշատակաց արժանի պիտի մնայ իր ծանօթներուն առջեւ այն օրը, երբ — 1860 Ապր. 20 — Սոլնոք-Տոպոդայ վիճակին աւագերէցը, Հայաքաղքին մեծանուն ժողովրդապետը, Խաչիկ Լուքաչեան՝ Դրանսիլուանիոյ հռոմէական ուղղափառ դպրոցաց վերատեսչութեան կողմանէ խրկուած պաշտօնական պատուիրակը, գեղեցիկ ճառախօսու-

*թենէ մ՚եւտեւ, անոր կրծոցը վրայ կախեց ոսկիէ Արժանեաց խաչը։ Այս հանդիսութեան գրեթէ բոլոր քաղքին ազնուական մասը ներկայ էր։*

*Ու արդեօք ասկից ետքը գործքերէն քաշուեցա՞ւ։ Այս բանս Կապրուշեանին վրայ եւ ոչ իսկ կրնանք մտածել, զոր ելլող արեգակն արդէն իր գրասեղանին առջեւ կը գտնէր։ Չէ, իր գործունեայ հոգին ասկից ետքն ալ շատ գեղեցիկ ու օգտակար բաներ ստեղծեց։*

*Բայց վերջապէս նախանձեցաւ անողորմ մահն՝ անոր տրուած այնչափ պատուոյն եւ սահման չգտնող յարգանաց վրայ, որոնց մասնակցեցաւ ալեւոր գիտնականն իր գեղեցիկ մտաց ծննդեանն, ընդարձակ ծանօթութեանցն ու մատուցած մեծ ծառայութեանցը համար։ 1870ին զինքն ալ յափշտակեց մեզմէ։ — Կարճատեւ հիւանդութենէ մ՚եւտեւ Ապրիլ 27ին զարկաւ վերջին անգամ սիրտն, այն սիրտն, որն որ աւելի սիրեց իր քաղաքը, իւր որդոցն ու իրեն շիրիմ տուող հայրենիքը, քան թէ ինք զինք . . . ։ Ասոր վրայ հորիզոնէն կամաց կամաց աներեւութացաւ այն պզտիկ, բայց գերապանծ աստղն, որ — թէպէտ քիչերէն ճանչցուած — կէս դարէ մ՚աւելի լուսաւորեց։*

*Հանգչեցաւ արդ ա՛ն որ հանգստեան անունը միայն գիտէր . . . որ մարմնոյ եւ հոգւոյ ամէն կարողութիւնները՝ միայն հասարակաց օգուտը յառաջացընելու գործածեց . . . որ*

*ապրեցաւ միայն Աստուծոյ, Հայրենեաց, Հայ ազգին, իւր ծննդեան քաղքին եւ ընկերացը համար։*

### Գ. Խաչիկ Լուքաչեան։

*Այս երեւելի պատմագէտն, այս նշանաւոր մատենագիրն, այս տաղանդաւոր գիտնականը ծնած է Կերլայի մերձակայ Պէգլէն գեղը* 1804 *Մարտ* 30*ին։ Իր սկզբնական ուսումը Կերլա, փիլիսոփայութիւնը՝ Գարլսպուրկ, իսկ աստուածաբանութիւնը Վիեննայի համալսարանն աւարտելէն ետեւ՝* 1828*ին Գեր. Ար. Ազարեանէ՝ Կեսարիոյ Արքեպիսկոպոսէն, Մխիթարեան Միաբանութեան ընդհանրական Աբբայէն քահանայ ձեռնադրուեցաւ։ Այս ժամանակէն մինչեւ* 1837 *Կերլա, իբրեւ հոգաբարձու, իսկ* 1837*էն մինչեւ* 1856 *Գարլսպուրկ, եպիսկոպոսական կղերանոցին մէջ իբրեւ ուսուցիչ եւ փիլիսոփայութեան վարդապետ գործեց։* 1856*ին Կերլայի ժողովրդապետ եւ միանգամայն Տոպոգայ եկեղեցական վիճակին աւագերէց անուանուեցաւ։ — Լուքաչեան՝ իր մեծ գործունէութեամբը չէ թէ միայն եկեղեցւոյ շատ մեծ ծառայութիւն մատոյց, այլ նաեւ իր ազգին՝ որուն հաւատարիմ որդիներէն — եւ Հայաքաղքին՝ որուն ամէնէն մեծ բարերարներէն մէկն էր։*

*Լաւ գիտէր Լուքաչի, թէ միայն հաւատք ունեցող մարդը կրնայ լաւ քաղաքացի ըլլալ։*

իսկ փորձառութիւնը, զոր հոգ հոգւոց ընելով եւ եկեղեցական պաշտամունք կատարելով ստացաւ, այն համոզումն ըրաւ իր սրտին մէջ, թէ հայ ժողովրդեան հաւատքն, իր եկեղեցական



ԽԱՉԻԿ ԼՈՒՔԱՉԻ

ծէսէն անբաժին, անոր հետ սերտիւ միացած է։ Անոր համար էր իր մեծ ու ազնուական ճիգն, որ հայ եպիսկոպոսութիւնը վերականգնուի։ Ասոր նկատմամբ շատ գործեց ու ա՛լ աւելի գրեց։ Մանաւանդ թէ իր ալեւոր հասակին մէջ, չվախնալով երկայն ճանապարհորդութեանց աշխատութենէն, Դրանսիլուա-

նիոյ չորս հայաքաղաքներէն յօրինուած ու ստորագրուած յանձնարարական թղթով մը, Հռոմ գնաց։ Բայց ի զուր։ Իր եռանդուն գործունէութիւնը կտրեց մահը . . . եւ ոչ իսկ Նաբաւ լեռը կրցաւ ելլել, որ գոնէ անկէ կարենայ նշմարել խոստացուած երկիրը։ . . . Ասանկ իրեն հետ գերեզման գնաց Հունգարահայոց եպիսկոպոսութեան վերականգնուելուն վերջին յոյսն ալ։

Լուքաչի, ազատ ժամանակը մեծ սիրով ու եռանդեամբ կը կարդար լատին մատենագիրներն, որոնցմէ անանկ լատինականութիւն մը ստացաւ, որ հազուագիւտ է։ Ըսածնուս վկայ են, Տակիտոսի հոծ ու ջղուտ ոճովը գրուած Դրանսիլուանիոյ Հայոց պատմութիւնը (Historia armenorum Transilvaniae) — "Հայոց դիրքը եւ իրենց պատմութիւնն ի հնումն — կ'ըսէ իր գործքերուն մէկուն մէջ — իմ երիտասարդութեանս գլխաւոր նիւթը կազմելով՝ հարկ եղաւ, որ Հայոց անընդմիջական դրացի եղող ծածկեալ ու անհետ եղած մեծ տէրութիւններուն եւ ուրիշ՝ Հայոց հետ յարակցութեան մէջ եղող ազգերուն պատմութիւնն ուսումնասիրեմ։„ Իր խուզարկութեանցը մէջ, շատ մեծ օգնութիւն մատոյց իրեն, իւր լեզուագիտութիւնը։ Ինը լեզու գիտէր (հայ. հունգ. գերմ. ռոմաներէն, իտալ. գաղղ. անգղ. լատ. եւ յունարէն) ի գիր, եւ գրեթէ զամէնքը՝ նաեւ ի լեզու։ Այսոնց օգնութեամբը՝ օտար լեզուաւ լոյս տեսած աղբիւրներէն, ուզածին պէս կրնար

ծծել։ “Ո՞վ պիտ՚որ ըլլայ — կը հարցընէ
գիտնականն Ստեփ. Հօրվաթ. — այն . . . մեր
մէջ բնակող Հայերէն, որ հայ մատենագրաց
օգնութեամբը յայտնէ մեզի հունգարական
ազգերուն վրայ խօսող տեղեաց անունները։”
Այս հարցման պատասխանը տուաւ Լուքաչի։
Ինք չէ թէ միայն լուսաւորեց հունգարական
ազգաց վրայ խօսող տեղերուն անունները, այլ
նաեւ աշխատասիրեց (verarbeiten) զանոնք այն
մեծ գործքին մէջ, որուն անունը դրաւ “Հուն-
գարացւոց նախնիները, իրենց վաղեմի անուն-
ները, բնակութեան տեղերն՝ ըստ հայ աղբերաց։”
Այս գործքին գերապանծութիւնը հունգարա-
կան ակադեմիան հրապարակական եղանակաւ
յայտնեց — 1871ին — իր ճանաչման մուր-
հակովը։ — Լուքաչիի մատենագրական գործ-
քերէն կը յիշենք դեռ “Ցաւելուածք՝ Դրան-
սիլուանիոյ Հայոց պատմութեանը.” “Վարք
Սրբոյն Գրիգորի” եւ այլն։

Իբրեւ առանձինն մարդ շատ խնայողու-
թեամբ կ՚ապրէր, որպէս զի կարենայ ժողոված
լումաներն անո՛նց համար մէկդի դնել —
զորոնք Փրկիչն ամէնէն աւելի մեր սիրոյն յան-
ձնեց — որբոց համար։ Մարդկային գթու-
թեան զգածմամբը լեցուած, եւ անդիմադրելի
կերպով զարնող սրտին ազդեցութեանը հե-
տեւելով՝ սկսաւ իր ազնուական դիտաւորու-
թիւնը գործադրել, երբ՝ 1861ին՝ 4000 ֆիո-
րինով հիմ դրաւ Հայաքաղքին մէջ հիմնուելու-
մանչ տղոց որբանոցին։ Գեղեցիկ օրինակը հե-

տեւողներ գտաւ. վասն զի ինչպէս մասնաւորք, նմանկ ալ հասարակութիւնք բաւական գումարով այս սուրբ նպատակին օգնեցին։ Նմանկ որ այս կարեւոր հիմնարկութիւնն արդէն սկսած տարին գործադրուելու կարողացաւ։ Սակայն աղնուական հոգին չուզեց կանգ առնուլ այս տեղս. հապա 6000 ֆիորինով՝ պզտիկ բայց գեղեցիկ տուն մը գնեց։ Իր սիրական հիմնարկութիւնը կենաց վերջին վայրկեաններուն մէջ ալ չմոռցաւ. վերջին անգամ տուաւ դարձեալ 4000 ֆիորին։ Սակայն ի՞նչ կ'ըսենք, վերջին անգամ։ Իր վերջին փափաքն էր, որ եթէ ուրիշ աղնուական փափաք մը — այսինքն հայ եպիսկոպոսութիւնը — իր մահուանէն տասը տարի ետքը չիրականանայ, այն ատեն իր ստացուածոցը կէսը որբանոցին անցնի։

Լուքաչի՝ Հայաքաղքի ազգային վարժանոցին 15 տարի վերատեսչութիւն ըրաւ։ Վարժոցական խորհրդոց մէջ՝ վերջին անգամ նախագահութիւն ըրաւ 1876 Սեպտ. 7ին։ Անկից ետքն, ա՛լ չկրցաւ իր ծերութեանը համար դպրոցաց սեամքը կոխել։ Անկողին ինկաւ։ Գեղեցկախօս շրթունքները դադրեցան, իմաստնալից խօսքերը դպրոցներն ա՛լ չհնչեցին։ Աչքերն, որոնք ա՛յնչափ կը զմայլէին իր հիմնարկութեանցը վրայ — յաւիտեանս գոցուեցան 1876 Հոկտ. 24ին։

Այս — ամէնուն սիրտը ցաւով լեցնող — դէպքէն երկու օր ետքը՝ քաղաքն արտաքոյ կարգի ընդհանուր ժողով մը գումարեց։ Ասոր

գլխաւոր կէտերն էին. Քաղքին խորհրդականները, քահանայք, ուսուցիչք եւ վարժապետք, ութ օր սգոյ շղարշ (flor) կրեն: Երկրորդ — որովհետեւ քաղաքը հանգուցելոյն արժանիքն՝ շնորհակալութեան եւ որդիական սիրոյ գործքերու ձեռօք անմահացընել ուզեց — իրեն համար շինուելու արձանին ծախուցը համար 1000 ֆիորին կու տայ:

Թաղման հանդիսաւորութիւնը կատարուելէն ետեւ՝ մարմինն եկեղեցւոյն ստորերկրեայ դամբանարանը տարուեցաւ[1]. ուսկից մնացորդներն ետքէն (1888) առնուեցան ու մեծ հանդիսութեամբ որբանոցին Նորաշէն եկեղեցին դրուեցան:

Ընդարձակ շրջան ունեցող գիտութիւն, անբեկանելի ազգասիրութիւն, հայ եկեղեցւոյն իրաւացի օգուտը պաշտպանելու մէջ՝ անշէջ եռանդ, զոհողութիւն, մարդասիրութիւն ... ասոնք էին իրեն կենաց յատկացեալ նշանները:

Կրնան տարիներ գալ. տասնեակներէ ետեւ դարեր ... կրնան մեր քաղքին վրայ լաւ ու գէշ օրեր երերալ. բայց հազիւ պիտի ունենայ մեր քաղաքը ուրիշ Լուքաչի մը: Պիտի ըլլայ եռանդ, հաստատուն բնաւորութիւն, զո-

---

1 Դագաղն որմին մէջ հիւսուած էր. պատին վրայ ալ այս մարմարեայ յիշատակարանը կեցած էր ոսկեգրերով.
Hic requiescit R. D. Christophorus Lukácsi. Archid. Distr. Szolnok Interioris. Parochus arm. rit. Szamosujvariensis. Director gymn. et S. Sedis consistorialis Assessor. nat. 1801. 30a. Martii. denatus 1876 24a Oct. aetatis suae 73. sacerdotii 49. Decus, columen et benefactorem lugent omnes Armeni transilvani.

հողութիւն, անշահասիրութիւն. վասն զի ապագային վրայ պէտք չենք կասկածիլ: Բայց անանկ մարդ մը, որ իր երիտասարդ ժամանակին համոզումը ծերութեան օրերուն մէջ ալ՝ երիտասարդական աշխուժով՝ մինչեւ վերջը պաշտպանէ. որ իր 73 տարուան հասակին մէջ ալ ան անշահախնդիր, ազնուական մտածութեամբ եւ գաղափարներով իջնայ գերեզման, որոնցմով որ իր ասպարէզն սկսած է. — որ իր կենաց մէջ, ամէն բան իրեն զլանայ՝ միայն անոր համար, որ ուրիշներուն կարենայ տալ. — որ իր լումաներն՝ դեռ կենացը մէջ տայ, առանց մէկուն գիտնալուն . . . որ երբեք փառքը չփնտռէ, որ անապարծութեան շուքէն ալ սարսափի . . . որ մշտնջենաւոր ժամանակներ մնացող հիմնարկութիւններով հասարակութիւնը հարստացընէ . . . անանկ մարդ մը, մարդկութեան միայն ոսկիդարը կրնայ ցուցընել:

### Դ. Գրիգոր Ցէյեան:

Անոնցմէ մէկն է, որոնք կեանքերնին նուիրած են ազգին պատանեկութեան ազնուութեանն ու կրթութեանը:

Ծնած է Կերլա քաղաքին մերձ Տէժ քաղաքն, ուր աւարտեց տարրական դպրոցները: Միջնադպրոցներն ու իրաւագիտութիւնը սորվեցաւ Գլուժ: — Շատ յաջողութեամբ ուսմունքը լմընցընելէն ետեւ 1847ին իր նախնական տեղը՝ Կերլա գնաց. վասն զի յոյս ունէր ,որ Ռափայէլ Ղարամեանին հիմնելի բարձրագոյն

ազգային դպրոցին մէջ իբրեւ ուսուցիչ պիտի գործէ։ Բայց վարժոցին բանն օդն ելաւ. ու ինք՝ այն միջոցին ուրիշ մեծագոյն դպրոցի մը մէջ ընդունուելու յոյս չունենալով՝ շատացաւ



ԳՐԻԳՈՐ ՑԵՑԵԱՆ

անով, որ հոն տարրական դպրոցներու մէջ ուսուցչութիւն ընէ։ Իր այս ծանր պաշտօնն ամենայն ճշդութեամբ, հոգատարութեամբ ու խղճմտանօք կը կատարէր։ Շատ խիստ էր, բայց արդարակորով։ — Երբ 1861ին բացուեցաւ ազգային վարժարանին չորս ստորնագոյն դասը,

քաղաքային վարչութիւնը գցեցեան ալ ուսուցչաց կարգն ընդունեցաւ:

Քառասուն տարի անցուց ուսուցչութեան ասպարիզին մէջ: Շատ կը սիրէր ու կը պաշտպանէր դպրոցը, բայց նաեւ զհայ եկեղեցին ու զքաղաքը: Խնայողութեամբ կ՚ապրէր, որպէս զի ճնայ որբերուն, որոնց տարիներով Հայրութիւն ու Նախագահի փոխանորդութիւն ըրաւ: — Բնական բերմամբ մը շատ կը սիրէր անմեղ ու թողուած լքուած աղքատ ու որբ տղաքը: Անոր համար մէկդի դրած դրամներուն գումարն, ըստ իր սկզբնական կտակին՝ Թողուց Կերլայի մէջ կանգնուելու աղջկանց որբանոցի մը, որ ճշդիւ նոյն սկզբանց ու հիման վրայ պիտի շինուէր, որուն վրայ հիմնուած է այսօրուան Ս. Գրիգոր Լուսաւորչին որբանոցը: Բայց ետքէն փոխեց իր այս մտածմունքն, ըստ մասին անոր համար, վասն զի կը համարէր որ ասով երկու հիմնարկութիւնն ալ՝ չունենալով բաւական դրամագլուխ, խեղճ ու ողորմելի վիճակի մէջ՝ կաղն ի կաղ պիտի ընթանային. — ըստ մասին անոր համար, վասն զի չէր գիտեր թէ աղջկանց որբանոցն իրօք ե՛րբ ի վիճակի պիտի ըլլայ իրականութիւն ստանալու: Բաց ասկէ շատ գոհ էր Ս. Գրիգորի որբանոցի վարչութեան կերպովն: Ուստի այս մտածմունքներուն մէջ յառաջագոյն շինած կտակն ոչնչացուց, ու երկրորդով մը բոլոր ստացուածքը՝ տներն ու կալուածները, ընդ ամէնը իբր քառասուն հազար Ֆիորին՝ մանչ տղոց որբանոցին թողուց:

Իր աշկերտներէն մէկէն եղաւ եպիսկոպոս, մէկալէն երեսփոխան, երրորդէն՝ փաստաբան, չորրորդէն՝ դատաւոր, ուրիշէ մը՝ բժիշկ եւ այլն: — Վախճանեցաւ 1889 Աւգ. 24ին, վաթսունուեօթը տարեկան: Թաղուեցաւ Հասարակաց գերեզմաննոցը: Բայց չորս տարի ետքը՝ 1893 Հոկտ. մարմնոյն մնացորդները փոխադրուեցան Ս. Գրիգորի որբանոցին մատուռն. ու զետեղուեցան Լուքաշէի նշխարքներուն քով:

### Ե. Անտոն Մոլնարեան:

Քիչ ընդհատութեամբ, քսան տարի Հայաքաղքին երեսփոխանութիւն ըրող գիտնական, գործունեայ ու ճարտարաբան անձը, ծնած է Կերլա — 1847 Նոյեմբ. 17ին — միջակ կարգի, բայց պատուաւոր ծնողացմէ: Հայրը կը կոչուէր Գրիգոր, իսկ մայրը՝ Աւրեղիա Գովաչ: Դեռ պզտիկ տղայ եղած ատեն՝ սկսաւ մեծ փափաք ցուցընել ուսման. որուն մէջ միշտ յառաջադէմ էր: Հօրը փափաքն էր, որ որդին վաճառական ըլլայ՝ կարծելով որ այս ճամբով աւելի շուտ նպատակին պիտի հասնի, եւ ասանկով աւելի դիւրաւ ի վիճակի կ'ըլլայ ծերութեան մերձեցող ծնողաց նեցուկն ըլլալու: Սակայն ետքէն, երբ որ տղուն ուսման եռանդն, արտաքոյ կարգի փութաջանութիւնն ու մանաւանդ մեծ կարողութիւնը տեսաւ, թողուց որ յառաջանայ այն ճամբուն մէջ, զոր ինք իրեն ընտրեց:

Մէկ երկու տարի անցնելէն ետեւ շատ հաճութեամբ կը նկատէր ու սիրով կը զբաղէր ծերունին՛ այն մտածմունքներով՝ թէ իր միմիայն



ԱՆՏՈՆ ՄՈԼՆԱՐԵԱՆ

զաւկէն օր մը գիտուն ու երեւելի մարդ մը պիտի ըլլայ։ Եւ իրօք ալ չխաբուեցաւ. մտածմունքն իրականութիւն եղաւ։ Տղան՝ իրմէն սպասուած ակնկալութեան լիուլի կերպով

համապատասխանեց։ Իր ուսուցչացը փառքն ու դասընկերացը պարծանքն էր։ Իբրեւ վարժոցի աշակերտ, գիտնական յօդուածներ կը գրէր։ Իր հրապարակագրական(publiciste) գործունէութիւնն սկսաւ՝ երբ դեռ իրաւանց ունկնդրութիւն կ'ընէր։ Ասոր վրայ Պուտաբէշդի ամէնէն առաջին լրագիրներուն — Pesti Naplo, Reform, Pester Lloyd եւ այլն — ըստ մասին շարունակեալ գործակիցն ու ըստ մասին խմբագրի օգնականն էր։

Ակադեմական տարիները լմընցընելէն ետեւ, իբրեւ իրաւագէտ եւ քաղաքագէտ դարձաւ իր ծննդեան քաղաքը։ Հոս անսովոր փառաւորութեամբ ընդունեցաւ դեռ հազիւ 27 տարեկան պատանին. զոր տարի մը ետքը — որ միջոցին գրեց Հայաքաղաքին հարիւր ոսկւոյ մրցանակ ընդունող տեղագրութիւնը — քաղաքն՝ իրեն երեսփոխան ընտրեց, 1871ին։ — Արդէն այս միջոցին իր մեծ կարողութեանը, անդիմադրելի ճարտարաբանութեանն ու ընտիր գրչին համար պատգամաւորաց սենեկէն մեծարուած՝ անոր իբրեւ մէկ նշանաւոր անդամը կը նկատուէր։ — 1879ին սկսաւ "Հունգարական Թերթեր„ (Magyar Lapok) անուն օրագրին խմբագրութիւնը։ Երկրորդ տարին վրան առաւ նաեւ "Հունգարիա եւ Տիեզերք„ պատկերազարդ շաբաթաթերթին խմբագրութիւնը։

Թէպէտ խել մը թերթերու եւ օրագիրներու համար շարունակ կը գործէր, այսու ամենայնիւ մասնաւոր կերպով մը կ'ուսումնա-

սիրէր իր սիրական ճիւղը. Հունգարիոյ եւ Տիեզերական պատմութիւնը: Իր գլխաւոր երկասիրութիւններն են. “Պատկերազարդ ընդհանուր պատմութիւն„ (Միջին դար), “Հունգարիոյ յարաբերութիւններն առ արեւելեան տէրութիւնս, միջին դարու մէջ.„ “Հունգարիոյ ընդհանուր պատմութիւնը:„ Բաց ասկէ, թարգմանեց, Պէօլէի “Աւգոստոսի գերդաստանն ու ժամանակը.„ եւ Լապուլէի “Տէրութիւնն ու իր սահմանները„ անուն երկասիրութիւնները: Այսոնցմէ զատ՝ ունի շատ մը նիւթոց վրայ թերթական փոքր գրութիւններ: Հիմակ ալ գործակից ու թղթակից է խէլ մը ուսումնական հանդէսներու, շաբաթական թերթերու եւ լրագիրներու: “Արմէնիա„ ծանօթ ամսաթերթին համար մինչեւ հիմակ ութսունուչորս գիտնական յօդուածէ աւելի գրած է:

Եղած է ժամանակ, որուն մէջ քիչ ատենի համար հրաժարեցաւ երեսփոխանութենէն. այսու ամենայնիւ, իր ու քաղաքացեացը մէջն եղած անձուկ կապն երբեք չընդհատեցաւ: Իրեն ամէնէն մեծ ուրախութիւնն է, երբ իւր ընտրողները գոհ կ'ընէ ամէն բանի մէջ ըստ իր կարողութեանը:

Պատգամաւորաց սենեկին մէջ, հիմակ յառաջուան չափ յաճախ ճառաբանութիւն չընելուն պատճառն ան է, որ վերջին շրջանին մէջ՝ երեսփոխանաց սենեկին գլխաւոր քարտուղարներէն մէկուն պաշտօնը վարելով՝ ձեռըները կապուած են:

Չենք տարակուսիր որ զՄոլնարեանն ալ, ինչպէս ազգայիններէն մէկ քանին, օր մը տէրութեան բարձրագոյն պաշտօնէի մ'աթոռն ողջունելու պատիւ պիտի ունենանք։

Զ. Խաչիկ Սանճաքճեան։

“Ալմէնիա„ ամսաթերթին հրատարակիչն ու խմբագիրը՝ ծնած է ի Հայաքաղաք, 1843 Մարտ 21ին, աղքատ բայց շատ բարեպաշտ ծնողացմէ։ Հայրը կը կոչուէր Յովհաննէս, իսկ մօրն անունն էր Հռիփսիմէ Տոնովագեան։ Իր տարրական ուսմանց չորս դասերը կատարեց իւր ծննդեան տեղը։ Անկից — միջանկեալ երկու դասերն առանձինն սորված ըլլալով՝ — անցաւ վարժարանական երրորդ դասն։ Աս՝ ու հինգ յաջորդ վարժոցի տարիները սորվեցաւ ի Գալըս-պուրկ։ Ամէն դասին մէջ առաջինն էր։ Յիշեալ քաղքին մէջ ըրաւ հասունութեան (maturité) քննութիւնն ալ քաջ վկայականով՝ 1863ին։ Նոյն ուսման տարեկան ընթացքին սկիզբն՝ ընտրուեցաւ Կերլայի հասարակութենէ լիուլի ձայնով՝ վարժարանի ուսուցիչ։

Այս ժամանակէն՝ շարունակ կը գործէ ուսուցչութեան ասպարիզին մէջ, վերջին աստիճանի խնամքով, քաղցրութեամբ ու յաջողութեամբ։ Շատ աշկերտի առաջնորդեց ի բարին. եւ բազմաթիւ ուսանող իր ձեռնտուութեամբն ու քրտինքովն՝ ի վիճակի եղաւ չէ թէ միայն անկմանէ ազատելու, այլ նաեւ լաւապէս յառաջանալու ուսման եւ գիտութեանց ճամբուն մէջ։

Սոնկոդեան ցուցուց ու կը ցուցընէ միշտ իր մեծ գործունէութիւնը հաւասարապէս՝ դպրոցի, եկեղեցւոյ, հրապարակական գործառնութեան ու քաղաքային գործոց մէջ։ Շատ կը ճգնի թէ մտքով, թէ բանիւ, թէ գործով



ԽԱՉԻԿ ՍՈՆԿՈԴԵԱՆ

հասարակութեան օգտին եւ Հայաքաղքին զարգացման ու բարձրանալուն։ — Հատու են ու պերճաբանութեամբ լեցուն իր խօսքերը։

Իր ծննդեան տեղւոյն ունեցած յարումն ու սէրն այնչափ մեծ է, որ մեծամեծ պաշտօններն, զորոնք ատեն ատեն այլեւայլ տեղերէ

ու անձինքներէ ընդունեցաւ, չկրցան զինք այնչափի բերել, որ իր սիրելի քաղաքը թողու։ Ոչինչ պաշտօն, ոչինչ պատիւ կարող եղաւ զինք իր ծննդեան որմերէն հեռացընել։ — Ինք զինք միշտ իր պաշտած ազգին ծառայութեանը նուիրեց։

Շատ շրջահայեաց ու թափանցող միտք մ'ունի. ուստի եւ խոհեմութեամբ, խելքով ու հանդարտութեամբ կը խորհի ու կը խօսի։ Անոր համար շատ մ'ընկերութեանց ու հիմնարկութեանց անդամ ու վարիչ է։ Վեց տարւոյ չափ վարչութիւն ըրած է արուեստական դպրոցին։ Քաղաքային վարչութեան պատգամաւոր, տեղւոյս խնայողութեան դրամատեղանին՝ վարչութեան անդամ, Դրանսիլուանիոյ Կաթող. Ընդհ. խորհրդին երեսփոխան, Ս. Ստեփանոսի ընկերութեան պատուոյ անդամ, Հունգարական ազգագրական ընկերութեան՝ հայկական բաժնին, տեղեկատու (referent) է. եւ այլն։

Որչափ որ ալ ազգին ունեցած սէրն ամէն առթի ու ամէն պարագայի մէջ ցուցուց, սակայն անոր ունեցած յառաջադիմութեան եռանդն ու փափաքը՝ բանով մը այնչափ չարտայայտեց ու նշանաւոր չըրաւ, որչափ անով՝ որ սաստիկ մեծ ընդդիմութիւններու յաղթելով զանազան խութքերու առջեւն առնելով ու ամենէն մեծ դժուարութիւնները նուաճելով՝ հիմնեց Հայաքաղքին մէջ հայկական հունգարալեզու թերթ մը։ Անով՝ մէկ կողմանէ ծանօթացուց, բարձրացուց ու իր պատշաճ տեղը զետեղեց

Հայ ազգը շրջակայ ազգերուն դիմաց, — մէկալ կողմանէ բացաւ ազգայնոց աչքերը. անոնց նոր կենդանութիւն մը տուաւ, երբ առջեւնին դրաւ իրենց վաղեմի վիճակն, իրենց անցեալը։ — Եթէ Սոնկողեան չունենար ամենեւին ուրիշ արդիւնք մը, այս բաւական էր իւր ազգն իրեն շնորհապարտ ընելու եւ զինք՝ յիշատակի արժանի անձ մ՚ընելու...։ — Իր երկասիրութիւններէն կը յիշենք նաեւ Մովսիսի Խորենացւոյ պատմութեան հունգարերէն թարգմանութիւնը. Հայաքաղքի ստորագրութիւնն ու համառօտ Հայոց պատմութիւնը։

Բարեսիրտ, բարերար ու հիւրասէր է։ Չկայ ազգային մը, որչափ որ ալ անծանօթ ըլլայ, որչափ որ ալ հեռու տեղէն գայ, որ իր յարկացը տակ ընդունելութիւն չգտնէ ու իրմէն նիւթական ու բարոյական օգնութիւն չընդունի։ — Կը գործէ, չէ թէ դրամի, հապա կարստ եղբարցն օգնելու համար։ Իր գիտութեան, ազնուամտութեան ու ազգասիրութեան պտուղը կը վայելէ, չէ թէ միայն ազգին ազնուական մասն, այլ նաեւ ամէն աղքատ. վասն զի բաց է ձեռքն ամէն կարօտութիւն ունեցողին համար։ Դիւրամատոյց ու քաղցրաբարոյ անձ մըն է։ Քիչ կը խօսի, շատ կը գործէ։

Բարեպաշտութեան ու ամուսնական կենաց օրինակ է։ Քաղքին՝ շատ պատուաւոր ու մեծարելի արկղակալին — Աստուածատուր Պարոնեանի — դստերը՝ Վերոնիկայի հետ ամուսնացած է։ Աստուած իրենց ամուսնու-

թիւնն օրհնեց մէկ հատիկ աղջիկ զաւակով մը. բայց աս ալ քանի մը տարի յառաջ, ծաղիկ հասակին մէջ իւր ուսումնասիրութեան զոհ ըլլալէն ետեւ, ծնողք ա՛լ իրենք զիրենք ամէն կերպ բարեգործութեան ու բարեպաշտութեան տուած են։ Ազնուամիտ ու հեզահոգի կնիկն իր մխիթարութիւնը կը գտնէ միայն եկեղեցւոյ մէջ. իսկ էրիկը՝ գրքերուն, գիտութեան ու ազգին օգնելուն մէջ։

Բոլորովին տարբեր կ'ըլլար Դրանսիլուանիոյ ազգայնոց վիճակը, եթէ քանի մը Սոնկոդեան ունենային։

## 13. Մխիթար Աբբայ, Մխիթարեանք ու Հայաքաղաք:

Մխիթարայ գործունէութեան ոգին տարածուեցաւ, ոչ թէ միայն արեւելեան այլ նաեւ արեւմտեան ազգայնոց վրայ։ Ինչպէս Հայաստանի այլեւայլ կողմերն՝ անանկ ալ Դրանսիլուանիոյ այլեւայլ քաղաքներն առաքեալներ խաւրեց, հոն տեղի հայոց մէջ ալ հաւատքին անմբծութիւնն ու ազգայնութեան ոգին վառ պահելու համար։

Ժամանակակից տարեգիրներէն կը կարդանք թէ 1729ին Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց խրկեց զՀ. Մանուէլ իբրեւ առաքեալ եւ ուսուցիչ։ Բայց ասկէ եօթը տարի յառաջ կամ 1722ին, արդէն նոյնն ըրաւ Կերլայ քաղաքին, երբ անոնց փափաքանացը համեմատ, իրենց խրկեց զՀ. Մինաս Թորոսեան շատ հմուտ,

գործունեայ ու ձեռնարկու անձն, որ կայսերական հրովարտակի մը մէջ "Եռանդուն ու հաւատարիմ հպատակ, գեղեցիկ արհեստից, փիլիսոփայութեան ու աստուածաբանութեան վարդապետ" կը կոչուի. որ՝ Վիեննայի արքունեաց մէջ գործեց ամենայն ժրութեամբ ու յաջողութեամբ ի նպաստ Դրանսիլուանիոյ՝ եւ ի մասնաւորի Հայաքաղքի ու Եղիսաբեթուպոլսոյ ազգայնոց։ — Ա՛ս է այն անձը որուն ձեռնտուութեամբը թէ Հայաքաղաքացիք ու թէ Եղիսաբեթուպոլսեցիք կ'ընդունին Կարոլոս կայսրմէն արտօնութեան հրամանագիրներ։

Տեսնենք ու ճանչնանք զինք ի մերձուստ, ա՛յն — Մխիթար Աբբահօր յատուկ ձեռօքը գրած — յանձնարարական թղթէն, որով զինք Կերլայի հասարակութեան կը յանձնէ. ու ճանչնանք միանգամայն յարաբերութիւններն որ կար Մխիթարայ ու Հայաքաղքին վարչութեանը մէջ։

"Ազնուամեծարից եւ հաւատարմաց մերոց սիրելեաց երկոտասանից իշխանաց Կեռլէյու։ Եկեղեցպան խաչիկին, Պիրով Թօտօրաշին, Աղա Սօղոմոնին, Աղա Ալեքսանին եւ այլոց աղայից ըստ կարգի։

Յիսուսաւանդ ողջոյն բազմաւ օրհնութեամբ եւ հոգեւոր սիրով մատուցանեմ վերագրելոցդ ազնուամեծարից իշխանացդ եւ առհասարակ ամենից ձեզ եղելոց Աստուածասիրաց ժողովրդոց եւ խնդրեմ ի տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, զի զձեզ միշտ ի շնորհի

իւրում պահեսցէ, որպէս զի օր ըստ օրէ ա-
ռաւելանայցէք ի սէր ճշմարտութեան կաթու-
ղիկէի հաւատոյն Հռոմէականի սրբոյ եկեղեցւոյ
եւ ի գործս բարեաց. եւ լինիջիք բարի օրինակք
այլոց ամենից մերձակայից ձերոց, որպէս եւ
մինչեւ ցայրդ եղեալք էք: Արդ ահաւասիկ ըստ
ձերոց բաղձանաց ի սրբոյ ժողովոյն առաքի առ
ձեզ միսօնար, վերապատուելի եւ սիրելի
եղբայրն մեր մինաս աստուածաբանութեան
վարդապետն, որ է բազմաց գովութեանց ար-
ժանի, եւ յոյժ յարմար առ ի կառավարել
զձեզ. իրաւի է այս, զի աստուած ի պիտանաւ-
որութիւնս եւ ի պարզամտութիւնս ձեր հայեալ,
զայսպիսիս վասն ձեր ընտրել հաճեցաւ, որ
կարող է՝ ոչ միայն ըստ հոգեւորին կառավա-
րել եւ հովուել զձեզ, այլ նաեւ ըստ մար-
մնաւորին վասն ձեր կալ առաջի իշխանաց եւ
նախախնամել զձեզ, ըստ որում եւ տենչայցիք.
քանզի գիտէ զլեզու լաթին եւ է յոյժ բարե-
հաճոյ եւ համարձակ ի կենցաղավարիլ ընդ
մեծամեծս եւ ընդ փոքունս: Վասն որոյ յամե-
նայնէ սրտէ յանձնեմ զսա ձերում բարեպաշ-
տութեան, զի մեծաւ սիրով եւ արժանաւոր
պատուով վերընդունեալ զսա, միշտ սիրով
եւ պատուով վերապահեցէք զսա վասն ձեր:
Եւ դուք երկոտասան իշխանքդ՝ ի համայնս դի-
պուածս ջատագովք եւ թիկունք լինիջիք սմա,
որպէս զի եւ սա կարիցէ ազատաբար աշխատիլ
վասն բոլորի հասարակութեան ձերոյ. եւ ըստ
ամենայնի հոգ տարջիք, զի մի գուցէ այլ ոք ո՛

եւ իցէ՝ անհնազանդ, եւ կամ՝ հակառակ լիցի սմա. վասն զի միշտ ի պատուի եւ ի տէրութեան մնալն սորին, մեծագոյն օգուտ է ձեզ: Եւ եւս յորժամ առ իշխանս ոմանս տարջիք զսա, տարէք մեծաւ պատուով. Նոյնպէս եւ յորժամ՝ առ եպիսկոպոսն՝ եւ կամ՝ առ վեկարն Նորին տանիք՝ մեծաւ պատուով ընկերացեալ ամենայն տանիջիք: Եւ վերջապէս զայս ծանիք զի որքան մեծաւ սիրով եւ պատուով պահէք զսա, զայնքան մեծամեծս օգուտս գտանէք. եւ զի գիտեմ՝ զբարեպաշտութիւն ձեր, որ առաւել քան զոր գրեմս առնէք, վասն որոյ վասն ձեր ուրախ եմ՝ յոյժ ի տէր. եւ հանապազ աղօթօղ. եւ յուսամ՝ զի միշտ զբարուոք գնացս ձեր լսելով մնալոց եմ ի նմին ուրախութեան: Ամէն:

Իսկ վասն մերոյ հայր մանուէլին՝ որ այս քան մնաց այդր՝ ըստ խնդրոց մերոց. զայս խնդրեմ զի որպէս եւ ես, ասացեալք էիք թէ յետ գալստեան միսոնարին ապա յղեմք. ահա միսոնարն եկն առ ձեզ. վասն որոյ եւ բարեպաշտութիւն ձեր առանց յապաղելոյ ճանապարհորդեցէք զնա առ մեզ. զի աստ ի մենաստանի մերում՝ պիտոյ է նա մեզ: Եւ զի վերապատուելի եւ սիրելի եղբայր մեր մինաս վարդապետն խնդրեաց ի մէնջ զի ժամանակ ինչ մնասցէ եւ ապա գայցէ, վասն որոյ եւ մեք թոյլ տուաք, զի մինչեւ ի վերջն օգոստոսի մնայցէ. ուստի ի սկզբան սեպտեմբերի ամսոյն՝ խնդրեմ զի ճանապարհորդեցէք զնա լաւ ընկերօք մինչեւ ի վենա: Եւ գիտել պարտիք զի մեք ամենայն

միաբանօք մերովք աղօթօղք եմք վասն ձեր. եւ ձերով բարի անուամբն ուրախացօղք. եւ թէպէտ Հայր մանուէլն եղանէ ի ձէնջ, բայց վերապատուելի մինաս վարդապետն այդր գալով՝ այնպէս է իբրեւ թէ ոչ եղանէ, քանզի որքան գրով Հայր մանուէլին՝ զձեր ամենայն որպիսութիւն իմացեալ ուրախացաք, նոյնպէս եւ գրով մինաս վարդապետին իմանամք եւ ուրախանամք, զի է մեր Հաւատարմագունեղ սիրելի եւ բարեկամ եւ իբրու մի սիրտ եղեալ ընդ մեզ. վասն որոյ վերստին եւ կրկին կրկին յանձնեմ ձեզ զմինաս վարդապետն աստուածաբանութեան, զի մեծաւ սիրով եւ պատուով պահիջիք զսա ի փառս աստուծոյ՝ ի պարծանս եկեղեցւոյ եւ ի օգուտ ձեր: Բաւ է. ողջ լերուք:

Յամի տեառն 1722 Մայիսի 25.

Ազնուամեծարութեան ձերում՝ Նուաստ ծառայ
միխթար վարդապետ
Աբբայ Հայր.

Ի ձեռն Ազնուամեծարից եւ Հաւատարմաց երկոտասանից իշխանաց եւ պիրովին Կեռլէյու, Հասցէ ի բարին
Թռանսիլուանիա. Ի Կէոլէ.»

Անտարակոյս առաքեալը կեցաւ Հայաքաղաք՝ չէ թէ երեք ամիս, ինչպէս նախապէս սահմանուած էր, այլ շատ տարիներ. ու առաջնորդեց եւ գործեց ի նպաստ ազգայնոց: Ջինք դեռ 1733ին Դրանսիլուանիա՝ Հայոց մէջ, մէյ



ՇՐՋԱԳԱՅՈՒԹԵԱՆ ՊԱՐՏԻԶԻՆ ԼԻՃԸ (Էջ 265)

մը Հերմանշդատ, մէյ մը Կերլա, մէյ մը Եղիսաբեթուպոլիս կը գտնենք. կրկին քաղաքներուն համար արտօնութիւններ ու առանձնաշնորհութիւններ վաստըկելու։

Իր՝ ու մեծ հիմնադրին մահուամբ յարաբերութիւնները չկտրուեցան, թէ՛ մէկ ու թէ՛ մէկալ քաղքին հետ։ Կային Միաբանութենէն անդամներ, որոնք հոգւոց հոգով եւ սորվեցընելով կը զբաղէին։ Եւ որովհետեւ ինչպէս կ'երեւայ, Կերլա քաղքին մէջ դեռ ոչ հաստատուն բնակութեան տեղ եւ ոչ եկեղեցի ունէին, մէկալ կողմանէ ալ հոն մշտնջենապէս հաստատուելու կը փափաքէին, անոր համար աչուընին Սողոմոնեան եկեղեցւոյն եւ անոր կից եղած ժողովրդապետական շէնքին վրայ տնկեցին. մանաւանդ այն ատեն, երբ տեսան որ Հայաքաղքին ազգայինք ամենայն ժրութեամբ կը գործէին մեծագործ կաթուղիկէ մը կանգնելու։ — Այս մտածմունքն իրենց մտքին մէջ յղանալէն ետեւ, աղերսագիր մը գրեցին հասարակութեան, խնդրելով որ Սողոմոնեան եկեղեցին — որուն ինչպէս իրենք կը կարծէին, Հայաքաղքի ազգայինք ա՛լ հարկաւորութիւն պիտի չունենային — իրենց տրուի գործածութեան համար։ Պատճառ բերին ասոր, թէ արդէն հիմնադիրն իր կենդանութեան ատեն իրենց խոստացած է նոյն եկեղեցին, եւ թէ՝ կտակին մէջ ալ խօսք ըրած է իր ժառանգներուն, որ զեկեղեցին՝ անոր ամէն եկամուտովն ու մշտնջենաւոր պատարագներովը յանձնեն

*Մխիթարեանց. միայն թէ այն միջոցին, երբ քաղաքին մայր եկեղեցին լմըննայ, ժողովրդապետութիւնը հոն դրուի եւ քահանայք հոն փոխադրուին։ Ալ խոստանան մէկալ կողմանէ, որ ըստ իրենց կարողութեանը ծառայութիւն պիտի մատուցանեն ազգին՝ վրանին առնլով հոգւոց հոգն եւ տղաք սորվեցընելը։ Վերջապէս կ՚աւելցընեն, թէ ամենեւին ծանրութիւն պիտի չըլլան ազգայնոց. որովհետեւ՝ ինչպէս որ կը խօսուի, իրենք մուրացկան կարգէն չեն։*

*Բայց հասարակութիւնը չընդունեցաւ իրենց խնդիրքն, ու քաղաքային վարչութիւնը՝ տեղւոյն ժողովրդապետին կարծիքն ալ խնդրեց, եւ իմանալով որ ան ալ իր կողմանէ այս բանիս կ՚ընդդիմանայ, պատասխան տուաւ թէ՝ Տեղեկութիւն չունի այն բանին, որ յիշեալ եկեղեցին բերանացի կամ կտակով իրենց յանձնուած ըլլայ։ Աստուածատուր՝ Սողոմոնեան եկեղեցին իր ժամանակին ժողովրդապետին յանձնեց. անոր ձեռքն էր միշտ, եւ հիմակ ալ անոր ձեռքն ըլլալով՝ մէկու մըն ալ չի տար. քաղաքն՝ անոր հարկաւորութիւն ունի։ Իսկ երբ որ — կը շարունակէ պատասխանը — Աստուծոյ օգնութեամբը նոր եկեղեցին լմըննայ ու ժողովրդապետութիւնը հոն փոխադրուի. եւ Սողոմոնեանէն կանգնուած հին եկեղեցւոյն՝ քաղաքն ա՛լ պէտք չունենայ, թո՛ղ այն ատենի քաղաքացիքն — երբ խնդիրն առջեւնին դրուի — ընեն այնպէս, ինչպէս որ ուզեն եւ ինչպէս Աստուած իրենց խորհուրդ տայ։*

Կը գտնեմ երկու նամակն ալ, թէ Մխի-
թարեանց աղերսագիրն ու թէ հասարակու-
թեան պատասխանն. աւելցընելով՝ թէ ընդ-
օրինակութիւնը շատ գէշ եղած է. եւ թէ
բուն նամակներուն սկզբնագիրը տեսած չեմ։

"Ամի տեառն 1760։ Ինչդանցիա տված
Սողոմոնին ժամուն համար։ Յարգութեամբ
յայտնելով մեծագոյն խնդիրքն առաջի Հայա-
քաղաքի երկուտասան Հայ դատաւորացն,
խնդրեմ զի մտիկ անէք խնդիրքս։

Ինչպէս յայտնի է. եկեղեցին աւետմանըն
շինեալ է ի. ո. Հ. Սողոմոնէ Շիմայեան։ Զկնի
վախճանելոյն նորա, որպէս երեւի ի Դեստա-
մէնդէն, յանձնեալ է ֆամիլիային իւրոյ եւ ա-
րենակցաց, որպէս ողորմութեամբն Պ. Ա. Գրի-
գորին Շիմայեան եւ եղբօրորդոց նորին Պ. Ա.
լուսիկին Շիմայեան. զոր տեսնելով եւ մտա-
ծելով, որ Աստուծոյ ողորմութեամբն Պ. քաղ-
քին վերապատվելի Բլէպանիային եկեղեցին օր
ըստ օրէ կու հասդատվի ու կի հատըքվի, վասն
որոյ յօժարակամօք կամեցան տալու մեր կրօնին,
որն որ տասը տարի է նորուն ժամանակէն,
ինքեանց հրամանոցը կամեցողութեամբ յատուկ
կամօքն, արանց յորդորելու կամ արանց խըն-
դրելու շնորհեցին մեզ զայս Ս. Աւետման եկե-
ղեցին իւր կացութեամբն եւ մշտընջենական
ֆունտացիայովն. զի մինչեւ որ բլէպանիան չի
մտնուն Պ. քահանայքը նա, մենք չի մօտիկնանք։
Այժմ լսելով որ գերհարգելի Տէր Մինասը
առ Աստուած փոխեցաւ, վասն նորոյ յանձն առի

գալ այս տեղը, որ խնդրուածք ունինք մեծարելի Պ. Հայաքաղաքիս եւ գլխաճին, օր եփոր շնորհիւ տեառն այն ժամանակը հասնի որ վերապատվելի քահանայքն մտնուն բլէպանիան, անոր ետեւէն Պ. քաղաքը սիրով ընդունէ զայս կրօնը. ու Աստուծոյ շնորհիւ յոյս ունիմք, թէպէտ չինք պարծէնար, օր ծարայութիւն պի ունինք վասն հոգւոցդ շահի փրկութեան եւ վասն տղայոց չգօլայնու ուսումնասիրութեան: Թէ օր կամօքը ըլլայ Պ. քաղքինը, որն որ կի յուսանք շնորհիւ տեառն, որովհետեւ օր Աստուած մեղքըցիլ է մեր Հայոց ազգին եւ զայս կրօնս լոյս հանիլ է մեր հայոց ազգին օր մինայ հայի լեզուն հաստատ: Կի սեպինք թէ Աստուծոյ այս պատուական հայաքաղքին ալ օգուտ պի ըլլայ, վասն բազում իրաց: Զայս ալ կու յայտնինք, ինչպէս որ ծանրութիւն չի պի ունինք Պ. քաղքին. զէրամ մուրացկան քահանայ չինք, որպէս օր կի լսինք թէ շատոնք զուրուցիլին: Այսու որպէս որ ասելով զվերոգրեալ խնդիրքս զըասեմ գըդութեամբ բարի պատասխանութեամբ. մեծարելութեան ձեռում մնամ.

Նուաստագոյ ծառայ
Հ. Ղազարոս Կրօնաւոր ի կարգէ
սրբուն Անտօնի աբբաի:„

Աղերսագրին պատասխանը:

"Ինչպէս կարդալով Պ. քաղաքը զիշդանձիան ձեր հրամանոցը եւ մտիկ անելով զՊ. այս տեղացի Բլէպանիային պատասխանն ալ, եւ

գլիւր դիտողութիւնը. եւ տեսնելով որ չի գայ հնար վողորմութեամբն Աստուծոյ Սօղօմօնին առած ժամն, զորն որ Բլէպանիային թողել եւ ինչվասնալ Բլէպանիային ձեռն եղել եւ է, ձեր հրամանոցը կրօնին տալու եւ ոչ կու տանք ամենեւին: Աստուած տայ որ հատրըվի նոր ժամը եւ ի հոն տարվի բլէպանիան. եւ այս հին Սօղօմօնին արած ժամին պիտվականութիւն չի ունէնար Պ. քաղաքն, նա այն ժամանակ այն տենի ապրող քաղքըցոցը մօտ solicituat պանիք. որոնք եւս պանին, ինտոր Աստուած խրատէ իրենց: „

Այսպէսով եկեղեցւոյն խնդիրը լմնցաւ:

— Թէպէտ նոքէն Յովհ. Մոլտովանեանին իրենց խոստացած տան համար 6000 ֆիորին պահանջեցին քաղքէն, բայց աս ալ չյաջողեցաւ: 1779ին. Յուլ. 19ին դարձեալ Կերլա կը գտնենք զՀ. Բարսեղ եւ զՀ. Բարթողիմէոս, հոն տեղի ծծմբային բաղնիքները գործածելու համար: Բայց այս միջոցին ալ չկրցան վերոյիշեալ գումարը ձեռուընին առնուլ: Այն ատեն քաղքին աղերսագիր մը գրեցին, բայց այն պատասխանն ընդունեցան թէ՝ Այս նիւթիս նկատմամբ քաղաքն որոշում՝ ընել չի կրնար. որովհետեւ ոչ քաղաքային ժողովն եւ ոչ ալ հարիւրոց ժողովն պատշաճ թուով ժողոված է, ուստի հարկ է խնդիրը նոր տարուան թողուլ: Բայց — կ'աւելցընէ ժողովքը — այնչափ կրնանք ըսել, թէ քաղաքն այն տան վրայ շատոնց իրաւունք ստացած է:

## 14. Պր. Ռափայէլ Ղարամեան ու Հայաքաղաք:

Ծանօթ է ազգին Պ. Ռափայէլ Ղարամեան: Այս հարիւրհազարներու տէր ազգային, որ Մատրաս քաղաքը ծնած է, բայց Լոնտոն կը բնակէր ու անգղիական ազնուականութիւն ստացած էր, առաջին անգամ Դրանսիլուանիա պտըտեցաւ 1829ին. նախ Եղիսաբեթուպոլիս գնաց, ետքէն Կերլա անցաւ. ինչպէս կ'ըսուի՝ ամուսնանալու փափաքաւ: Բայց չկարգուեցաւ. վասն զի կ'երեւայ թէ կամ բաղձանքն զգօն չէր, եւ կամ վասն զի իրեն յարմար ամուսին մը չգտաւ: Անանկով մինչեւ կենացը վերջը ամուրի կեանք վարեց:

Այն ստոյգ է, որ իր մեծագումար ստացուածքէն Եղիսաբեթուպոլիս հիմնեց աղջկանց դպրոց մը: Ասկէ զատ բարեկարգական հիմնարկութիւններ ըրաւ. եւ հիմ դրաւ Ռափայէլեան կոչուած վարժարանին, տալով իբրեւ դրամագլուխ 15.000 աւստրիական ֆիորին: — Շատ հեղ պտըտեցաւ Կերլա Հայաքաղաքն, եւ ուզեց բարձրագոյն ազգային վարժարան մը հաստատել, բայց չյաջողեցաւ: Այս քաղաքը գրեց 1841ին Ռափայէլեան վարժարանին հիմնարկութեան մուրհակը. եւ զանազան մասնաւորաց քով բնակեցաւ շատ մը ժամանակ: Ամէնքը կը յարգէին աշխարհատես ու քաղաքակրթեալ վաճառականն, ըստ մասին իր սրտին ու ըստ մասին բարեսիրտ բնաւորութեանը համար:

Անտարակոյս ուրիշ տեղ ալ պիտի ըլլան իր նամակներն. եւ ընդհանրապէս իր ձեռագիրները։ Բայց Կերլա հայաքաղաքն ունի իրմէն երկու նամակ, զորոնք գրած է՝ 1842 եւ 1843ին՝ Զաքարիա Կապրուշեանին, իւր մտերիմ բարեկամին։

Կ'ընդօրինակեմ այս երկին նամակներն, իրենց հարազատ բնագրէն։ — Առաջինը՝ յաջորդն է.

"յԵղիսաբեթուպոլիս մարտ 9. 1842։

Սիրելի Բարեկամ։

Ի 20 դեկտեմբերի անցեալ ամին գրեցի ձեզ. եւ ծանուցի զոչ կարելն իմ ընդունիլ զհրաւէր ձեր՝ զծնունդ Տեառն առ ձեզ անցուցանելոյ. այլ խոստացայ ի նմին զաւագ շաբաթն եւ զՍուրբ Յարութիւնն առ ձեզ առնելոյ. յայնժամ յուսայի զվերջին աւուրսն բարեկենդանի այդր լինել։ Բազմապիսի զբաղմունք իմ եւ բազում բարեկամքս, որ աստ պահեցին զիս յայսմ քաղաքի մինչեւ ցայսօր. այլ յաջողելով Տեառն ելանեմ այսրէն յաւուրն երկուշաբաթի ի 14 ամսոյս առ քլուժ եւ յաւուրն շաբաթու ի 19 ամսոյս ի Նախատօնակս ծաղկազարդի յուսամ գտանիլ այդր առ ձեզ։ Ընդ առնուլ ձեր զայս թուղթ խնդրեմ ի ձէնջ երթալ առ Աղայ եւ խաթուն Սընկօթ եւ իմանալ ի նոցանէ՝ եթէ առանց նեղութեան նոցա՝ կարեմ առ նոսա ագանել. եթէ ոչ յաջողէ այս, յայնժամ բազում սիրոյ ողջունիւ առ Աղաչայ Մարդօն Աբրահամ ծանուսջիք

նմա, թէ յանդգնեցայց աւուրս ինչ առ Նոսա իջեւանել. մինչեւ գտայց զայլ բնակարան: Հաճելի լինէր ինձ, եթէ ի հասանելն իմ, ի քաղաք ձեր, որ եղիցի որպէս ակն ունիմ ի 19 ամսոյս՝ յառաջ քան զերեկոյանալ աւուրն, գտանել զձեզ ի տան Աղաչայ Մարգօն Աբրահամին. որով իմանալ կարեմ, թէ ո՞ւր ունիմ ագանիլ: Ողջունիւ յարգութեան Գերյարգելի Աւագերիցու եւ Ամենապատուելի Քաղաքապետին ընդ ողջունիւ սիրոյ ամենայն բարեկամացս. Մնամ՝ սիրելի բարեկամիդ.

Նուաստ եւ խոնարհ ծառայ

Աղէքսանդր Ռափայէլ Ղարամեանց:„

Աւելի հետաքրքրական է ու ընդարձակ՝ երկրորդ նամակն, որ իր մէջը շատ բան կը պարունակէ:

“Ի Սիպին դեկտ. 21. 1843:

Սիրելի Բարեկամ:

Ընկալայ երէկ բազում ուրախութեամբ զթուղթ ձեր գրեալ ի 10 ամսոյս: Ի տասն աւուր ընդունիմ, բազում անգամ թուղթ ի Վիէննայէ. ի Հայաքաղաքէն շատ են 10 աւուրք: Ինչ եւ իցէ. անյապաղ պատասխանեմ ձեզ, եւ ծանուցանեմ թէ ընկալեալ է իմ յիւրում ժամանակի զթուղթ ձեր գրեալ ի 18 Հոկտեմբերի: Հաւատացէ ինձ բարեկամդ՝ ի խոր խոցեցաւ սիրտ իմ՝ ի լսել զգուժալի անցս, որք անցին ընդ բարեպաշտօն մայր ձեր. Ներեսցէ Աստուած ի բազում ողորմութեան իւրում նմա եւ նոցա, որք եղեն պատճառ այդպիսի չարա-

բաստ պատահարին. ստեղծեալ են նոքա ի պատկեր Աստուծոյ, այլ չունին ոչ զերկիւղն Աստուծոյ եւ ոչ զամօթ առաջի մարդկան։ Խնդրեմ ի Տեառնէ տալ քեզ զօրութիւն համբերելոյ այնչափ վշտացն եղելոց յապերախտ արանց։

Մեկնեցայ եւ յԵղիսաբեթուպօլիս քաղաքէ ի 8 անցեալ ամսոյ. եւ հասի այսր ի հետեւեալ աւուր. ուր մնացեալ եմ մինչեւ ցայսօր. կամք իմ էին երթալ առ ձեզ, այլ ձմեռեալ օդն՝ եւ յաւէտ վատ ճանապարհքն արգելուն զիս. այլ յոյս ունիմ, ի հաստատել ճանապարհաց, յաջողել ինձ այց առնել ձեզ. զի կարօտիմ տեսանել զոմանս բարեկամս իմ որ այդր, եւ ոչ զոք առաւել քան զսիրելի բարեկամդ իմ, զվշտացեալ եւ զհալածեալդ տարապարտուց. այլ յառաջ քան զելանելն իմ, ծանուցից ձեզ թղթով զամենայն պարագայս վերաբերեալս առ ճանապարհորդութիւն իմ։ Ի թղթոյ Աղա Խսէքուցի ի 8 Նոյ. հասեալ ի ձեռս իմ Նոյ. 30. Facti specie sollicitatum per Lucam Gajzágo Clementiae Regiae Signum concernente, ut et Litteris missilibus in Capillis constitutae Dorotheae Leon pro admaturanda Processus sui cum Petro Vastag habiti Altissima revisione exaratis tanquam per Claustrum Mechitaristarum hujatum in sequelam Epistolae aestimatissimae a Magnificentia Vestra acceptae mihi admanuatis per me respectivis Partium praeactacharum Agentibus aulicis pro habenda

reflexione exoperandaque Altissima Resolutione transpositis existentibus: Nihil aliud novi habeo . . .[1]

Լաւ համարեցայ տալ զվերոյ օրինակեալն, քան այլով ոճով ծանուցանել բարեկամի իմում բժիշկ Gajzágoին եւ բարեկամի իմում Տէր Մանուկի զխոստացեալն իմ նոցա ի վերայ գործոց իւրեանց։ Շնորհ արարեալ ընթերցջիք նոցա զվերոյ գրեալն որ առ իւրաքանչիւրն ի նոցանէ. եւ միանգամայն տայջիք նոցա զողջոյն իմ սիրալիր եւ ասասջիք Տէր Մանուկէլի եւ ընտանեաց նորա թէ տեսանեմ երբեմն զսիրուն յօհաննէս որդին իւրեանց. այլ ցաւ է ինձ ասել, թէ չտեսանեմ զնա ոչ հանգիստ եւ ոչ ուրախ. անշնորհ կինն ոչ թողու նմա երթալ ի պատարագ. եւ ըստ դատելոյ իմոյ՝ եւ տեսանելոյ աչօքս, չէ պարտ թողուլ զխեղճ սիրուն մանուկն այլ եւս մնալ առ այդպիսի խստասիրտ կնոջ։

Բազում սիրոյ ողջունիւ խնդրեմ ի ձէնջ ծանուցանել սիրելի բարեկամիս Աղաչայ Իշդվան Վըրզարի, թէ պատճառն չպատասխանելոյ թղթոյ իւրում գրեցելոյ ի լեզու մաճառ ոչ

---

1 Ղուկաս Կաղսադոյի ձեռօք խնդրած արքունական շնորհքին վրայօք եղած իրաց վիճակին որպիսութեան նկատմամբ, ինչպէս նաեւ Տորոթէա Լէոն օրիորդին համար վերին որոշման համեմատ տուած արքունական թուղթն, որուն հետեւութեամբ իւր՝ Պետրոս Վոշդակի հետ ունեցած դատն ստիպողական է — այն շատ պատուական նամակին միջոցաւը, զոր Մեծապատուութիւնդ ինծի ուղղեց՝ Հոստեղի Մխիթարեան միաբանութեան ձեռօք — արքունական վերին դատակարգութեան պաշտօնատարաց՝ իրենց կարծիքը տալու, եւ բարձրագոյն որոշումն ընդունելու համար, պատշաճ տեղը յանձնեցի։

այլ ինչ է, բայց եթէ, կամիմ ի նոյն լեզուն պատասխանել սիրուն թղթոյ նորա. այլ մինչեւ ցայժմ ոչ գտի պարապ բաւական յայդպիսիս ձեռնարկելոյ. զի յորմէ հետէ մեկնեցայ ի ձէնջ, չեմ զարգացեալ ի լեզուագիտութեանն յայդ. զի յԵղիսաբեթուպոլիս միշտ խօսիմք հայերէն եւ աստ ի քաղաքի Սաքսոնացւոց ոչ խօսին եւ ոչ սիրեն զմաճառ լեզուն: Եթէ ոչ յաջողեսցի ինձ պատասխանել գրով, անձամբ անձին պատասխանեցից նմա ի տէրամբ գալստեան այդր: Նաեւ ողջունիւս ծանուցջիք Պ. Աղաչայ Քօրպուլին, զի ընկալեալ է իմ զթուղթ նորա գրեալ ի լեզու անգղիական, այլ փոքր ինչ խորդին գոլով իմացուածն՝ անձամբ անձին եւ նմա պատասխանեցից ի լեզուն անգղիական: Բազում յարգութեամբ ողջունեմ զարժանաւոր բարեկամն իմ զՊատուելի Աւագերէցն հանդերձ ամենայն օգնականօք իւրովք մի առ մի յանուանէ: Նաեւ Պատուելի Քաղաքապետի ձերում հանդերձ համայն ընկերօքն: Այլ մանաւոր սիրով ողջունեմ զտունն Տէր մանուկի եւ զտունն մեր Ցեցեան: Մի մոռասջիք զբարեկամս իմ զկաղսագօյեան եւ մանաւանդ զԱղաչայ խաչիկն ամենայն տամբ իւրով եւ զամենայն որ ի տանէ վըրզարեանց եւ խօմանտանդին եւ ամուսնոյ իւրոյ եւ զինուորական բարեկամիս յInstitutum: Եւ վերջնում ի գրիս, այլ ոչ ի սրտիս. ցաւակցեալ բարեպաշտօն մօր ձերում եւ. շնորհաւորելով ամենեցունն զհրաշափառ ծննդն Տեառն մերոյ եւ զնորամուտ տարին եւ խնդրելով զա-

ղօթս ամենեցուն, մնամ, Սիրելի բարեկամիդ, Նուաստ եւ խոնարհ ծառայ

Ալեքսանդր Ռափայել Ղարամեան։„

Առաջիկայ նամակներէն յայտնապէս կ'երեւայ թէ Պ. Ռափայէլ շատ վարժ էր հայերէն լեզուին եւ ուղղագրութեան մէջ. եւ թէ Կերլացւոց հետ անձուկ յարաբերութեան ու ծանօթութեան մէջ էր։

## 15. Հայաքաղքի պատմութեանը վերաբերեալ մասնական տեղեկութիւններ:

1672. Դրանսիլուանիա կը գաղթէ ազգային մէկ մասը. եւ ճուրճով կը տեղաւորուի։

1684. Ներս կու գայ մէկալ մասն ու Միքայէլ Ապաֆի Ա. իշխանը զիրենք սիրով կ'ընդունի։ Ասոնք գլխաւորաբար Կէօրկէն, Պիստրից . . . կը տեղաւորուին։

1691. Դեկտ. 4. Լէոպոլտոս Ա. կայսրը կու տայ առանձնաշնորհութեանց կոնդակը։

1703. Ռապուդին զօրավարն ու Դրանսիլուանիոյ կառավարութիւնը զԱւքսենտիոս Վըրզարէսգուլ Ռաքոցիին կը խրկեն, միութիւն ընելու համար։ Ռաքոցի եպիսկոպոսը կը բանտարկէ. բայց 1706ին ազատ կը թողու։

Կերլա քաղաքը մինչեւ 1773 իշխանապետ չտեսաւ։ Յովսէփ Բ. եղաւ առաջինն, որ (այս միջոցիս դեռ իբրեւ թագաժառանգ) Յուլիս ամսոյն մէջ Կերլա եկաւ։ Միայն երեք ժամ կեցաւ հոս։ Թէոդորոս Տանիէլեան արքունի

խորհրդականէն հիւրընկալուեցաւ. եւ հոն նախաճաշ ալ կերաւ։

1780. Աւգոստոսի վերջերը, քաղքին կից ու շրջակայ գեղերը Օրմանի, Գէրէօյի, Հէշտաղի, Իգլոտի մէջ եւ այլն, մարախներու ահագին բազմութիւն մը կ'իջնայ։ Ասոնք երեք ամսուան մէջ ամէն բան փճացուցին լմնցուցին։ Թէպէտ կառավարութիւնն այս հարուածին առջեւն առնելու համար սաստիկ խիստ հրամաններ տուաւ. բայց ի զուր։ Այն ատենի հայ քարտուղարն, որ աղէկ հունգարերէն չէր գիտեր, ըրած կարգադրութիւններուն վրայօք շատ աղաւաղեալ լեզուաւ մը տեղեկութիւններ տուաւ, որոնց մէջ նաեւ յաջորդները կը բովանդակուին։ Գերափառ կայսերական վերին կառավարութեան հրամանին համեմատ, մարախներուն այն մասն, զոր բռնել կրցանք, բռնեցինք. զոր չկրցանք բռնել՝ պարկերու մէջ դրինք. եւ այլն։[1]

1780. Նոյ. 19ին վախճանող Մարիամ Թերեզիա կայսերուհւոյն — քաղքին ամէնէն մեծ բարերարին — համար, Հայոց հասարակութիւնը վեց ամիս սուգ բռնեց։ Այս միջոցին, քաղքին մէջ երաժշտութեան ձայն չլսուեցաւ. ուրախութիւն, խնդութիւն չտեսնուեցաւ։

1800. Անմոռաց յիշատակաց արժանի Մանուկ Գարաչոնեան, կը հիմնէ անկելանոցը քաղքիս մէջ։

---

[1] A Felséges csoszári királyi goberniumnak rendetetinél fogvást a suskákat is a szarvaskákat, ugy kiket lehetett összefogdastuk, a kiket nem lehetett zsákbe dugdastuk.

1804ին կը դնէ հիմնարկութիւն ի Գլուժ՝ Բիարիսդներուն դպրոցը՝ վեց հայ ուսանողի. իսկ ի Գարլսպուրկ՝ եպիսկոպոսական կղերանոցը՝ երկու հայածէս քահանայացուի համար։

1805. Սեպտ. 21. Քաղքին մեծ հրապարակին դէպ ի արեւմուտք նայող տներուն եռեւի մասերն ու անոնց կից տները կ՚այրին։

1807. Սեպտ. 14. Ներքին Դաշտիփողոցին մէկ մասը կ՚այրի։

1808. Հոկտ. 6ին գիշերը բերդին մէկ նկուղէն (casematte) բոլոր բանտարկեալները փախան, մէկը դուրս առնելով՝ որ պատուհանին վանդակներուն մէջ սեղմուած մնաց։

1809. փետր. 3. Պաշտօնական գրութեանց նայելով, Նաբոլէոն Ա.ին դէմ մղած պատերազմին մէջ, Հայաքաղքէն յաջորդ ազնուական հայ աղաները մասնակցեցան. Մարտինոս Պայդայի որդին, Մանուկ, ձիաւոր. — Թէոդորոս Կովրիգին որդին, Յովհաննէս, ձիաւոր. — Սիմոն Կովրիգ՝ ձիաւոր, — Մարտինոս Կովրիգ երէց՝ ոտանաւոր. — Մարտինոս Նովագեան կրտսեր, ձիաւոր. — Գրիգոր Պալդայի որդին, Յովհաննէս՝ ձիաւոր. — Խաչիկ Սարուքան՝ ձիաւոր. — Յակովբ Նովագ՝ ձիաւոր. — Յովհ. Նովագ՝ ոտանաւոր. — Մանուկ Նովագ՝ ոտանաւոր. — Աստուածատուր Լասլոֆի երէց՝ ձիաւոր. — Նիկողայոս Մարդոնֆի՝ ոտանաւոր. — Ղուկաս Վրծարեան, ձիաւոր. — Յովակիմ Վրղարեան, ձիաւոր։

1809. Հոկտ. 1. Մաքսիմիլիանոս արքիդուքսն ասկից անցնելով՝ Անտոն Լաւլոֆիեան գլխաւոր դատաւորին առջեւը կը կենայ ու գաւաթ մը ջուր կը խմէ։

1811. Ստակի մեծ փոփոխութիւն (devalvatio), Վալէսի յատակագծին համեմատ։

1815. կը սկսի մեծ սովը։

1816 Սովն ու սղութիւնը կը սաստկանայ. մէկ չափ (metzen) ցորենը 10 ֆիորին է։

1817. Տարւոյս սկիզբն ու դէպ ի կէսերը, սովն աւելի կը սաստկանայ։ Մարդիկ կը մեռնին։ Սովէն նեղուած աղքատները դաշտերու վրայ՝ խոտն անասնոց պէս կ'ուտեն։ Բայց հունձքի ժամանակ մաքուր ցորենի գինը հինգ ֆիորինի կ'իջնայ։

1817. Փրանկիսկոս Ա. Կայսրն այցելութեան եկաւ մեր քաղքին՝ կայսրուհւոյն հետ։ Երկու գիշեր անցուց այս տեղը։ Այս առթիւ շինուեցան Սամոշի վրայի երկու կամուրջները։ Ասոնց վրայ քաղաքն 30.000 ֆիորին ծախք ըրաւ։

1819. Ստակի պակսութիւն։ Տէրութեան պաշտօնատէրք վճարքնին արծաթով կ'ընդունին։ Պաշտօնատէրք՝ որ տէրութեան ծառայութեան մէջ չեն, կէսը միայն կ'ընդունին։

1825. Տօն Միկէլ, Բորդուկալի թագաժառանգը քաղաքս եկաւ։ Այս առթիւ Զաքարիա Կապրուշեան, իրեն 48 տախտակէ, յատուկ ձեռօք գծագրուած Ատլաս մը պարգեւեց։

1829. Աղեքսանդր Ռափայէլ Ղարամեան, Լոնտոնի Շէրիֆ կ'անուանուի։

1839. Էսդէի իշխանը քաղաքս կու գայ։ Ի պատիւ իշխանին կը կանգնուի առաջին յաղթական կամարը։

1847. Աւագ ուրբաթ գիշեր. Գէրէջլի լեռը կը բաժնուի ու քառասուն մէդր հեռու դէպ ի արեւելք դուրս կը ցցուի. իրեն տակը կը թաղէ տուն մը։ — Մէկ չափ (veder, տասը լիդր) գինին, 35 քառանդան է։

1849. Յունուար 10. Տոպոգա գաւառին դիւանն ու բանտարկեալները Կերլայ կը բերուին։

Մինչեւ 1839ը. գիշերները՝ գիշերապահք յաջորդ կերպով կը ծանուցանէին գիշերուան ժամը. “Աղօթք արեցէք, ըզԱստուած խնդրեցէք. ըզՏիրամայր Սուրբ Աստուածածինը բարեխօս բըռնեցէք, զկրակը աղէկ թաղեցէք, ըզՃիրախը անցուցէք, զէ սըհաթը ինն է։„ Այս սովորութիւնը ետքէն փոխուեցաւ, ու կամաց կամաց բոլորովին դադրեցաւ։ 1850էն ետքը, զանգակիկ մը հնչեցընելով՝ կը ծանուցուէր գիշերային ժամը։ Ասոր վրայ սրինգով կը սուլէին։ Հիմակ չմնաց՝ ոչ կանչել, ոչ զանգակ զարնել եւ ոչ սրինգ փչել։

1849. Յունիս 20. Քաղաքը՝ մեծ ահ ու դողու մէջ կ'իյնայ այն լուրին, որ Ռուսերը Դրանսիլուանիա մտան։ — Աւգ. 19. Մեծ սարսափ կը տիրէ քաղքին մէջ. վասն զի Ռուսք Մեծ-Իգլոտն են. (քաղքէն կէս ժամ հեռու)։

— Ռուսք՝ գիշերը, արքունի ճամբուն վրայէն Ցէժ կ'անցնին։

Ստակ փոխելը սաստիկ մեծ դժուարութիւններով կ'ըլլայ։ Զինուորական հիւանդանոցը չկրցաւ հարիւրնոց թուղթ մը փոխել։ Քաղաքապետը՝ Յուլիս 27ին վաճառականաց ընկերութեան գրեց ու խնդրեց, որ այս բանիս օգնէ կերպով մը։ Եօթն անձինքներէ կազմուած մասնաժողով մը տնէ տուն քալեց, ու ամէն մարդէ խնդրեց, որ մեծ դրամաթղթերը (հարիւրնոցները) փոխէ։

Գոշութի հունգարական թղթադրամները՝ տէրութեան ժողովոյն հաւանութեամբը դրոշմուեցան։ Վաթսուն միլիոնի չափ թղթադրամ մտաւ գործածութեան մէջ։ 1849ին սկիզբները վերին հրամանին համեմատ այս դրամները ժողովեցին եւ այրեցին։ Սեպտեմբեր 13ին՝ Հայաքաղաքը 400.000 ֆիորին ստակ մատոյց։ Քաղաքացւոց ստըկէն այրեցին 379.164 ֆիորին եւ 85 քառանդան. իսկ քաղքին արկղը տուաւ 20.835 ֆիորին 15 քառանդան։

1852. Փրանկ. Յովսէփ Ա. կայսրն՝ այն միջոցին որ Հունգարիա եւ Դրանսիլուանիա շրջանաւոր ճամբորդութիւն մ'ըրաւ, նաեւ Կերլա քաղաքը հանդիպեցաւ։ Աւգ. 2ին հասաւ քաղաքս։ Սըբլագի արքունական ճամբուն վրայ, քաղաք մտնելու սահմանն, ինչպէս նաեւ Ջրի փողոցին ստորին եւ վերին ծայրերը՝ փառաւոր յաղթական դռներ կանգնուեցան, որոնց վրայ ասդին անդին այլաբանական — բայց կենդանի

— պատկերներ զետեղուած էին։[1] — Գլխաւոր Հրապարակը վերջին աստիճանի շքեղութեան մէջ կը ծփար։ Աւստրիայի, Հունգարիայի եւ պետութեան ուրիշ գաւառներուն զինանշանները՝ բուրգերու, կոթողներու եւ յաղթութեան սիւներու վրայ զետեղուած էին։ Աս ամէն բան՝ Հնարագէտ Զաքարիա Կապրուշ ուսուցչին յատակագծին համեմատ՝ իր վերին հսկողութեանը տակ շինուեցաւ։ Բայց շատ բան ինք իր յատուկ ձեռօքն ըրաւ։ Մեծափառ կայսրը կառքէն ելաւ, զինուորական դպրոցի աշկերտներն իր առջեւէն անցընել տուաւ։ Ասոր վրայ այցելութեան ելաւ դղեկին, զինուորական դպրոցին, վիճակական պաշտօնարանին եւ այլն։ Անկէ Գլուժ անցաւ։

1855. Սեպտ. 29. Ազգային կամացը հակառակ՝ կը հաստատուի ուղղափառ վալաք եպիսկոպոսութիւնը Հայաքաղաքս։

1858 Նոյմբ. ամսոյն մէջ վերոգրեալ եպիսկոպոսութեան համար կը կանգնուի կղերանոց մը, քառասունուերկու կղերիկոսով։

Աս տարի սաստիկ ցրտութիւն մըն է կը տիրէ, որուն նմանը չեն յիշեր ամէնէն երիցագոյններն ալ։ — Գարնան յանկարծակի օդը փոխուեցաւ։ Սամոշին վրայ մէկուկէս կանգուն հաստութեամբ սառուցի կտորներ կը լողային։ Ասոնք ահագին զօրութեամբ վերին կամրջին

---

1 Առաջիկայ տողերը գրողն ալ կեցած էր ահագին դրան քիւին վրայ (cornich), իբրեւ հրեշտակ կամ ոգի՝ ամազթեղջերէ մը ծաղիկներ թափելով։

տուրքերուն զարնուելով՝ զանոնք անողորմաբար առին տարին:

1862. Յուլ. 13. Գրէնվիլ կոմս, քաղաքս կու գայ: — Հոկտ. 4ին նոր պաշտօնատեարք կ'անուանուին:

Փրանկիսկեանց մեծաւորն այս բաները կը գրէ 1873ին տարեգրոց մէջ Հայաքաղքին վրայօք: Հիմակ Հայաքաղքիս մէջ կայ՝ Թագաւորական ատեան, որուն նախագահն է Գրիգոր Սիմոյեան, արքունի խորհրդականն, որ շատ հեղ տէրութեան երեսփոխան եղաւ. նշանաւոր մարդ է: Հոս է Տօպոգա գաւառին աթոռանիստ տեղը: Քաղքին քաղաքապետն է Դաւիթ Բլըչինդար, զարմանալու արժանի մարդ մը: — Քաղաքս քարայատակ ընելն սկսուեցաւ. գործքն աղէկ յառաջ կ'երթայ: Վանքին առջեւի խաչը, երկաթի վանդակով գոցեցինք: Այս վախճանիս համար Զաուս եղբարք երկու կենդինար երկաթ տուին. մէկալ ծախքերը՝ քաղքին, Հայոց ազնուական մասն ըրաւ: Շատ բարերար են ազգայինք մեր վանքին: Շատ ատեն չկայ, Աստուածածնայ պատկեր մը պարգեւ ըրին եկեղեցւոյն: Աշտարակներն ու զանգակները իրենք շինեցին: Ամպհոնն իրենք կանգնեցին: Ս. Աննայի խորանն իրենք շինել տուին: Աստուած անփորձ պահէ հայ ազգը: Առանց իրենց՝ մեր վանքն ապրիլ չէր կրնար:

1879. Յունիս 1: Անցած դարուն մէջ Ստեփ. Ռօշքայէն հիմնուած Ս. Աննայի ընկերութիւնը վերականգնուեցաւ:

1881 Հոկտ․ 16․ Սամոշույվարին երկաթուղին կը բացուի։ Բացման՝ երկու պաշտօնէալ ներկայ են․ Պաւղոս Օրտոսի եւ Գաբրիէլ Գէմրն։

1883 փետր. 3ին. ուրբաթ կէս օրէն ետեւ առանց ամպի շատ պայծառ օդ մըն էր։ Օդին մէջ՝ յանկարծակի կայծերով շառաչում մըն է լսուեցաւ. ու տեսնուեցաւ փայլակի պէս բան մը, որ իր ետեւէն զօրաւոր լոյս ունեցող պոչ մը թողուց։ Հայաքաղքիս վրայէն դէպ ի Հարաւային արեւմուտք գնաց։ Երկնաքար մըն էր, որ պայթելով շրջակայ դաշտերուն վրայ ինկաւ։ 48 կտոր մենք ալ ժողովեցինք։ Ասոնց մէկ մասը Հիմակ թանգարանը կեցած է։



# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍՆ

## ՀԱՅԱՔԱՂՔԻ՛Ն ՆԵՐԿԱՆ

### 1. Հայաքաղքին հիմնական դիրքն ու յատակագիծը:

Այսօրուան ու սկզբնական Հայաքաղքին դիրքն ու մանաւանդ յատակագծին վրայ մեծ փոփոխութիւն մ'եղած չէ: Ան կայ միայն՝ որ հիմակ ընդարձակուած՝ ու ատեն ատեն կանգնուած նոր շէնքերովը գեղեցիկ կերպարանք մ'առած է:

Քաղքին կենդրոնը կը կացուցանէ գլխաւոր հրապարակն (Ա) որ գրեթէ քառակուսի մը կը կազմէ. վասն զի մինչդեռ երկայնութիւնը 125՝ լայնութիւնը՝ 122 մէդր է: Ըստ այսմ ըսել է թէ իր ամբողջ բռնած միջոցը կամ՝ մեծութիւնը 15·250 քառակուսի մէդր է: — Այս՝ քառայատակ, մեծ շրջանին մէջ կը կատարուին երկու շաբաթական՝ ու չորս տարեկան մեծ տօնավաճառները:

Այս հրապարակին գրեթէ մէջ տեղը կեցած էր (ա) մինչեւ 1893՝ միայարկ մեծ խորհրդանոցն, իր զօրաւոր կամարներովը. որ Հայոց հոն գաղ-

թելէն քիչ մը ետքը կանգնուեցաւ՝ իբրեւ վաճառանոց կամ արեւելեան շուկայ։ Աս շէնքին վրայ քաղաքային վարչութիւնն աւելցուց նախորդ դարուն սկիզբները՝ դստիկոն մըն ալ, ուր կը կատարէր իր գաղտնի խորհուրդներն ու ժողովքները։ Շէնքին վարի մասը մնաց միշտ մասնաւոր գերդաստանաց կամ առանձնական մարդիկներուն ձեռքն, որոնք զայն կը գործածէին իբրեւ խանութ ու կրպակ։ Հասարակութիւնը հետզհետէ այս խանութները մասնաւորներէն իրեն յատկացուց։ Եւ որովհետեւ վարի — համեմատութեամբ տկար — շէնքը չէր կրնար վրան յեցած յաղթանդամ յարկը տանիլ, անոր համար 1889ին, քաղաքային որոշման մը համեմատ, աս խորհրդանոցը գոցուեցաւ։ Խորհուրդներն սկսան ասկից ետքն՝ իրեն դիմացն եղող (Ա) ակմբանոցին մէջ (casino) կատարուիլ։ Իսկ վաղեմի խորհրդանոցն իբրեւ խարխուլ շէնք մը՝ յառաջուան որոշման համեմատ — 1893ին — գետնի հաւասար եղաւ։ —

Երկու հարիւր տարուան միջոցին մէջ շատ խորհուրդներ, որոշմունքներ ու վճիռներ ելան “պումպին„ (գունդ) տակէն։ Այսպէս կը կոչուէր խորհրդանոցն, այն, գագաթն եղած քարէ մեծ թակոյկին համար, որ տանիքին մէջ տեղը՝ վերեւը կեցած էր։ Տարեգրոց նայելով՝ մեր պապերը, շէնքը կանգնուելու ժամանակ, այս քարէ կափարիչով փակուած կուժին մէջ յիշատակարաններ դրած էին։ Հիմակ որ շէնքը վար առնուեցաւ, քարէ թակոյկին մէջ թղթի

փշրանքներէ զատ բան մը չգտնուեցաւ։ Ժամանակին խոնաւութիւնն ու անձրեւները, այն յիշատակարանաց թղթերը հետզհետէ փտեցուցած փշրած էին։ Այնպէս որ ասոնք չէ թէ միայն կարդացուելու բաներ չէին, հապա գիտցողը միայն կրնար ըսել թէ ասոնք ատեն մը գրուած թղթեր էին։ —

Մեծ հրապարակին անընդմիջապէս կից եւ անոր հետ հաղորդութեան ու իբրեւ թէ շարունակութեան մէջ են. Վերին ու ստորին Ջրի փողոցները (1)։ Միջնափողոցին վերի ու վարի մասերը (2)։ Սողոմոնեան (5) ու Եօթը խաչերու (6) փողոցները։ Դարձեալ՝ Երեքտասան քաղաքն (Դ) ու քաղքին գլխաւոր շրջագայութեանը (Զ) տանող փողոցիկները։ — Հայաքաղքին ուրիշ փողոցներն են. Վերի ու վարի Թղթատարութեան փողոցը (ատեն մը Կովկիգեան փողոց 3)։ Ներքին (4)· ու Արտաքին Դաշտի փողոցը (8)· Կանանչ ծառի փողոցը (9)· Մայրապետաց փողոցը (12)· Ս· Իգնատիոսի փողոցը (7)· Ջաղացքի փողոցը (13)· Խաչի (15)· — Երկաթագործաց (14) — եւ Ագարակի կարգերը (16)։ Դարձեալ՝ Նոր փողոցը (17)· Բերդի (18) եւ Փոքր կամրջի (19) փողոցները։

Աս յիշուած փողոցները բոլորովին շիտակ են. ծուռ կամ կոր փողոց չկայ Հայաքաղքին մէջ։ — Երկու արտաքին քաղաքաբաժիններն այսինքն· Գանտիան (Գ) ու Աքաղաղի քաղաքն (Բ)· — ասկից զատ, Գնչուներու բնակութեան տեղը (Ե)՝ կ'ամբողջացընեն Կերլայ հայաքաղաքը։



ՆՈՐԼԱ ՀԱՅԱՔԱՂԱՔԻՆ ՅԱՏԱԿԱԳԻԾԸ:

Ա. Ներքին քաղաք.
Բ. Աքաղառի քաղաք.
Գ. Գանտիա քաղաք.
Դ. Երեքսասան քաղաք.
Ե. Գնչուներու բնակու-
թեան տեղ.
Զ. Ժողովրդեան շրջա-
գայութեան պարտէզը.
1. Ջրի փողոց.
2. Միջին փողոց.
3. Թղթատարութեան
փողոց.
4. Ներքին դաշտի փողոց.
5. Սողոմոնեան փողոց.
6. Եօթն խաչի փողոց.
7. Ս. Իգնատիոսի փողոց.
8. Արտաքին դաշտի
փողոց.
9. Կանանչ ծառի փողոց.
12. Մայրապետաց փողոց.
13. Ջաղացքի փողոց.
14. Երկաթագործաց
շարք.
15. Խաչի կարգ.
16. Ագարակի կարգ.
17. Նոր փողոց
18. Բերդի փողոց.
19. Փոքր կամրջի փողոց.
20. Արքունի ճամբայ.
21. Մեծ ռամկաց վեր-
նատունն.
ա. Մեծ հրապարակ
(վաղեմի խորհրդանոց)
բ. Դուքարի վաճառանոց.
գ. Մայր եկեղեցի.
դ. Սողոմոնեան եկեղեցի.
ե. Խորհրդանոց.
զ. Կոմիզեան եղբայրց
պալատը.
է. Մոլդովանեանի պա-
լատը.

ը. Վալաք եպիսկոպոսա-
րան ու մատուռն.
թ. Բղըշինդարեանին
տունը.
ժ. Փրանկիսկեանց եկե-
ղեցի ու վանք.
ժա. Օրիորդաց դպրոց.
ժբ. Ս. Գրիգորի որբանոց
եւ մատուռն.
ժգ. Վալաք եպիսկոպոսի
ամարանոցը.
ժդ. Զինուորաց զինուո-
րանոց.
ժե. Երկաթուղւոյ կայա-
րան.
ժզ. Վերին ջաղացք.
ժէ. Ստորին ջաղացք.
ժը. Անկելանոց եւ հիւան-
դանոց.
ժթ. Գինւոյ ոգւոյ գործա-
րան եւ մթերանոց.
ի. Գերեզմանաց եւ հայ-
ոց մատուռ.
իա. Մարդինուցցի դղեակն
ու Տէրութեան մեծ
արգելանոց.
իբ. Ծծմբային բաղանեաց
կայան.
իգ. Հռոմէական գաղթա-
կանութեան մնա-
ցորդներ.
իդ. Մեղուաբուծութեան
դպրոց.
իե. Հին դրամատեղին. —
Նոր դրամատեղին.
իզ. Կղերանոց.
իէ. Աղջկանց որբանոց.
իը. Հրապարակի մեծ
օթեւանը.
իթ. Ս. Անտոնի խաչ.
լ. Սպանդանոց.

Քաղաքն ունի շատ մը մեծագործ շինութիւններ, հրապարակական ու մասնաւորաց շէնքեր: Ասոնց գլխաւորներն ու ամէնէն աւելի յիշատակացարժանի ու գեղեցիկներն են. գլխաւոր հրապարակին մէջ. Ճարտարագործ հայ կաթուղիկէն (դ). (գ. — տես պատկերն, էջ. 102). խորհրդանոցը (ե). Կովրիգեան եղբարց (զ). դարձեալ՝ Մոլտովանեանին (է). Դիւզէշին եւ Նյեկրուցի պալատները: Վալաք եպիսկոպոսարանը (ը). Բլըշինգարին շէնքը (թ). Մեծ պանդոկը (իը) եւայլն:

Բայց անցնինք քաղքին ստորագրութեանը:

Հայաքաղքին գլխաւոր փողոցն է. Նախ՝ Ջրէ փողոց (1): Այսպէս կը կոչուի, այն ջրանցքին համար զոր մեր պապերն, անցած դարու վերջերը՝ Սամոշ գետը կտրելով ու պեղելով ճիշդ քաղքին մօտեցուցին: Այս փողոցին՝ հարաւէն դէպ ի հիւսիս ունեցած երկայնութիւնը ճշդիւ քիլոմէդր մըն է: Շիտակ է իր մէկ մասովը մեծ հրապարակին վրայ կը նայի. եւ է միանգամայն քաղքին առաջին փողոցն, ուր կը նստի հասարակօրէն քաղքին ազնուականութեան մէկ մասը: Ասոր հարաւային մէկ ծայրն է Քարաչոնեան անկելանոցն ու հիւանդանոցը (ժը) աղջկանց՝ (իէ) ինչպէս նաեւ մանչ տղոց որբանոցներն ու վերջիններուն աղօթարանը (ժբ): Փողոցին մէկալ հիւսիսային ծայրն է դուարանոցը (բ. բ.): — Բ. Միջին փողոց (2): Անոր համար կը կոչուի այսպէս, վասն զի աս էր քաղքին միջնափողոցն՝ այն միջոցին երբ քաղաքը հիմնուեցաւ: Ասոր ուղղութիւնն ալ

նախընթացին պէս է, միայն թէ անկէ աւելի ու-ղիղ։ — Գ. Թղթավաճառնեան փողոց (3). չորս տաս-նեակ մըն է որ այսպէս կը կոչուի։ Անկից յառաջ Կովրիգեան փողոց կը կոչուէր, որովհետեւ այս գերդաստանին մէկ գլխաւոր մասը հոս կը նստէր։ Աս ալ մէկալներուն ուղղութիւնն ունի. թէպէտ վերին մասովը ստորին մասին շտկութենէն քիչ մը կը շեղի։ Աս փողոցին վերին մասը ժողովըր-դեան բերնովը "Եղտ կամ Եամըղի" փողոց կը կոչուի, վասն զի հոս կը նստին ըստ մեծի մասին մսավաճառներն, որոնք մինչեւ վերջի ատեններն արտաքոյ կարգի քանակցութեամբ խոզ, ոչխար, այծ եւ մանաւանդ գառն կը մորթէին կը քեր-թէին։ — Աս արհեստը հոս բանեցընելն հիմակ արգելեալ է։ Քաղքէն դուրս՝ վարի կամրջին կից եղող սպանդանոցին մէջ (Լ) պէտք են ա-նասունները մորթել, զանոնք նախընթացապէս, դուարի բժշկին ձեռօք քննութեան տակ ձգելէն ետեւ։ — Դ. Ներքին Դուշաք փողոց (4) — զա-նազանելու համար, Արտաքին Դուշաք փողոցէն (8). որ շինուեցաւ կամ կանգնուեցաւ այն ատեն, երբ դաշտի վրայ նայող նախընթացին վրայ աւել-ցուեցաւ, այն՝ դէպ ի արեւելք կեցող փողոցը։ — Յիշուած չորս փողոցը, քաղքին գլխաւոր փողոցներն են. որոնք ինչպէս վերն ալ ըսինք, հարաւէն դէպ ի հիւսիս կ'ընթանան։ — Զասոնք խաչաձեւ կը կտրեն՝ 1. Կանանչ Ծառի փողոցը (9). 2. Սողոմոնեան փողոցն (5). ու 3. Եօթը Խուշէ փողոցը (6)։ Ասոր արեւելեան ծայրն է երկաթուղ-ւոյ կայարանը (ԺԵ). իսկ արեւմտեան ծայրը՝ քաղ-

քին գլխաւոր շրջագայութեան տեղը (Զ)․ 4․ Ս․ Իգնատիոսի փողոց (7)․ — Երկրորդական փողոցները՝ վերն արդէն յիշեցինք։ Ասոնք ըստ մասին ներքին, ու ըստ մասին արտաքին քաղաքներուն կարճ ու նեղ փողոցները կը կացուցանեն․ ու պաշտօննին է՝ ներքին քաղաքն արտաքիններուն հետ կապել։

Գլխաւոր փողոցներու խմբին դիմացը դէպ ի արեւելք, ուր կ'անցնի Հիմակ երկաթի ճամբան, հին ատեններն — ամբողջ քաղքին երկայնութեամբը — կեցած էր դուարի եւ արջառոյ վաճառանոցը (գ․ գ)։ Ասիկայ արտաքոյ կարգի ընդարձակ տեղ մըն էր։ Հոս կ'ըլլային վաղեմի ժամանակ տարեկան տօնավաճառներն ու միանգամայն եզի, խոզի, ոչխարի, գառնի մեծ առուտուրն․ վասն զի մեր պապերը գլխաւորաբար ասոնցմով կ'ընէին առուտուր։ — Հիմակ ալ կայ դուարի առուտուրը, բայց ոչ այնչափ ընդարձակ կերպով։ Այս բաներու առուտուրն ու վաճառանոցն — ինչպէս վերն ըսինք — Հիմակ, քաղքին հիւսիսային դին, Ջրի ու Թըղթատարութեան դիմացն եղած ընդարձակ հրապարակներուն մէջ (բ․ բ․) կ'ըլլայ։ Թէպէտ այս վաճառատեղին բաւական ընդարձակ տեղ է, այսու ամենայնիւ նախընթացին եւ ոչ երեքին մէկն է։

Քաղքին արտաքին քաղաքաբաժիններն են, նախ՝ Ատողողի տողուտը (Բ)։ Ասիկայ ներքին քաղքին հարաւային արեւելեան կողմը կ'իյնայ․ ծուռ, նեղ ու անկարգ փողոցիկներով տեղ մըն

է։ Հոս ըստ մեծի մասին գործավարք ու աղխսագործք կը բնակին։ Ասոր կից եղած լեռը կաւային ըլլալով՝ լերան ստորոտին երկայնութեամբն աղիւսի ու կղմինտրի գործարաններ կանգնուած են։ — Աքաղաղի քաղքին ճշգիւ հակառակ կողմը կամ դէպ ի հիւսիսային արեւմուտք՝ կը նստին գնչուներն (Ն)․ իրենց յատուկ քաղաքաբաժնին մէջ․ ուր թէպէտ բաւական բազմաթիւ են, բայց ոչ կանոնաւորեալ փողոց եւ ոչ կարգաւորեալ բնակելու տուն մ'ունին։ Քովէ քով կը նստին․ եւ ունին իրենց յատուկ առաջնորդը (vajda), որ իրենց համար պատասխանատու է։ Ասոնց յատկացեալ արուեստն է դարբնութիւն, երաժշտութիւն, բայց նաեւ գողութիւն․ — Գնչուներու բնակութեան տեղէն քանի մը հարիւր քայլ դէպ ի արեւմտեան հիւսիս կ'իյնայ Գանդժան (Գ)։ Հոս մեծաւ մասամբ վալաք գործաւորներ կը նստին։ Ասոնց՝ ինչպէս նաեւ գնչուներու քաղաքը՝ Սամոշ գետին ու ջրանցքին քով՝ եւ ցած տեղ մ'ըլլալով, շատ ենթարկուած են ջրերու ողողելուն։ Գանտիայի ասդիի կողմը կ'իյնայ Մարգինուցցի բերդը (իա)․ որուն կից է ազգային, նաեւ Հունգարացւոց գերեզմանոցը (ի) խաչելութեան հայ մատուռովը։ —

Քաղքին կենդրոնական հրապարակին մէջ եղած գլխաւոր շէնքերը յիշեցինք։ Ասոնցմէ դուրս եղող յիշատակաց արժանի շէնքերն են — գետին երկայնութեամբը — վերէն դէպ ի վար յառաջանալով՝ 1894ին լմնցած ձիաւոր զինուորաց

ահագին զօրանոցն՝ փակուած ձիընթացութեան դպրոցովը (ժդ). Գինւոյ ոգւոյ գործարանն ու ըմպերանոցը (ժթ). Քարաչոնեան անկելանոցն ու հիւանդանոցը (ժը), Ս. Գրիգորի Լուս. մանչ՝ (ժբ) ու դիմացն եղող աղջիկ տղոց (իէ) որբանոցներն, իրենց յատուկ մատուռովը: Մանչ տղոց որբանոցին պարտիզին կից է վալաք եպիսկոպոսին ամարանոցը (ժզ): Քիչ մը վարն են, աղջկանց նորաշէն դպրոցը (ժա. Թղթատարութեան փողոցին մէջ). որուն կից է բողոքականաց եկեղեցին. վալաք եպիսկոպոսին կղերանոցը. (իզ. Միջնափողոցին մէջ) եւ այլն:

Մասնաւոր յիշատակաց արժանի են՝ քաղաքին շրջագայութեան տեղն (Զ) ու ծծմբային բաղանիքները (իը): Սակայն ասոնց վրայ, քիչ մը ետքը առանձինն գլխով խօսելու առիթ պիտի ունենանք:

Մեծ հրապարակն՝ ինչպէս նաեւ փողոցները՝ քարայատակ են: Ասկէ զատ, հրապարակին տնատեղը (trottoir)՝ Ջրի փողոցին բոլոր երկայնութեամբը, Միջնափողոցին մէկ մասը, Եօթը խաչերու փողոցը՝ մինչեւ երկաթուղւոյն կայարանը, կրանիդով քարայատակ եղած են: — Թէ գլխաւոր հրապարակին բոլորտիքն ու թէ մէկալ փողոցներուն երկու կողմերը ծառուղիներ կան: Ինչպէս փողոցներուն՝ անանկ ալ գլխաւոր հրապարակին մաքրութեանը հոգ կը տանի վարչութիւնը: Տներուն առջեւը մասնաւորք պէտք է որ մաքրեն ու աւլեն. իսկ ժողոված շիւղն ան-

կէ տանիլն՝ քաղաքային վարչութեան գործն է։
— Քաղքին մաքրութիւնն առակ եղած է։

"Մտածումներս դէպ ի տունն են„ կը գրէ, — Կերլայ Հայաքաղքին վրայ խօսելով — Թէոդորոս Գէօրէօշ, իր շաբաթաթերթին մէջ։ "Տարիներէ ի վեր չեմ ծծած այն լեռնային կծու օդը։ Կը սկսի կամաց կամաց մթին ըլլալ աչուըներուս առջին, այն՝ ինծի այնչափ ծանօթ երկիրը։ Հազիւ կը յիշեմ պատկերներն, որոնք տղայութեանս երազներուն մէջ, այնպէս խորունկ տպաւորուեցան մտացս մէջ։„

"Երեւակայութիւնս, զիս դէպ ի ներս, քաղաք կը տանի։ — Ծծմբային բաղանեաց ճամբուն սօսիներուն մէջէն (20), վերին ջաղացքին սահանաղանէն ակամայ կը դառնամ դէպ ի մեծ սահանաց վերնաղուռն (21), ուր այնչափ անգամ՝ պտըտցուցին զիս իմ՝ տղայութեանս բախտախընդրութիւնները։ Անդին են, Սիլվաշի ու Գիշ Սըգի լեռնային ճամբաները։ Աւելի դէպ ի վար Ս. Անտոնի խաչը (իթ). որուն չորքարանին վրայ այնչափ եռանդուն հոգիներ գտան իրենց հոգեւոր մխիթարութիւնը։„

"Կը թողում անկելանոցն. ու անոր քովի Փաչէ-պինչէի քովէն անցնելով՝ հոն, գեղեցիկ ու շիտակ ջրի փողոցին մէջն եմ։ Երբ աչքս դէպ ի աջ դարձընելով՝ Լուքաչիի հիմնած որբանոցն առջեւս կ՚ելլէ, միտքս կու գայ ազնուամիտ, սպիտակահեր եկեղեցականն, որուն անձին վրայ անանկ գեղեցիկ կերպով միացած էին գիտութիւնն ու ճշմարիտ եկեղեցականութիւնը . . .։„

“Ողջոյն քեզ իմ սիրելի վարժոցս։ Ինչպէս թողուցիր զիս։ Բակ, մարմնամարզութեան պարտէզ, մուսէոն, խորհրդածութեան սենեակ . . . բոլորը դեռ կենդանի կերպով առջեւս կեցած են։ Եւ ինչպէս որ շնորհակալութեան զգացմամբ լի՝ կը մտածեմ ուսուցչացս վրայ, անանկ ալ քաղցր կը հնչեն ականջներուս մէջ՝ մեր մայրենի լեզուին ձայնը։ Կարծես թէ հիմակ ալ կը լսեմ, ուսանող երգիչներուն խումբը, կարծես թէ իրենց հետ կ'երգեմ “Քրիստոս յարեաւ. յարեաւ ի մեռելոց։„

“Ահա մայր եկեղեցին։ Ներսը ցուրտ է . . ։ Կարծես թէ խնկին հոտը կ'առնում։ Կը դիտեմ կողմնակի մարմարեայ գորշ ու հսկայագործ աւագ խորանները։ Վերջինին մեծ պատկերին առջեւը կ'ահաբեկի սիրտս — ու կ'աճապարեմ կողմնակի մատուռն, որպէս զի տեսնեմ Ռուպէնսի հրաշագործ պատկերը։„

“Կարծես թէ հիմակ ալ կը դռնչէ ականջներուս մէջ մեծ երգիոնին ձայնն, որուն նմանը մարդ հազիւ երբեմն կը լսէ . . . որն որ այնչափ տարիէ ի վեր կ'ընկերանայ՝ այն, արեւելեան պարզութիւն, բայց գեղեցիկ եղանակ ունեցող երգերուն. թէ “Յիսուս Քրիստոս մեզ ծնաւ.„ „Աղքատաք խնդացէք„ “Ջուարճացիք„ “Մարիամ Կոյս.„ որոնց ներդաշնակութիւնն զմարդ խորին խորհրդածութեանց մէջ կ'ընկղմէ։ Կը բաղձայի զասոնք նորէն ու նորէն լսել . . .։„

“Առջեւս կ'ելլէ խորհրդանոցն, իրեն վրայ գտնուած ու այնչափ յիշուած գունտովը։ Հոն է

ժողովքին տեղը. հոն՝, Բլըչինդար՝ շարունակ աշխատող քաղաքապետը, — հարիւր ձեռք ունեցող Կոբչան. գործունեայ Կոմըրգը. ծեր Վըյթը, ոսկեգրիչ Օսդիանը . . .:„

“Խորհրդարանոցին կից է ակմբանոցը: Հոն է անտարակոյս մշտնջենաւոր նախագահը . . . քաղքին ազնուականութեան մեծագոյն մասը: Եւ երբ “Գորոնա„ օթեւանը կը նշմարեմ, առջեւէս կ'անցնին բիւրատեսակ ուրախութեանց պատկերն ու ծափահարութեանց . . . ձայները՝ զորոնք Ռէտուդը տեսած ու լսած է:„

“Հիմակ փունգալով կը մտնէ, լերան տակի իջեւանին քովէն Սամոշ վայրին երկաթուղւոյն չուն: — Կը փափաքէի որ օր աւուր վրայ հարըստութիւն եւ առատութիւն բերէ պզտիկ Հայաքաղքին ուր դժբախտութեամբ հիմակ նապոպներն այնչափ ցանցառ են, ժամանակին յարաբերութեանցն աննպաստաւորութեանը համար:„

“Կը նկատեմ՝ հին դղեակը: — Հիմակ, ա՛լ վեր քաշուող կամուրջներ չունի. եւ յառաջուան փայլուն զրահաւոր զինամարտիկներու տեղ՝ լեցուն է բակն ու պարտէզը տխուր բանտարկեալներու կերպարանքներով: Մարդինուցցիի զինանշանը հոն կեցած է, պատին մէջ հիւսուած: Քաղաքագէտ Կարդինալին վրայ, խօսող չկայ: Երկու Պադորի տխուր դիւցազունքներն ալ շատոնց կը հանգչին որմերուն մէջ, կը փոշիանան, անհետ կ'ըլլան:„

“Հիմակ, ա՛լ ասպետական փողը չէ, որ զխաղաղութիւնը կը վրդովէ: Փողը՝ բերդա-

պահա՛ց միայն կը հնչէ, որ զբանտարկեալները փակարան տանին. ու հանգչելու երթան: — Վիպական ժամանակն աներեւոյթ եղած է: Հիմակ միայն ոճրագործութեան վէպերուն ստորին ասպետները կը նուաղին լաւ պահանորդութեան տակ:„

“Երբ մարդ քաղքին վրայ կը մտածէ, ամենեւին չի կրնար հաւատալ, թէ ասանկ խաղաղ ու պզտի քաղքի ետեւի կողմն այսպիսի սարսափելի պատմութիւն ունեցող մարդիկ միատեղ ժողոված ըլլան:„

“Վերլայ հայաքաղքին մէջ ամենէն աւելի աստուածավախ ժողովուրդը կը բնակի: Աւելի հաւատացեալ է քան զՍպանիացին. ու աւելի մեծ Հունգարացի է, քան զՀունգարացին: Ո՛վ լսած չէ Դրանսիլուանիոյ Հայոց մետրապոլսին վրայօք, որ մարդկութեան այնչափ երեւելի անձինքներ տուած է: Կայ մէջերնին մատենագիր ու արուեստագէտ. շատ հարուստ մեկենաս ու դիւցազն. պաշտօնեայ ու մարտիրոս: Կարծեմ, բաւական է յիշել միայն՝ զԳրիգոր Չիգիեան, զԿուռնեղիա Հալլոշի, զԳուխտան Գարաչոնի, զՁէց զօրապետը, զԿորովէ պաշտօնեան, զԷռնեստինոս Գիշ:„

“Քաղաքը խաղաղ է: Գէրէօյի ծծմբային բաղանեաց կողմը՝ արեգակը, իր մառը կը մտնէ ու իր ճառագայթներովը կը շրջապատէ Եօլճն խաչի լերան վրայ եղող գողգոթան:„ — — —

“Թէ ժամանակակիցները — կ՛ըսէ Ալեքսիոս Իւգոպ պատմագիրը — եւ թէ մեզմէ յա-

ռաջ եղողները տեսան, Հայերուն՝ մեզի եւ մեր երկրին ունեցած ճշմարիտ յարումը — մանաւանդ դարուս առաջին մասին քաղաքային խառնակութեանցը մէջ: 1791ին ու 1792ին տէրութեան աւագաժողովները, ոսկի գրերով գրեցին իրենց անունը Հունգարական պատմութեան մատեանին մէջ. այն միջոցին՝ երբ օրէնսդրութիւնն իրենց կրկին քաղաքներն — զԿերլայ ու զԵղիսաբեթուպոլիս — արքունական քաղաքներուն կարգը բարձրացուց եւ օրէնսդրութեան կանչեց: Պատմական խուզարկուին սիրտը կը վերհամբառնայ ուրախութենէն, երբ կը կարդայ իրենց պատգամաւորներուն ճառախօսութիւնները 1841—43 տարիներուն՝ տէրութեան ժողովներուն մէջ: Հայրենեաց արդարակորով հաւատարմութիւն, տէրութեան օրինաց ճշմարիտ հպատակութիւն. իրենց նոր հայրենեաց ու նոր եղբարց նկատմամբ ունեցած աներկբայելի սիրոյն բարերար ջերմութիւնը՝ կը հոսէ իրենց ամէն մէկ խօսքին մէջ: Եթէ ամէն ազգայնութեանց զաւակները — զորոնք մեր ազգն իրենց մէջ ընդունեցաւ եւ որոնց Հունգարիա օրէնքներ, կալուածներ ու պաշտպանութիւն տուաւ — այնպէս զգային եւ այն կերպով գործէին, ինչպէս մեր հայ եղբայրներն, այն ատեն ուրիշ կերպարանք կ'ընդունէր Հունգարիա. եւ ուրիշ աստիճանի մէջ կ'ըլլային համակրութիւն, արուեստ, վաճառականութիւն, հարստութիւն . . .: Եթէ Դրանսիլուանիոյ արքունի կալուածները — Կեալու, Կէօրկէն, Տէվա, Վայտա-Հունեատ — իւր

ժամանակին սանկ ձեռուըներու մէջ ինկած ըլլային՝ ինչպէս տարբեր վիճակի մէջ կ'ըլլար այսօր, եւ ինչպէս տարբեր բան կը ցուցնէր մեր առեւտրոյն հաւասարակշռութիւնը։»

## 2. Քաղքին կնիքն ու զինանշանը:

Քաղքին վաղեմի խորհրդանոցին պատշգամին վրայ կեցած զինանշանը՝ մէկ մարմնով կրկնագլուխ արծիւ մըն է, որուն գլուխներն իրարու հակառակ դրից մէջ կեցած են ու թեւերն աջ ու ձախ կը տարածին։ Արծիւը՝ մէկ ոտքին ճանկերովը թուր՝ իսկ մէկալովը տէրութեան գունտը կը բռնէ. ասոր վրայ կեցած է խաչ։ Ինչպէս որ արծիւն իր մէկ ճանկովը խաչ կը բռնէ, անանկ ալ արծուին կրկին գլուխներուն մէջտեղը կեցած է խաչ։ — Աս է միանգամայն քաղքին, վաղեմի ժամանակէն մնացած ու միշտ գործածութեան մէջ եղած կնիքը։ Կը




Հայաքաղքին կնիքը

ներկայացընենք ընթերցողաց 1838ին փորագրուած սանկ մէկ կնքոյ մը պատկերը։ Թէ

ասկէ յառաջ եղածներուն եւ թէ՛ ասոր շրջանակը փորագրուած է գէշ Հունգարերէն ուղղագրութեամբ յաջորդ խօսքը· SZ. KIRÁLYI SZAMOSUJVÁR VÁRASA PETSÉTYE 1838. որ Հայերէն թարգմանութեամբ կը նշանակէ. “Կերլայ թագաւորական ազատ քաղքին կնիքը„։

Թէ ի՛նչ կերպով եւ ի՛նչ պատճառաւ, կրկնագլուխ արծիւն եղած է Հայաքաղքին զինանշանն ու կնիքը՝ անծանօթ բան մըն է։ Հաւանական է որ այս նշանն առած են Հայաքաղաքացիք, իւր ժամանակին, աւստրիական տան ունեցած յարումէն եւ Հունգարացւոց ունեցած հակառակութեան հոգիէն. այն տարբերութեամբ, որ արծուին գլուխները, ինչպէս վերն ալ ըսինք, կեցած է խաչը՝ Հայոց շատ սիրական ու պատուելի նշանը։ — Բայց ա՛ն ալ կրնայ ըլլալ որ Հայք այս զինանշանը հետերնին բերած ըլլան իրենց հայրենիքէն։

Ան ստոյգ է որ կրկնագլուխ արծիւը (Խադայու) հին զրուցաց առասպելական կենդանին է, որ տարտարոսի մէջ կը բնակի եւ անցեալն ու ապագան կը նկատէ։ Թէպէտ միջին դարու մէջ անհետացաւ զինանշան կենդանւոյն այս նշանակութիւնը, սակայն կնքագիտութիւնը պահեց կենդանիները։ — Կնքագիտութիւնն իր սկիզբը հին առասպելաց պատկերներէն փոխ առած է, զորոնք յետոյ՝ ըստ կամի յապաւեց, զուգեց, քովէ քով բերաւ եւ այլն։ Այսպէս քովէ քով բերաւ զարծիւն ալ։ Տարակոյս չկայ, որ կրկնագլուխ արծիւն ի սկզբան իրարու քով

կեցած արծիւներ եղած պիտ՝ որ ըլլան. բայց ետքէն երկու գլխու տակ պահեցին մէկ մարմինը:

Կրկնագլուխ արծիւը գործածութեան մէջ էր Արեւելք, իբրեւ ժողովրդոց ու քաղաքաց նշանը՝ դրամոց, գորգերու եւ կերպասներու վրայ. բայց ոչ կնքագիտութեան նշանակութեամբ, այլ խառն ուրիշ կենդանիներու հետ: Հնդկական, Ճաւայի եւ Սէյլանի արուեստից ու բանաստեղծութեանց մէջ ալ կը հանդիպինք այս թռչնոյն: Հաւանական է, որ բիւզանդեան գահուն վրայ նստող հայ կայսրներն սկսած ըլլան նախ, արեւելեան հռոմէական պետութեան մէջ կրկնագլուխ արծուին գործածութիւնը: Իրենցմէ ետքը մէկալ կայսրներն ալ պահեցին երկգլուխ արծիւները: — Ասոնցմէ առին Ռուսք: Իվան Գ. — որուն ամուսինը Կոստանդին Պալէոլոգին դուստրն էր — մտցուց ռաջին հեղ Ռուսաստան:

Իրենց հայրենիքէն ազատած ու դրսի երկիրները գաղթած ազգայնոց՝ միջին դարու մէջ կանգնած Արճէշ քաղքին — Courtea de Argeche, Վալաքիայի Արճէշ գետին քով — եկեղեցւոյն մէջ մինչեւ ցայսօր կը տեսնենք կրկնագլուխ արծիւը: Հայք՝ անշուշտ ազգային զինանշանին մէջ եղած արծուէն անուանակոչեցին իրենց քաղաքն ու անոր կից եղող գետը: — Ասոր վրայօք Բ. Պ. Հաշտէու ռոման պատմագիրը, Նոր Հանդէս[1] անուն թերթին մէջ այս-

---

[1] Revista Nuoa. Bucuresti 1888 թիւ 4:

պէս կ՚ըսէ. "Գիտենք որ ԺԲ. դարուն մէջ Հայոց բազմութիւն մը եկաւ Արճէշ։ Ասոնք վանի քով եղած Արճէշը թող տալով՝ բիւզանդեան կայսրութեան օգնութեամբը Վալաքիա գաղթեցին։ Կան՝ որոնք կ՚ըսեն թէ Բիւզանդիա տուած է այս Հայ գաղթականաց՝ իբրեւ զինանշան՝ արծիւը։ Հայերն ետքէն զասիկայ, ինչպէս նաեւ Արճէշ անունը եւ երեւելի եկեղեցինին՝ իբրեւ ժառանգութիւն թողուցին Ռումաններուն։ Բայց ասոնց դէմ, — կը շարունակէ Հաշտէու — որոշակի կ՚ունամ՝ ըսել թէ Արճէշացիք, անընդմիջապէս Հայաստանէն բերին հետերնին կրկնագլուխ արծիւը։ Տիգրիսի ու Եփրատայ երկայնութեամբն — ինչպէս արդէն գաղղիացի պատմագիրներ ալ շատոնց կը հաստատեն, — շատ աւելի յառաջ գործածութեան մէջ էր կրկին արծիւը՝ քան Յունաստանի մէջ։ Ուստի չէ՛ թէ Հայաստան ընդունեցաւ զան Բիւզանդիայէն, հապա Բիւզանդիոն փոխ առած է Հայաստանէն„։

Պուքարէշտի դիւանատունը կը պահուի Արճէշ քաղաքին երկու սկզբնական կնիքն, որոնց առաջինը 1629ին, երկրորդը՝ 1665ին շինուած է։ — Ուստի շատ հաւանական է, որ մեր նախնիքը՝ Դրանսիլուանիա գաղթելէն յառաջ, Մոլտավալաքիայի մէջ՝ կրկին գլուխ ունեցող արծիւն իբրեւ զինանշան ու կնիք գործածած են։ Երբ որ Աբաֆի իշխանին խնդրելովը Դրանսիլուանիա անցան, հետերնին բերին՝ իրենց հաւատքին, սովորութեանցը, լեզուին եւ ազա-

տեղ կրցած շարժական ստացուածներուն հետ կրկնագլուխ արծիւն ալ, որ դրին տեղաւորեցին Հայաքաղաքի խորհրդանոցին պատշգամբին վրայ։

### 3. Հրապարակական յիշատակարաններ։

Տարակոյս չկայ որ Հայք ի Խրիմ, ինչպէս նաեւ ի Մոլտաւիա եւ ի Լեհաստան իրենց շըրջակայ ազգաց լեզուն ալ կը գործածէին. սակայն իրենց սովորական էր մայրենի հայերէն լեզուն. զայս կը գործածէին պաշտօնական գործողութեանց եւ հասարակ տնային ու առեւտրական կենաց մէջ։ Այս լեզուն պահեցին նաեւ Դրանսիլուանիա անցնելէն ետեւ երկայն ատեն։ Ասոր ակներեւ վկայ են այն ժամանակէն ձեռուընիս մնացած եւ մինչեւ նախընթաց դարուն վերջերն անընդհատ գործածութեան մէջ եղած ամէն պաշտօնական գրութիւնները, ծանուցմունքները, դատաստանական գործողութիւնները, յայտարարութիւններն եւ այլն։ Բայց — ինչպէս ինք իրմէն կրնայ ենթադրուիլ — այն ատենական վճիռներն, որ բարձրագոյն իշխանութեան առջեւ ելլելու էին, հարկ էր լատիներէնի դարձընել, եւ անոնց հաստատութիւնը խնդրել։

Եթէ պաշտօնական գրութիւնք հայերէն էին, եւս առաւել հայերէն ըլլալու էին՝ այն հրապարակական յիշատակարաններն, որոնք պարզապէս եւ միայն ազգայնոց վերաբերեալ գործոց յայտարար էին։

Դրանսիլուանիոյ ամէն հայաբնակ քաղաքացը մէջ կային առենօք հայատառ յիշատակարաններ։ Եթէ այսօր չկան, անշուշտ ժամանակին ակռաները — նաեւ անհոգութիւնը, տգիտութիւնն եւ զանոնք անպէտ համարելը — փճացուցած են։

Բայց Հայաքաղաքիս մէջ, որ Դրանսիլուանիոյ գաղթականութեան գլխաւորն է — դեռ կանգուն կեցած են յիշատակարաններ, որոնք թէպէտ ոչ երեւելի պատմական դէպքեր կը բովանդակեն, եւ ոչ ալ արտաքին մեծ ճարտարութեան ապացոյց են. սակայն յարգելի յիշատակարաններ են. վասն զի մեր առջեւ կը դնեն ասկէ իբր 100—150 տարի յառաջ եղած բաները։

Զանոնք՝ իրենց հնութեան կարգաւը մեր ընթերցողաց առջեւ կը դնենք։

Արդ՝ առաջին հրապարակական ազգային յիշատակարանն, որ դեռ կանգուն մնացած է՝ քաղքին — հիմնարկութենէն գրեթէ 50 տարի ետքը, կամ 1724ին Թորոսեան երկու եղբարց շինած — Աւետման Ս. Աստուածածնի Եկեղեցւոյն ճակտին վրայ է։ Ասոր մէկ մասը լատիներէն է. մէկալը՝ հայերէն, այսպէս.

SALAMON, ET
BOGDANY THO
DOR FRATRES GER
MANI, VXORES EORM
SZRMA ET IVLIANA

EREXERVNT PROPRIIS
SVMPBVS HOC DI
CATVM NVNCIATA
MARIAE V. B. TEMPLVM[1]

*անմիջապէս տակը*

ՍՂՄՈՆ. ԱՍՎԱ
ՏՈԽՐ. ՈՐԴԻՔ ԽՃ.
ԳՕՏԷՐԻ. ՇԻՆԵՑ
ԻՆ ԵԿԵՂԵՑԻՍ
ANNO 1724.

*Այս եկեղեցւոյն մէկ գլխաւոր մասն, որ զատ աղօթարան մը կը կացուցանէ — եւ ինչպէս յայտնապէս կ'երեւայ յատուկ դուռ մ'ալ ունէր ի սկզբան — եօթէն շինած է Ս. Աննայի բարեպաշտ կանանց ընկերութիւնը։ Այս դուռը հիմակ որմնապատ է։ Դրան վրայի յիշատակագիրը բաւական պատմական ծնացորդ մըն է, որմէ կ'իմանանք թէ արդէն այն միջոցին կար Ս. Աննայի ընկերութիւնը. եւ թէ ինչ ժամանակ, որուն ծախքովն՝ եւ որուն առաջնորդութեամբ շինուած է մատուռը։ Փորագրութիւնը շատ ողորմելի արուեստ կը ցուցընէ։ Վաթսունուհինգ սնդ. լայնութիւն եւ նոյնչափ բարձրութիւն ունեցող վէմը յաջորդ յիշատակարանը կը պարունակէ.*

---

1 Սողոմոն եւ Աստուածատուր Թոխոր՝ եղբարք Հաբազարք եւ կողակիցք նոցա Սրմա եւ Ցուլիանէ շինեցին իւրեանց ծախիւք զայս յանուն Աւետման Մարեմայ Ս. Կ. տաճարն։

ՅՄ՟Ի Տ՟Ն 1732. ՈՒԼԻՍ 16 ՍԿԲ՟Ն
ԵՂԵՒ ՇԻ՟ՆԹ՟Ե ԱՅՍ ՄԱՏՈՒՐԻՍ
Ի. Պ. ՍՐԲՅ՟Ն ՕՎԱ. ԵՒ ԱՆԱՅԻ
ԱՐԴ՟ՄՔ ԵՒ ԳՈԻՒՔ ՀՅՔՂ՟ՔԻ
ՊՐԿՇՏ ԿԱ՟Ն՝ ՅԵՂԲՐԿՑԹ՟Ե.
ԱՇԽՏԹԲ. ՅՐ. ՏՐ. ՄԻ՟ՆՍ. ԹՐՍ՟Ն
ԵՒ ՊԱՂ. ԳԻՐԳԻ ԴՕՏՐ՟ՆՑ.

*զոր այսպէս կը կարդամ.*

*Յամի Տեառն 1732, Ուլիս 16, սկիզբն*
*եղեւ շինութեան այս մատուրիս.*
*ի պատիւ Սրբոյն Օվակիմայ եւ Աննայի.*
*արդեամբք եւ գոյիւք Հայաքաղաքի*
*պարկեշտ կանանց եղբայրակցութեան.*
*աշխատութեամբ Յար. Տր. Մինաս Թորոսեանի*
*եւ Պատուելի Աղա Գրիգորի Դոտէրենց:*

Այս եկեղեցւոյս շինութիւնը ծանուցանող յիշատակարան մ'ալ աւանդատան դրան վրայ: Հոս նկարուած են եկեղեցւոյ հիմնադիրները՝ գրեթէ մարդաչափ մեծութեամբ ծունր դրած եւ ձեռնամած, քովերնին՝ իրենց ամուսիններովը: Եկեղեցւոյն նկարեալ պատկերն՝ իրենցմէ կողմնակի ու ծունր դնող երկու զոյգին գրեթէ մէջտեղը կ'իյնայ: Ստորեւ եղած ճերմակ դաշտին մէջ մեսրոպեան տառերով յաջորդ հինգ տող յիշատակարանը կայ.

**ՍՈՂՈՄՈՆ ԵՒ ԱՏՎԱՏՈՐ ՇԻՄԱԵԱՆ 1723ԻՆ**
**ՇԻՆԵՑԻՆ ԶԱՅՍ ԵԿԵՂԵՑԻՆ**
**ՌԷՆՕՎԱԳ[1] ԱՐԱԾ Է 1751**
**ԵՐԿՈՒՍՈՒՄԸ ՌԷՆՕՎԱԳ ԱՐԱԾ Է 1797**
**ԻՐԵՔՈՒՄԸ ՆՈՐԵՑՈՒՑԱԾ Է 1841**

*Բայց այս յիշատակարանը Զաքարիա Կապրուշեան նկարած ու գրած է այն միջոցին, երբ եկեղեցին 1841ին, հիմնովին նորոգուեցաւ: Նոյն իսկ գրերուն ձեւին միօրինակութիւնն եւ գոյնը յայտնապէս կը ցուցընեն թէ միեւնոյն ժամանակի գործ է:*

†

*Մայր եկեղեցւոյն հարաւային կամ աւանդատան փոքրիկ դրան վրայ, որ միայն քահանայից գործածութեան համար է, յաջորդ յիշատակարանը կը կարդանք.*

ՅԻՇԱՏԱԿ Է
ԳՈԽՌՍ ԱՅՍ Ո. Հ.
ԵԿԵՂԵՑ ԲՆԱՅ ԾԷ
ՐԻԿԻՆ ՅԱԿՈԲՇԱ
ՅԵԱՆ ԵԽ ԻԽՐ ԸՆ
ԿԵՐՈՉԸ ՀՌԻ
ԲՍԻՄԷԻՆ ՅԱ
ՄԻ ՏՆ. 1765
ԵԽ ԹՎԻՆ ՅԱ
ՅՈՑ ՌՄԺԴ

[1] Renovare (նորոգել).

Ափսոս որ մայր եկեղեցւոյն յիշատակարանները Հայերէն չեն։ Կ'երեւայ թէ լատիներէնի գործածութեան ընդհանրութիւնն եւ օտարաց ծանուցուելու փափաքն՝ եկեղեցւոյն այս յիշատակարանները լատիներէն քանդակել տուած է։ Թէպէտ միտ դնելու է որ լատիներէն քանդակներն ոչ այնչափ յիշատակարան, որչափ ընծայում կամ նուիրում (dedicatio) են։ Առանցմէ մէկն որ եկեղեցւոյ ճակտին, մեծ դրան վրայ է եւ որուն երկգունեան գրերն գրեթէ 15 սանդիմետր մեծութիւն ունին, հետեւեալն է.

VERI DEI
VNIVS ATQVE TRINI
PATRIS FILII ET SPIRITVS SANCTI
SACRATVM[1]

Այս յիշատակարաններէն կ'իմանանք նախ, թէ եկեղեցին Ամենասուրբ Երրորդութեան նուիրուած է. եւ երկրորդ՝ թէ Քրիստոսի 1792 թուականին շինուած է։[2]

Եթէ եկեղեցին մտնենք եւ մեծ դրան մէջ կենալով դէպ ուղիղ առաջ նայինք, վերը՝ եկեղեցւոյն գլխաւոր սիւնակամարին մէջ տեղը 25 մեդր բարձրութեամբ՝ բուն գլխաւոր նուիրումը կը տեսնենք քարեղէն տախտակի մը վրայ։ Կապոյտ յատակէն դուրս ցցուած ոսկեզօծ գրե-

---

1 Ճշմարտին Աստուծոյ երրեակ միութեան՝ Հօր, Որդւոյ եւ Սրբոյ Հոգւոյն նուիրեալ։

2 Այս եւ յաջորդ լատին արձանագրութեան մեծ գլխագիրներն՝ իբրեւ թուական հաշուելու ըլլանք տող առ տող, գումարը՝ շինութեան տարին կը ցուցընէ. առաջինը 792, երկրորդը 1795։

*րուն մեծութիւնը պէտք է գոնէ 30—40 սանտիմեդր ընել. վասն զի ազատ աչօք շատ աղէկ կը կարդացուին։ Այս գլխաւոր նուիրումը յաջորդ հինգ տողերու մէջ կը պարունակուի.*

CLORIA IN ALTISSIMIS
PROVT FVIT ITA SIT
VERO DEO VNI ATQVE
TRINO PATRI FILIO
ET SPIRITVI SANCTO[1]

*Եկեղեցւոյս հարաւային կողմն եւ անկէ 15 քայլ հեռու՝ հին ժամանակներն երկայն շէնք կամ տներու շարք մը կար մէկ ծածկի տակ։ Այս շէնքը ժողովատուն էր՝ Ամենասուրբ Անուան Յիսուսի Եղբայրութեան։ Եղբայրութիւնը ջնջուեցաւ կամ անդամոց սակաւութեանը՝ կամ մեզի անծանօթ պատճառի մը համար։ Իսկ շէնքն այլեւայլ կերպարանափոխութիւններու տակ ինկաւ։ Դարուս առաջին կիսուն դպրոց էր. ետքէն անոր մէկ մասը՝ դպրոց, աւանդապահի եւ ժամկոչի բնակարան, մէկալ մասը դպրոց էր։ Բայց երբ 1861ին դպրոցը փոխադրուեցաւ, աւանդապահն ու ժամկոչք ուրիշ տեղ դրուեցան, շէնքը դարձաւ ցորենի ամբարանոց. մինչեւ որ 1880ին բոլորովին գետնայատակ եղաւ։ Շէնքին մէկ դրան վրայ մէկ մեդր երկայն եւ 80 սանդիմեդր լայն քար մը կար, յաջորդ ժիշատակարանով.*

[1] Փառք ի բարձունս որպէս եղեւ, նոյնպէս եղիցի Ճշմարիտ Աստուծոյ միայնոյ եւ երրակի՝ Հօր, Որդւոյ եւ Սրբոյ Հոգւոյն։

ՇԻՆԵՑԱՒ ԺՈՂՈՎԱՏՈՒՆՍ ԱՅՍ
ՅՏԻԿ ՎՄ ԵՂԲԱՐՑ ԱՄԵՆԱՍԲ
ԱՆՈՒԱՆՆ ՑԻ: Ի ԺՄՆԿՍ: ԱՒԱԳԷՐ
ՑԻԹԵ ԳԵՐՑ· ՏՐ ՄԻՆԱՍԻՆ· ԹՐՍԵՆ
ԲԼԷՊ: ԳԵՐՑ· ՏՐ ՂԿՍՍՏԵՓ: ԳԱԲ
ԷԼԱՆ: ՏՐԽՉԿԻՆՄՆԿՆ· ՊԻՐՎԻԹՆ
ԱՂԱԽՆԿՆՍԻՆ ԹՐՍԵՆ· ԵՒԲՐԷՓ: ՏՕ
ՆԻԿԻՆԱԿՈՒԹՇ: ՓԿԱ: ԳՐԻԳՈՐԻՆ ԽՉԿԻ
ՆՕԳՐԻՇ ՏՐՑԻ ՊՕԿՏՆԻՆ ՆՈՒՐ (ՎՐԳԷ
ԻԺԱՆԻ ԽՐՀՐԳԱԿԻՑԽՉՏՐԻՆ ԸՇԳԸՐՊ· ԱՍ
ՎՏՐԻ: ԹՎ: ՌՄԲ:

*Այս արձանագիրն, որ բաւական բան կը պարունակէ՝ տեղւոյն յարաբերութիւններն ու լեզուն նկատելով՝ յաջորդ կերպով կը կարդամ ու կը մեկնաբանեմ.*

*Շինեցաւ ժողովատունս այս*
*յատուկ վասն Եղբարց ամենասուրբ*
*Անուանն Յիսուսի: Ի ժամանակս աւագէր-*
*իցութեան գերյարգելի Տէր Մինասին Թորոսեան.*
*ընէպանուշ[1] գերյարգելի Տէր Ղուկասու Ստեփանեան.*
*[գաբ*
*էլան[2] Տէր Խաչիկին Մանուկեան. պիրովութեան[3]*
*Աղա Խնկանոսին Թորոսեան. եւ ընէֆիգուշին[4] Տօ-*
*նիկին Ակոբշաեան. փկա[5] Գրիգորին Խաչիկի.*

---

[1] Plebanus (ժողովրդապետ)։
[2] Capelanus (մատրանապետ)։
[3] Հունգ. Biro, դատաւոր։ Ութեան, իրեն Հայերէն մասնիկն է։
[4] Praefectus (գահերէց, աւագ)։
[5] Այս երեք գրին նշանակութիւնը չեմ կրնար գտնել։ Տարակոյս չկայ որ պատուանուն կամ տիտղոս մըն է Գրի-

*Նօղարիուշ[1] տիւացու Պօկտանին Նուր- (Վարդանէ[2] իճանի. խորհրդակից Խաչատրին Ըշղըպուլի[3] Աւվատրի: Թվին. ՌՄԲ:*

Եղբայրութիւնն ու յատուկ իրեն համար կանգնուած շէնքն աներեւոյթ եղած են. բայց քարն ու յիշատակարանն անարատ կը կենայ. եւ հիմայ եկեղեցւոյ բակին երկաթէ վանդակապատիններուն դին որմին մէջ ամրացուած է. ի յիշատակ ապագայ եկեղց:

*

Անշուշտ մասնաւորաց շէնքերէն շատերուն վրայ ալ հայերէն յիշատակարաններ կային ատեն մը. բայց ժամանակն ու յարաբերութիւնները զանոնք ալ ոչնչացուցած ու իրենց տեղերէն հեռացուցած են: Թէ իրօք այսպիսի յիշատակարաններ կային, կը ցուցընեն մէկ քանի առանձնականաց տներուն վրայ տեսնուածները:

Ասոնց մէջէն հնութեամբ առաջին տեղին ունի Պօկտանֆի (= Աստուածատրեան) գերդաստանին՝ թիւ 173 տան գլխաւոր Ճակտին վրայ գտնուած յաջորդ լատին եւ հայ յիշատակարանը.

---

գոր խաչիկին: Թերեւս՝ vicarius-ի (տեղապահ) համառօտութիւնն ըլլայ:

1 Notarius (Նոտար):

2 ՆՈՒՐ-էն ետքն եկած ու կէս փակագծի մէջ առնուած ՎՐԴՆԷ կը նշանակէ, ըստ իս Վարդանէ (եւ ոչ ուրիշէ մը) տեսած Պօկտանին Նուրիճանին որդւոյն: Կրնայ նաեւ նախընթաց տողին մէջ Գրիգոր Խաչիկին վերաբերիլ: Անտարակոյս ՎՐԴՆԷ բառը մնացած է քանդակիչն եւ ետքէն սխալն իմանալով՝ ՆՈՒՐ-ին քով գրած է:

3 Մականուն մըն է վալաք վերջաւորութեամբ:

1727
DIE 20 IVN.
EXSTRUCTUM, EST
HOC AEDIFICIUM, INDU
STRIA AC PROPRYS SUMT
BUS ISAC. BOGDANFII SENAT[1]

*Որուն անմիջապէս տակն է յաջորդ Հայերէն յիշատակագիրը.*

ԹՎԻՆ· ՀԱՅՈՑ· ՌՃՀԶ· ՅՆԻՍԻ·
ԱՄՍՈՅ· Ը· ՕՐՆ ԵԾԻ· Ի ՎԱՅԵԼՈՅ
ԽՃՑԱՍՎԱՏՈՒՐԻՆ· ՍԱԳՕԵԱՆՑ ԵՒ ԻՒՐ
ԸՆԿԵՐՈՋՆ· ՃԻԾԽԱԹՈՒՆԻՆ ԳԻՐԳՕ
ԾԱԵԱՆՑ ԵՒ ՈՐԴՈՒՅՆ ԳԱԲՐԻԷԼԻՆ
Ա̃ՓԲԱՐԻ ՎԱՅԵԼՈՒՄՏԱՑԷ· ԱՄԷՆ·

*Վերի* 1727 *թուականը բաժնուած է այսպէս* 17—27, *նաեւ* DIE 20՝ *բաժնուած է* IVN-*էն. եւ ասոնց մէջ տեղը կեցած է գերդաստանին ազնուականութեան նշանը։*

*Կայ ուրիշ յիշատակարան մ'ալ Թ.* 183 *տան վրայ, որ Հիմայ Հայ եկեղեցւոյն ստացուածն է։ Ս. Գէորգ ձիու վրայ՝ կը սպաննէ զվիշապը. Սուրբին մարմնոյն երկու դին բաժնուած է* 1739 *թուականն. այսպէս* 17—39։ *Ձիուն տակ այս յիշատակագիրը կը կարդանք.*

---

[1] 1727 ի 20 Յունիսի կանգնեցաւ շինուածս արդեամբք եւ ծախիւք Իսահակայ Պողտանեան՝ անդամոյ ծերակուտի։

## 1739

### ՇԻՆԵՑԵԱԼ Է ՏՈՒՆՍ ԱՅՍ ԸՆ
### ՉԻՒՔ ԵՒ ԱՇԽԱՏԱՆՕՔ ՉՈ
### ՐԻՑ ԵՂԲԱՐՑ. ՏԷՐ ՂՈՒԿԱՍՈՒ
### ԳԷՎՈՐՔԱ ՎՐԴՆԻ. ՊՏՐՍԻ. ՎՐԹՐԷՍԳԻ

*Քաղքիս ամէնէն վերջի հայատառ յիշատակարանը կանգնուած է Ս. Գրիգորի որբանոցին մատրանը վրայ։ Ասիկայ քանի մը տողով ու համառօտագրութեամբ առջեւնիս կը դնէ, մատրան, երբ ու որո՛նց ատենը կանգնուելուն պատմութիւնը. եւ թէ որո՛նք եւ որչափո՛վ կանգնեցին։ Ահա յիշատակարանը.*

†

ԿՆՔՆՑԻ. ՄՏՌՍ Ի ԹՌԻՆ ՀՅՑ.
ՌՃԼԷ. Ի ՔՀՏԹԵ. ԼԵՒՈՆԻ ԺԴ. Ի
ԹԳՒՐԹԵ. Փ. ՅՎՍՓ. Ա. Ի ՅՇՏԿ.
ԱՆՄՈՑ. ԺՎՐԴՏ. Խ. ԼՈԴԱՉԻ։ —
ԵՏ ԻՇԻՆՈԹԻ ՀՅՔՂՔՍ. Ո. ՓԼ.
Ն. ԳՈՊՈԼ. Ո. ԵԿ. ԵՐՐՈԴ. Ո. ՈՐԱ-
ՆՈՑՍ. Ո. ՓԼ։ — ՔՂՔՊՏ. ԷՐ Դ. ՐԼԸՉ-
ԻՆԴԱՐ։ ԺՂՎՐԴՊՏ. Տ. Ղ. ՊԱՐԱՆ.
ՀԳԲՐՉՈ Հ. ԳՐ. ԿՈՎՐԻԳ։ ԺՐՏՊՏ.
ՅՈՎՀ. ԳԱԳՈՆԱ. ՀԳԿ

*զոր յաջորդ կերպով կարդալու ենք.*

*Կանգնեցաւ մատուռս ի թուին Հայոց*
*Ռ·ՃԼԸ. ի քահանայապետութեան Լեւոնի Ժ·Դ. ի. Ռ*

*Թագաւորութեան Փրանկ. Յովսէփայ Ա. Ի յիշատակ
անմոռաց ժողովրդապետ Խ. Լուքաչի: —
Եւ ի շինութիւն Հայաքաղաքս Ռ. փղորին.
Նիկողայոս Գորպոյլ Ռ. Եկեղեցի Երրորդութեան Ո. որբա-
նոցս Ո. փղորինս: — Քաղաքապետ էր Դաւիթ Բլըշ-
ինդար: Ժողովրդապետ Տ. Ղուկաս Պարան.
Հոգաբարձու Հ. Գրիգ. Կովրիգ: Ճարտարապետ
Յովհաննէս Գաղոնա:*

**Ստորեւն եղած հայ մենագիրը՝ գրողին անունն է։**

## 4. Ազգային տօնախմբութիւն:

Հայաքաղաքն 1889 Սեպտ. 3ին հունգարացւոց ազգին ընդհանուր տօնախմբութեանը — “Դրանսիլուանիոյ համակրթութեան ընկերութեան„ ընդհանուր ժողովոյն — ծանրակշիռ ու յիշատակաց արժանի տեղն եղաւ։ Հոս օրհնուեցաւ իրենց՝ արտաքոյ կարգի գեղեցիկ — վրան Աստուածածնայ պատկերովը — բանուած ծանրագին դրօշը։

Այս առթիւ քաղքին երեսփոխանը՝ Անտոն Մոլնարեան, “Արմենիայի„ ձեռքով ընդհանուր ժողովը յաջորդ խօսքերով ողջունեց։

“Ողջոյն Դրանսիլուանիոյ համակրթութեան ընկերութեանը։

Մեր հայրենասիրութեան բոլոր զգացմամբը կ'ողջունենք, հայութեան մետրապոլսին մէջ ժողուած “Դրանսիլուանիոյ համակրթութեան ընկերութեան„ անդամները։ Ըլլայ բարեյաջողութիւն իրենց աշխատութեանը վրայ։ Ըլլայ օրհնութիւն՝ համակրթութեան ընկերու-

թեան, այս քաղքին ոսկերուն մէջ օրհնուելու դրօշին վրայ: Ընթանայ այս դրօշը յաղթութենէ յաղթութիւն: Ըլլայ՝ իր յաղթութեանցը ձեռօք, մարմին՝ բանը, որուն տեսանելի զօրութեամբն համակրթութեան ընկերութիւնը՝ հայրենեաց որդիներէն ու դուստրներէն հազարաւորներ իրեն հետ միացուց:

Արեգակ է համակրթութիւնը, արեգակ մը՝ որ հաւասարապէս կը տարածէ իր կենսատու, իր բեղմնաւորիչ ճառագայթներն ամէնուն վրայ:

Մենք Աւստրո-Հունգարական պետութեան հայաշուրթն քաղաքացիները, կ՚ողջունենք Տրանսիլուանիոյ համակրթութեան ընկերութիւնը:

Երկու հարիւր տարիէ աւելի է, քանի որ մեր պապերը — հեռաւոր Արեւելքի մէջ դարերով պատերազմող նաւակոծեալները՝ — քրիստոնէական համակրթութեան համար, Տրանսիլուանիոյ իշխանաց հրաւիրելովը այս երկիրը գաղթեցին: Ճշմարիտ հայրենիք մը շնորհեց իրենց տէրութիւնը: Բայց նորքին սիրով ու անբեկանելի յարումով հատուցում ըրին միշտ իրենց պարտաւորութեանը. վասն զի հոգւով մարմնով քաղաքացիներն եղան այս նոր հայրենիքին: Մէկտեղ ու հաւասարապէս զգացին լաւ ու գէշ օրերուն փոփոխութիւնները:

Երեւելի մարդիկներու ամբողջ շարք մը կանգնեց մատոյց հայ ազգը հայրենեաց ծառայութեանը, թէպէտ կարճ բայց տագնապիչ

դիպուածներով հարուստ ժամանակին մէջ։ Նահատակներ տուաւ՝ ազատութեան, երեւելիներ՝ հասարակութեան, գիտականներ՝ երկրին, եւ արհեստաւորներ՝ համազգային կրթութեան ու յառաջադիմութեան. եւ կու տայ հասարակ պարզ գործաւորներ մեր ամէնուն միջոցաւը. որոնք թէպէտ նուազ կարողութեամբ, բայց բոլոր զօրութեամբ, միշտ պատրաստ կը կենանք տէրութեան՝ մեր երկրորդ հայրենիքին ծառայութեանը։

Որդիական սիրով կը կապուինք մեր տոհմային հազարաւոր տարիներու պատմական անցելոյն հնաւանդ յիշատակներուն։ Յարգութեամբ կը տածենք զայն՝ ինչ որ մեր վաղեմի քաղաքակրթութեան հնացորդներէն ժամանակաց ակռաները խնայեցին։ Համակամութեամբ կը դիտենք՝ հեռաւոր արեւելեան եղբայրակցաց — կրնանք ըսել ծանր յարաբերութեանց մէջ — դիմացկուն յարատեւութեամբ շարունակած քաղաքակրթեան գործքը։ Բայց մեր այս յարումը, մեր անցեալին յիշատակն եւ մեր ջերմ բաժանակցութիւնը՝ մեզմէ բաժնուած արիւնակիցներուն ներկային նկատմամբ, եւ ոչ իսկ վայրկեան մը մեզի մոռցընել կու տայ, որ աւստրօ-հունգարական պետութեան զաւակներն ենք։

Մենք, որ մեր ազգին մատենագրութեան բերքերը՝ հունգարերէն լեզուի կը փոխենք, մենք, որ մեր պատմական ժամանակաց մինչեւ ամէնէն հին առեններն հասնող քաղաքակրթու-

թեան գանձերովը՝ հունգարական համակրթութեան մթերանոցը հարստացնելու կը ճգնինք, կը զգանք՝ գիտենք, որ ասով ալ հունգարական տէրութեան ծառայութիւն մը կը մատուցանենք. գիտենք ու կը զգանք, որ ասով ալ օրինակ կուտանք հետեւելու ուրիշ — ոչ հունգարալեզու — ազգայնոց, որ իրենք ալ արձակուած լուծուած կապն աւելի անձուկ կերպով կապեն:

Ողջոյն համակրթութեան ընկերութեանը: Ողջոյն այն ամէնուն, որ իրենք զիրենք անոր ծառայութեանը կը նուիրեն: Ողջոյն առաջնորդներուն՝ որ իրենց մտաւոր գործունէութեամբը կը ճգնին անոր յառաջադիմութեանը: Ողջոյն իրեն անդամներուն՝ սկսեալ ամէնէն մեծ աղայէն, մինչեւ ամէնէն աղքատ քաղաքացին, որ իրենց նուէրներուն լումաներն անոր խորանին վրայ կը դնեն . . .:„

1889 Սեպտ. 3ն էր այն օրն, որուն մէջ քաղաքն հանդիսաւորութեան զգեստ հագած էր. անոր համար որ համակրթութեան ընկերութեան Հայաքաղաք հասած անդամներն ըստ պատշաճի ընդունի: — Երկաթուղւոյ կայարանին ու յետոյ քաղաք տանող փողոցին անկիւնը կանգնուած փառաւոր յաղթութեան դրան առջեւի հանդիսաւոր ընդունելութիւնն — ընկերութեան դրօշին օրհնութիւնը — համակրթութեան ընդհանուր ժողովքն — եւ վերջապէս փառաւոր խնջոյքն՝ իրարու յաջորդեցին:

Յաղթութեան դրան առջեւ քաղաքապետն այս ճառախօսութեամբ ընդունեցաւ հիւրերը:

“Կերլայ ազատ Թագաւորական քաղքին վարչութեան կողմանէ ինծի վիճակեցաւ, իբրեւ քաղքիս քաղաքապետին՝ այն մեծ բախտն, որ մեծապատիւ Նախագահդ եւ Գրանսիլուանիոյ համակրթական ընկերութեան ընդհանուր ժողովոյն ներկայացած արժանապատիւ անդամներն, յանուն Հայաքաղաքիս, խորին մեծարանօք ողջունեմ։ Երբ զասիկայ սիրով կը կատարեմ, շնորհակալութեանս հաւաստիքը կը յայտնեմ այն մեծ պատուոյն համար, որուն արժանացուցիք Կերլայ Հայաքաղաքն, այնու որ մեր հասարակութեան հրաւէրն ընդունելով՝ Ձեր արժանապատիւ ներկայութեամբը զանիկայ պատուեցիք։ — Թէպէտ գիտէր քաղքիս հասարակութիւնն, որ տեղական ֆիզիքական դժուարութեանց համար — որմէ ազատ չեն մեր տէրութեան ուրիշ պզտիկ քաղաքներն ալ — ըստ արժանւոյն չի կրնար ընդունիլ համակրթութեան ընկերութիւնն, այսու ամենայնիւ իր հիւրասէր որմերուն կանչեց այդ փառաւոր եւ բազմաթիւ անձինքներէ կազմուած ընկերութիւնը, վասն զի համոզուած էր, որ Ձեր բարեհաճութեամբն անտես պիտի ընէք այս քաղքին համեստ ու չափաւոր վիճակն. որուն բնիկները՝ Հայերն, իրենց գաղթականութեան սկզբէն ի վեր, չէ թէ միայն պաշտպանեցին — նիւթապէս ու բարոյապէս — զհունգարական համակրթութիւնը, հապա նաեւ գործակից եղան անոր օրհնութիւնաբեր ասպարիզին մէջ . . . ։ Տեա՛րք իմ. մեծագոյն քաղաքներն ղՁեզ շքեղութեամբ ընդունեցան.

Ձեզի փառաւոր հանդիսութիւններ ըրին։ Ասոր պակսութիւնը կը լեցընէ մեր եռանդն, որն որ Ձեզի կ'աղաչէ. Ընդունեցէք՝ Ձեզի ցուցուած հիւրասիրութիւնը՝ հաճութեամբ. եւ պահեցէք այս քաղքին հասարակութիւնը՝ Ձեր մեծարելի միտութեանը մէջ։"

Ասոր վրայ հիւրերը ժողովրդեան խուռն բազմութեանը հետ քաղաք մտան, ուր գլխաւոր հրապարակին մէջտեղը կանգնուած սիրուն վրանին տակ հանդիսաւոր պատարագ մատուցուելէն ետեւ՝ ընկերութեան դրօշն օրհնուեցաւ։ — Ընդհանուր ժողովքը լմննալէն ետեւ փառաւոր խնջոյք մը տրուեցաւ 180 հոգւոյ՝ շրջագայութեան կռուանոցին (arena) մէջ։ — Այլեւայլ անձինք այլեւայլ մարդիկներու կենդանութեանը համար պարպեցին իրենց բաժակն։ Յառաջ կը բերեմ ասոնց մէջէն միայն քաղաքապետինը։

"Ներլայ հայաքաղաքին հասարակութիւնը՝ Դրանսիլուանիոյ համակրթութեան ընկերութիւնը հրաւիրելով, որ իր ընդհանուր ժողովն հոս ընէ, քաղաքակրթութեան առաքելութիւն մը կատարեց. վասն զի իր հայրենասիրական գործքովը՝ բոլոր աշխարհի ցուցուց, որ այս քաղքին հայաշուրթն քաղաքացիքը, հոգւով եւ մարմնով կը պաշտպանեն համակրթութեան ջանքերը։

"Դրանսիլուանիոյ ազգայիններն — որոնք իրենց հայրենիքէն գաղթելէն ետեւ, նախ Խրիմ, Բոտոլիա, Լեհաստան ու Մոլտաւիա բնակեցան,

ռուքէն Պիսդրիցի եւ Չիգի լերանց վրայ հանգչեցան — խմբովին 1672ին մտան այս երկիրս. ուր Աբաֆի Ա. Դրանսիլուանիոյ իշխանէն ազատ առուտուր ընելու իրաւունք ստացան: Մէկ մասը՝ հոս այս տեղս — ուր այսօր փառաւոր տօնախմբութիւն կը կատարենք — տեղաւորեց զմեզ, մեր անմահ յիշատակաց արժանի եպիսկոպոսն, Աւքսենտիոս Վրզարէսգուլ, որ Հռոմէն բերած ճարտարապետի մը ձեռօք շինած յատակագիծը՝ Լէոբոլտոս Ա. կայսեր ներկայացուց եւ անոր հրամանաւը 1700ին հիմ դրաւ այս Հայաքաղքին: Աս քաղքին բնակիչներն այսօր իրենց նոր տանը մէջ, հիւրասիրութեամբ ընդունեցան իրենց հայրենիք տուող ազնուական ազգն, որ հոս եկաւ, որպէս զի իր եղբօրը՝ հայազգւոյն հետ միատեղ գործելով՝ աշխատի համակրթութեան օրհնութենաբեր գործքին մէջ:

“Դրանսիլուանիոյ ազգայինք, շուտ իմացան, որ երկրին լեզուն, զհունգարերէնը պէտք է մշակել: Անոր համար հունգարական լեզուին կրթութեանը համար 1792ին, երկու հազար կտոր ոսկի տուին: — Երբ 1848—1849ին մէջ՝ հունգարական ազգին կեանքն ու անկախութիւնը տարակուսանաց մէջ էր, հայ ազգը մասնակցեցաւ հունգարացւոց ջանքերուն: Եւ պարծանօք կրնանք ըսել, թէ մարտիրոսներ տուաւ երկրին, բայց ուրացող եւ ոչ մէկ:

“Եւ որովհետեւ Դրանսիլուանիոյ համակրթութեան ընկերութիւնն, որուն նպատակն ան չէ՝ որ ուրիշ ազգայնութիւններն իրենց կրթական

ջանիցը մէջ խափանէ — կանգնուեցաւ՝ որ պաշտպանէ կրթութիւնը հոն ուր պէտք է, ուր վտանգի մէջ է. իսկ ուր որ վտանգ չկայ՝ տածէ ու տարածէ . . . անոր համար՝ Դրանսիլուանիոյ համակրթութեան ընկերութեան զարգացմանն ու տարածմանը համար կը պարպեմ բաժակս. հոգւոյս բոլոր զգացմամբը փափաքելով որ երկինք՝ իր գթութեամբն այս կարեւոր ընկերութիւնը պաշտպանէ։„

Յիշատակաց արժանի ազգային տօնը լմընցաւ շատ յաջողած պարահանդէսով մը։

Լրագիրներն այս առթիւ շատ գովութեամբ խօսեցան, Հայաքաղքի ազգայնոց ու քաղքին վրայօք։ “Ընդդիմադրութիւն„ (Ellenzék) կոչուած օրաթերթն ի մէջ այլոց զասոնք գրեց. “Երկաթի կայարանին ու գլխաւոր հրապարակին չորս ծայրերը կաղնւոյ ու կանանչ տերեւներով բոլորած կայմերուն վրայ՝ դրօշներ կը ծփային։ Քաղքին գլխաւոր մուտքին վրայ յաղթութեան դուռ մը կանգնուած էր՝ զինանշաններով ու դրօշներով զարդարուած՝ վրան այս վերնագրով. “Կեցցէ Համակրթութեան ընկերութիւնը։„ Տըներն առանց բացառութեան դրօշներով զարդարուած էին։„

“Գոլոժվար„ լրագիրը յաջորդները գրեց։ “Ամէն բան պատրաստ էր հիւրերն ընդունելու։ Քաղաքը՝ տօնական զգեստ հագած՝ կը փայլէր ու կը շողար։ Ամէն բան հանդիսաւոր էր։ Քաղքին զարդարանքները կը ցուցընէին լաւ ճաշակ ու ճարպկութիւն։ Փողոցներն այնպէս մաքուր

էին, որ Պուտաբէշդի Անտրաշի ծառուղին ալ գերազանցեցին։„

“Դրանսիլուանիոյ բանբերը„ (Erdélyi Hiradó) գրեց. “Հայաքաղաքին մեծ օրն ըստ ամենայն մասանց յաջողեցաւ։ Հիւրերը չկշտացան քաղաքին գեղեցկութիւնները նկատելով։ — Ան ստոյգ է, որ մեր տէրութեան ամէն փոքրագոյն քաղաքներուն մէջ՝ ա՛ս է ամէնէն գեղեցիկը։ Ասանկ կանոնաւորեալ, սիրուն ու առողջարար քաղաք — Սէկէտինը դուրս առնելով — չկայ բոլոր Հունգարիոյ մէջ։„

## 5. Ռուպէնսի Խաչելութիւնը։

Կերլայ Հայաքաղաքին մայր եկեղեցին կողմնակի մատուռ մ՚ունի, որ Խաչելութեան մատուռ կ՚անուանուի։ Այսպէս կոչուելուն պատճառն ա՛ն է, որ այս տեղս շքեղ պատկեր մը զխորանը կը զարդարէ։ Աս պատկերը 395 սանդիմէդր, — ըսել է թէ չորս մէդր երկայնութիւն — եւ երկու մէդր լայնութիւն ունի։ Նկարն — ինչպէս աւանդութիւնը կ՚ըսէ — Ռուպէնս պատկերահանին, Քրիստոսի՝ խաչէ վար առնուիլը ներկայացընող աշխարհահռչակ պատկերն է։ — Թէ որչափ ստուգութիւն ունի այս բանս, չենք կրնար որոշակի ըսել. որովհետեւ նախ՝ գեղեցիկ պատկերին տակն ամենեւին անուն չկայ կամ՝ չ՚երեւար։ Երկրորդ՝ ա՛յն պատկերը, զոր Կերլացիք կը համարին թէ քովերնին է, նաեւ — ինչպէս կ՚ըսուի — Անդվերբիայի մայր եկեղեցւոյն մէջ կեցած է։

Ռուպէնսի այս Քրիստոսի խաչէն վար առնուելու նշանաւոր նկարին՝ Վերլայ քաղաք հասնելուն պատմութիւնն այսպէս կ'աւանդէ զրոյցը։ Հայք դարուս սկիզբը, 1806ին, ազգայնոց երեւելիներէն պատգամաւորութիւն մը խրկեցին Փրանկիսկոս Ա. Կայսեր, այն առթիւ որ գաղղիական պատերազմներուն պատճառաւն արքունական գանձը շատ պարպուած էր. ու պատերազմի ծախքերուն օգնելու համար, հետերնին բաւական գումար մը տարին։ —

Ինքնակալը շատ հաճեցաւ ազգայնոց այս մտադրութեանն. եւ բերած պարգեւին դիմաց՝ բաղձաց իրենց յիշատակ մ'ընել. ուստի եւ ըսաւ որ բաղձանքնին յայտնեն։ Հայերն, որոնք Վիէննա շատ տեղ պտըտած ու տեսնելու արժանի բաները տեսած էին, Պելվէտէրի արքունի պատկերատունն ալ երթալով՝ հոն տեսած էին վերոյիշեալ պատկերն, որուն շատ հաւնեցան։ Երբ կայսեր՝ իրենց պարգեւ մ'ընել ուզելը լսեցին, պատասխանեցին. թէ կը փափաքէին ունենալ այն պատկերն իրենց մայր եկեղեցւոյն մատրանը մէջ, — որ դեռ ոչ խորան եւ ոչ պատկեր ունի, — զոր Պելվէտէր տեսան։ Կայսրն հաւանեցաւ այս բանիս, եւ հրաման տուաւ պատկերատան վերատեսչին որ Հայոց խնդրած պատկերն անոնց տայ. առանց գիտնալու կամ միտքն ունենալու, թէ ինչ պատկեր է՝ զոր Հայերը կը խնդրեն։ Վերատեսուչը լուսաւորեց, ինչպէս կ'ըսուի, զկայսրն, որ այն պատկերը մեծագին բան ու երեւելի մարդու

գործ է։ Փրանկիսկոս իմացաւ սխալը. բայց չուզեց տուած խօսքն ետ առնուլ։ Այսպէս, ազգայինք՝ պատկերը հետերնին առած, տուն դարձան, ու դրին վերոյիշեալ մատուռն. ուր կեցած է մինչեւ ցայսօր, ի զարմանս ամէն օտարաց ու բանէ հասկցողներուն։

Չենք կրնար ըսել թէ որչափ ստուգութիւն ունի այս պատմութիւնը։ Պատկերը գեղեցիկ է, ան ստոյգ է։ Բայց երբ Անդվէրբիայի մայր եկեղեցւոյն մէջ է, Կերլայ ալ չի կրնար ըլլալ։ Շատ հաւանական է՝ ըստ իս՝ որ եթէ Ռուպէնսին չէ ալ այս նկարը, անոր մէկ երեւելի աշկերտին, կամ՝ ճարտար ձեռքի մը գործքն ըլլայ՝ վարպետին սկզբնական օրինակէն գաղափարած։

## 6. Մայր եկեղեցւոյն հանդերձները։

Տարակոյս չկայ որ մեր պապերը հետերնին շատ թանկագին բաներ բերած են Հայաստանէն։ Բայց ասոնց մեծագոյն մասը մնացած է Խրիմ ու Լեհաստան, ուր — իրենց մեծ ճամբուն մէջ — դարեր անցուցած էին։ — Շատ քիչ է հիմակ թանկագին բաներուն քանակութիւնն ու այն եկեղեցական զգեստներուն թիւը, զորոնք մեր նախնիները մինչեւ Հայաքաղաք հետերնին բերին։ Բայց այս քիչերն — եթէ հասկցող մը զանոնք լաւ մը աչքէ անցընէ, կը գտնէ թէ — շատ պատուական բաներ են, որովհետեւ ըստ մեծի մասին հնդկական, պարսկական կամ թէ ըսենք Արեւելքի գործարաններէն ելած են։

Ասոնց նիւթը կամ յատակն ըստ մասին արծաթ, ըստ մասին ծանր կերպաս է։ Ասոնց վրայ արծաթով ոսկւով եւ կամ զանազան գոյն ունեցող մետաքսեղէնով բանուած ու ասղնագործած են՝ շատ աչքի զարնող երեւակայեալ թռչուններ, անօթներ, ծաղիկներ, կենդանիներու պատկերներ, շատ տեսակ անկիւնաւոր ձեւեր եւ այլն։

Կերլայ Հայաքաղքին մայր եկեղեցւոյն մէջ գտնուած հանդերձներուն մէկ մասն Արեւելեան է, մէկալն Արեւմտեան։ Վերջիններուն վրայ իտալական, գերմանական եւ ընդհանրապէս վերածնութեան (Renaissance) նշանները կ՚երեւան։ — —

Առաջիններուն կարգը կրնանք դասել․ Նախ․ այն ինը կամ տասը կտոր պատարագի զգեստներն որոնց յարակից կտորներն — ինչպէս՝ սկիհի կափարիչ, ուրար, բազկուրար եւ այլն — կը պակսին։ Ասոնք՝ թէպէտ ամէն օրուան գործածութեան դատապարտուած են, բայց աւելի ներքին արժէք ունին, քան այն տօնական օրերու առթիւ գործածուած գեղեցիկ ու փառաւոր հագուստները. վասն զի ճշմարտապէս Արեւելքէն եկած նիւթեր են։

Երկրորդ․ Ասոնց կարգը դասելու ենք, այն հին ու այլեւայլ գոյն ունեցող վակասներն, որոնց վրայ ոսկէզօծ արծաթի թելով բանուած են Յիսուսի, Մարեմայ եւ առաքելոց պատկերները։ Ամէն մէկ վակասին երկայնութիւնը 50—55 սանդիմէտր՝ իսկ բարձրութիւնը 12—15 սանդիմէտր է։

Աչքէ անցընենք ի մերձուստ աս Հանդերձի մնացորդները:

Երկուքին նիւթը կարմիր թաւիշ է: Մէկուն վրայ ոսկւով ու կանանչ մետաքսով ասղնագործած յաջորդ պատկերները կան. Մէջ տեղը՝ Յիսուս, իբրեւ քահանայապետ պատարագի զգեստով՝ գահու վրայ նստած. վրան աս վերնագրով. ՅՍ—ՔՍ: Աջ ու ձախ կեցած են տասուերկու առաքեալները՝ սարկաւագի զգեստով եւ ուրարով: Պատկերներուն վերեւը կեցած են առաքելոց անուններուն համառօտութիւնը: — Երկրորդը շատ կը նմանի նախընթացին. միայն թէ առաքելոց մարմիններուն ձեւն աւելի երկայն է եւ ուրար չունին: — Երրորդին ու չորրորդին յատակը մետաքս է: Մէկուն մէջտեղն ոսկեթել բանուած է Քրիստոսի յարութիւնը. դէպ ի ձախ՝ Աւետում. դէպ ի աջ՝ Վերափոխում: — Ուրիշի մը մէջտեղը կեցած է Քրիստոսի Տեառն մերոյ խաչելութիւնը. քովը Ս. Կոյսն ու Յովհաննէս Աւետարանիչ. դէպ ի ձախ՝ Աւետում. դէպ ի աջ՝ Մարիամ, Յիսուս մանուկն ու Ս. Յովսէփ: — Ինչպէս կերպարանքներն՝ անանկ ալ վերնագիրները շատ ողորմելի արուեստ կը ցուցընեն: Հին են. թերեւս ԺԵ—ԺԶ դարէն:

Երրորդ. Աս կարգին կը վերաբերի եպիսկոպոսական թագ մը, որուն նիւթը կամ յատակը մութ կարմիր թաւիշ է: Թագին մէկ կողմը մետաքսով ասղնագործած է Քրիստոս՝ խաչափայտին վրայ. աս վերնագրով. ՅՍ ՆԱԶՈՎՐԵՑԻ:

խաչին տակը կեցած են Ս. Կոյսն ու Ս. Յովհաննէս: Թագին մէկալ կողմը նոյնպէս մետաքսով բանուած է՝ յարուցեալ Քրիստոս: Ստորեւը կեցած է կիսաբաց դագաղը՝ քովը երկու հրեշտակով: Եպիսկոպոսական թագին վրայ սկզբնապէս տասը կտոր — անշուշտ պատուական — քարերուն միայն տեղը կեցած է:

Մտադրութեան արժանի են նաեւ շատ մը սրբիչներն ու կտաւները, որոնց վրայ ըստ մասին մետաքսով ու ըստ մասին արծաթի թելով բանուած զանազան գոյներով թռչուններ, անօթներ, տերեւներ եւ ուրիշ ուրուական ձեւեր կան: — —

Եկեղեցական զգեստուց մէկալ մասն, ինչպէս ըսինք՝ Արեւմտեան են: Զասոնք յայտնապէս հոս ստացած են ազգայինք:

Ասոնց մէջէն առաջին տեղը կը բռնէ եմիփորոն մը, որ ստուգիւ վարպետի գործ է: Շատ հաւանական է, որ զասիկայ Աւքսենտիոս Վրզարեան եպիսկոպոսն Հռոմէն ստացած ըլլայ, իր արդեանցը համար: Աս եմիփորոնն — իր արտաքին կերպարանքին նայելով ու լայնութիւնը նկատելով — թէպէտ նման է մեր արքեպիսկոպոսաց գործածած եմիփորոններուն, բայց ճշդիւ այն եմիփորոնն է (pallium), զոր լատինածէս արքեպիսկոպոսունք եւ կարդինալք կը գործածեն. այն տարբերութեամբ որ մեր յիշածը մեծ է, ասղնագործած է, բազմագունեան է. լայնութիւնը 30 սանդիմէդր, իսկ երկայնութիւնը՝ ուսերէն մինչեւ վար մէկ մէդր ու 15 սանդիմէդր

է․ — մինչդեռ լատինածէս պալլիումները հագիւ 6—8 սանդիմէդր լայնութիւն եւ առ առաւելն 50—60 սանդիմէդր երկայնութիւն ունին․ սպիտակ գունով են, վրան սեւ խաչերով․ ու քանի մը կրամ կը կշռեն միայն․ ուր որ մեր առջեւը կեցածը մէկ ու կէս քիլօյի չափ (ճշդիւ՝ մէկ քիլօ 28 տեգակրամ) է։

Ցատակը՝ արծաթի նիւթ է, ոսկիէ թելերով կարուած։ Առջեւը՝ ետեւն, ինչպէս նաեւ ուսերը՝ կան մետաքսով բանուած մարդու կերպարանքներ, հաւկըթաձեւ՝ ըստ մեծի մասին որթատունկի տերեւներու մէջ առնուած շրջանակներով։ Պատկերները յաջորդներն են․ Առջեւը՝ — վարէն սկսելով դէպ ի վեր — Ս․ Սեղբեստրոս՝ գլուխը քահանայապետական եռապատիկ թագով․ այս վերնագրով Ս․ ՍԵՂԲԵՍՏՐՈՍ․ քիչ մ'աւելի վեր՝ Ս․ ՅՈՎՀԱՆՆԷՍ (աւետ)․ ամէնէն վեր՝ ՄԱՅՐ ԱՍՏՈՒԾՈՅ։ — Ետեւի դին․ վերը՝ Յիսուս․ այս վերնագրով ՏԷՐ ԱԾ ՅՍ ՔՍ․ քիչ մ'աւելի վար՝ Ս․ ՂՈՒԿԱՍ․ ամէնէն ստորեւը Ս․ ԳՐԻԳՈՐ, ոսկւով բանուած՝ կարմիր գեղեցիկ շուրջառով, եպիսկոպոսական թագով եւ գաւազանով։ Եմիփորոնին աջ ուսին վրայ կեցած է Ս․ ՄԱՏԹԷՈՍ․ ձախին վրայ․ Ս․ ՄԱՐԿՈՍ։ Շատ արուեստակերտ շինուած գործքն, ինչպէս կը կարծեմ՝ ԺԷ․ դարու գործք կրնանք համարիլ։ Յայտնի է որ եւրոպական ձեռք գործած է վրան։

Մասնաւոր կերպով յիշուելու արժանի է այն՝ իրաւցընէ սքանչելի ու ներքին մեծ արժէք

ունեցող եկեղեցական հանդերձը՝ զոր Էլէոնորա կայսրուհին, Լէոբոլտոս Ա.ին ամուսինն ու Կարոլոս Զ.ին մայրը պարգեւած է Կերլայի եկեղեցւոյն, կամ թէ ըսենք այս եկեղեցւոյն արժանաւոր եպիսկոպոսին. Աւգս. Վօղարեան վարդապետին։

Հաստատութեամբ կրնանք ըսել, թէ Հայաքաղքի եկեղեցւոյն մէջ այս հանդերձանքէն աւելի պատուական ու թանկագին բան չկայ։ Աս զգեստին նիւթն, ինչպէս կ'երեւայ՝ սկզբնապէս եկեղեցական հանդերձի համար շինուած չէր. այլ աւելի թագաւորական մեծ վերնազգեստ մը, շուրջառ մը եւ կամ երկայն տօնաւոր հարսանեաց հանդերձ մըն էր. զոր յետոյ՝ յիշեալ կայսրուհին — ինչպէս ըսուեցաւ — Վօղարեանին պարգեւ ըրած է։

Թէ այս շուրջառը կամ հարսանեացզգեստը շատ մեծ պէտք է որ եղած ըլլայ, անկէ ալ կրնանք հետեւցընել, որ հիմակ ամբողջ եկեղեցական հանդերձանք մը կը կազմէ։ Մեծաւ մասամբ անկէ յօրինուած է աւագ խորանին առջեւ դրուած $4^{1}/_{2}$ մէդր երկայն գոգնոցը (antipendium), գրեթէ երեք մէդր (2 մէդր 80) լայնութեամբ ու մէկ մէդր եւ 30 սանդիմէդր երկայնութեամբ՝ մեծ շուրջառ մը. մէկ լատինածէս պատարագի զգեստ մը, ուրարով ու բազկուրարով. երկու մեծ թակալակ (dalmatica). եւ եպիսկոպոսական թագ մը։

Բանուածքին յատակը շատ ծանր ու թանկագին արծաթի նիւթ է։ Ասոր վրայ բանուած են

իբրեւ խորաքանդակ (en bas-relief) արծաթով, թրթուրով (chenille) եւ ոսկեզօծ արծաթի թելով՝ այլեւայլ սիրուն զարդարանքներէն զատ, ընտիր ու ազնիւ ճաշակով՝ տերեւներ, ծաղիկներ (կակաչ, վարդ, շուշան), անանուն զանազան կերպարանքներ, բերդեր՝ երեքական աշտարակով. երկու ոտից վրայ կայնած առիւծներ՝ գլուխնին թագով. երկ'երկու մատանի՝ իրարու մէջ անցուած. երփնագոյն թիթեռներ, պիծակներ, մեղուներ եւ այլն։ Շատ նշանաւոր է մանաւանդ ու աչքի զարնող՝ գերմանական կայսրութեան թագն ու ոսկեգեղմը։

Երեք աշտարակ ունեցող բերդերը, թագապսակ առիւծները, իրարու մէջ անցուած մատանիները, ոսկեգեղմը եւ մանաւանդ կայսերական թագը՝ յայտնապէս կը ցուցընեն, թէ այս նիւթը հասարակ մարդու ստացուածք չէր։ — Կայսերական թագին նշանակութիւնը յայտնի է։ Ոսկեգեղմն՝ այն միջոցին իշխանական վիճակ ու աստիճան կը ցուցընէր։ Բերդերը՝ Կաստիլիայի, առիւծները՝ Արակոնիայի զինանշաններն են։ (Էլէոնորա, իբրեւ Կարոլոս Զ.ին մայրը, սպանիական իշխանուհի էր)։ Կակաչը, շուշանը, պիծակը, թիթեռնիկներն եւ այլն, թերեւս մէյ մէկ գաւառի նշաններն էին։

Անասնիկները, ծաղիկները, առիւծները, մէկ խօսքով ամէն զարդ՝ անանկ գեղեցիկ, անանկ սիրուն ու խնամով բանուած են, գոյներն անանկ ճաշակով քովէ քով բերուած՝ որ մարդ չի կրնար կշտանալ զանոնք նկատելով։ Այս ստու-

գիւ սքանչելի գործուածքը խուզարկու աչքը ժամերով դիտելէն ետեւ ալ, զարմանալու միշտ նորանոր բաներ կը գտնայ վրան։

Թէպէտ — ինչպէս վերն ըսինք — նիւթը մեծ է, այսու ամենայնիւ պէտք ենք ենթադրել, որ ամբողջը՝ շատ մը — 55 սանդիմէդր երկայն ու 30 սանդիմէդր լայն — կտորներէ կազմուած է. եւ երկու ասանկ կտոր՝ կը կացուցանեն ամբողջ մը, որուն մէջ պարունակուած են բոլոր վերն ըսուած ծաղիկները, անօթները, պսակները, մատանիները, անասնիկները, առիւծներն, ոսկեգեղմներն եւ ուրիշ զարդարանքները։

## 7. Արմէնիա ամսաթերթը։

Շարունակ ջանաց ու կը ջանայ Հայաքաղաք, որ երկարատեւ գաղթականութեամբ տկարացած միութիւնը նորէն կենդանանայ ազգային սրտին մէջ ու լեզուին վրայ։

Արդիւնքն իրօք ցուցուց որ այս ճիգը բոլորովին անօգուտ չէ։ Ետեւէ ետեւ հաստատուեցան Կերլայի մէջ բարեբարական հիմնարկութիւններ. եւ նախ՝ ազգային անկելանոց մը, ուր չքաւոր ծերացեալք, որք եւ կանայք պատրաստ իջեւան կը գտնեն վերջին օրերնին անդորրութեան ու հանգստութեան մէջ անցընելու։ — Կանգնուեցաւ ասոր վրայ անմոռաց յիշատակաց արժանի աւագերէց Լուքաչեան ժողովրդապետէն Ս. Գրիգոր Լուսաւորչի որբանոցը՝ մանչտղոց համար։ Ասոր նպատակն է՝ աղքատ հայ

տղոց հոգեւոր ու մարմնաւոր պիտոյքն հոգալ, ու ազգին բարեկիրթ, պիտանացու եւ արժանաւոր անդամներ հասցնել: Ասկէ նուազ արդիւնաւոր չէ ուրիշ ազգայնոյ մ'ազնուական մտածմունքն, որ աղջկանց համար ալ որբանոցի մը հիմ դրուի՝ բոլորովին յար եւ նման մանչ տղոց որբանոցին: Այս վախճանաւ Հայաքաղաքին մեծագումար դրամագլուխ մը պարգեւած է:

Այս արտաքին հոգացողութիւնները գործադրուելու ատեն, չմոռցուեցաւ մէկալ կողմնէ մտածել՝ նաեւ մտաւոր զարգացման նոր գրգիռներ գտնելու եւ հայ ժողովրդն՝ իրեն պապերուն օրինակաւը վառելու: Տղաք՝ դպրոցաց մէջ պարտաւորեցան հայ լեզուն սորվիլ: Մեծ ծախքեր ընելով 1889ին դրոշմեցին "Եկեղեցական Երգարան" մը: Ասոր մէջ Ձայնաւոր պատարագ եւ հին ու նոր երգերու եւ տաղերու բազմութիւն մը կայ՝ մէկ կողմը հայերէն, մէկալ կողմը՝ եւրոպական տառերով: Ասոր նպատակն, ինչպէս յառաջաբանէն կը կարդանք. "Երկին է. նախ՝ զի կացցեն մնասցեն ոչ միայն ի սրտի այլ եւ ի շրթունս ազգայնոցս — եւ այն՝ յաղյապա ժամանակս — երգք եւ տաղք, զորս ի նախնեաց եւ ի պապից մերոց ընկալաք. Երկրորդ անգամ՝ զի նաեւ հասարակ ժողովուրդն եւ օտարազգիք եւս կարասցեն ունել մասն յաստուածային պաշտաման անդ եւ արարողութեան Հայաստանեայցս եկեղեցւոյ. ի կիր արկանելով զայս երգարան":

Բայց ամէնէն մեծ ձեռնարկութիւնն եղաւ, այն գոյութեան արժանի գործքն, որ ժողովրդեան համար ազգային ամսաթերթ մը հրատարակուի։ Աս բանիս բնականապէս հունգարացիք ամենայն ճգամբ ընդդիմացան։ Լրագիրք՝ բազմաթիւ յօդուածներ սկսան գրել ընդդէմ ծնանելի ամսաթերթին։ Նոր գաղափարն սկսան պարսաւել. ու ջանացին ցուցընել որ ձեռնարկութիւնն անկարելի է։ Ասով՝ ինչպէս դիւրաւ կրնանք հետեւցընել, ազգայնոցմէ ոմանք թուլցան։ Սակայն ոչ հակառակութիւնք, ոչ ընդդիմութիւնք, ոչ լրագիրք, ոչ խօսք, ոչ յորդոր կրցան ձեռնարկող ազգայնոց գաղափարը փոխել եւ հաստատուն կամքը տկարացընել։ Ի մեծ զարմանս ամենեցուն՝ 1887 Յունուար մէկին լոյս տեսաւ Արմէնիա հունգարալեզու՝ բայց բովանդակութեամբ զուտ հայ ամսաթերթը։

Նոր հանդիսին վախճանն էր՝ ընդհանրապէս բոլոր աշխարհի Հայոց, եւ ի մասնաւորի Աւստրիոյ-Հունգարական պետութեան մէջ սփռուած ազգայնոց ծանօթացընել հայ ազգին վաղեմի կեանքը, մատենագրութիւնը, վաճառականութիւնը... դարձեալ զբաղիլ իր հին յիշատակարաններովն ու զանազան երկիրներուն մէջ կրած անուանց փոփոխութիւններովը։ Ասկից զատ խուզարկել ու ամփոփել այլեւայլ երկիրներն եղած հրապարակական, ինչպէս նաեւ մասնաւոր տեղերը գտնուած ազգային հին ճարտարապետութիւնը, յիշատակարան-

ները, զանազան դարուց ձեռագիրներն եւ այլն։ Բոլորովին դուրս ձգելով քաղաքական մասը։

“Հայ ազգը հին ժամանակին ամենէն կըրթեալ ազգերէն մէկն է„։ Այս խօսքերով կ'ողջունէ Կերլա-Հայաքաղաքը հրատարակուած Արմէնիա հունգարերէն ամսաթերթն իւր բաժանորդները։ — Ու իրօք․ “Եւրոպական համբաւ ունեցող օտար գիտնականք, որոնք մերձաւորապէս զբաղած են հին Հայոց մտաւոր մշակութեան ու զարգացմանը հետ, եւ տեղեակ են մէկ դիէն անոր պատմութեան ու արգասաւորութեան, եւ մտադիր են եղած մէկալ դիէն անոր ներկայ կրթութեանն ու յառաջադիմական շարժումներուն, կը հարկադրին ճանչնալու թէ հայ մատենագրութիւնն ոչ միայն փառաւոր անցեալ եւ ծաղկեալ ներկայ, այլ նաեւ յուսալից ապագայ մ'ունի իւր առջեւը։„

“Պիտի հաղորդենք — այսպէս կը շարունակէ Արմէնիա իւր առաջին թուոյն մէջ, — մասնաւորապէս, ամենուն համար հետաքրքրական հատուածներ՝ հայ երկրին ու ազգին, ինչպէս նաեւ տեղացի (Դրանսիլուանիոյ) Հայոց հին ու նորագոյն ժամանակաց վիճակին վրայ։ Մեր հանդէսն ի մէջ պիտի բերէ հայ մատենագիրներն՝ հունգարերէն թարգմանութեամբ․ պիտի բովանդակէ հնախօսական, մատենագրական, եկեղեցական — պատմական, ազգագրական, երկրախօսական յօդուածներ։ Միով բանիւ՝ կարելի եղածին չափ պիտի ջանանք ընտրել

*առնուլ այն առաղձէն՝ որ այս վախճանաւ մեր կարգադրութեան տակ դրուած է։„*

*Թերթին՝ ըստ ամենայն մասանց, հաւատարիմ մնաց իւր դրած վախճանին։ — Ինչ որ խոստացաւ, ան կատարեց ալ։ Ինը տարւան շրջանին մէջ՝ խոստացածին համեմատ իրարու յաջորդեցին, մին քան զմիւսն գերազանցող հատուածներ՝ Հայոց բարոյական կենաց վրայ։ Բերաւ շատ մը յօդուածներ Հայ երկրին ու ժողովրդեան նախնական եւ նորագոյն ժամանակին վիճակին, մատենագրութեան, հնախօսութեան, լեզուագիտութեան, ազգային ու եկեղեցական պատմութեան, ազգագրութեան, ազգաբանութեան, կենցաղագրութեան, կենսագրութեան, ճարտարապետութեան, արուեստի, վաճառականութեան վրայ։ Կը գտնենք այս խնամով խմբագրուած թերթին մէջ՝ ազգային սովորութեանց, լրագրութեան, բանաստեղծութեան, թատերախաղութեան, ազգային ժողովրդական երգոց, առակներու, առասպելներու, ճամբորդութեանց, գիտնական ընկերութեանց, ուսումնարանաց, գիտութեան, հրապարակական ու առանձինն յիշատակարանաց, նաեւ Հայ հաշուեկալութեան, խոհանոցին ու կերակրոց վրայ եւ այլն, բազմաթիւ գիտնական ու ժողովրդական տեղեկութիւններ։*

*Ամսաթերթին գործակիցներուն թիւը մինչեւ տարւոյս ընթացքը հարիւր հոգի է։ Կը գտնենք անոնց մէջ եկեղեցական, քաղաքական ու զինուորական բարձրագոյն պաշտօնատէրներ,*

վերատեսուչներ, պատգամաւորներ, բժիշկներ, ուսուցչապետներ եւ ուսուցիչներ, լրագրապետներ, փաստաբաններ, իրաւագէտներ, հռչակաւոր մատենագիրներ, վաճառականներ . . . նաեւ ուսումնասէր օրիորդներ, վարժապետուհիներ եւ ուրիշ տիկնայք. որոնք իրենց ճիւղին վերաբերեալ ծանօթութիւններովը կը հարստացընեն ամսաթերթը:

Թէ որչափ ընդունելութիւն գտաւ, մանաւանդ Հունգարացւոց ազգին առջեւ այս բոլորովին նոր տեսակ յուզարկութեան ճիւղը՝ անկից ալ կ'երեւայ, որ հունգարական թերթերը լի են գովասանքներով Արմէնիայի բերած յօդուածներուն վրայ: Եւ ամենէն զարմանալին ան է, որ այն լրագիրներն, որ ի սկզբան պարսաւելէն ու վար զարնելէն զատ բան գրել չէին գիտեր նոր ձեռնարկութեան վրայ՝ հիմակ ամենէն մեծ գովասանքներ տուողներն են: Ու ոչ միայն ամսաթերթերէն ու շաբաթաթերթերէն շատերն, այլ նաեւ օրաթերթերը շատ հեղ՝ բառ առ բառ կ'օրինակեն ամսաթերթին յօդուածները. լիաբերան գովեստներ տալով՝ նորածնունդ հանդիսին ու միանգամայն յօդուածագիրներուն:[1]

---

1 Վերատեսչութիւնն ու խմբագրութիւնն ուզեց որ ամսաթերթը համառօտելով հայերէն լեզուով ալ հրատարակուի. այնպիսի կերպով մը, որ երկու ամիսը մէյ մը՝ դուրս տայ թերթ մը, բովանդակելով այն գլխաւոր յօդուածներու համառօտութիւնը, զորոնք կը պարունակէ իր մէջը Արմէնիա ամսաթերթին երկու ամսուան շրջանին չորս թերթը: Որ յօդուածներն ըլլան գլխաւորաբար այնպիսի յօդուածներու համառօտութիւններ՝ որոնք աւելի արեւմտեան եւ ի մասնաւորի Լեհաստանի, Տրանսիլուա-

## 8. Այլեւայլ տեղական ովորութիւններ:

Օրինակ առնելու միաբանութիւն ու համակամութիւն կը տիրէ Կերլայ հայաքաղաքին եկեղեցական վարչութեան ու աշխարհական իշխանութեան մէջ։ Այսպէս էր այս բանս ի սկզբանէ հետէ։ Այս միաբանութիւնն ու համակամութիւնն է գլխաւոր պատճառն որ քաղաքն՝ իր հիմնարկութենէն գրեթէ անմիջապէս ետքը՝ մեծապէս ծաղկելու սկսաւ։ — Եկեղեցական մըն էր — Վրզարեան եպիսկոպոս — որ քաղքին հիմը դրաւ. եկեղեցական մըն էր որ յատակագիծը շինեց։ Անկից զատ, այլեւայլ առիթներու մէջ՝ մեծ ծառայութիւններ մատուցին եկեղեցականք, քաղքին։ — Ասոր փոխարէն՝ քաղքին գանձարանէն կ'ընդունէին ու կ'ընդունին միշտ եկեղեցականք իրենց եկամուտն. ու քաղաքային վարչութիւնն է պաշտպան ու խնամակալ կաթողիկէ հայ եկեղեցւոյն մինչեւ ցայսօր։

Կրկին իշխանութիւնը միշտ ջանաց, որ այն հարկաւոր համակամութիւնն ու միաբանութեան հոգին մէջերնին տեւողական կերպով մնայ։ —

---

նիոյ եւ Հունգարիոյ ազգային յարաբերութիւններու վրայ կը խորհրդածեն. եւ այս երկիրներուն հետ կը զբաղին։ "Ու Անիկայ անոր համար աւելի կը փափագինք ընելու, — կ'ըսէ իր բաժանագրութեան հրաւիրին մէջ — վասն զի ամենուն ծանօթ է, որ ընդհանուր ազգին վիճակին ու յարաբերութեանցը վրայօք թէ արեւելքի (Կոստ. Պոլսի, Տփղիսի, Զմիւռնիոյ եւ այլն) եւ թէ արեւմուտքի (Վիեննայի, Վենետկոյ, Բէդէրսպուրկի, Մարսէյլի, Լոնտոնի եւ այլն) լրագիրներն ու թերթերը ընդարձակ յօդուածներ ու բազմաթիւ գիտնական տեղեկութիւններ կը պարունակեն"։ — Բայց այս գաղափարն օդ ելաւ, բաժանագրուող չգտնուելուն համար։

Լաւ համակամութիւնը տածելու կը ծառայէ այն նմանելու արժանի հին սովորութիւնը, զոր մեր պապերէն ընդունեցանք. այսինքն թէ՝ Ամէն տարի, Քրիստոսի ծննդեան օրը, քաղաքապետն իր պաշտօնապետներովն ու երդուեալներովը՝ ժողովրդապետին կ'երթայ շնորհաւոր ծնունդ բարեմաղթելու: Ասոր փոխարէն, Նոր տարւոյն օրը՝ կը տանի ժողովրդապետը բոլոր կղերը, ուսուցիչներն ու վարպետները քաղաքապետին, շնորհաւոր Նոր տարի բարեմաղթելու:

Որպէս զի ընթերցողը գաղափար մ'ունենայ, Կերլայ հայաքաղքին մէջ բնակող ազգայնոց արտաքին որպիսութեանն ու տարազին վրայ, կը ներկայացընենք հոս՝ այլեւայլ աստիճանի էրիկ մարդիկներու, ինչպէս նաեւ կանանց սեռին մէջէն զանազան վիճակ ունեցող անձինքներու պատկերները: Գիտեն անտարակոյս ընթերցողք, որ Դրանսիլուանիոյ ազգայինք բոլորովին եւրոպական տարազ կը հագնին: — Մեր ներկայացուցած պատկերներն ամէնն ալ Հայաքաղքի մէջ բնակող քաջածանօթ անձինքներուն լուսանկարէն առնուած են: —

Կերլայ քաղքին մէջ ապրիլն ու բնակարանները աժան են: Հոն՝ քիչ եկամուտ ու ռոճիկ ունեցող պաշտօնատէրն եւ արուեստաւորը կամ վաճառականը շատ աւելի դիւրութեամբ կրնայ ապրիլ՝ քան ուրիշ տեղ: Աս բանս անկից ալ կ'երեւայ, թէ օտարն՝ որ մէկ անգամ մը Կերլայ քաղաքը դրած է իր բնակութիւնն, անկէ սիրով չի բաժնուիր. ու եթէ հարկ ըլլայ

որ պաշտօնատէր մը ուրիշ տեղ փոխադրուի, շատ դժուարաւ կը հեռանայ Հայաքաղքէն: — Այնպիսիներ ալ սակաւաթիւ չեն, որոնք — եթէ պաշտօնէն վերջնական կերպով կը հրա-



ԵՐԿՐԱՏԷՐ ՀԱՅԱՔԱՂԱՑԻ

ժարին ու ռոճիկ կը մնեն — քաղաք կը վերադառնան: — Բաց ասկէ՝ մինչդեռ ուրիշ քաղաքներու մէջ 40—50 ու ալ աւելի հարիւր-չեայ յաւելեալ տուրք կը դրուի ժողովրդեան

վրայ, այս քաղքիս մէջ եւ ոչ լումայ մը դրուած է մինչեւ ցայսօր։ Ամէն հասարակաց ելքերը՝ քաղքին արկղէն կ'ելլեն։ — Աս բանս պատե-րուն շնորհակալ ըլլալու են ազգայինք, որոնք իրենց թոռներուն համար այնպիսի վիճակ մը ստեղծեցին, անանկ ապահով եկամուտներ թո-ղուցին, որ հանգստեամբ կարենան ապրիլ ու իրենց ապագան ապահովցընել։

*

Հայաքաղքին մէկ յատկացեալ սովորու-թիւն մըն է՝ Աւետիս տօլըն, որ հնուցմէ մնացած բան է. եւ անտարակոյս համապատասխանող՝ արեւելեայց՝ Ժամ կանչըլըն սովորութեան։ — Պզտիկ աղքատ տղաք, ծննդեան խթման իրի-կունն, ինչպէս նաեւ ծննդեան օրն առտու կա-նուխ՝ տնէ տուն կը քալեն "Աւետիս կարդա-լու„. եւ հոն — հիմակ հունգարերէն — այլ-եւայլ ծննդեան երգեր կ'երգեն։ — Ասկէ քանի մը տարի յառաջ այս երգերը հայերէն էին։

Ահա այսպիսի երգերէն մէկուն բեկորը. "Ցիսուս կու լայ. փալուլ չի գայ. փեշը կըտրած, նայ փալուլած„ (այսինքն. Ցիսուս մանկիկը կու լայ, վասն զի զինք ծածկելու խանձարուր չունի։ Սուրբ Մայրը կը կտրէ իր հանդերձէն ու զինք կը փալուլէ. այսինքն՝ կը պարուրէ։) Ծննդեան աւետիսները հասարակօրէն այս վերջաբանով կը լմննային. "Տուեցէք զպանս, որ երթամ բանս„։

*

Ազգայնոց մէջէն՝ գուցէ ոչ ոք կը գտնուի — անկողին պառկած հիւանդները դուրս առնելով — որ Աւագ ուրբաթ ու շաբաթ օրերը չերթայ Քրիստոսի Տեառն մերոյ գերեզմանին. ու հոն ծնկան վրայ չկատարէ իր ջերմեռանդութիւնն. ու չէ՛ թէ մէկ հեղ այլ շատ հեղ “ժամէ ժամ” չերթայ։

*

Հայազգի կնիկն արդէն Աւագ շաբաթ իրիկուն կը պատրաստէ աղուոր կողով մը։ Մէջը կը տեղաւորէ գաղան, փասքան, ամէնէն գեղեցիկ խալաճը։ Ասոնց քով կը դնէ եփած ապուխտ մը, խոզի միս, մէկ երկու կարմիր հաւկիթ, խորոված գառին միս, գինի, աղ եւ այլն։ Զատկին՝ առտու կանուխ աղախինը եկեղեցի կը տանի — ո՛չ հասարակ սփռոցով մը — ծածկուած կողովն․ եւ հոն ծառայք ու աղախինք կարգաւ ոտքի վրայ կը կենան. կողովն առջեւնին։ Առաւօտեան պատարագը լմըննալէն ետեւ՝ տիրացուն, ձեռքը բուրվառն ու մշտիկը, քահանային առջեւ կ'անցնի, որ կ'օրհնէ, երկայն կարգի մէջ շարուած կեցած կողովներուն բովանդակութիւնը։

*

Ազգայինն, եթէ անկարելի չէ, հասարակօրէն թափօրէն ետ չի մնար։ Ամէնէն աւելի փառաւոր են Զատկի, Ս. Գրիգորի Լուսաւորչի ու Մարմնոյ եւ արեան թափօրները։ Եթէ օդը կը ներէ, թափօրը հասարակօրէն եկեղեցւոյն դիմացն եղող մեծ հրապարակին մէջ կը կատարուի։ Այս միջոցին կը տանին վաճառականք ու

խաղախորդներն իրենց արտօնացեալ դրօշներն ալ: — Քրիստոսի մարմնոյ եւ արեան տօնին օրը՝ չորս զանազան տեղ, չորս լեզուաւ Աւետարան կը կարդացուի. եւ ամէն անգամուն ճաճանչով օր-



ԿԵՐԼԱՑԻ ՀԱՅ ՎԱՃԱՌԱԿԱՆ

հնութիւն կը տրուի: Չորրորդ աւետարանէն ետեւ, չէ թէ հասարակ օրհնութիւնը կը տրուի, այլ աւագերէցն՝ նախ երեք անգամ, արեւելեան եղանակաւ մը՝ Ամենակարողին այս խնդրուածքը

կ'ուղղէ. “Ի ժանտամահէ, ի սովէ եւ ի հրոյ եւ ի պատերազմէ ազատեա զմեզ Տէր.„ զոր նոյն եղանակաւ եւ նոյնչափ անգամ բոլոր ժողովուրդը կը կրկնէ։ Ասոր վրայ օրհնութիւն կը տրուի լռութեամբ։

## Ա. Ամուսնութիւն։

Այլեւայլ տեղուանք, այլեւայլ են սովորութիւններն ամէն բանի՝ բայց մանաւանդ ամուսնութեան դաշինքին ու արարողութեան մէջ։ — Դրանսիլուանիոյ եւ ի մասնաւորի Կերլայի Հայոց մէջ ամուսնութեան արարողութիւնը՝ հասարակօրէն յաջորդ կերպով կ'ըլլայ։

Երբ երիտասարդն իրեն ապագայ հարսն ընտրած է, փափաքն անմիջապէս իր ծնողացը կը ծանուցանէ։ Ասոնք — հասարակօրէն — ընդդիմութիւն մը չեն ունենար ընտրութեան մէջ։ — Բայց երբեմն ծնողք կը յորդորեն իրենց զաւկըներն, որ ամուսնանան։ Տես տղաս — կ'ըսէ հայրը — մայրդ ծեր է, ա՛լ տնային գործքերը չի կրնար կատարել լմնցընել։ Աղէկ կ'ըլլայ թէ որ ամուսնանաս։ Ի՞նչ պիտի ընես առանձինն թէ որ գլուխնիս վար դնենք։ Բեր լաւ կնիկ մը տունը . . .։ Ես ալ կրնայի քեզի յարմար աղջիկ մը յանձնել . . .։ Եթէ երիտասարդը կը հաճի այն օրիորդին, զոր ծնողք իրեն կ'առաջարկեն, այն ատեն — ծածուկ կերպով, ձեռքի տակէն — մտերիմ անձի մը ձեռօք կը տեղեկանան, որ արդեօք պիտի տա՞ն զօրիորդը. եւ թէ արդեօք միտեա՞լ է ասիկայ իրենց որ-

դուրս ետեւէն երթալու: Ի դիպուածի որ ծնողք դրական պատասխան տան, կ'որոշեն Նշանտուքի օրը:



ՄԻՋԱԿ ԱՍՏԻՃԱՆԻ ՕՐԻՈՐԴ

կան տներ, որոնց մէջ այս Հանդիսութիւնը կէս օր կը կատարեն: Կը ստիպեն զփեսան, որ իրեններովը մէկտեղ՝ Հարսին ծնողացը տունը մնայ սեղանի: — Բայց Նշանտուքն ըստ

մեծի մասին իրիկուն կը կատարուի։ փեսան իր
հօրը՝ եղբօրն եւ ուրիշ էրիկ մարդիկներու հետ
հարսին տունը կ'երթայ։ Հոս, խնդրողը — վստա-
հացեալ անձ մը, (փեսային բարեկամը, կամ
քաղքին առաջիններէն մէկը) — ճառախօսու-
թեամբ մը կը խնդրէ օրիորդին ձեռքը։ Ասոր
վրայ՝ յանուն ծնողաց, տուողը — նոյնպէս երեւ-
ելիներէն մէկը — կը պատասխանէ. ու հաւ-
անութիւնը կու տայ, որ նշանտուքը կատարուի.
ու կը հրաւիրէ զփեսան, որ աներեւոյթ եղած
հարսը փնտռէ։ Ասիկայ իրեն յանձնուած պաշ-
տօնը սիրով կը կատարէ. եւ զօրիորդն — որ հա-
սարակօրէն կողմնակի սենեկին մէջ պահուըտած
կ'ըլլայ — հարսնեւակներու առջեւը կը տանի։
Ասոր վրայ անմիջապէս մատանիները կը փոխեն.
փեսաւէրներն, ոտք կ'ելլեն եւ հանդիսակիցնե-
րուն խմորեղէն, անուշեղէն ու ըմպելիք կը մա-
տակարարեն։

Նշանտուքի միջոցը երկայն չի տեւեր։ Այս
ժամանակի միջոցին մէջ, փեսան իր հարսը՝ գոնէ
անգամ մը՝ սեղանի պէտք է որ հրաւիրէ։ Եթէ
այս չ'ըլլար, այն ժամանակ՝ գէթ կարճ տեսու-
թիւն մ'ընելու եւ ճանչցուելու համար՝ ծնո-
ղացը տունը պիտի տանի զհարսը։ Աս ժամանակ,
փեսային մայրը՝ օրիորդին պարգեւ մը կու տայ,
ըստ իր կարողութեանը։ Պարգեւն ընդհանրա-
պէս գոհարեղէն, ոսկեղէն, եւ ոսկիէ ստակ է։
— Ամուսնութենէն օր մը յառաջ խօսեալք
մէկտեղ եկեղեցի կ'երթան, կը խոստովանին ու
կը հաղորդուին։

Ասկէ 40—50 տարի յառաջ, իրիկուան դէմ կը տանէին փեսային տնէն զամբիւղը՝ Հարսին: Շատերը կողովին կ'ընկերանային. Նաեւ երաժշտութեամբ կը տանէին երբեմն զամբիւղը՝



ՀԱՅԱՔԱՂԱՔԱՑԻ ՕՐԻՈՐԴ

լի ամէն տեսակ պարգեւներով: Փեսային խրկած պարգեւները կողովէն պարպելէն ետեւ, Հարսն իր պարգեւները կը շարէր անոր մէջ: Յետոյ սեղանի կը նստէին եկածները: Հարսին խրկած

պարգեւները կը կացուցանէին՝ փեսայի շապիկ, փողպատ, թաշկինակ, անուշեղէն եւ այլն: — Շատ անհամբերութեամբ կը սպասուէր կողովին ետ դառնալուն. վասն զի, ինչպէս փեսային մայրը սովորաբար կ՚ըսէր. Տղամս, շատ ատեն պէտք է, որ ամէն պարգեւներդ դուրս քաղեն, մէկիկ մէկիկ զննեն ու անկից ետքն իրենց պարգեւները դնեն: — Ի դիպուածի որ օրիորդը չուզենար երիտասարդին եռեւէն երթալ, այն ատեն կողովը պարապ ետ կը խրկուէր: Եւ ասիկայ նշան էր ու պատճառ՝ նշանտուքին աւրուելուն եւ ամուսնութեան օդն ելլելուն:

Հին ատենները, քահանան փեսային տունը կ՚երթար, եւ հոն փեսային զգեստը կ՚օրհնէր: Աս զգեստով կ՚երթար երիտասարդն եկեղեցին: Աս սովորութիւնը հիմակ վերցուած է:

Ամուսնութեան օրհնութիւնն ոմանք առտու կ՚ընդունին, պատարագ մատուցանել տալով ամուսնացելոց համար: Աս ըլլալէն ետեւ տուն եկող հրաւիրեալներուն նախաճաշ կը մատուցուի: — Բայց ամուսնական օրհնութիւնն ըստ մեծի մասին, կէս օրէն ետեւ ժամը 4—5ին կը կատարուի:

Երբ բանբերներն այն լուրը կը բերեն թէ հարսին տունն ամէն բան պատրաստ է՝ փեսան իրեններովը հարսին կ՚երթայ: Հոս խնդրող միջնորդին աչուըները՝ զտուողը կը փնտռեն. որուն քանի մը պատշաճ խօսք ուղղելէն ետեւ, կը խնդրէ տան յանձնակատարն, որ խօսքը կատարէ, զոր ըրած էր նշանտուքի ատեն. որով-

*հետեւ փեսան եկած է. եւ Աստուծոյ խորանին առջեւ տանիլ կ'ուզէ իր հարսն, որպէս զի հոն՝ իւր պաշտօնէին օրհնութիւնն ընդունի եւ զիրենք իրարու հետ կապէ։ — Երբ — հարսնատուն իր հաւանութիւնը տալով — փեսան իւր պահուըտած հարսը գտնելէն ետեւ, երկուքն ալ ներս կը մտնեն, զիրենք կեցցէի աղաղակներով կ'ընդունին։ Ասոր վրայ հարսն իր ծնողացմէ, եղբարցմէ, քոյրերէն եւ ազգականներէն հրաժեշտ առնելէն ետեւ, փեսաւէրք — եթէ հարսանիքը կէս օրէն յառաջ է — ըմպելիք (օշարակ, քաղցրօղի), անուշեղէն կը մատակարարեն։ Իսկ եթէ հարսնիքը կէս օրէն ետքն է, այն ատեն — օշարակի տեղ — Դոքայի գինի կը մատռուակեն հրաւիրելոց։*

*Ան ըլլալէն ետեւ զոյգ զոյգ եկեղեցի կ'երթան։ Ամէնէն յառաջ կ'երթայ հարսն՝ հարսնեհօր հետ. երկրորդն է փեսան՝ հարսնեմօր հետ։ Ասկէ ետքը կու գան փեսաւէրք ու հարսնաւէրք։ Զուն կը վերջացընեն հրաւիրեալք։*

*Զուն եկեղեցւոյն մէջտեղէն կարգաւ յառաջ կ'երթայ։ Առաջին աթոռներուն մէջ կը նստին, դէպ ի աջ՝ էրիկ մարդիկ, գլուխնին փեսան. դէպ ի ձախ՝ կանայք, առաջին տեղին՝ հարսը։ Շուրջառաւոր քահանան խորանին վրայ կ'աղօթէ։ Ասոր վրայ կուգայ լուսարարն ու ձեռքը արծաթէ սկահակով մը կը խնդրէ հարսէն ու փեսայէն՝ մատնիները, եւ խորանին վրայ կը տանի քահանային, որպէս զի զանոնք օրհնէ։ — Մատնիներն օրհնուելէն ետեւ, փեսան՝*

զհարսն իր աջ դին առած՝ խորանին ստորոտը դէպ ի ձախ կողմը կը տանի, կը կենայ։ Ասոնց ետեւէն կ՚երթան անընդմիջապէս հարսնեհայ-



ԱԶՆՈՒԱԿԱՆ ՏԻԿԻՆ

րը՝ հարսնեմօր հետ. ասկից ետքը փեսաւէրը, հարսնաւէրը ու հրաւիրեալք։ Երբ ամէնք խորանին դիմացն են, քահանան կը դառնայ ու պսակին արարողութիւնը կը կատարէ։

Հարսանեաց առիթներու՝ եկեղեցին հետաքրքիրներով միշտ լեցուն կ'ըլլայ։ Երբ փեսան եկեղեցիէն իւր հարսին հետ դուրս կու գայ, եկեղեցւոյն մեծ դրան առջեւ գտնուող հրապարակին մէջ խուռն բազմութեամբ դիզուած ժողովրդեան՝ հին սովորութեան համեմատ, քանի մ'ափ արծաթէ ու պղնձէ մանր ստակ կը նետէ։ — Սովորութիւն է, որ այս առթիւ, չկարգուած մանչ տղուն կամ օրիորդին այս բարեմաղթութիւնը կ'ընեն. "Տարոսը գլխուդ.„ այսինքն, տար այդպէս Աստուած գլխուդ։ Իսկ հայր ու մայր այսպէս կ'ողջունեն մէկը զմէկ. "Տարոսը զաւկընուդ"։

Տուն հասնող հարսանեաց չուն երաժըշտութեամբ կ'ընդունուի։ Դրան առջեւը կը սպասէ փեսային մայրն։ Երբ նոր ամուսինք հոն կը հասնին, ձեռքը աղ ու հաց առած՝ այս խօսքերը կ'ըսէ հարսին. "Բաժնուեցար ծնողացդ տնէն. այս վայրկենէն սկսած՝ մեր յարկը քու տունդ է։ Հոս ալ սիրող սրտերու պիտի հանդիպիս, որոնք հոգ պիտի տանին քու ամէն պիտոյքներուդ։ Ասկից ետքը մեզի հետ պիտի ըլլաս. ու նոյն հացը պիտի ուտես։ Աստուած օրհնէ զձեզ իր երկու բազուկներովը։„ — —

Դրանսիլուանիոյ Հայոց մէջ հարսանեաց օրհնութիւնն ըստ մասին ազգային, ըստ մասին լատինական ծիսէն առնուած է։ — Քահանան, մատանիներն օրհնելէն ետեւ կը հարցընէ նախ փեսային ու ետքէն հարսին անունն. ու իրենցմէ պատասխան ընդունելէն ետեւ՝ կ'օրհնէ իրենց



ԱԶՆՈՒԱԶԱՐՄ ՏԻԿԻՆ, ԻՐ ՈՐԴԻՈՎԸ

ամուսնութիւնը։ Ցետոյ ժողովուրդը վկայ կը կոչէ, որ տեսնեն թէ այս ամուսնութիւնն օրինաւորապէս եղած է։

Աւելի պայծառ գաղափար ունենալու համար, կ'ընդօրինակեմ այս բանիս վերաբերեալ քանի մը կտոր Դրանսիլուանիոյ Հայոց գործածած Մաշտոցէն. որովհետեւ որչափ գիտեմ, թէ էջմիածնական ու թէ կաթողիկեայ արեւելեան ազգայնոց արարողութենէն ըստ բաւականի կը տարբերի։[1]

---

[1] Ինչպէս յայտնի է, Դրանսիլուանիոյ ազգայինք իրենց մաշտոցն ընդունեցան Լեհաստանի Հայոցմէ. զոր՝ ըստ մասին յօրինած ու ըստ մասին թարգմանած է Ստեփան Ռօշքա. եւ յետոյ Յով Հ. Աւկուստինովիչ՝ Լեմպէրկի արքեպիսկոպոսն, 1728ին հրամանագրովը՝ Լեհաստանի Հայոց գործածելու հրամայած է։

Ահաւասիկ կոնդակին ըստ բնագրին. "Յօհաննէս Տօբիայ Աւկուշդինօվիչ. շնորհօք Աստուծոյ եւ Առաքելական Աթոռոյն Արհիեպիսկոպոս եւ ընդ բոլոր թագաւորութեանն Լէհաց եւ մեծի Դքսութեան Լիթվանիոյ Հայոց, եպիսկոպոս Մօլտավիոյ նոյն Ազգին Հայոց, Սրբազան Տեառն Մերոյ Փափին Բրէլադ ընտանի, եւ Առընթերակաց։

Յորժէ հետէ Աստուածային գթութեամբն յԱրհիական աստիճանն բարձրացաք, զպատշաճաւոր հօտ յանձին կալաք, զի ըստ Սրբազան ժողովոց վճռոցն, Առաջնորդական պաշտամանս մերում բաւական առնելով, զբարեկարգութենէ Եկեղեցեաց մերոց զքուռն արկանէաք։ Եւ քանզի Եկեղեցին Աստուծոյ զոչինչ սրբագոյն, եւ գերազանցագոյն ունի քան զՍուրբ խորհուրդս, զորս Քրիստոս Տէրն մեր վասն փրկութեան ազգի մարդկան սահմանեաց. զգիրքն, համարակաբար Մաշտոց կոչեցեալն, յորում կարգն պաշտելոյ զսրբազան խորհուրդս, եւ զայլ արարողութիւնս կատարելոյ, պարունակի, տրամադրել յանձն առաք։ Զոր ի ձեռն Աստուածաբանից մերոց, եւս առաւել Պատուելի Տեառն Ստեփաննոսի Ստեփանեան Աստուածաբանութեան վարդապետին, զհին ձեռնագիր Մաշտոցս ընդ միմեանս բաղդատելով, եւ իբր՝ զանհուն սխալութիւնս, որք ոչ միայն ընդդէմ իմացման աղօթիցն, այլեւ ընդդէմ իսկ ուղղափառ հաւատոյս մերում սփռեալք էին, սրբագրել, եւ զսրբագրեալսն կարգաւ յօրինել, նաեւ զհարկաւոր խրատուն իւրաքանչիւր Խորհրդոցն, եւ արարողութեանցն յառաջ դնել, եւ որ ինչ պակաս էր ի մեր Մաշտոցն, ի Հռոմէականէն, հետեւելով շաւղաց Նախորդացն մերոց,

«Բարօխն, որ օրհնելոց է զամուսնութիւնն, զկնի երից արարեալ ծանուցմանց, յաւուրս տօնից, եթէ ոչ մի արգելումն իցէ, զգեցեալ յեկեղեցւոջն զվերնաշապիկ, զուրար եւ զշուրջառ սպիտակագոյն, ունելով ընդ իւր կղերիկոսունս, նոյնպէս վերնաշապկօք զգեստաւորեալս, որք զմաշտոցս զայս եւ զաման օրհնեալ ջրոյ եւ զբուրկարանն ունիցին. գայ առջօջ յաւագ բեմն եւ առաջի երից կամ երկուց վկայից զփեսայն եւ զհարսն, որոց վայել է, զի եւ ծնողքն կամ ազգականք նոցին ներկայք եղիցին, հարցանէ մի ըստ միոջէ զերկոսեանն յաղագս հաւանութեան նոցին ի յամուսնութիւն: — Եւ չէ բաւական հաւանութիւն միոյն, այլ կարեւոր է երկոցունցն. եւ հաւանութիւնս այս իցէ յերեւելի կամ զգալի նշանաւ իւիք յայտնեալ. թէ եղիցի ըստ ինքեան, թէ ի ձեռն փոխանորդի:

Բայց նախ քան զհարցանելն, խրատեսցէ բարօխն զհարսն եւ զփեսայն ծանր բանիւք. մեկնելով թէ ամուսնութիւնն է խորհուրդ եկեղեցւոյ, եւ է անլուծանելի, եւ զի պահիցեն միմեանց զհաւատարմութիւն ....:

Յետոյ հարցանելով նախ զփեսայն ասէ ...: Բայց զի աշխարհականքն զգրաւոր լեզուն ոչ իմանան, վասն որոյ աշխարհական բարբառով հարցանիցէ զնոսա, որպէս հետեւի: Կամ ըստ գաւառաց բարբառոյն որով անդէն վարին:

---

առեալն առաջդրել ջանացաք: Արդ, զի Եկեղեցւոյ մերոյ հոգաբարձու բարօխքն, ի բաց թողեալք զայլ Մաշտոցս, այսու միայն, զոր Մեք Արհիական Հեղինակութեամբ մերով առփորձեցաք, եւ հաստատեցաք, այսուհետեւ վարեսցին, զխիղճ մտաց նոցին ծանրացուցանելով, պարտաւորեմք.

Գրեցաւ յԱրհիական Պաղատն մեր ի Լէօպօլիս, Յամի Տեառն 1728: Ապրիլի ամսոյ. ԺԵ.:

Յ. Ա. Արհեպս Լեհաց երկրի Հայոց
ի Լէօպօլիս (ստորագրութիւնն իւր
յատուկ ձեռագիրն է)
Տ. Կ.

Արդ, նախ զփեսայն հարցանելով ասացէ:

Ա՞ն. Ունի՞ս բարի ու չի ծորովցուցած կամք ու հաստատուն միտք, զայս հարսն Ա՞ն. զոր քեզ



Հ Ա Յ Ա Ք Ա Ղ Ա Ք Ա Ց Ի   Ա Ղ Ջ Ի Կ

դիմաց կու տեսնուս, քեղիկ օրինաւոր կնիկ առնելու, սուրբ եկեղեցուն ատամին գօրայ:

Պատասխանէ փեսայն. Ունիմ:

Հարցանէ քահանայն. Չի՞ս խոստացիր ուրիշի հետ պսակվելու:

Պատասխանէ փեսայն. Զիմ խոստացիլ։

Ապա հարցանէ զհարսն յանուանէ։

Ան. Ունի՞ս բարի ու չի ճորովցուցած կամք ու հաստատ միտք, զայս փեսայն Ան. զոր քոյ դիմաց կու տեսնուս, քեզիկ օրինաւոր էրիկ առնելու սուրբ եկեղեցուն առաջին գօրայ։

Պատասխանէ հարսն. Ունիմ։

Հարցանէ քահանայն. Զի՞ս խոստացիլ ուրիշի հետ պսակվելու։

Պատասխանէ հարսն. Զիմ խոստացիլ։

Քահանայն իբրեւ էառ զերկոցունց հաւանութիւնն, օրհնեսցէ զմատանիս նոցա. ասելով.

Աղօթեսցուք։

Օրհնեա ✝ Տէր զմատանիս զայսոսիկ, զորս մեք յանուն քոյ օրհ✝նեմք. զի որք զսոսա կրեսցեն, զամբողջ հաւատարմութիւն առ միմեանս պահելով ի խաղաղութեան եւ ի կամս քոյ մնասցեն եւ իրերական սիրով միշտ կեցցեն։ Քրիստոսիւ Տերամբ մերով. Ամէն։

Ապա զհարսին մատանին դիցէ ի մատն աջոյ ձեռին փեսային եւ ասասցէ.

Առ զմատանին ամուսնական հաւատարմութեան, յանուն Ամենասուրբ Երրորդութեանն✝. զի զսա կրելով, երկնային պատսպարութեան զօրութեամբն զինեսցիս. եւ օգնեսցէ քեզ ի փրկութիւն յաւիտենական։

Նմանապէս առեալ զփեսային մատանին, դիցէ ի մատն յաջոյ ձեռին հարսինն եւ զնոյն բանն ասասցէ։

Յետոյ հրամայեսցէ փեսային, զաջ ձեռն իւր կցել ընդ աջ ձեռին հարսին եւ ասել ընդ նմա.

Ես Ա՛. կ'առնում զքեզ Ա՛. ինձիկ կնիկ. ու կու խոստանամ քեզի սէր, հաւատարմու-



ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒՀԻ ՀԱՅ ՏԻԿԻՆ

թիւն, հարկիք ու ամուսնական հնազանդութիւն. ու հէչ չի պի թողում զքեզ ինչուր ի մահ: Այնպէս ինձի օգնէ Աստուած ու ամէն սուրբ:

Ապա հրամայէ հարսին ասել.

Ես Ա՛ն. կ'առնում զքեզ Ա՛ն. ինձիկ էրիկ. ու կու խոստանամ քեզի սէր, հաւատացվորութիւն, հարկիք ու ամուսնական հնազանդութիւն. ու հէչ չի պի թողում զքեզ ինչուր ի մահ: Այսպէս ինձի օգնէ Աստուած եւ ամէն սուրբ:

Յետոյ քահանայն առ ժողովուրդն ասէ.

Սիրելի ժողովուրդք, որոնք ի հոս էք հիմիկ. կ'առնում զձեզ վկայ, որ առենով ցեղ մը պէտք ըլլայ, նայ վկայութիւն տաք, թէ այս պսակս դացամ մէջ օրինապէս կատարվեցաւ:

Ապա ծայրիւ ուրարին, զոր ինքն ունի զգեցեալ, մի անգամ պատէ զկցեալ ձեռս երկոցունցն եւ ասէ.

Արդ զոր Աստուած զուգեաց մարդ մի մեկնեսցէ. եւ վասն այսորիկ զամուսնութիւն ի մէջ ձեր արարեալն, ես հեղինակութեամբ կաթուղիկէ եկեղեցւոյն հաստատեմ եւ օրհնեմ. Յանուն Հօր † եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. Ամէն:

Յետ այսորիկ տայ զօրհնութիւնն . . : Ուրախ լեր սուրբ եկեղեցի . . : Ըզքեզ աղաչեմք հանապազ սուրբ Աստուածածին . . . եւ այլն:

Բ. Բարեկէնդան:

Զուարթ ժողովուրդ մըն է Կերլայի ժողովուրդը: Ուրախութիւններն ու հանդէսները շատ կը սիրէր մանաւանդ ասկէ յառաջ: Հիմակ թէպէտ այն հրապարակական ուրախութիւնները նուազ են, եւ ժողովրդեան վրայ ծանրութիւն մը կ'երեւայ՝ այլեւայլ քաղաքային խիստ օրի-

նադրութեանց, կանոնաց ու տրոց հետեւութեամբը, բայց մնացած են, վաղեմի սովորութիւններէն դեռ քանի մը բան։

Յատուկ է — ի մէջ այլոց — Հոստեղի ազգայնոց սովորութիւն մը, որ անտարակոյս շատ հին բան պիտի ըլլայ. եւ է յաջորդը։

Բարեկենդանին վերջընթեր օրը — երկուշաբթի — քաղքին գնչուները, հին արտօնութեան մը համեմատ, սպանդանոցին սատարներուն հետ միացած, սպանդանոց կը տանին շատ փառաւոր եզ մը, որուն մարմնոյն վրայ կարմիր ու կապոյտ գունով զանազան այլանդակ ու այլաբանական ձեւերու պատկերներ կը նկարեն. երկու եղջիւրները եղեւնի ճիւղերով ու ծաղիկներով զարդարելով՝ անոնց վրայ կամարաձեւ մեծ պսակ մը կը ձեւացընեն։ Երկու հոգի եզան եղջիւրները բռնելով՝ առջեւէն ու ետեւէն, գնչուներ ու մսավաճառի սատարներ այլանդակ դիմակներ դրած եւ հին հնդկական ու եգիպտական շուրջառանման երեքանկիւնի զգեստներ հագած՝ ասդին անդին կը վազվըզեն կը ցատքռտեն. ու այն օրը — երկուշաբթի — մորթած եզան միսը, զարդարուն երկանիւ սայլի մը վրայ դրած, թմբուկ դափելով, քնար հնչեցընելով, պար բռնելով ու այլանդակ ոստումներ ընելով, նախ գլխաւոր մսավաճառին տան առջեւը կը կենան, կը պարեն ու յետոյ մսավաճառի խանութը կը տանին կը զետեղեն միսը։

Երկրորդ օրն — երեքշաբթի — բարեկենդանին վերջին օրն է։ Առտու կանուխ կ'ելլեն

սպանդանոցէն, ու միեւնոյն կերպով ինչպէս որ նախընթաց օրն ըրած էին, հիմակ բոլոր քաղաքը, փողոցէ փողոց, տնէ տուն կը քալեն կը պարեն կը կաքաւեն ու իրենց յատկացեալ կերպովը կը ցատքռտեն կը վազվզեն՝ տներու առջեւ ու նոյն



ԱՂՔԱՏ ԿԱՐԳԻ ՀԱՅԱՔԱՂԱՔԱՑԻ

իսկ տան բակին մէջ։ Ամէն տան տէր, բնականապէս իրենց բան մը կու տայ. ու այն գանձարանին մէջ ալ, զոր հետերնին կը տանին՝ բան մը կը դնէ։ Նմանապէս սայլով ետեւնէն եկած պարապ տակառին մէջ ալ գինի կը լեցընեն։ Բաց ասկէ, առատ ուտելիք, մսեղէն, խմորեղէն

եւ այն կը բաշխեն այս այլանդակ “դուրքաշներուն„։

Ասոնց պտըտիլը կը տեւէ արեգական ելլելէն, մինչեւ իրիկուան ժամը 8—9։ Այս ըլլալէն ետեւ՝ գնչուք ու սատարքը իրենց թաղը կ'երթան. եւ հոն՝ ուտելով ու խմելով կ'անցընեն այն գիշերն ու նոյն իսկ երկրորդ օրը։

Շատ տոգորուած եւ արմատ ձգած է ժողովրդեան մէջ՝ բարեկենդանին այս վերջին օրուան սովորութիւնը։ Թէպէտ քաղաքային վարչութիւնը մեծ ուժգնութեամբ աս բանիս առջեւն առնել ուզած է։ Ու եղած է տարի ալ, որուն մէջ վերցուցած՝ արգելած է դուրքաշին ու կոցոյին երեւան ելլելը. սակայն շատ բողոքներ ու գանգատներ ստիպած են զվարչութիւնը՝ նորէն հրաման տալու, որ աս կէս մ'այլանդակ ու կէս մ'ահռելի սովորութիւնը շարունակուի։

Թէ ուսկի՞ց ու ե՞րբ սկզբնաւորած է այս բանս, եւ ի՞նչ է ասոր նշանակութիւնը, անյայտ է։ Շատ կը յիշեցընէ հին Եգիպտացւոց Ապիս աստուծոյն հանդիսաւորութեամբ տաճար տարուիլն. ու զմարդ նաեւ կ'ամրացընէ այն կարծիքին մէջ, թէ գնչուները — իբրեւ եգիպտական ազգ մը — հետերնին բերած ըլլան այս սովորութիւնը։ Կոցոյ ըսուած դիմակաւորին ալ անպատճառ թռչնոյ գլուխ եւ քիթ ունենալն ու անճոռնի հագուստը՝ եգիպտական աստուածային պաշտաման մը յիշատակը կը բերէ մտուընիս։

Ըլլայ բանն ինչպէս որ կ'ուզէ, զուարթամիտ Հայերն այս հին սովորութիւնը պահելու

մէջ շատ վրէժխնդիր են. ու դժուարաւ կրնայ մէկը զիրենք այս բանէս հրաժարեցընել։ Բայց ան ալ ստոյգ է, որ այս հանդիսութիւնը՝ հիմակ,



ՀԱՐՈՒՍՏ ՎԱՃԱՌԱԿԱՆԻ ԱՄՈՒՍԻՆ

հին ժամանակներու պէս փառաւոր կերպով չի կատարուիր. ու ազգայինք ալ այնպէս եռանդեամբ ու առատաձեռնութեամբ չեն վարձատրեր զԳնչուներն, ինչպէս վաղեմի Հայերը։

## 9. Ժողովրդեան պարտէզը:

Հոն, ուր ասկէ երեսունուհինգ տարի յառաջ, ըստ մասին ճախին էր, ըստ մասին փոսեր



ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ՊԱՐՏԷԶԻՆ ԳԼԽԱՒՈՐ ՄՈՒՏՔԸ

կային եւ ըստ մասին երկրագործն իր արօրովը կը հերկէր երկիրն, ցորեն կը ցանէր ու կը հնձէր՝ կը տարածուի այսօրուան ժողովրդեան շրջագայութեան ընդարձակ ու գեղեցիկ անգլի-

ական պարտէզը։ — Գաղափարն՝ անշնորհք տեղը կարգի բերելու, մէկ քանի քաղաքացւոյ մտքին մէջ յղացաւ առաջին անգամ։ Մտածմունքն եղաւ իրականութիւն։ Վասն զի քիչ ատենի մէջ, բլրային, ու փոսերով լեցուն տեղերը հարթուեցան շտկուեցան։ — Գործքին ճարտարապետական մասը՝ Հէօնիկ՝ մեծ պատժարանին մէջ բանտարկուած՝ Սարէկէնի երկրաչափին յանձնուեցաւ։ Այս մարդն, իրեն եղած յանձնարարութիւնն անանկ լաւ կերպով գլուխ հանեց, որ արդիւնքը՝ յուսացուածէն աւելի էր։

Շրջագայութեան մեծ պարտէզը՝ յաջորդ գլխաւոր տեղերու կը բաժնուի։ — Ա. Գմբէթավայրէն (Rotunde), նախ՝ աշխարհքին դէպ ի չորս գլխաւոր մասերը՝ չորս գլխաւոր. ու ետքէն՝ դէպ ի հիւսիսային արեւելք, դէպ ի հարաւային արեւելք, դէպ ի հարաւային արեւմուտք ու դէպ ի հիւսիսային արեւելք՝ չորս կողմնակի, փոքրագոյն ու աւելի նեղ ուղիներ կ'երկննան։ Ճամբաներուն վրայ, որոշ հեռաւորութեամբ, այլեւայլ տեսակ ծառեր տնկուած են, որոնք այնպէս հաստատուած, մեծցած ու տերեւալից եղած են, որ պսակնին ամէն տեղ իրարու հանելով՝ կատարեալ կամար մը կը ձեւացընեն։ Ամէն ճամբուն վրայ, որոշ հեռաւորութեան մէջ, երկաթի նստարաններ կան։ — Բ. Հարաւային արեւմտեան բաժնին՝ գեղեցիկ Կռուարանին (Arena) մէջ — որ շրջագայութեան ամէնէն հաճոյական կէտերէն մէկն է, — ամառները՝ պարահանդէսներ ու թատերական խաղեր

կ'ըլլան։ Հոս կը կատարեն սովորաբար նաեւ գարնանային ու ամառնային ուրախութիւնները (majales)։ Գլխաւոր ճամբէն, ինչպէս նաեւ ասկէ դէպ ի կենդրոնատեղը, շրջանաւոր ճամբաներ կան։ Ասանկ շրջանաւոր ճամբաներ, որ շրջագայութեան պարտէզը շատ պէսպէս կ'ընէ՝ կան մէկալ երեք բաժիններուն մէջ ալ։ — Գ. Պարտիզին ամէնէն շատ գործածութեան մէջ եղող մասն է՝ հիւսիսային արեւմտեան բաժինը. որուն մէջ բիւրեղի մաքրութիւն ունեցող եւ ասդին անդին թուփերով եզերաւորած ընդարձակ լիճը կայ։ Աս լճին նաւահանգստին մէջ պատրաստ կը կենայ միշտ նաւակ մը “Հայկ„. ու երկու մակոյկ անոնց համար, որոնք կը փափաքին իրենց ժամանակը նաւագնացութեամբ անցընել։ Աս զբօսանքը բնականապէս ձրի է։ Լիճն իր ջուրը կ'ընդունի անընդմիջապէս կից եղող Սամոշ ջրանցքէն. այնպիսի կերպով մը, որ հարաւէն ընդունած ջրին աւելորդ մասը՝ լճին հիւսիսային կողմէն դուրս կ'արձակէ։

Գմբէթավայրը, կռուարանը, լիճն՝ ինչպէս նաեւ բոլոր ճամբաները, իրիկունները կանթեղներով կը լուսաւորուին։ Ասոնց լուսաւորութիւնը կ'ընէ, որ շրջագայող հասարակութիւնն ի վիճակի է իրիկունները ալ գործածել այս հասարակաց գանձը։

Ժողովրդեան պարտէզին հիւսիսային մասին մէջ — որուն ամէնէն գեղեցիկ մասը կը կացուցանէ եղեւնեաց անտառակը — կայ՝ երկու զանազան կէտերու վրայ, երկու պահանորդու-

թեան շէնք․ ու մէկ սառնարան մը, ուսկից քաղաքացիք սառոյց կ՚ընդունին ձրի։ — Պարտիզին հարաւային մէկ սիրուն շէնքին մէջ կը բնակի



ԵՂԵՒՆԻՆԵՐՈՒ ԱՆՏԱՌԱԿԸ

շրջագայութեան տեղւոյն պարտիզպանը։ Ասոր՝ գործունէութեան հետ միացած գիտութեանը վկայ են — չէ թէ միայն կանոնաւոր կերպով

մեծցած ու աճած ծառերը, միշտ աւելուած ու մաքուր պահուած ճամբաններն ու գեղեցիկ եկամուտ բերող պտղատու ծառերու դպրոցն, — հապա նաեւ տեղիս տեղիս — այլեւայլ երփնագոյն ծաղիկներէ կազմուած ու ընտիր ճաշակով քովէ քով բերուած ծաղկանց խումբերը։ — Շըրջագայութեան տեղն այն մեծ առաւելութիւնն ալ ունի, որ քաղքին անընդմիջապէս կից է։ Երկու գլխաւոր ճամբաններն ալ, որոնցմէ մէկը հետիոտ քալողներուն ու մէկալը կառքերուն համար է, քաղքին գլխաւոր փողոցին, կամ աւելի ճշդիւ՝ մեծ հրապարակին վրայ են։ — Սամոշ գետին ջրանցքին վրայ ոտքով քալողներուն համար ալ երկաթէ գեղեցիկ կամուրջ մը կանգնուած է, իսկ կառքերը՝ մէկալ, վերի կամրջին վրայէն կ'անցնին։

Շրջագայութեան ամէնէն արեւմտեան ճամբուն ծայրն է, մեղուաբուծութեան՝ գոթական ճարտարապետութեամբ շինուած շէնքը (իդ)։ Ասիկայ դպրոց կամ կրթարան մըն է մեղուաբուծութեան, ուր տեղ ամէն շաբաթ երկու անգամ ժողովրդական դասատուութիւններ կ'ըլլան թէ տեսական ու թէ գործնական մեղուաբուծութեան — մեղուներու, մեղուածուի, բջիջի, մաղի, մեղրի, մոմի — մէկ խօսքով մեղրագործութիւնը յառաջացընելու կերպին վրայ։ Մեղուանոցն ունի, միջինը հաշուելով 100 փեթակ. երկու ազգային ուսուցիչ ու բազմաթիւ աշակերտ, որոնց գործն է մեղուներուն հետ զբաղիլ։ Մեղուներու համար շինուած շէնքը

շատ յարմար տեղ մը կանգնուած է. որով-հետեւ՝ նախ, ամէն կողմանէ կանաչագեղ դաշտերով, ծառերով, ծաղիկներով, այգւով ու վազուն ջրով շրջապատած տաշտավայրի մը



ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ՊԱՐՏԻԶԻՆ ՀԵՏԻՈՏ ԿԱՄՈՒՐՋԸ

գրեթէ կեդրոնը կեցած է. մէյ մ'ալ անանկ բոլորովին զատուած տեղ մըն է, ուր ամենեւին փայնասուն չկայ, որ զմեզուները խրտեցընէ ու որ եւ է կերպով անհանգիստ ընէ։

## 10. Բժշկական բաղանիքները:

Քաղքին համար շատ մեծ նշանակութիւն ունեցող բան է՝ իրեն կից — Գէրէցյի կոչուած — բաղանեաց տեղը: Հոս՝ խուռն կ՚ընթանան ամառները, չէ թէ միայն քաղքին բնակիչներն, այլ նաեւ մերձակայ քաղաքներէն եկող հիւանդագին ճանապարհորդներն, զորոնք երկաթուղին — մէկ քառորդ, մինչեւ երկու ժամ հեռաւոր տեղերէն — կը բերէ հոս՝ կէս օրէն յառաջ ու նաեւ կէս օրէն ետեւ. եւ ետ կը տանի, կէս օրէն ետեւ ու իրիկուան դէմ:

Թէ որ ժամանակ սկզբնաւորած է այստեղ ծծմբային աղբերաց գործածութիւնը, չենք կրնար ապահովապէս ըսել: Բայց թէ նախընթաց դարուն մէջ արդէն իբրեւ բժշկական բաղանիք կը գործածուէին, արդէն պատմութեանս ընթացքին մէջ տեսանք: (Տես էջ 169:)

Երկու ջրհոր կը մատակարարէ պաղ ջուր ջերմ բաղանիքներուն: Առաջնոյն անունն է Զոգօ. որովհետեւ ասկէ շուրջ եօթնասուն տարի յառաջ այս գերդաստանը վարձու բռնած էր այս աղբիւրը: Երկրորդին անունն է Պանֆի: Շատերն օգտիւ կը գործածեն ու կը զգան այս աղբերաց լաւ ազդեցութիւնը: Տր. Կոլոմաննոս Պրուննէր, Պուտաբէշդի "Կայսերական բաղանիք" (Kaiserbad) կոչուած բաղանեաց՝ ծծմբային աղբերաց բժիշկը՝ Կերլայի հանքային ջրերուն ազդեցութեանը վրայօք քիմիական վերլուծութեան օրինաց վրայ յենլով՝ յաջորդ կարծիքը կու տայ.

“Կերլայի հանքային ջրերը, կ՚ըսէ, աւելի ցանցառ գտնուող ջրերուն կարգը կրնանք դասել: Իբրեւ այսպիսիններ, յաջողութեամբ կրնանք գործածել յօդացաւութեանց ծանր դէպքերուն մէջ, ջղաց ու մկանանց յօդացաւային հիւանդութեանց, շթաքարի (Sinter) ընդարմանալու, մորթի հիւանդութեանց, քաղցկեղի, խոյլք ցաւի, երկարատեւ արտաշնչութեանց, մետաղական թունաւորմանց դէմ եւ այլն: Ներքնապէս գործածուելով՝ որկորի, կոկորդի, շնչափողի հիւանդութեանց. ստամոքսի եւ աղեաց, թութքի, լերդացաւի, փայծաղի ուռեցքի դէմ եւ այլն, օգտիւ կրնայ գործածուիլ„:

Հանքային բաղանիքները, քաղաքին ամէնէն հարաւային արեւմտեան ծայրն են (իը), ու Սամոշ-Վէօլկեի երկաթուղւոյ կայարանէն, կառօք՝ քառորդ մը հեռու: Կերլայէն, գեղեցիկ ծառուղւոյ մը մէջէն անցնելով, հետեւակ՝ քառորդուան մը մէջ՝ հանդարտութեամբ պտըտելով՝ կրնանք հոն հասնիլ: Զհիւրերը — առ այս պատրաստ կեցած կառք մը — ամէն ժամ բաղանիքներու կը տանի. ու անկէ քաղաք կը բերէ:

Ինչպէս ընթերցողը ներկայացուած պատկերէն կրնայ տեսնել, բաղանեաց դիրքը շատ գեղեցիկ տեղ մը բռնած է: Անընդմիջապէս լեռան մը ստորոտին վրայ է. որուն ետեւի դին մեծամեծ ծառեր ու կաղնւոյ թուփեր կան, որոնք դիտողին շատ զուեշտական տեսիլ կը մատուցանեն: Բաղանեաց դիմացն ընդարձակ



ԻՆ ԲԱՂԱՆԻՔԸ (ԷՋ 270)

Հրապարակ եւ կանաչագեղ անգղիական պարտէզ մը կեցած է։

Անգղիական գեղեցիկ Քուշքով մը շրջապատած բաղանեաց տեղուանքը, թէպէտ լաւ շէնքեր կան, բայց եւ այնպէս բնակութեան սենեակները սակաւաթիւ են հիւրերուն բազմութեանը համար։ — Առընթերակաց երկու խոհանոցներն աղէկ ու աժան են։ Տասն'ութը գեղեցիկ, կոկիկ ու մաքուր շինուած բաղանեաց սենեակ՝ հիւրերուն կարգադրութեանը տակ ձգուած է։ Ասոնց մէջէն՝ տասուերկուքը լաւ ծածկուած գաւիթ ունի։ Բաղանեաց սենեակներուն մէջ՝ ամէն բան պատրաստ կեցած է ըստ պատշաճի։ Երկ'երկու լոգարանով սենեակներ ալ կան։ Մէկ երկու տարի յառաջ կանգնուած վեց նոր սենեակները՝ Գարարայի մարմարէ լոգարաններ ունին։ Այս սենեակներուն յատակը գունաւոր կրաղխւսով (cement) ծեփուած է. մէջերնին վառարան ալ կայ, որպէս զի ուզողները՝ ձմեռ ատեն ալ կարենան գործածել։

Չէ թէ միայն քաղաքացիք, այլ նաեւ գիւղացիք, ահագին բազմութեամբ այցելութեան կ'ելլեն բաղանեաց։ Կիրակի ու տօն օրերն — երբ միշտ աւելի նախամեծար է գաւառական հիւրը — Կերլացին հազիւ կրնայ բաղանիք առնուլ։ — Կերլայէն ետքը՝ Տէժ քաղաքը կը մատակարարէ ամէնէն աւելի բազմաթիւ հիւրեր։ Ասոնց մէկ մասը կառօք կու գայ, մէկալ մեծագոյն մասն՝ երկաթուղին կը գործածէ. որն որ զինք կէս օրէն ետեւ ժամը չորսին՝ քսան րոպէի մէջ

քաղաք կը բերէ տասը քառանդանով (մէկ ղուրուշ) եւ իրիկուան իննին ետ կը դարձընէ։ Բայց Գլուժէն, ուրիշ հեռաւոր տեղերէն ու նոյն իսկ դրացի երկիրներէն՝ ամառները կը գտնենք մարդիկ, որոնք բաղնեաց միջոցաւն այս տեղ կ'անցընեն իրենց պարապութեան օրերը։

Բաղանիքներու. տէրը, Յովսէփ Զաքարիաշ — քաղքին ու տէրութեան մեծ բանտին բժիշկը — հինգ տարի յառաջ Տ՝. Գուլիէլմոս Հանքօ, քիմիայի ուսուցչին ձեռօք տարրալուծած է բաղանիքին աղբիւրները։ Հանքօ, իր գործքը "Կերլայի բաղանեաց հանքային աղբիւրները„ անունով հրատարակած է։ Այս խնամով գրուած երկասիրութենէն յաջորդ տողերը կ'առնունք. "Այս աղբերաց ջրերը՝ նայելով իրենց բաղադրութեանը, սպրանյի, անգղիական հռչակաւոր Հարօկէդի (Harowgate) եւ հելուետական Լոստորֆի բաղանեաց ջրերուն քով երեւելի տեղ մը կը բռնեն։„

## 11. Մեծ հրդեհ — Ողողում։

Քանի մը հեղ քաղաքը հրդեհէն շատ վնասուեցաւ. բայց մեր ժամանակին ամենէն մեծ կրակն եղաւ 1855, սեպտեմբ. 21ին։ — Իրիկուն էր, ամէնքը անկողին մտնելու կը պատրաստուէին, երբ յանկարծակի սկսան մեծ աշտարակին զանգակը հնչեցընել..։ Ահագին հրոյ սիւն մը, բարձրացաւ դէպ ի երկինք՝ Ս.ին ախոռէն։ Փողոցն եղող մարդիկ՝ անմիջապէս տեսան, լսեցին, իմացան եղածն։ Ամէն ձայն կը

պուար թէ, կրակը Կովրիգեանց (Հիմակուան Ստորին Թղթատարութեան) փողոցին մէջն է։ Ամէն մարդ հոս աճապարեց։ Մէկը՝ կացին, մէկալը՝ բրիչ, երրորդը՝ ջրով լեցուն աման ձեռքը — չորրորդն՝ իր կառքը, ձիերով ու ջրով լեցուն տակառով հոն խրկեց։ Այս միջոցին հասան նաեւ հրշէջք։ Անմիջապէս գործքի սկսան։ Բայց հրշէջներն իրենց պաշտօնը չկատարեցին, զանոնք գործածելն անհնարին էր. — աւրուած էին։ Ահ ու դողու մէջ եղած ժողովուրդն յուսահատութեան մէջ սկսաւ խնալ։ Շատերն սկսան գոչել, լի բերնով թէ. “Անհոգ վերատեսչութիւնը թողուց որ հրշէջներն ապականին։ Կրակը մարող քիչ։ — (Վաճառականք ու արուեստաւորք այս միջոցին Լեքէնցէ գնացած էին տարեկան տօնավաճառի)։ Միջոց չկայ աւերիչ տարրը զսպելու. Թողունք որ ապականէ, աւերէ՝ ցյագ„։ Մէկ մասն այնպէս ալ ըրաւ. վասն զի տեսան որ հրդեհն այն աստիճանի զօրացաւ, որ մարդկային զօրութիւն անոր սահման դնել՝ ա՛լ չէր կրնար . . . ։ Ուստի, այրեցաւ, հրոյ ճարակ եղաւ վերին ու ստորին Կովրիգեան փողոցը. կը վարէր Եօթն խաչի փողոցը, կը վարէր ստորին Միջնափողոցը, Սողոմոնեան փողոցը, Մեծ հրապարակը, ստորին Ջրի փողոցը։ — Փրանկիսկեանց վանքն ու եկեղեցին պաշտպանեց մեծաւորը, մէկ աշկերտով՝ մինչեւ կէս գիշեր։ Հոն ինկած կայծերը՝ շատ անգամ մարեցին. բայց անգութ տարրը, վայրկենէ վայրկեան այնպէս անդիմադրելի ուժգնութեամբ

կը տարածուէր, որ միայն մեծ դժուարութեամբ կրցան ազատիլ ճարճատող վերնայարկին տակէն։ Այրեցաւ աշտարակը, հալեցան զանգակները, ինկաւ՝ կործանեցաւ կամարը, մոխիր դարձաւ երգիոնը, կրակի զոհ եղան ծնկարանները, երկու կողմնակի խորանները, վանքն եւ այլն։

Որ չէնքն որ մէյ մը կրակը մտաւ, անկից բան մ'ազատելն անկարելի էր. ամէն բան հոն մնաց, վասն զի չկար ո՛չ մարդ, ո՛չ ջուր։ Ամէն մարդ միայն ինք իրեն վրայ կը մտածէր։ Կային անանկներ ալ, որոնք ձեռուընին իրարու վրայ դրած՝ կը սպասէին, որ րոպէ մը յառաջ մեռնին, որ այս դժբախտութենէն խալըսին։ Կանայք, տղաք, ու անկարող ծերերէն շատերը, Նօթն խաչի լեռն ելան, ազատեցան։ Քաղաքը՝ պարպուեցաւ. իսկ կահ կարասիքը՝ դուարի վաճառանոցն ու շրջակայ դաշտերը տեղաւորեցին։

Հրդեհն սկսաւ իրիկուան իննին, ու դեռ երկրորդ օրն ալ, ասդին անդին կը մարէին։ Փրանկիսկեանց եկեղեցւոյն հետ հրոյ ճարակ եղաւ հրապարակին մեծ իջեւանը՝ պարահանդէսի սրահովը. մսավաճառի խանութները, տներու բազմութիւն մը, ախոռ, խանութ, մթերանոց եւ այլն։

Այս դժբախտ դէպքը պատահելէն ետեւ, քաղաքային վարչութիւնը, հրաման խնդրեց կառավարութենէն, որ փճացած ու ողորմելութեան ծայրը հասած գերդաստաններուն օգնելու համար՝ դրամաժողով կարենայ ընել։ Սակայն կառավարութիւնն — որուն համար այն-

չափ դրամական օգնութիւն ու զոհողութիւն, ըրած էր Կերլայ քաղաքն, ամէն ժամանակ ու ամէն դէպքի մէջ. որն որ միշտ, այսպիսի պատահարներու մէջ իրեն դիմող խեղճերուն առատաձեռնութեամբ օգնութիւն ու նպաստ մատուցած էր — այն պատասխանն ընդունեցաւ թէ. "Կրնայ դրամաժողով ընել՝ հայ հասարակութեանց, բայց միայն հայ հասարակութեանց մէջ„։

Այն միջոցին, երբ տէրութիւնն ազգայնոց հարկաւորութիւն ունէր, լաւ հայրենասէր էին Հայերը։ Քանի՛, քանի՛ դէպքերու մէջ. "Դիմեցէք հարուստ ազգայնոց՝ կ'ըսէր կառավարութիւնն. ու պարապ ձեռօք պիտի չդառնաք„։ — Ստոյգ էր ըսածը։ Հայոց քսակը միշտ բաց էր կարօտելոց ու տէրութեան առջեւ, երբ հասարակաց օգուտն յառաջացընելու՝ խեղճութեան ու ողորմելութեան արտասուքները սրբելու համար պէտք էր։ — Միշտ տուինք. բայց մեզի երբեք մէկը չտուաւ։ — Ան ալ ստոյգ է, որ Հայաքաղքին կանգնուելէն ետեւ եւ ոչ ալ խնդրեցինք։ — Աս անակնկալ դժբախտութենէն ետեւ ալ՝ քաղաքն, առանց արտաքին օգնութեան, ինք իր զօրութեամբ վերականգնուեցաւ. ու կրնանք ըսել, աւելի գեղեցիկ կերպով, քան ինչպէս որ յառաջ էր։ Ձմեռը չհասած՝ հազիւ քանի մը տուն մնաց առանց տանիքի։ —

Քաղքին արեւմտեան դիէն կ'անցնի Սամոշ գետը։ Անձրեւային ժամանակներն, երբեմն ջրոց շատութեան պատճառաւ, գետին ջուրը բազմանալով ու շատ բարձրանալով՝ կը պատահի որ իր անկողնէն կ'ելլէ ու կողմնակի, արտաքին քաղաքաբաժիններն՝ եւ մանաւանդ, ստորին կողմն եղած դաշտերը կ'ողողէ։ Ասանկ ողողումներ պատահեցան ի մասնաւորի անցած դարուն, այն միջոցին, երբ դեռ քաղաքը պեղած չէր իրեն համար ջրանցք մը. եւ ջրերն անարգել վերին կողմանէ, քաղքին վերեւն եղած դաշտերն ալ կ'ողողէր։ Ստոյգ է, ասանկ ջրի ողողումներ, անկից ետքն ալ պատահեցան ու կը պատահին նաեւ մեր օրերը. բայց յառաջուան պէս յաճախ չեն։ Ու ինչպէս ըսինք, ըստ մեծի մասին ստորին կամ Գնչուներու բնակութեան տեղն ու զԳանտիա՝ արտաքին քաղաքաբաժինները կ'ողողէ։ Առաջիկայ դարուն մէջ, ասանկ մեծ ջրհեղեղ եղաւ՝ մէյ մը 1836ին։ Աս միջոցին, վալաքներու՝ Գանտիայի եկեղեցւոյն մէջ մտաւ ջուրը մէկ մէդրէն աւելի։

Երկրորդ մեծ ողողումն եղաւ 1851ին։ Յիշեալ տարւոյն սկիզբները վերջի աստիճանի յաճախ ու առատ անձրեւներ եղան։ Այնպէս կու գար անձրեւն իբրեւ թէ ամանով թափէին։ Յաճախ ու արտաքոյ կարգի մեծ անձրեւայոյղներն, եւ մանաւանդ Աւգոստոսի վեցին եւ տասներկուքին եւ Սեպտեմբեր երեքին մեծ թօնընկէցները չէ թէ միայն Հայաքաղաք՝ այլ նաեւ ամբողջ Տրանսիլուանիա (Սըգըյներուն

քանի մը բարձրագաւառը դուրս առնելով) անանկ սոսկալի ջրհեղեղներ պատճառեցին՝ որոնց նմանը մարդիկ մինչեւ այն միջոցին տեսած չէին: Փրփրացող վրիժառու հոսանքը ամբողջ դաշտավայրեր, դաշտեր փճացուց. մարդիկներ, կենդանիներ, խրճիթներ, մանաւանդ թէ քարաշէն տներ ալ առաւ, հետը տարաւ: — Հայաքաղքին մէջ Գնչուներու քաղաքն ու զԳանտիա փճացուց: Հոս տեղուանք՝ միայն քանի մը տուն մնաց անվնաս: Ամէնէն մեծ վնասներն ըրաւ Հայաքաղքին այն ողողումը, որ Աւգոստոս վեցին, կատաղաբար աւերեց: Տարաւ այս միջոցին վարի, գարեջրոյ գործարանին քովն եղած մեծ կամուրջը. աւերեց ջրաթմբին ներքին մասն. իսկ անոր վերեւն եղած գետափէն, կամ լաւ եւս՝ դաշտէն, հարիւր մէդրի չափ ողողեց, հետը տարաւ: Այս պատճառաւ, թէ՛ վերի ու թէ՛ վարի ջաղացքներն երկու ամիսէն աւելի անգործ մնացին: Շատ ստակի եկաւ քաղքին, որ թումբը նորէն կանգնէ:

Բայց Աստուծոյ նախախնամութիւնն ըստ մասին տեղը բերաւ վնասը. որովհետեւ բարձրաբերձ տեղուանք, շատ լաւ հունձք եղաւ. ուստի եւ ընդհանրապէս մարդիկ շատ մեծ վնասներ չկրեցին: Թէպէտ կատաղի ալիքները տարին խաղը, եւ տղմով լեցուց դաշտերը. բայց Աստուած անանկ երկայն ու հաճոյական աշունք մը տուաւ, որ դուարներն ու անասունք, գրեթէ մինչեւ Քրիստոսի ծնունդը, դաշտերուն վրայ մնացին, արածեցան:

## 12. Բարեխառնութիւն ու բերք:

Առհասարակ՝ Դրանսիլուանիոյ ու ի մասնաւորի Հայաքաղքի օդաբաժինը լաւ է։ Լեռներէ ու անտառներէ բոլորովին շրջապատած ըլլալով՝ օդը, շրջակայ տեղեաց հետ համեմատելով, աւելի մեղմ է. ու մանաւանդ զօրաւոր հովերէ պատսպարուած։ Հողը՝ շատ բերրի է. ու կը բուսցընէ ցորեններէն, ամէն տեսակ պտուղ եւ խաղող։ Թէպէտ հիւանդութիւններէ զերծ չէ քաղաքն, այսու ամենայնիւ տարափոխիկ հիւանդութիւններ այնչափ չեն պատահիր։ Օդոյ լաւութեան նշան է, որ մարդիկ թէ առողջ են ու թէ միանգամայն երկայնակեաց։ — Կը ներկայացընեմ ընթերցողաց, Անդոնաշեան (Տէաք) եռորեակները։ Սիմոն Տէաք ամուսնացած մարդ է, իսկ երկու քոյրերը կարգուած՝ բայց որբեւարի մնացած։ Ծնած են 1811 Օգ. 18. ըստ այսմ հիմակ 84 տարեկան են։ Ողջ են երեքն ալ. ու օր չ'անցնիր որ Սիմոն ժամ չերթայ, ինչչափ ցուրտ ալ ըլլայ։ —

Հայաքաղքին օդը թէպէտ ամառը մեղմ ու տաք է, բայց ձմեռը հասարակօրէն Նոյեմբեր ամսով կը սկսի ու ընդհանրապէս ձիւնն ու սառոյցը մինչեւ Մարտի վերջերն երկրի վրայէն չեն հեռանար։ —

Կ'աւելցընեմ, դարուս սկիզբէն, տարեգիրներուն՝ օդի փոփոխութեանց ու պտղաբերութեան նկատմամբ մեզի թողուցած յիշատակարաններէն քանի մ'աւելի աչքի զարնող կտորները։



ԱՆԴՈՆԱՃԵԱՆ ԵՌՈՐԵԱԿՆԵՐԸ (Էջ 278)

1818 Առատ պտուղ. բայց դրամի այն աստիճանի պակասութիւն, որ վարձակալները ժամանակին չկրցան վճարել: Թէպէտ կայսեր դիմեցին, բայց աննպաստաւոր պատասխան ընդունեցան: Ուստի եւ դաշնագրութեան համեմատ վճարելու ստիպուեցան:

1819. 1818 դեկտեմբ. 20էն, մինչեւ 1819 փետրուար, սաստիկ ցուրտ: փետր. 3ին անձրեւ: Բայց եւ այնպէս առաջիկայ տարին երկիրն ամէն բան առատութեամբ բերաւ:

1820. Ամէն բան կայ. լաւ այգեկութ. աղէկ գինի: Ամէն բան աժանցաւ:

1825. Ջրերու ողողելուն պատճառաւն երկրին բերքը նուազ է. Ս. Միքայէլէն (Սեպտ. 29) ետքը ցօղ իջաւ: Այոր հետեւութեամբ խաղողը չկրցաւ հասնիլ: Գինին թթու է. բերքը նուազ ու տկար:

1827. Մարտի 23ին՝ զօրաւոր հիւսիսային քամի մը, քսան ու չորս ժամ՝ տեւեց: Շատ մեծ վնաս հասցուց պարտէզներուն ու շէնքերուն: Մայիսի ու յաջորդ ամիսներուն մէջ չորութեան հետեւութեամբը գրեթէ ամէն տեսակ բոյս ցամքեցաւ: Ընդհանուր սարսափ:

1831. Երկայն աշունք: Ծննդեան օրերնալ (ըստ հին տումարի) կրնար երկիրը հերկուիլ: Ամէն բան ծլիլ սկսաւ: Ծածկուած որթատունկը փտեցաւ: Գարունը չոր է:

1834. Յունուար 15ին երկնից սահանքները բացուեցան: Սկսաւ սաստիկ անձրեւ մը: Երկիրը ծածկուած էր ձիւնով. զոր չէ թէ մի-

*այն անձրեւն, այլ նաեւ հարաւային քամին շուտ մը հալեցուց։ Սամոշի երկու ճիւղն ալ այնչափ մեծցաւ, որ գետափն զջուրն իր մէջն ամփոփելու ի վիճակի չըլլալով՝ ողողեցաւ։ Ջուրը՝ ջրանցքին վրայ շինուած կամուրջն ապականեց։ Գինի շատ ու աղէկ. բայց ոլոռն, ոսպ, կաղամբ եւ այլն, գրեթէ ամենեւին չբուսան։ Աշնանային բերքերն ըստ բաւականի լաւ են։*

1839. *Ձիւնը շատ ու մեծ է։ Ձմեռուան խստութիւնը վերջացաւ Մարտի* 12*ին. մինչեւ այն օրը՝ ձիւնն ու սառոյցը պինդ կեցած էին։ Մարտի վերջերն օդն սկսաւ մեղմանալ։ Գարունը գեղեցիկ էր. բայց Յունիսի սկզբէն գոցուեցան երկնից սահանքները. անձրեւ չեկաւ մինչեւ Յուլիս* 16։ *Ամբողջ ամառը չոր էր. ուստի եւ հունձքը շատ տկար։ Ցորենին գինն սկսաւ բարձրանալ. մաքուր ցորենին մէկ չափը* (25 *լիդր*) *երեք ֆիորինի ելաւ։ Թէպէտ քիչ տակաւ լեցուեցաւ գինուով, բայց եղածն աղէկ ու համեղ է։ Վատրան* (10 *լիթր*) *մէկ ֆիորին է։*

1840. *Երկայն, չոր ու սաստիկ ձմեռը միայն Ապրիլի կէսերը վերջացաւ։ Գարունն ի սկզբան անհաճոյ էր, բայց կամաց կամաց գեղեցիկ կերպարանք մ’առաւ։ Մեծ չորութիւնը տեւեց մինչեւ Յուլիսի վերջը։* 30*ին սկսան անձրեւները։ Սամոշն ողողեցաւ եւ ջուրը՝ մերձակայ գիւղերուն մեծ վնաս ըրաւ. շատ տուն կործանեց։*

1841. Ձմեռը Նոյեմբ. 29ին սկսաւ։ Շատ ձիւն ու տեւական ցուրտ։ Դեռ Մարտի ալ, սոսկալի ձիւն՝ երկրի, ու սառոյց՝ ջրերու վրայ։ Շատ Հաճոյական գարուն։ Չորութիւնն սկսաւ գարնան ու տեւեց մինչեւ աշուն։ Ցորենեղէնը շատ թանկցաւ։ Բերքը՝ միջակ է։ Գինւոյն որպիսութիւնը՝ լաւ, քանակութիւնն՝ ըստ բաւականի։

1842. Չորութիւնը գրեթէ ամբողջ ամառ տեւեց։ Յուլիսի 22ին մեծ փոթորիկ։ Շատ տներու յարկերը վար առաւ։ Պտղաբերութիւն՝ միջակ։

1843. Յունուար ու փետրուար ամիսներուն մէջ ձմեռ գրեթէ չտեսանք։ Յունուարի մէջ շատ հեղ անձրեւեց։ փետրուարի մէջ աշնանային օդեր։ Մարտի մէջ գրեթէ ամէն գիշեր փոթորիկ, ձիւն ու ցուրտ։

1848. Աղէկ ձմեռ. աղէկ ամառ. անոր համար լաւ պտղաբերութիւն ու աղէկ գինի։ Սկսած խլըրտմունքները՝ շատ տեղ մեծ վնասներ հասցուցին։

1849. Բերքը՝ միջակ։ Շատ պատերազմական արշաւանքները՝ դաշտերուն ու արօտաստաններուն մեծ վնասներ ըրին։ Ասկից զատ մաղձայոյզն, անասնոց սատկիլն ու Հայաքաղքիս վրայ դրուած պարերազմի տուրքը (contributio), սաստկացուց ժողովրդեան խեղճութիւնը։

1850. Միջակ ձմեռ։ Ամառն աւելի չոր՝ քան թաց։ Պտուղ շատ քիչ. գինի միջակ՝ թէ որակութեան ու թէ քանակութեան կողմանէ։

1852. Ձմեռը մեղմով սկսաւ: Շատ ձիւն չկայ. բայց բաւական ցուրտ է: Գարունը գեղեցիկ. ամառը՝ բերաւ իր առատ օրհնութիւնը: Գինւոյ քանակութիւնը՝ բաւական. որպիսութիւնը՝ լաւ:

1853. Ձմեռը՝ չոր, առանց ձիւնի. կծու ցրտեր: Գարունը հաճոյարար: Կանուխ բողբոջելու սկսաւ ամէն բան: Զօրութեամբ սկսաւ ամառը. բայց ետքէն, լաւ անձրեւներն ամէն բան տեղը բերին: Թանջարեղէն, կանանչեղէն ու ընդեղէն եւ ցորեն՝ միջակ. գինի՝ շատ:

1854. Ցուրտ ձմեռ, քիչ ձիւնով: Քիչ պտուղ. բայց առատ ցորենեղէն: Գինի քիչ ու թթու:

1855. Ձմեռը շատ քիչ ձիւն: Գարունը հաճոյական. ամառն աւելի չոր, քան խոնաւ: Ցորենեղէնը շատ առատ չէ. բայց այնչափ աւելի առատ է գինին: Խոտ՝ գարնանային ցրտութեանց պատճառաւը՝ քիչ:

1856. Առատ ցորենեղէն, մորացորեն շատ առատ ու լաւ: Պտուղ քիչ: Խաղողն — ամառնային ցուրտ ամիսներուն պատճառաւն — ուշ կրցաւ հասնիլ. բայց անոր համար առատ գինի ունեցանք. սակայն որպիսութիւնը՝ միջակ:

1857. Գարունն անձրեւներով սկսաւ: Ողողումները՝ շատ վնասներ ըրին: Ամառն աւելի խոնաւ: Ցորենն առատ. բայց ընդ հակառակն մորացորենը՝ քիչ: Զխաղողը, սեպտեմբերի վերջերը ցուրտն այրեց. գինի ամենեւին չեղաւ:

1858. Գարունը՝ քաղցր, հաճոյական. ամառն ու աշունը՝ լաւ։ Ձմեռը՝ սարսափելի ու անտանելի ցրտով ընկերացած. սաստիկ շատ ձիւն։ Չորս ամիս շարունակ ցուրտ։ Ասանկ ցուրտ չեն յիշեր ամէնէն ծեր մարդիկներն ալ։ Ցորենեղէն բաւական, գինի միջակ, թէ՛ ըստ որպիսութեան ու թէ՛ ըստ քանակութեան։

1859. Ցուրտ ձմեռ. քիչ ձիւն։ Գարունը շուտ սկսաւ։ Ամառը չափաւոր անձրեւով ընկերացած՝ ամէն տեսակ բերք յառաջ բերաւ։ Ստըկի փոփոխութեան համար, աժնութիւն չկայ։ Գինի բաւական կայ, այսու ամենայնիւ վատրան մէկ ֆիորին հինգ քառանդան է։ (Ինչ մեծ տարբերութիւն 1847ին հետ համեմատելով, երբ մէկ վատրա լաւ գինին 34 քռնդն. էր։)

1860. Աս տարւոյն մէջ աւելի էր անձրեւային, քան յստակ օդը։ Աղէկ խոտ ունեցանք։ Ցորենեղէնն աղէկ կը ցուցընէր, բայց քիչ հատիկ տուաւ։ Ամէն բան սուղնալու կը սկսի։ Աշնան՝ քաղքէս շատ զօրք անցնելուն, պղնձի դրամի կարօտութիւն կար։

1861. Ձմեռը քիչ ձիւն եկաւ. ան ալ շուտ մ'աներեւոյթ եղաւ։ Գարունը շուտով սկսաւ։ Փետրուարի մէջ ամենէն գեղեցիկ արեւ ու չորութիւն։ Ծառերն սկսան ծաղկիլ ու հոտերնին տարածել։ Բայց Մարտի կէսերն սկսան հովերն ու ցուրտն. այնպէս որ ծառերն իրենց ծաղիկներէն զրկուեցան։ Գարունն ու ամառը գրեթէ ամենեւին անձրեւ չեկաւ. ուստի դաշտային բերքը շատ քիչ է։ Մսրացորեն գրեթէ

*ամենեւին չկայ. աշնցանը՝ շատ նուազ է։ Աստ հետեւութեամբ այնչափ բարձրացաւ ցորենոյն գինն, որ մէկ չափ մաքուր ցորենը* (25 *լիդր*) 5—6 *ֆիորին էր։ Մսրացորենը՝ բաւական ժամանակ երեք ֆիորինի ծախուեցաւ. Աշունն, առանց անձրեւի անցաւ։ Նախընթաց տարիներէն աւելի քաղցու կայ. քաղցուին վատրան մէկ ֆիորին ու քսան քառանդան։*

1862. *Աս ձմեռը՝ ձմեռներուն ձմեռն էր։ Սարսափելի ձիւն. մարդ գնապաստակը ձեռքով ալ կրնար բռնել։ Ձիւնը կեցաւ մինչեւ Մարտի կէսերն։ Երբ որ գարնանային արեգակն ու անձրեւն սկսան ձիւները հալեցընել՝ ահագին ողողումներ եղան։ Ձիւնին հալելէն ետեւ սկսաւ չոր ցուրտը։ Տաճկի ցորենն ուշ ցանուեցաւ։ Աշնցանը՝ շատ տեղ փճացաւ. նորէն ցանեցին։*

1867. *Աշունը՝ չոր հաճոյական։ Տեղ տեղ անձրեւով կ'ընեն այգեկութքը։ Տարեկան բերքը միջակ է։ Ցորենեղէնն աւելի աղէկ է ու առատ քան երեք նախընթաց տարիները։ — Նոյեմբեր* 5*ին սկսաւ ձիւնը եւ այն աստիճանի եկաւ, որ տանուտերք իրենց երկիրները պարարտութիւն չկրցան հասցընել։ Ձիւնը մնաց, մինչեւ Մարտի* 10։

1868. *Գարունն աղէկ սկսաւ։ Երկիրը դժուարաւ կրնայ հերկուիլ։ Անձրեւներուն պատճառաւը՝ ջրերն ողողեցին։*

1874. *Աշունն աղէկ է։ Ցորենեղէն ու գինի շատ առատ. բայց մսրացորեն քիչ։ Խիստ ձմեռը՝ հինգ ամիս տեւեց։*

1876. Զօրաւոր՝ տեւական ձմեռ։ Գարնան՝ ամէն բանի, բայց մանաւանդ խաղողի արտաքոյ կարգի մեծ բերք կը տեսնուէր։ Սակայն Մայիսի առաջի կիսուն եկաւ ցուրտ մը, որ խաղողը, խոհանոցի կանանչեղէններն ու պտուղը՝ բոլորովին փճացուց. ցորենեղէնն ալ շատ վնաս կրեց։ Ամառը՝ չոր։ Ցորեն ըստ բաւականի կայ։ Մսրացորեն այն աստիճանի առատ է, որ մեր ժամանակի մարդիկ այսչափ առատութիւն չեն գիտեր։ Գինի — Մայիսի ցրտին համար — ոչինչ։ Ձմեռը չոր, ցուրտ. ձիւն՝ քիչ։

1877. Գարնան շատ անձրեւ, ողողում։ Հարուածն, որ հազիւ Մայիսի վերջերը դադրեցաւ, շատ ուշացուց երկրագործութիւնն ու հունձքը։ Գետեզերքը բնակողներուն՝ ջրերը շատ վնասեցին։

1880. Մարդիկ ամենեւին ասանկ սաստիկ ու տեւական ձմեռ չեն գիտեր։ Վեց ամիս տեւեց։ Յունուար 28ին ջերմաչափը 27 աստիճան ցուցուց. Յունուար 29ին՝ 18,—30ին՝ 16։ Գարունը բաւական աղէկ է։ Ապրիլի մէջ շատ տաք օրեր. Ապրիլ 28ին՝ 32 աստիճան տաքութիւն։ Մայիսի շատ ցուրտ։ 21ին եղեամն. որ քանի մը տեղ վնաս ըրաւ։ Ամառն աղէկ է. հունձքերը՝ գեղեցիկ։ Գինի քիչ։ Աշունը՝ զով. հողմաբեր եւ անձրեւային։ Ցուրտը կանուխ սկսաւ։ Մսրացորենը լաւ յաջողեցաւ։ Տեւողական անձրեւ։ Քիչ ձիւնը՝ քանի մ'օրուան մէջ հալեցաւ։ Ծննդեան ատենները, խոնաւ, շաղախ։

1881. փետրուարի մեծ ցրտեր ու ձիւն: Գարունը՝ ողողմամբ սկսաւ: Ամբողջ գարունն անձրեւներ: Վարուցանն ուշ սկսան: Ամառը շատ անձրեւ. քիչ տաք օդ: Աշունն երկայն ու գեղեցիկ: Ձմեռն ոչ շատ ցուրտ: Ամենէն մեծ ցուրտը 12° ըստ Ռէոմիւրի՝ զրոյէն վար:

1882. Գեղեցիկ գարուն: Բնութիւնը կանուխ սկսաւ արթըննալ: Մարդիկ շատ վախցան որ ցուրտը չվնասէ. բայց զարկաւ ցուրտն զհունձքն ու զծաղիկները: Պտուղ քիչ: Ամառը՝ գեղեցիկ, տաք. օրհնութենաբեր անձրեւով: Աշունքը գեղեցիկ չէ. առատ անձրեւ: Թէպէտ հունձքն ու երկրորդ խոտը (otava) կտրեցին, բայց շատ անձրեւներուն համար չկրցան ժողովել, տուն բերել: Շատ ցորեն դէզերուն մէջ մնաց դաշտը. շատը՝ հոն ծլեցաւ ալ: Գինի քիչ: Թէպէտ շատ խաղող կար, բայց երեւիլը զարկաւ ու փճացուց: Ձմեռն ուշ սկսաւ: Ծննդենէն յառաջ գեղեցիկ օդեր: Ամենէն ցուրտ օրերը՝ փետրուարի վերջերն եղան: Ջերմաչափը այս միջոցին 18—20° Ռէոմիւր կը ցուցընէր զրոյէն վար:

1883. Գարունը շատ փոփոխական. օր մը կը փայլատակէ կը գոռայ, կ'անձրեւէ. օր մը՝ սաստիկ ցուրտ քամի կը փչէ, կը ձիւնէ, կը սառի, անձրեւ ու ձիւն կու գայ: Ծաղիկը շատ ճարակեցաւ. շատերն ասոր զոհ ալ եղան:

1884. Գարունը՝ շատ անձրեւային: Երկիրը կակուղ ըլլալով՝ վարուցանն ուշ սկսաւ: Այն միջոցին միայն սկսան ցանել, երբ խոտը

կտրելու էին։ Ամառը՝ շարունակութիւնն եղաւ գարնան. Հազիւ քանի մը գեղեցիկ օրեր ունեցանք։ Աշնան գեղեցիկ ու տաք օդեր։ Ամէն բան կրցաւ մթերանոցները դրուիլ զետեղուիլ։ Ըստ բաւականի լաւ են ցորենն ու մսրացորենը, քաղցուն եւ ուրիշ բերքերը։ Ձմեռն սկսաւ Նոյեմբերի 16ին ձիւնով. որուն վրայ սառնասառոյց ցրտերն սկսան։

1885. Գարունը գեղեցկապէս սկսաւ։ Ամառը փոփոխական է։ Աշունը՝ տաք. ցորեն, մսրացորեն՝ առատ։ Գինի քիչ. աս ալ տեղ տեղ։ Մայիսի ցրտութիւնը՝ մանաւանդ ընդեղէնին ու խաղողին շատ վնաս ըրաւ։

## 13. Ազգային ասացուածներ, առածներ:

Իմաստուն ասացուածներն ու առածները՝ բանաւոր մտաց ու խուզարկու փորձառութեանց հիմնական ճշմարտութիւններն են։ Ասոնք են ճշմարտապէս զարգացող իմաստութեան ու մտադիր ոգւոյն առջինեկները։ — Ասոնք՝ կը կացուցանեն ու կը կազմեն ժողովրդեան բարոյական կանոններն ու հազար գրքէ ալ աւելի կը ներկայացընեն մեզի բանաւոր մարդու խելքը։ Առածներն ու ժողովրդական ասացուածները, չէ թէ միայն ժողովրդեան զաւեշտական ու հանճարեղ ծաղիկներն են, հապա նաեւ կրնանք զանոնք ժողովրդեան մը իբրեւ իմաստութիւնն ու սկզբունքները նկատել։ — Կը սորվեցընեն մեզի կենաց իմացականութիւնն եւ իմաստութիւնը.

ու երբեմն, անանկ բաներու վրայօք զմեզ կը տեղեկացընեն, որոնց վրայ գիտութիւնն ու կանոնագրութիւնք կը լռեն: Կան ազգային առածներ, որոնց մէջէն աւելի աղէկ կրնանք ճանչնալ ազգին նկարագիրը՝ քան երբեմն ծանրակշիռ բաներէն: Եւ որովհետեւ ազգին ընդհանուր դատաստանը կը պարունակեն, անոր համար ազգային գիտութեան ներկայ եւ ապագայ ժամանակաց առաքինութեանցը ճշմարիտ յիշատակարաններն, արձանագրութիւններն են:

Մեր փորձառու պապերուն այս առաքինութեանց արձանագրութիւններէն մէկ քանին կը ներկայացընենք ընթերցողաց: Թէպէտ ասոնք ընդհանուր ազգին են. բայց ասոնց շատերը՝ միայն Դրանսիլուանիոյ Հայոց մէջ կը լսենք — միայն իրենք կը գործածեն: —

Մարդ միան նա է, վով խօսեցնելու[1] գիտէ:

Եփ ծառը կի փըլի, նայ կայ բաւական փատ կտրող:

Թէ որ տեմնուս թէ վազող ջուրը չի հետեւի զքեզ, մի ահաւորի ըղան:

Ջըրի մէջ ընկողը չի վախնայ թաթվէ:

Ամպուր քացախը կավըրէ զամանը.

Շընները իրենց մէջ կի ծեծկըվին. բայց գայլին ընդէմ կի ումիշվին[2]:

Շատ երգ կը ճանչնամ, բայց չիտիմ գարդալու.[3]

---

1 Կարդալ. — 2 ոտք կ'ելլեն, կը կռուին. — 3 երգել.

*Ջրին մէջ ձուկը չունի աժէք։*

*Ինչ մեծը կասէ, զան պիզտիկը կի լըսէ։*

*Օսգին պիզտիկ է. բայց աժէքը մենծ է։*

*Վով բանի. ես ու դուն։ Վով ուտէ. ես ու դուն։*

*Սորտոտը չուստ*[1] *կի ծերանայ։*

*Ալ աղէկն է խելգով թշնամին. քան անխելք բարեկամը։*

*Ալ աղէկն է, մօտիկի վէչինը*[2]*, քան հէռուվի*[3] *ազգականը։*

*Եբ աբէդիդ ունացիլիմ, չիմ ունացի փիլավ. հիմպիկ փիլավ ունիմ ու աբէդիդ չունիմ։*

*Մէկ ձեռաց մէջ չիս կարնայ էրկու սեխ բռնէլու։*

*Ըզմունճը կի հասկընայ Աստված։*

*Ըզաղքըտին մըշխլուութինը*[4]*. միան աղքատը կի հասկընայ։*

*Վով*[5] *պան ունի, խելք չունի. վով խելք ունի պան չունի։*

*Ամէն դար, ունի դարիվար ալ։*

*Թէ որ հաւը գիրանա նայ, ալ ա հաւկիթ չի ածի։*

*Կատուին խաղն է, մըկանը մահու է։*

*Աշխարհը ըսգարա*[6] *է, որին վրայ մէկը վեր, մէկալը վար կի քալէ։*

*Թէ որ ամէն ջրի մէջ թքնուս նայ, ուսգէ՞ց պի խըմիս։*

---

1 Ճուտով, արագապէս. — 2 դրացի. — 3 հեռաւոր, հեռուանց. — 4 տրտմութիւն, ցաւ. — 5 ով որ. — 6 սանդուղ. սատիճան.

Մէկ խելքը աղէկն է, երկուսը դեռ ալ աղէկն է:

Ալ աղէկն է կորսնելու ըղաչքը. քան զՀարկիորութիւնը[1]:

Ինչուր ի վատըժնայ գէրը, կի մեռնի վատուժը:

Ինչխարեն ալ շատ քար Թապլիս[2] շանը էտէվանց. անխարէն ալ ալ շատ կի Հաչէ:

Մեղրիս մօտ կու գայ ճանճը Հէռուէն ալ:

Կըլաս[3] բարեկըմութիւն կապելու Հետ շանը. բայց գոտայախը[4] մի գնի վար ձեռքէտ:

Մէկը կի սիրէ զվարդէնիքը, մէկալը ըղմանուշակը:

Մարդ ա չիտէ, աճապ ինչուր ի աուվատու ճիրախը պի բըլնէ՛:

Մէկ քաքոտ կով մը կի լողնէ[5] զըոլըր չուրտան:[6]

Մոիկ արա, որ ոչ միսը, ոչ շամփուրը էրի:

Իսով[7] ձանով կի զուրուցիս նայ. անպէս ձան կի լսիս:

Պապը կերիլէ խակ խաղող ու թոռին ակռընները եղիլին գլիդ[8]:

Տունը չար է նա, դուսը քաՀանայ:

Թէ որ անժումը Թողուս զխաղը[9], երբ զունենալուդ կէսը կորուսիլիս նայ, վաստակ ունիս:

[illegible] ընջիլ է ձիուն վրայէն, ու էշինը նաա[illegible]

---

[illegible]յատիւ, անուն. — [illegible] — 3 կընաս. — [illegible] — 5 աղտոտել. — [illegible] esorda Հունգ. բառ է. կը [illegible] Հոտ. — 7 ինչ [illegible] ինչպիսի. — 8 մաշուեցան. [illegible] — 9 Թուղթ [illegible]

Ինչ գիտէ մըկարը[1], թէ ինչ է չամիչը։

Առ (առաջ)[2] զտայախը. ու պի գիտնայ գող շունը թէ ինչ կուզիս։

Մի հանի ըվըտըդ եօղըընէն դուս։

Ալ աղէկ է խելքովին հետ քար կըրելու, քան անխելքին հետ փիլաւ ուտելու։

Ան ուժեմ կալագ[3] չէ, ինչին կէսն ալ լըման չէ։

Թէ որ Աստված տայ, նայ, անժումը էրկու ձեռքովը կու տայ։

Մի զուրուցի, ինչուր ի ըղխօսքը բերնիդ մէջ չիս կըրծի։

Խօսքով չի հասըրվի փիլաւը. արդարեղ ու բրինծ ալ պէտք է անոր մօտ։

Սորված աղվէսը, տօքն ալ կ'ըննի դուրսան[4]։

Մըշխուլ է անզավակը. բայց հազար է նարա մըշխուլութիւն, վով տղաք ունի։

Խեվը մէկ քար մը ձըգիլէ ջիշվորը[5]. ու քարսուն խելքով չի գիտացի զան դուս հանելու։

Լալենը[6] կի մեծնայ տղան։

Ըջվոր մատըս ալ կըտրիմ հինկէն, մէկ սօյ կի ցաւի։

Թէ որ քուր աղբարը անպէս աղէկ բան է. Աստված ալ պուննար մէկ քուր աղբար մը։

Վով հերու է աչքէն, հերու է սիրտէն։

---

1 Էշ. յաւանակ. — 2 առաջ առնուլ. ձեռքն առնուլ կը նշանակէ, Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւը. — 3 կատակ. — 4 որոգայթ. կափուլ. — 5 ջրհոր. — 6 լալով

Կի սորտոտի արջը մորունը[1] ու մորին ասոր վրայէն իք մըն ալ չիտէ։

Ըզընկերըդ անժումը կի ճանչնաս, թէ որ հետը օխտը փուռ հաց կերիլիս։

Ծովէն խալըսիլիմ. ու մէկ թիքալ մը ջրի մէջ կի խեղդըվիմ։

Աղչիկը ծնողացը համար անպէս գանձ է, ինչ օզկային է։

Թէ որ կուզիս գովվելու, սորվէ զճերմակը սեվի դարձընելու։

Մի խնտայ թէ ունիս. ու մի վըղըբայ[2] թէ չունիս տղայ։

Երկան է եզին լեզուն. բայց չի կարնայ զուրուցելու։

Խեվը, խեվ է, զատկին կիրակին ա։

Ճիրախ կի վարէ աղքատ մարդը, որ համ-պրէ ըզխոճին ունենալը։

Տուր բան խեւին ու կըրակ կուտայ տանդ։

Զամիչ գընայ[3] ու կոկան դարձաւ։

Ծուռ նըստինք ու շիտակ զուրուցինք։

Մըխանքը կըլայ ծուռ ա ըլալու. նմա[4] թէ մուխը ելէ շիտակ։

Ծուռ ծառին, ծուռ ճիվ[5]։

Շուն զարկ ու պան վաստըկէ։

Քիչ բարձիր ու չուստ դարձիր։

Ինչուրի չի զարնըվի, չի արնըվի։

Քիչը կօգտի. շատը կերթայ։

---

[1] Անտառ, անտառակ. — [2] ողբալ. — [3] գնեցի, վաճառեցի. — [4] Նմա, Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւ ը, միայն կը նշանակէ. — [5] այս ինքն. ճիւղ։

Կուշտը քաղցածին, մանտրը կի բըրդէ։

Ասողին լսող։

Լուքուցին շունը Լիբսքան[1] գնացիլ է. ու ետ ընտըր շուտ դարձիլ է։

Զուզիմ անպէս քալելու, ընտըր Պիադային շունը։

Աղքատը թէ որ որ հաց ու պանիր ունի, քըշըրը քուն չունի։

Գարղան[2] անպէս կի համարէ, թէ իրեն վըրդին է ընք ալ[3] ըրինտ թըռչունը։

Ամէն անտըլվաթութիւն, մէկ մէկ խրատ։

Անբան[4] մարդը, երբ հաց կուտէ առողջ է. երբ բանի հիւանդ է։

Նըզովքը, նըզովողին վըրայ կըննի։

Ինչուր ի չի տեսնուս ըզջուրը, մի հանի զըաբուկը[5]։

Անցած բանի ետէվանց մի մըշխուլվի[6]։

Ալ աղէկն է արդար աչքը. քան մեղաւոր շաղըշը։

Ըզաստուծմէ պահած գարը[7], չուտի գալը։

Թուխուձուկին[8] կօգտի մէկ գաւաթմն ջուր։

Առաջ գործէ, ետեւ պարծենցիր։

Քաղցածը՝ քընուն մէջ հաց, ծարաւը՝ ջուր կի տեսնու։

Ինչ էշը կի դատէ նայ, ձին կուտէ։

Ինչուր ի կուշտը քաղցածին տայ, քաղցածը քաղցուն մեռնելու կըլայ։

---

1 Լայբցիկ քաղաքը. — 2 ագռաւ. — 3 ամենէն. — 4 այսինքն. առանց գործքի. — 5 հողաթափ, կօշիկ. — 6 տրտմիլ. — 7 գառն, ոչխար. — 8 չորցած, աղած ձուկ։

Ըզում հացը կուտիմ, ըզնարա անունը կի իշիմ։

Լացիր հետ լացողին, ու խնտացիր հետ խնտացողին։

Խըրատ խեւին, սապըն սեւին։

Կատուն, որը չի հասաւ զմիսը, ասաւ. Ասօր ուրբաթ է։

Աս խօսքովը հաց հաց, փորը չի կիշտանայ։

Էկիլէ, գնացիլէ, բայց տեղը չի մնացի պարապ։

Մի եփի միս ու ձուկը, մէկ պտկին մէջ։

Ճըրախը ըզձիրախքալը չի լուսաւորի։

՝Մարդ մարդու կըլայ խաղող տալու, բայց պտղաբերութիւն չի կարնայ տալու։

Վով մեղրը կի ծախէ, ըզմատվըները կի լըզէ։

Շունը խասափը գնացիլէ, որ վըտ[1] բերէ. ու հոն թողիլէ ըզվըտը։

Վով չուստ, նա կուշտ։

Տասը տարպա չափէ. ու մէմը կըտրէ։

Օզկային[2] ձեռօքը դիժար է փուշ դուս հանելու։

Օզկային տղէն, չի դառնայ որդիդ։

Վով պարք[3] ունի, խելք չունի. վով խելք ունի, պարք չունի։

Ալ աղէկն է հոտած քան հատած։

---

1 Ոտք. — 2 ուրիշ. — 3 այսինքն պարտք.

Ծինկան[1] պաշխըշ։

Հետ ազգիդ կերու խըմէ, նըմա արուտուր մանի։

Ոչ խելք, ոչ մեղք։

Ալ աղէկ աչվընուդ լուսը կորսըվի, քան հարկիքը բոլորվի։

Ձունը չարեկին[2] չի հասի, հօրը հոգուն կի թողու։

Ոչ զօր քաղցր ըլըելու, ոչ զօր լեղի թըքնելու։

Թէ որ վեր թըքնում նայ, զպեխերս կը լոզնիմ.[3] թէ որ վար թըքնում նայ, զմիրուքս կի լոզնիմ։

Ինչուրի կարմիր է, ըզերկաթը ծեծէ։

Հաւատարիմ մարդուն կուտայ Աստված։

Կայ մարդ, վով կաժէ հազար, ու կայ մարդ, վով մէկ մըն ա չաժէ։

Ասոնցմէ զատ կայ դեռ շատ առակ ու ասացուած Կերլայի Հայոց բերանը, բայց ասոնք այլեւայլ տեղերու ազգայնոց ալ հասարակ ըլլալով՝ եւ ուրիշ տեղեր ալ անոնց վրայ խօսք ըլլալով՝ զանոնք անյիշատակ կը թողունք.

---

1 czigány հունգ. բառ է, գնչու կը նշանակէ։
2 Ոչխարի կամ այծու, եաեւի մասը, ապուխտը։
3 Աղտոտաղ, աղտեղել։

## 14. Ազգային երգեր:

Կը ներկայացնեմ ընթերցողաց, քանի մ'ազգային երգ, կերլայի Հայոց այն երգերէն, զորոնք մեր պապերը մեզի՝ իրենց թոռներուն թողուցին. ձայնագրելով նաեւ անոնց եղանակը.

Առաջինն ըլլայ, այբուբենի կարգաւ գրուած, ու անտարակոյս վաճառականի մը բերնէն ելած ընդարձակ երգն, որ իրաւցընէ կենդանի գունով ու ձեռքով շօշափելու կերպով աչքերնիս կը դնէ, թէ առուտուրն որչափ մտատանջութեամբ, նեղութիւններով ու աշխատանքով կը քալէ. եւ թէ ինչչափ քիչ ու անտեսանելի է շահաբերութիւնը։

### Ա. Պազըրկընուն վրայ պար[1].

Ա- մէն դի- հաց թէ որ նայ-իս
Աշ- խար-հըս բո- լոր ման թար-թիս. Նա
է-կօ որ հիմ-պիկ լը-սիս. Պա-զըր- կը-նուն
բա-նը ցաւ-իս:

Ամէն դիհաց թէ որ նայիս.
աշխարհս բոլոր ման թարթիս.

1 Երգ. եղանակ։

Նայ եկօ որ Հիմպիկ ըլսիս,
պազըրկընուն բանը ցաւիս։

Բեզնի[1] դաս մը կի խօճանան․
բայց ալ շատը կի աղքըտնան․
մագար[2] ինտաս ինտան[3] դառնան․
ամէնը չիտին բեզնի բան։

Գիմ[4] տիսդուլ[5] ալ սըլըդ[6] կանին․
ու պարէպար կի ծեծկըվին․
երկըրաց երկիր կի քալին,
որ Հարկիւոր իրենք ապրին։

Դաս մը բուսդան[7], դաս մը Պէչը,
ալ շատը շօգօտըները[8],
պօլդը[9], օտար քաղքըները,
եւ գեղըանը, գիգիձարները[10]։

Երբ որ ճամբան բուրչէս կանին,
իրենց տանէն կի բաժնըվին․
կէս կէս տարի կի անցընին․
ու տանէն իքմըն ալ չիտին։

Ջաւալըքը[11] ինչ կի քաշին,
կեանքերը ափը կի քալին․
ալ շատը չիտին թէ պի ապրին
որ մէ մալ տունը Հանդըպին։

---

1 Ստոյգ, իրաւ է. — 2 թէպէտ. — 3 ասդին անդին. — 4 ստոյգ է. թէպէտ. — 5 բաւական. — 6 ջանք. սըլըդ անել = ջանալ. — 7 արօտատան, արօտական. — 8 տօնավաճառ. — 9 խանութ, կրպակ՝ երեք բառն ալ հունգարերէն է. — 10 փերեզակ. մանրավաճառ. — 11 խեղճ. զավալը բառին յոքնակին է։

Երկըրոց երկիր քալէլով,
քաղքէ քաղաք բոլորելով,
եւ գեղըանը մամ՝ ի գալով,[1]
կանցնի կեանքը մաշելիքով:

Ըրինտ բան է արուտուրը·
տարը նըգաղով[2] է բանը·
շատ լեղուլթենով է խարը.[3]
աղէկ գիտէ պաղըրկանը:

Թամթվլի, շախի, քամու, փըգի,
ընտոր զլտ[4] պէտք է որ կաննի.
ցըտի, տաքի ամէն բանի.
ու հազար սօյ նէվօլայի:[5]

Ժամանակ չունին հանգչելու,
կըտըր մը անուշ ուտելու,
մէկ սըհաթ մը քուն ըլալու,
կամ թէ քիչ մը խէնթըվելու[6]: —

Ինչվան ասոնք խալճըներ[7] ին.
թէ որ ալ մեծերը չիլային.
բայց պաղըրկընները գիտին.
ալէս[8] նաքա որ շատ պարտին:

Լեղուլթիւննուն ու տարտէրուն.[9]
վայ նըմա իրենց սըրտերուն.

---

[1] Պտըտիլ. շուրջ գալ. — [2] բայց տանջանքով, նեղութեամբ. — [3] խառն. — [4] պատ. որմ. վալաքերէն է. — [5] հունգ. է, ·հիւանդութիւնք, տանջանք նեղութիւն. — [6] ուրախանալ. վայելել. — [7] կարկանդակ. պղակինդ, (այսինքն մինչեւ հիմայ ըսուածներն ոչինչ են.) — [8] միայն, արդ. — [9] հոգ. մտատանջութիւն:

կի լըսվի իրենց գանգըլտնուն,
ընտոր կի վախնան պարտքերուն:

Խըմին, ուտին ու քուն ըլլան.
կի շաղըշին ամէնը ղան,
թէ երբ պիգան ու պուզին պան.
զուտըր[1] անովը կի լեղան:

Ծարաւ, քաղցած, շատ կի քալին.
պաղած, դըրջված կի պարկին.
մագար անժումը հանգչէին.
բայց հարցու մէ պազըրկընին:

Կարկատը զկարկատը[2] կուտէ,
ու չիտէ թէ ինչ շաղըշէ.
շահով կարնու որ վիճարէ
ու զերեսը խտակ անէ: —

Հապա մըսքին[3] գիգիձարներ,
ինչ կի քաշիք դուք չօրլուներ:[4]
փոշօմանիք[5] դուք ատպէսներ,
որ չիք դարձի փէշաքարներ:[6]

Չըմպրան չաթլամայ[7] ցըրտերը,
կի պաղեցնուն ըզըլըտերը,
գանիգուլային[8] տաքերը,
կի հալեցնուն ըզսըրտերը:

Ղուրտայ մուրտայ[9] չարթիկներովը[10]
կի քալին իրենք գեղըանը,

---

1 Միշտ, միայն. — 2 կապերտ՝ կապերտի վրայ. — 3 ողորմելի, խեղճ. — 4 տառապեալ, խղճալի. — 5 փուշման ըլլալ = ցաւիլ. — 6 արհեստաւոր. — 7 սաստիկ. այրիչ. — 8 շնիկ աստեղ, սաստիկ. — 9 մանր մունր. — 10 կաշեղէն փոքր ապրանք:

Մէկ խնլքը աղէկն է, նիկուսը դեռ ալ աղէկն է։

Ալ աղէկն է կորսընելու ըղաչքը․ քան զհարկիորութիւնը[1]։

Ինչուր ի վարըժնայ գէրը, կի մեռնի վատուժը։

Ինչխարեն ալ շատ քար թապլիս[2] շանը էտէվանց․ անխարէն ալ ալ շատ կի հաչէ։

Մեղրիս մօտ կու գայ ճանճը հէռուէն ալ։

Կըլաս[3] բարեկըմութին կապելու հետ շանը․ բայց զտայախը[4] մի դնի վար ձեռքէտ։

Մէկը կի սիրէ զվարդէնիքը, մէկալը ըզմանուշակը։

Մարդ ա չիտէ, աճապ ինչուր ի առվատու ճիրախը պի բըրնէ՛։

Մէկ քաքոտ կով մը կի լոզնէ[5] զբոլոր չուրտան։[6]

Մոփկ արա, որ ոչ միսը, ոչ շամփուրը էրի։

Իսով[7] ձանով կի զուրուցիս նայ․ անպէս ձան կի լսիս։

Պապը կերիլէ խակ խաղող ու թոռին ակռըները եղիլին գլիդ[8]։

Տունը չար է նա, դուսը քահանայ։

Թէ որ անժումը թողուս զխաղը[9], երբ զունենալուդ կէսը կորուսիլիս նայ, վաստակ ունիս։

Վար ընջիլ է ձիուն վրայէն, ու էշինը նստիլ է։

---

1 Պատիւ, անուն. — 2 նետել. — 3 կրնաս. — 4 գաւազան. — 5 աղտոտել. — 6 esorda հունգ. բառ է. կը նշանակէ հօտ. — 7 ինչ տեսակ, ինչպիսի. — 8 մաշուեցան, աւրուեցան. — 9 թուղթ խաղալը.

Ինչ գիտէ մըկարը[1], թէ ինչ է չամիչը։

Առ (առաջ)[2] զտայախը. ու պի գիտնայ գող շունը թէ ինչ կուզխս։

Մի Հանի ըվըտըդ եօղըընէն դուս։

Աւ աղէկ է խելքովին հետ քար կըրելու, քան անխելքին հետ փիլաւ ուտելու։

Ան ուժեմ կալագ[3] չէ, ինչին կէսն ալ լըման չէ։

Թէ որ Աստված տայ, նայ, անժումը էրկու ձեռքովը կու տայ։

Մի զուրուցի, ինչուր ի ըզխօսքը բերնիդ մէջ չիս կըրծի։

Խօսքով չի հատըրվի փիլաւը. արդարեղ ու բրինծ ալ պէտք է անոր մօտ։

Սորված աղվէսը, ոտօքն ալ կ՚ըննի գուրսան[4]։

Մըշխուլ է անզավակը. բայց հազար է նարա մըշխուլութիւն, վով տղաք ունի։

Խեվը մէկ քար մը ձըգիլէ ջիշվորը[5]. ու քարսուն խելքով չի գիտացի զան դուս հանելու։

Լալենը[6] կի մեծնայ տղան։

Ըզվոր մատըս ալ կըտրիմ հինկէն, մէկ սօյ կի ցաւի։

Թէ որ քուր աղբարը անպէս աղէկ բան է. Աստված ալ պուննար մէկ քուր աղբար մը։

Վով հերու է աչքէն, հերու է սիրտէն։

---

1 Էշ. յաւանակ. — 2 առաջ առնուլ. ձեռքն առնուլ կը նշանակէ, Գրանսիլուանիոյ Հայոց լեզուաւը. — 3 կատակ. — 4 որոգայթ. կափուլ. — 5 ջրհոր. — 6 լալով

Կի սորտոտի արջը մորուՆը[1] ու մորին աստր վըրայէն իք մըն ալ չիտէ։

Ըզընկերըտ անժումը կի ճանչնաս, թէ որ հետը օխտը փուռ հաց կերիլիս։

Ծովէն խալըսիլիմ. ու մէկ թիքալ մը ջըի մէջ կի խեղդըվիմ։

Աղչիկը ծնողացը համար անպէս գանձ է, ինչ օզկային է։

Թէ որ կուզիս գովվելու, սորվէ զճերմակը սեվի դարձընելու։

Մի խնտայ թէ ունիս. ու մի վըղբայ[2] թէ չունիս տղայ։

Երկան է եզին լիզուն. բայց չի կարնայ զուրուցելու։

Խեվը, խեվ է, զատկին կիրակին ա։

Ճիրախ կի վարէ աղքատ մարդը, որ համպրէ ըզլոճին ունենալը։

Տուր բան խեւին ու կըրակ կուտայ տանդ։

Զամիչ գընայ[3] ու կոկան դարձաւ։

Ռուռ նըստինք ու շիտակ զուրուցինք։

Մըխանքը կըլայ ծուռ ա ըլալու. նմա[4] թէ մուխը ելէ շիտակ։

Ռուռ ծառին, ծուռ ճիվ[5]։

Շուն զարկ ու պան վաստըկէ։

Քիչ բարձիր ու չուստ դարձիր։

Ինչուրի չի զարնըվի, չի արնըվի։

Քիչը կօգտի. շատը կերթայ։

---

[1] Անտառ, անտառակ. — 2 ողբալ. — 3 գնեցի, վաճառեցի. — 4 Նմա, Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւ ը, միայն կը նշանակէ. — այս ինքն. ծիւղ։

Կուշտը քաղցածին, մանտրը կի բըրդէ։

Ասողին լսող։

Լուքուցին շունը Լիբսքան[1] գնացիլ է. ու ետ ընտըր շուտ դարձիլ է։

Ձուզիմ անպէս քալելու, ընտըր Պիադային շունը։

Աղքատը թէ որ որ հաց ու պանիր ունի, քըշըրը քուն չունի։

Գարղան[2] անպէս կի համարէ, թէ իրեն վըրդին է ընք ալ[3] ըրինտ թըռչունը։

Ամէն անտըլվաթութիւն, մէկ մէկ խըրատ։

Անբան[4] մարդը, երբ հաց կուտէ առողջ է. երբ բանի հիւանտ է։

Նըզովքը, նըզովողին վըրայ կըննի։

Ինչուր ի չի տեսնուս ըզջուրը, մի հանի զըաբուկը[5]։

Անցած բանի ետէվանց մի մըշխուլվի[6]։

Ալ աղէկն է արդար աչքը. քան մեղաւոր շաղըշը։

Ըզաստուծմէ պահած գարը[7], չուտի գալը։

Թուխուձուկին[8] կօգտի մէկ գաւաթմն ջուր։

Առաջ գործէ՛, ետեւ պարծենցիր։

Քաղցածը՝ քընուն մէջ հաց, ծարաւը՝ ջուր կի տեսնու։

Ինչ էշը կի դատէ նայ, ձին կուտէ։

Ինչուր ի կուշտը քաղցածին տայ, քաղցածը քաղցուն մեռնելու կըլայ։

---

1 Լայբցիկ քաղաքը. — 2 ագռաւ. — 3 ամենէն. — 4 այսինքն. առանց գործքի. — 5 հողաթափ, կօշիկ. — 6 տրտմիլ. — 7 գառն, ոչխար. — 8 չորցած, աղած ձուկ։

Ըղում հացը կուտիմ, ըղնարա անունը կի իշիմ։

Լացիր հետ լացողին, ու խնտացիր հետ խնտացողին։

Խըրատ խեւին, սապըն սեւին։

Կատուն, որը չի հասաւ զմիսը, ասաւ․ Ասոր ուրբաթ է։

Աս խօսքովը հաց հաց, փըրըը չի կիշտանայ։

Էկիլէ, գնացիլէ, բայց տեղը չի մնացի պարապ։

Մի եփի միս ու ձուկը, մէկ պտկին մէջ։

Ճըրախը ըղճիրախքալը չի լուսաւորի։

՝Մարդ մարդու կըլայ խաղող տալու, բայց պտղաբերութիւն չի կարնայ տալու։

Վով մեղըը կի ծախէ, ըղմատվըները կի լըղէ։

Չունը խասափը գնացիլէ, օր վըտ[1] բերէ․ ու հոն թողիլէ ըղվըտը։

Վով չուստ, նա կուշտ։

Տասը տարպա չափէ․ ու մէմը կըտրէ։

Օղկային[2] ձեռօքը դիժար է փուշ դուս հանելու։

Օղկային տղէն, չի դառնայ որդիդ։

Վով պարք[3] ունի, խելք չունի․ վով խելք ունի, պարք չունի։

Աւլ աղէկն է հոտած քան հատած։

---

1 Ոտք․ — 2 ուրիշ․ — 3 այսինքն պարտք․

Ծինկան[1] պաշխըշ:

Հետ ազգիդ կերու խըմէ, նըմա արուտուր մանի:

Ոչ խելք, ոչ մեղք:

Ալ աղէկ աչվընուդ լուսը կորսըվի, քան հարկիքը բոլորվի:

Շունը չարեկին[2] չի հասի, հօրը հոգուն կի թողու:

Ոչ զօր քաղցր լըզելու, ոչ զօր լեղի թըքնելու:

Թէ որ վեր թըքնում նայ, զպեխերս կը լըզնիմ.[3] Թէ որ վար թըքնում նայ, զմիրուքս կի լըզնիմ:

Ինչուրի կարմիր է, ըզերկաթը ծեծէ:

Հաւատարիմ մարդուն կուտայ Աստված:

Կայ մարդ, վով կաժէ հազար, ու կայ մարդ, վով մէկ մըն ա չաժէ:

Ասոնցմէ զատ կայ դեռ շատ առակ ու ասացուած Կերլայի Հայոց բերանը, բայց ասոնք այլեւայլ տեղերու ազգայնոց ալ հասարակ ըլլալով՝ եւ ուրիշ տեղեր ալ անոնց վրայ խօսք ըլլալով՝ զանոնք անյիշատակ կը թողունք.

---

1 czigány հունգ. բառ է, գնչու կը նշանակէ:
2 Ոխշարի կամ այծու, ետեւի մասը, ապուխտը:
3 Աղտոտաղ, աղտեղել:

## 14. Ազգային երգեր:

Կը ներկայացընեմ ընթերցողաց, քանի մ'ազգային երգ, կերևայի Հայոց այն երգերէն, զորոնք մեր պապերը մեզի՝ իրենց թոռներուն թոռուցին. ձայնագրելով նաև անոնց եղանակը.

Առաջինն ըլլայ, այբուբենի կարգաւ գրուած, ու անտարակոյս վաճառականի մը բերնէն ելած ընդարձակ երգն, որ իրաւցընէ կենդանի գունով ու ձեռքով շօշափելու կերպով աչքենիս կը դնէ, թէ առուտուրն որչափ մտատանջութեամբ, նեղութիւններով ու աշխատանքով կը քալէ. և թէ ինչչափ քիչ ու անտեսանելի է շահաբերութիւնը։

Ա. Պաղըրկըհոոն վրայ պար[1].

Ա- մէն դի- հաց թէ որ նայ-իս
Աշ- խար-հըս բո- լոր ման թար-թիս. Նա
է-կօ որ հիմ-ալիկ լը-սիս. Պա-զըր- կը-նում
բա-նը ցաւ-իս:

Ամէն դիաց թէ որ նայիս.
աշխարհս բոլոր ման թարթիս.

---

1 Երգ. եղանակ:

*Նայ եկօ որ Հիմպիկ լըսիս,*
*պազըրկընուն բանը ցաւիս։*

*Բեքնի[1] դաս մը կի խօճանան.*
*բայց ալ շատը կի աղքըտնան.*
*մագար[2] ինտաս ինտան[3] դառնան.*
*ամէնը չիտին բեքնի բան։*

*Գիմ[4] տիսդուլ[5] ալ սըլիդ[6] կանին.*
*ու պարէպար կի ծեծկըվին.*
*երկըռաց երկիր կի քալին,*
*որ Հարկիւոր իրենք ապրին։*

*Դաս մը բուսդան[7], դաս մը պէչը,*
*ալ շատը շօգօտըները[8],*
*պօլդը[9], օտար քաղքըները,*
*եւ գեղըանը, գիգիձարները[10]։*

*Երբ որ ճամբան բուրչէս կանին,*
*իրենց տանէն կի բաժնըվին.*
*կէս կէս տարի կի անցընին.*
*ու տանէն իքմըն ալ չիտին։*

*Ջաւալիքը[11] ինչ կի քաշին,*
*կեանքերը ափը կի քալին.*
*ալ շատը չիտին թէ պի ապրին*
*որ մէ մալ տունը հանդըպին։*

---

1 Սոոյգ, իրաւ է. — 2 թէպէտ. — 3 ասդին անդին. — 4 սոոյգ է. թէպէտ. — 5 բաւական. — 6 ջանք. սըլիդ անել = ջանալ. — 7 արօտատաան, արօտական. — 8 տօնավաճառ. — 9 խանութ, կրպակ՝ երեք բառն ալ Հունգարերէն է. — 10 փերեզակ. մանրավաճառ. — 11 խեղճ. զավալը բառին յոքնակին է։

Երկըրոց երկիր քալէլով,
քաղքէ քաղաք բոլորելով,
եւ գեղըանը մամ ի գալով,[1]
կանցնի կեանքը մաշելիքով:

Ըռինտ բան է արուտուրը.
տարը նըգազով[2] է բանը.
շատ լեղութենով է խարը.[3]
աղէկ գիտէ պազըրկանը:

Թամթվըի, շախի, քամու, փըգի,
ընտոր զիտ[4] պէտք է որ կաննի.
ցըտի, տաքի ամէն բանի.
ու հազար սօյ նէվօլյայի:[5]

Ժամանակ չունին հանգչելու,
կըտոր մը անուշ ուտելու,
մէկ սըհաթ մը քուն ըլլալու,
կամ թէ քիչ մը խէնթըրվելու[6]: —

Ինչվան ասոնք խալճըներ[7] ին.
թէ որ ալ մեծերը չիլային.
բայց պազըրկըները գիտին.
ալէս[8] նաքա որ շատ պարտին:

Լեղութիւննուն ու տարտէրուն.[9]
վայ նըմա իրենց սըրտերուն.

---

[1] Պտըտիլ. շուրջ գալ. — [2] բայց տանջանքով, նեղութեամբ. — [3] խառն. — [4] պատ. որմ. վալաքերէն է. — [5] Հունգ. է, ·հիւանդութիւնք, տանջանք նեղութիւն. — [6] ուրախանալ. վայելել. — [7] կարկանդակ. պղակինդ, (այսինքն մինչեւ հիմայ ըսուածներն ոչինչ են.) — [8] միայն, արդ. — [9] հոգ. մտատանջութիւն:

կի լըսվի իրենց զանգըտնուն,
ընտոր կի վախնան պարտքերուն։

Խըմին, ուտին ու քուն ըլան.
կի շաղըշին ամէնը զան,
թէ երբ պիգան ու պուզին պան.
զուտըր[1] անովը կի լեղան։

Ծարաւ, քաղցած, շատ կի քալին.
պաղած, դըրջված կի պարկին.
մազար անժումը հանգչէին.
բայց հարցու մէ պազըրկընին։

Կարկատը զկարկատը[2] կուտէ,
ու չիտէ թէ ինչ շաղըշէ.
շահով կարնու որ վիճարէ
ու զերեսը իստակ անէ։ —

Հապա մըզքին[3] գիգիձարներ,
ինչ կի քաշէք դուք չօրլուներ։[4]
փոշօմանիք[5] դուք ատպէններ,
որ չէք դարձի փէշաքարներ։[6]

Չըմպրան չաթլամայ[7] ցըրտերը,
կի պաղեցնուն ըզըրտերը,
գանիգուլայլին[8] տաքերը,
կի հալեցնուն ըզսրտերը։

Պուրտայ մուրտայ[9] չարթիկներովը[10]
կի քալին իրենք գեղըանը,

---

1 Միշտ, միայն. — 2 կապերտ՝ կապերտի վրայ. — 3 ողորմելի, խեղճ. — 4 տառապեալ, խղճալի. — 5 փուշման ըլալ = ցաւիլ. — 6 արհեստաւոր. — 7 սաստիկ. պրիշ. — 8 շնիկ աստեղ, սաստիկ. — 9 մանր մունր. — 10 կաշեղէն փոքր ապրանք։

որ ապրելիք բերին տունը
ու ապրըվին տըղոցմովը։

Ճուեապ[1] ունին իրենք տալու,
ըզչարթիկը վիճարելու.
Նա կի կըցին խընդըրըվէլու
եւ Նըգապնուն մայ[2] թէ լալու։

Մըսքինները ինչ կի քաշին.
ու ինչերու կի համբիրին.
Նմա[3] Նաքայ աղէկ գիտին.
որոնք ուժեմ[4] բըձիդին[5]։

Ցապա գիմ գէձ ալ աղէկ էր[6].
տաք տանը[7] մէջ ալ հանգիստ էր.
փէշային քով որ ապրըվէր.
ու համ ըզտըղաքը բըռնէր։

Նմայ դաս մը կի շաղըշին,
թէ գիգիձարները կապրին,
եւ իրենք զօր[8] հուզուր կանին.
բայց հարցու մէ գիգիձարին։

Շախոտ, պատրած, առանց սանտրած,
շըբաթը մէ մը լըվացված.
եւ աշխատանքնուն ավըրված.
ու հաշվէ թէ կէսը մերած։

Որ դին[9] ալ որ իրենք դարնան,
Նա Նըգազի[10] րաստը[11] կու տան.

---

[1] Հաշիւ. — [2] գրեթէ. — [3] միայն, առանձինն. — [4] արդէն. — [5] փորձն առած են. — [6] ան ատոյք է, որ ալ լաւ էր։ — [7] = սենեակ, խուց. — [8] շատ հանգիստ են. [9] որ կողմն որ. — [10] վտանգ, նեղութիւն. — [11] րաստը տալ = հանդիպիլ. տեսնել.

մազար[1] տունը, մազար շադրան[2]
ու ալ իժով իրենց ճամբան: —

Զարթը[3] որ զաւուր կը հասնի.
ծախսի պանը կը խարճըվի.
դէրմինին ատենն ալ կը հասնի.
ու չիտէ թէ ուսդից վիճարվի:

Պարապ կու գան արդմըններով,[4]
տուն կերթան թեթեւ քսակով.
կէլէ դիմացը տղոցմով,
կընիկը դուս ու չէլէտով:[5]

"Ջէյ այ ատուս." [6] կ'ասէ բախտին:[7]
Ապրուստ, հագուստ հիմպիկ պէտք ին:
Ջէրամ կնտիքը հէչ չիտին,
թէ բախտերը ինչ կը քաշին:

Ռուստը կուտայ արտմըխին մէջ.
քանի պան մը քըսակին մէջ.
նա կը մըտնու խարճերու մէջ.
որ կընիկը չաղտըրըվի[8] հէչ:

Ցեւ սիրտը իրենը գիտէ.
թէ ինչ նըզազով քաշիլէ.
զան քիչ պանը[9] տուն բերիլ է.
ուժեմ[10] ան ալ խարճըվիլէ:

Վաղը ալվը պիտոր երթայ.
մազար[11] ասօր եկիլէ նայ.

---

[1] Թէպէտ. — [2] առուստուրի վրան. հունդ. է. — [3] փոքր մաշկեղէն ապրանք. — [4] քսակ, պայուսակ. — [5] ծառայ, աղախին. — [6] վալաքերէն է ամբողջ ասացուածը. ըսել է՝ ինչ բերիր. — [7] Երիկ, փեսայ. — [8] Նեղանալ, սըրդողիլ. — [9] ստակ. — [10] արդէն. — [11] Թէպէտ:

սիրտը չի քաշի որ տուն ի գայ․
զերամ տունն ալ Հանգիստ չիգայ։

Տարտերը մէկտեղ կի քաղվին․
ու մէմէկի կի գանկըտվին․
քիչ քիչ գինի ալ կի խըմին․
որ ըզտարտերը խափխըփին[1]։

Րօզըլով ու ըրախով․
գինով լավուչըստըններով․[2]
ըզտարտերը խափխըփելով,
այսպէս կանցնի ճորով ճորով։[3]

Ցանցար ին աղէկ ծախսերը․[4]
ամէնը կըլան խարճերը․
կի մընան կօլ[5] սընկըները․[6]
փուստա, պարապ տէֆդէրները։

Իւշին[7] ալ դաս մը կի դպչին․
ու անկից ալ կի զըրկըվին․
անխըտարը գըդնիդ[8] կանին
որ Հարկիւոր իրենք ապրին։

Փախիլին ժամանակները
ալ վաղուցու ատենները․
քիչ ապրելիքով խարճերը․
ընտոր կանէին ծերերը։

Քալեցէք ու մըխըլըվեցէք․[9]
ըզգըլխըներդ դուք ծեծեցէք․

---

[1] խարել․ — [2] երաժշտութիւն․ — [3] Հազիւ Հազ․ — [4] առուտուր, բան ծախելը․ — [5] պարապ․ — [6] սնտուկ․ — [7] jus. լատ. է. իրաւունք, արդարութիւն․ — [8] ճգնիլ․ ջանալ։ — [9] մտէք, ընկղմեցէք։

շատ արուտուրի մէջ մըտէք.
ընտոր ինչվաս, անպէս արէք:

Եւ ծանտրը չուլթվի դասմօնց.
Նա թող չի հաւատան ասօնց.
Երթան խարնըվին հետ անոնց,
որոնք կի հաւատան ասոնց:

Օրդօր[1] մարդը ինչի խըլվի,
Նա հարկիւոր ինքը ապրի:

Բ. Աշխարհական բօլիձիանոս[2] վրայ դար.













Վովոր կուզէ սորվելու,
բօլիձիայ գիտնալու.
Նայի զայս թղթին մէջ.
Թարթէ զայն երգին մէջ,
ալ շատերը պէրէվի:[3]

---

[1] Թէպէտ եւ. թող. — [2] քաղաքավարութիւն, քաղաքագիտութիւն. — [3] = պիտ'որ երեւի, երեւայ:

Աշխըրհիս հունարները,[1]
սատանին փէշաները.[2]
կը թըրին ծածկաբար.
դուսանց խոնարխաբար.
բայց վերջը մեծ զէնով է։

Նէմէձըն է թագաւոր.
ու մաճարը հէծէլուր.
հօրօմը մեծ տուշման.[3]
բայց հայն է բայրեկամ.
զէ կը վըճարէ ըղտամղան։[4]

Կասէ քեզիկ բարեկամ.
երփոր քեզիկ է չար կամ.
դիմացդ պաղաչէ,
ետեւըդ կանիծէ.
ու դուն չիտիս իքմընայ։

Խէրուկանց նա գօըլըմէնդ.[5]
կասէ գօրշօմատինէր.[6]
բայց ըղքեղ սըրտին մէջ.
չընդունի մըտքին մէջ.
ընտօր խաղը, ըղխաղը։

Կալաճիքը[7] ընտոր մեղրը.
կը վօթին[8] բերնէն քաղցրը.
բայց սիրտը վէնինով[9]
լի է խալպութենով.
դուն իստով[10] կը հաւատաս։

---

1 = Հնարք, խարդախութիւն. — 2 արհեստ. — 3 թշնամի. — 4 տուրք, մաքս. — 5 գլուխը ծռել, խոնարհեցընել. — 6 gehorsamster Diener = “ամենախոնարհ ծառայ„ին աղաւաղած ձեւն է։ — 7 խօսք. բերան. — 8 թափել. — 9 լեղի, դառնութիւն, — 10 բոլոր, ամբողջ.

Քեզլիկ կուլթվի թէ աղէկ է.
ինչ ալ կանէ բարի է.
բայց պէտք է զբերանըդ,
խափիս զաչվըներըդ,
որ չիլայ թէ գայթաղվիս։

Գաբալուշով[1] քալելու.
գըլուխը բաց ցըցվելու.
Հիմպիկ նոր օրէնք է.
ու նացա մօտի[2] է.
խընդրիմ չասիս մարդուեալ։

Ըզչէփէչը[3] ցըգիլ է.
բախտին գլոխը դրիլ է.
ինքը գաբալուշով,
ձմեռը մեծ գըտկով,
կի քալէ բուհաչի[4] պէս։

Կիրակիքը ժամ կեթան,
ձեռքը ձեռքի բըռնըման,
փըչված գուրգանու[5] պէս,
ճերմակ խազերու պէս.
իրենք աշվըն ներկըվին։

Հագուստը ապըըշըմէ.
կամ ալ շատը կըտաւէ.
բայց երեսը տապնէ.
միտքը բաբուրայէ.[6]
էրէցքը վոթի վըրան։[7]

---

[1] Գլխարկ. — [2] = mode. Նորելուք նորաձեւութիւն. — [3] կանանց հին գլխանոց, գլխադիր. — [4] բուէճ, մեծ բու. — [5] հնդկահաւ. — [6] եղէգն. — [7] ամօթ իրենց, խայտառակութիւն։

Ճամը խիստ չերմերանդ է.
շատ արտըսունք կի վըթէ.
ժամէն դուս չաղօթէ
ըզչարը[1] կի պաշտէ.
ամէնը ինքը սուրբ է։

Հայը միան սէպի է.[2]
մինչեւ քսակը լի է.
բայց եփ որ աղքատ իս.
մարդույալ չի պէտք իս.
չի գայ ինչ տամղայէլու։

Հաւատը խիստ պակաս է.
եկեղեցին թուլցիլ է.
ոտից տակ քահանան.
սէպի չէ հափեղան.[3]
հա թէ ըրինտ գօգանան։[4]

Ըզգասերը ավըրիլին.
ըզփատը թանկցուցիլին.
օսգօրէ տուն կանին.[5]
կի խենդըցնուն զմարմին.
կի ծանրեցնուն ըզհոգին։

Կուզիս ալ ալ լըսելու.
բօլիձիա գիտնալու.
էկօ գըմբըլունկը,
լերներուն ընգ ճօթը.[6]
ալ շատերը պի տեսնուս։

---

[1] Սատանայ. — [2] Հայն, այն ատեն միայն կ'արժէ բան մը, — ունի ազգեցութիւն. — [3] աբեղայ, կրօնաւոր. — [4] խաթուն, տիկին. — [5] բանաստեղծը կանանց լանջապանակը կը հասկընայ, զոր յառաջագոյն կէտի առաձգական

Գ. Պար Կերլա տաղերը:

Հա-յոց քա-ղաք դուն մեծ Կեր- լա
Ա- ռանց ին- ծիկ հիմ-պիկ մը- նայ.
Չէ ես մօ- տէդ հե- ռու կեր- թամ
Հա- յոց ա- չից կու հէ- րե- նամ:

Հայոց քաղաք դուն մեծ կերլայ,
առանձ ինծի հիմպի մընայ.
չէ ես մօտէդ հէրու կերթամ,
հայոց ազգէ կու հերենամ:

Աsor համար բարով կեցիր.
ինձիմով ալ ալ քիչ եղիր
կերթամ մօտէդ օտար երկիր.
մագար[1] թէ դուն զիս հօս արիր:

Պէլգիմ պասխ ինչի կերթամ,
մօտէդ հէրու կօտարանամ.

---

ակռաներէն կը չինէին։ Ուստի հենգնելով կ'ըսուի թէ ոսկրէ տուն կը շինեն. — [6] լերանց ամենէն վերջի ծայրն. ուր է Գիմբոլունկ քաղաքը։
[1] Թէպէտ եւ։

օղկայ քաղաք մուտ ես կանիմ.
կենալու տուն ինծի կի նայիմ։

Ան ալ պասխ, աղէկ գիտիմ.
թէ ես մէջէտ ընծայիլիմ.[1]
տուն ու տեղով զիս արիլիս.
ամէն բանը շարադրիլիս։

Ունիս ալ ալ ինչ ասիլու.
Կերլայ քաղաք ինչ հատնէլու,
ասայ ինչխայ կուզիս ինծի.
զէ ես պասիմ բարով քեզի։

Թէ օր ան ալ դուն ինծ ասիս.
հայոց ժամէր թէ դուն ունիս.
դատաւորաք, աղէկ հայեր.
խօճայ պանով պազըրկըններ։

Ջուրի ինծի զասոնք կասիս.
պարապ կալաճըստան[2] կանիս.
զէ եւ զքումէ կի բաժնըվիմ.
էկօյ նըմա որ համբուրիմ։ —

Բայց ալ արաչ քանց օր երթամ
Կերլայ, մօտէդ ես հերենամ.
լըսէ դուն զպատճըռներս,
սըրտիս շատ ցեղ կըսկըծներս։

Օտար երկիր ընտոր չէրթամ,
հէրու մօտէդ չի օտարանամ.
երփ կի տեսնում որ հէչ չիգան,
մարդ այլ մէջտ շատ չի կենան։

---

1 Ծընանիլ. — 2 խօսքեր։

Ամէնքը կերթան, կը հերենան.
այլ ազգերուն կը մօտիկնան.
մայրական տընմէրունմէ,
կը հրաժարին քաղքըցոցմէ։

Մեր ծերերուն թանկ եուրթերը,
պըտըտիլին[1] նէմէցները.
խօճայ պապանց մեր տըները.
բօլորիլին մաճըրները։

Որ դին նայիս Կերլային մէջ.
ոչ քիչ մաղէկ չիս տեսնու հէչ.
ամէն բանը մօլորվիլէ.
ամէն կերպիվը դարձիլ է։

Ինչվան Կերլան թանկ աննընով.
կը ճարայգէր պայծար լուսով.
անուշ ֆըտով վարդէնիքնիր.
ամէն դիհաց գեղեցիք էր։

Բայց հիմպիք այտէլի է.
թանկ աննունը կօրուսիլէ.
ոչ եուր ազգէ, ոչ օտարէ.
կը պաշտէ զինքը մաճարը։

Քանի տարով ալ ալ առաջ.
չի գար մէչը հուգ ու կանչ.
անուշ եխբայր սիրութիւնը.
կար մէջը օգնութիւնը։

Հիմպիկ եխբայր, օղկայ եղբայր.
մէչըտ գարաղի[2] հայր եւ մայր.

[1] կեցած են. կ'ապրին. — [2] սիրելի։

Հաթէ ըլինքնին Հարգիրներ․
չար սըրտերով մարդըններ։

Սերլան աս ալ ինչվաս ունէր,
եուր թըշնայմուն աղէկ կանէր․
բախլութիւններ[1] ինքը չիտէր,
ամէն մարդու միայմիտ էր։

Տարըմ[2] հիմպի սըլիդ[3] կանէ,
որ թըշնայմուն խուծած աննէ․
դըրօնքը դըրօնքին[4] որ վիճարէր,
եւ թըշնայմուն հախէն էլեր։

Սերլային մէջ կոյսութիւնը,
վեր կի կաննէր սըրբութիւնը․
աստուծոյ ահը եւ արժան սէրը,
ունէր մէջը եւ եղբարը։

Բայց հիմպի զըրբութիւնը,
վար ձըգիլէ չարութիւնը․
աստուծոյ ահը եւ ամօթը,
կորուսիլէ կերպարանքը։

Սերլային մէջ աղէկ սըրտով․
քիչ կու գըտվին բարի հոգով․
որ մըշխուլվի հետ մըշխուլնուն,[5]
ուրախանայ հետ ուրախնուն։

Ինչ ալ ալ առաչ բերիմ․
պատճըրներս քեզիկ ասիմ․

---

1 Նախանձ. — 2 բայց, սակայն. — 3 ետեւէն իյնալ, ջանալ. — 4 նմանն՝ զնմանը կոտրել, զարնել։ — 5 տրտմի տրտմողներուն հետ։

երփ կի տեսնում օր զուրի է․
այսօնց շահը իժով[1] քիչ է։

Կերլայ քաղաք ողորմելի,
մարդիքմօցվով վաղվուրելի․
Թող գիս մօտէգ որ հերենամ․
օտար երկիր օր եւ հոնամ։

Գունը երեսնուն գընացիլէ․
սըրտիս ցաւը ավելցիլ է․
երփ կի տեսնում ըղժամերը․
ողորմիլի տէրտէրները։

Բլէպանիան հայերունը.
եկեղեցին չիմայնունը.
երկու ժամն ալ ողորմելի.
մընացիլին ողորմելի։

Քահանայիցը մեծ պաշտօնը,
վայղուցու մեծ պարգեվը,
կի տօրվին օրվըները․
կերլացոցը ակըըները։

## 15. Ազգային առասպելներ:

Թէպէտ Գրանսիլուանիոյ Հայոց առասպելներէն հրատարակուեցաւ քանի մը հատ “Հանդիսի„ միջոցաւը. նոյնպէս ի լոյս հանեց Հենրիկոս Վիսլոցքի՝ Պուգովինայի ու Գրանսիլուանիոյ Հայոց առասպելներէն քանի մը հատ — այսու ամենայնիւ կը կարծեմ թէ բոլորովին

[1] Շատ, սաստիկ.

աւելորդ չէ, Սերլայի նկարագրութեան մէջ՝ լսել ժողովրդեան բերնէն, Կովուն եւ վիշապին պատմութիւնները.

Ա. Կովը:

Ջարկիլէ ուժեմ[1] կենացս վերջին սըհաթը — կասէ հոգեւարք հայրը երկու որդուն: Իմ էտէվանց միայն դուք կի մնաք: Ինչ որ բոլոր կենացս մէջ, հարկիւորութեամբ[2] քաղիլիմ նայ, ձեզի կի թողում: Ապրեցէք միամիտ,[3] հանդարտ ու մէկ տեղ: Չի բաժնըվիք մէկը մէկալէն. զէրամ բաժնըված կարող չի պիլաք մեծ արուտուր անէլու: Ըզձերը մի թողուք. ըզօզկայինը մի կամենաք: Կանուխ ելեցէք, արաջը ժամ գընացէք, պատարագ լըսելու. անոր էտէվանց բացեցէք պօլդ: Թէ որ մէկ օրը տասը կրօշ[4] վաստըկիլէք նայ, միայն ութը խարճեցէք: Երբ շոգոտը[5] երթաք, տարեցէք ձեր հետ ըզըբադըրը[6] ու ամարը համ պունտա:[7] Ճամբովը[8] օտար մարդիկաց հետ մի բարեկըմվիք. ցանցառ մարդ ըլայ ում դիմաց ըզսըրտերդ բանաք: Սիրեցէք զԱստված. բըռնեցէք ըզիրեն պատվիրանքները, ելէցէք ողորմասիրտ: Պահեցէք ըզիմ անունը ու յիշատակը. ու Տէրն մերը, ում դիմաց հիմպիկ կերթամ, պի օրհնէ զձեզ:

Ճորով թաղիլին ըզմեռածը, մեծ աղբարը մոլցըվիլէ վողորմած հոգի հօրը խօսքերուն

[1] Ուրեմն, արդ. — [2] պատուով, շիտակ ճամբով. — [3] միաբան, իրարու հետ բռնող. — [4] պզտիկ ստըկի տեսակ մը (արժէքը 5–6 սանդիմ). — [5] տօնավաճառ. — [6] վարդարան. — [7] մուշտակ. — [8] ճամբուն վրայ:

վրայէն[1] ու վարիլէ տանէն ըզպիզտիկը: Չի տուվի իրեն իքմըն ալ, միայն մէկ կով մը: Քիչ ժամանկի վրայ զան ալ եռ ուզիլէ: Չի տուվի նայ, դատըստընով արիլէ: — Հիմպիկ աղքատ աղբարը կառնու ըզաշխարհը ափը. ու ճամփայ կելլէ: Կի երթայ շատ ու քիչ: Կի կաննի ու մէկ ծարի մը տակ կի հանգչի:

Կու գայ էրկու ագրաւ ու ան ծարինը կի նըստին կի կըցին[2] զուրուցէլու:

— Ինչ նոր կայ ձեր էրկիրը:

— Կի մեռնին մարդիքը ծարվուն.

— Եշտ[3] պիլար ատորը աջողելու[4], թէ որ պազարը մէկ փըս մը փըռէին. ու մէկ ձիաւոր մարդ մը զան բոլորէր նայ, ջուր պի էլէր:

— Ու ձեր մօտ չիգայ իքմընալ նոր բան.

— Թագաւորը զօր[5] հիւանտ է ու չիտէ մարդ ա զինքը լաւցընելու:

— Կայ հարնին[6] սէմին տակը մէկ գորտ մը, թէ որ անոր եղովը քըսէին զինքը նայ, պի լաւնար:

Աղքատը, վով ծարին տակէն ամէն խօսք աղէկ կի լսէր, ալ ինտան կերթայ: Կի հասնի ան քաղաքը ուրուխ ջրի պաքսութիւն ունացիլին: Կանէ մէկ ջիշվըր մը, որին մէջ անխա ջուր քաղվիլ է որ դուս ալ վոթիլ[7] է: Ընդունած շատ պաշխըշովը, կերթայ մայրաքաղաքը ուր թագաւորը բնակիլ է: Կի լաւցընու զին-

---

[1] Մոռցաւ ողորմած հոգի հօրը խօսքերը. — [2] սկսիլ. — [3] դիւրաւ, հեշտ, հեշտեաւ. — [4] օգնել. — [5] շատ, սաստիկ. — [6] հարան. Դրանսիլուանիոյ Հայոց լեզուաւ ը կը նշանակէ, ախոռ, գոմք. — [7] վոթիլ = թափուիլ, դուրս գալ:

քը: Անխա գանծ կու տան իրեն, որ ճորող կը-լայ[1] տուն տանէլու:

Տունը մեծ աղբարը լըսելով թէ ինչ հեծեմած[2] բան բերել է, այց կարնու զինքը:

Ո՛ւխ իս գընտըվի, զատ շատ մալ ու գանծը: — Կասէ:

Անորը ինքն ա ճամբայ կելէ, շաղըշելով թէ ինքն ա անպէս պի քալէ: Կի կաննի ծարին տակը, բայց քիչ ժամանակի վըրայ կու գան գողեր ու կի ըսպանին զինքը: —

Ով ըզօզկայինը կարնու. նա զիրենն ալ կի կորսընու:

### Բ. Մայրը, որդին եւ ուշուքը:[3]

Որբովարի մնացիլէ կընիկը. վով որ ըզամէն յոյսը մէկ հատիկ որդուն մէջ ձգիլ է: Ու չի խաբվի. զէրամ մեծնալով ըզտարտը ունացիլէ մօյրը: Մարը իքմալ պաքսութիւն չի տեսի: Օրդին, երբ ազատ ժամանակ ունացիլէ նայ, գնացիլէ մորին[4] վըրսալու:[5]

Մէկ անգամն մորին մէկ ըրինք չէն մը կի տեսնու. նես կի մըտնու. ուրուխ ուշաբնու հետ կի հանդիպի: Չի արհըվի իրենցմէ. հաթէ[6] դուս կի քաշէ ըզթուրը ու կասէ. "Թուր կըտրէ." Թուրը կի բըռդըռտէ[7] ըզուշաբները: Բայց ետքինը կի խընդըրըվի, որ իրեն մարմնուն վըրայ դնէ մէկ գլուխ մը թողու: Վըրսացողը կի կա-

---

[1] Կրնայ. — [2] չափազանց. արտաքոյ կարգի շատ. — [3] վիշապ. Հսկայ. — [4] = անտառ. անտառակ. [5] որսալ. — [6] մանաւանդ թէ, ընդ հակառակն: — [7] բզիկ բզիկ ընել:

տարէ գլխընդիրը ու ողջ թողելով մէկ գլուխ մը, կի գոցէ ըղուշաքը նեսի տունի մը մէջ.

Քիչ ժամանակի վրայ այս շէնքին մէջ, որը ուշաբնունը եղիլէ, կի կըռվի հետ մօրը: Օրդին ասկից ալ կեթար վըրսալու. բայց մօրը ասիլ էր, որ չըլայ թէ մըտնու նեսի տունը, զէրամ վընաս կըլայ հանելու զինքը: Մարը ճորով բըլիլ[1] է որ հէրենայ որդին. մէկու մը նայիլէ թէ ինչ կայ տունին մէջ: Ճանչվըրվիլէ հետ ուշաբին. ու անպէս հաստատվիլին թէ խով մը ըսբանին ըզօրդին:

— Մարը կի դըվի թէ հիւանդ է: — Օ՛րդի, կասէ. զօր հիւանդ իմ: Բայց ինծիկ անպէս կութվի, թէ թէ օր խոզիկի[2] միս ուտիմ նայ, պի լաւնայի: Գընայ ալէս, ուխ դարերը կի զարնըվին, հոն կայ մէկ խոզ մը, խըլէ[3] անկից մէկ խոզիկ մը, ու բեր զան տուն: — Շաղըշիլէ[4] մարը, թէ պի կորի. անկից ալ ալ ետ չի պի դառնայ:

Տըղան կի թամպէ[5] ըզձին, վըրան կի դընէ ըզարթմըխները ու ճամբայ կելէ: Արիգակը իրեն բարեկամը եղիլ է: Անոր համար տըղան կի կաննի արեգըկուն դիմաց:

Ուխ կեթաս, կի հարցընու արիգակը: Հետեւէ ըզիմ խըրատը: Երբ տասվերկուս ըլայ սըհաթը, անժամը մուտ դարերուն միջօրէ. խոզը չի պըլայ բունին մէջ, ու դուն հեշտ պի կարնաս մէկ խոզիկ մը խըլելու:

[1] Հագիւ կը սպասէր. — [2] խոճկոր. խոզի ձագ. — [3] բռնել. — [4] մտածել. խորհիլ. — [5] թամբ դնել:

Տղան բարեւ կուտայ ու ալ ինտան կերթայ: Տասվերկուսին կի մըտնու դարերուն միջօրէ: Կի խըլէ մէկ խոզիկ մը, ու ետ կի դառնայ: Ալվըշ կի կաննի արիգըկուն տանը դիմաց:

Մըտիկ արա, կասէ, արիգակը, զէրամ մամամ[1] ըզգըլօխդ կուզէ ուտելու:

Տըղան տուն կի հասնի: Կի խորվին ըզխոզիկը ու կուտէ մարը մէջէն:

Օ՛րդի, ալ աղէկ իմ: — Քիչ ժամանակի վրայ ալվըշ[2] հիւանդ է:

Օ՛րդի, կասէ մարը, գընա ճարէ[3]: Անպէս կու գայ ինծի, թէ թէ որ խմէի այն ջիշվորէն, որուն մէջ օղչերուն ու մերածնուն ջուրը կայ նայ, պի լաւնայի:

Տղան ալվըշ թամպիլէ զձին, առիլէ ըզարթմըխներն[4] ալ ու ճամբայ ելիլէ: Կաննիլէ արիգըկուն դիմաց:

Ալվըշ խըրկիլէ ըզքեզ ուրեք մը մամադ. կի հարցընու արիգակը:

Ասիլէ տղան թէ ուխ կերթայ:

— Մըտիկ արա, զէրամ միան տասվերկուսին կըլաս ըզամըներդ լընելու: Ետեւ[5] երբ ետ դառնաս, նա կաննէ տանըս դիմաց:

Տըղան գընացիլէ, լըցիլէ ըզամըները եւ ետ դարձիլ է:

Արիգակը ուտելվով բօյիլէ[6] զինքը: Ինչուն ի կերիլէ նայ, արիգակը պարպեցուցիլէ ըզամը-

---

[1] Մայր. — [2] դարձեալ. [3] ճար բեր, դեղ հոգա. — — [4] քսակ, պայուսակ. — [5] անկից ետքը. — [6] բօյել, սպասել կը նշանակէ: ի մասոն է. արեգակը՝ կերակուր պատրաստած, անոր կը սպասէր:

ները եւ անոնց մէջ հասարակ ջուր դրիլ է։ “Քիչ ժամանակի վրայ աղէկ պի բըռնէ այս ջուրը„. ասաւ ինքը իրեն, ու նէս մտիլ է։ Տղան ըշնական[1] եղիլ է հացին, ու ալ խնտան[2] գնացիլէ։ — Տունը համնելով կու տայ մօրը ջրէն մէկ գաւթով մը։ Կի խըմէ ու կի դառնայ հիւընտութիւնը։

Տղան վար կի դնէ ըզլթուրը ու կերթայ վըրսալու։ Մայրը դուս կապլէ զուշարը խուցէն։ Եւ ոռվհետեւ ուխ ալ խըռկիլին ըզտըղան նայ չի կըրի. անոր համար, որ ազատվէր իրեն մէն, այնպէս կի հաստատվին, թէ թէ որ տուն ի գայ որդին, նա սըանին ըզնայ տուն թողած թըռովը։

Տղան տուն կու գայ։ Թուրը ուշաբին ձեռն է։ Հիմպիկ տեսնելով թէ վերջ է իրեն, նա կի խնդըրվի որ ըզըըտըրտած մարմինը դնին արթմըխնուն մէջ, ու ապլին[3] ըզձին, որ արթմըխնեըովը երթայ, որ դլին տանին աչվընէրը։ Անպէս արիլին։ Բայց ըզսիրտը պահիլին։ — Ձին արիգըկուն տանը դիմաց կաննիլէ։

— Ասիլիմ, թէ մամատ կուտէ ըզգըլխը։ Դուս բերելով ըզմէրածնուն եւ ողջերուն ջուրը, կի քըսէ անովը զտըղին բըռդըռտած մարմինը. ու ահա ողջաջուցիլէ զնա։

— Ինչ շատ քուն եղիլիմ՝ կ'ասէ տղան։

— Ես ողջացուցիլիմ ըզքեզ։

---

[1] Շնորհակալ ըլլալ — [2] անդին, աւելի յառաջ. — [3] թողուլ, արձակել։

Հիմպիկ ամէն բանը աղէկ եղած պիլար, Նմա թէ չի ունացի սիրտ։

Ու Թուխի[1] կերպարանք, կասէ արիգակը. ու գնա սի լաուչովը[2] տուն։ Հոն ատէս[3] ալ Հարսնիք է։ Պի գնին որ փչիս։ Քիչ մը պի փըչիս. անոր էտէվանց պասիս թէ, տան իք մը, ինչով քսիս ըզաղլէքը։ Պի տան զքու սիրտդ ու դուն զան կուլ պիտաս։

Տըղան Հետեւիլէ ըզխըրատը։ Տունը չին ճանչեցի զինքը։ Փըչիլէ։ Անոր ետեվանց ձեռը տըւիլին ըզսիրտը։ Ինքը ետ գարձիլէ ազէս թէ[4] խորթէր[5] զլաուչին ու կուլ տըվիլէ ըզսիրտը։ Հիմպիկ շատ ըռինտ փըչիլէ։ Հարսը ու փեսան կի խաղար։

“Դիր վար ըզդի Թուրը, մանի ատխա Հուգ„[6] կասէ Հարսը։

Փեսան կի Հնազանդի։ Թուխը քիչ քիչէնը[7] կի մօտիկնայ Թըռին, կի խըլէ զան, ու առաջը ըզմարը ու անոր էտավանց ըզուշարը կի բըռդըռտէ։

Անոր ետեւանց արիգըկուն մօտ գնացիլէ կենալու։

## 16. Կերլայի Մատենադարանէն մէկ երկու ձեռագիր:

Հայաքաղաք աղքատ է հին ձեռագիրներու կողմանէ։ Բայց շատ հարուստ է Գըրան-

[1] Գնչու — [2] քնար, ջութակ. — [3] այնպէս ալ, անանկ ալ. — [4] իբրեւ թէ. — [5] չոկել, լուցընել. — [6] երեք բառը եռեւէ եռեւ կը նշանակէ, մ՚ըներ այսչափ խշըտոց, վայնասուն. — [7] կամաց կամաց։

սիլուանիոյ մէկալ ազգային քաղաքաց համեմատութեամբ — ուր որ հին ձեռագրաց եւ ոչ հետքը կայ — եւ բաւական հարուստ ազգային ուրիշ մատենադարաններուն հետ համեմատելով։

Այս աղքատութիւնը հայ ազգին պատմութեանը մէջ փնտռելու ենք։ — Այլեւայլ ժամանակ՝ դէպ ի այլեւայլ երկիրներ եղած պանդխտութիւններն ու գաղթականութիւնները, անորոշ ներկայ, անստոյգ ապագայ, ներքին ու արտաքին խռովութիւնք . . . ասոնց ամէն մէկը բաւական էր ըստ ինքեան մատենագրութեան մը մեծ հարուած տալու։ Ո՛ւր թողունք, որ շատ անգամ, այս ամէն բան կարծես թէ մէկ տեղ գումարուեցան, որպէս զի — իբրեւ թէ վաշնակցութեամբ — ազգին նիւթական ու մտաւոր յառաջադիմութեան առջեւ թումբ մը քաշեն։

Դրանսիլուանիոյ ազգայինք հետերնին բերած են բաւական հայերէն ձեռագիր։ Ասիկայ յայտնի ու ցուցուած բան է. վասն զի դէպ ի հիւսիսային արեւմուտք գաղթող Անւոյ աւագանին ունեւոր ըլլալով՝ իրեն հետ առած էր, ուրիշ թանկագին բաներու հետ, նաեւ ձեռագիր, մանաւանդ եկեղեցական մատեան. եւ ի մասնաւորի Աւետարան, որ Հայոց ամենէն թանկագին գոհարեղէններէն մէկն է։

Ո՛ւր են ասոնք հիմայ։ Պատասխան կրնայ տրուիլ, թէ. 1. ժամանակին ակռաներն ամէն բան ի վիճակի են ոչնչացընելու. 2. Ասոնք՝ ան-

հոգութեամբ, տգիտութեամբ ետեւէ ետեւ երեսէ ձգուած ու փճացած են. 3. Ճարտար անձինք, որոնք ասոնց ներքին յարգը Ճանչցած են, տեղերնէն վերցուցած՝ տարած են։

Բանն ըլլայ ինչպէս որ կ'ուզէ։ Այսօրուան օրս Կերլա քաղքին մէջ յիսունի չափ ձեռագիր կայ։ Ասոնք մեծաւ մասամբ Աւետարան, Մաշտոց, Ցայսմաւուրք, Տօմար, Ժամագիրք, Շարակնոց ու Խրատագիրք են։

Աս տեսակ ձեռագրաց բովանդակութիւնն ամենուն ծանօթ է։ Իմ նպատակս միայն ան է, որ ասոնց ամենէն հին, գեղեցիկ արուեստ ու նկարչական ներքին արժէք ունեցող մէկ երկուքին նկարագրութիւնն ընեմ։

Ամենէն յառաջ ձեռուընիս եկածն է, ահագին մեծութեամբ եւ Ա. գրով նշանակուած Ցայսմաւուր մը։ Ասոր ամէն մէկ էջին տարածութիւնը $27 \times 40$. այսինքն 1080 սանդիմէդր է. ծանրութիւնն ալ $10^1/_2$ քիլո։ Թուղթը՝ հաստ, ամուր ու փայլուն է։ Մատենին մեծութիւնը շատ կը նմանի այն Ճաշոցին, զոր Թադէոս երէց 1686ին Վենետիկ տպել տուած է։ Գիրն ալ յար եւ նման է անոր գրին, միայն թէ քիչ մ'աւելի մեծ է։ "Գրեցաւ սուրբ գիրքս հարանց, որ կոչի յայսմ աւուրք ի թըւականութեանս հայկազն սեռի ՌՀԸ" (= 1629)։[1] —

---

[1] Այս մատենին որպիսութեանն ու յիշատակարաններուն վրայ ընդարձակ տեղեկութիւն տրուած է "Հանդէս Ամսօրեայ" մէջ։ Տես 1890 թիւ 1. էջ 19—21։

Եթէ յիշուելու արժանի է մատենադարանիս այս գիրքն իր ստուարութեան ու մեծութեանը համար, յաջորդները հաղուագիւտ են իրենց հնութեամբն ու գեղեցիկ արուեստովը։

Մատենադարանին Ժ. Թուանշանով մատեանը, փառակազմ կարմիր թաւշեայ, պատկերազարդ, ոսկեզօծ՝ արծաթէ շղթաներով Աւետարան մըն է։

Գրքին առաջին ծածկութին վրայ կեցած են՝ չորս ծայրերը՝ չորս Աւետարանչաց դուրս ցցուած արծաթէ պատկերները։ Մէջտեղը 20 սանդ. երկայն ու 9 սանդ. լայն՝ ոսկեզօծ, արծաթէ մեծ խաչ մը՝ վրան Յիսուսի պատկերով։ Խաչելութեան երկու կողմը Աստուածածին ու Յովհաննէս. խաչելութիւնը կը գրկէ Մագդաղենացին։ Խաչելութեան վերի դին՝ արեւ ու լուսին՝ նոյնպէս կիսաքանդակ։ Երկու արծաթեայ կրկնաշղթաներուն երկայնութիւնն, որոնք բանալեաց պաշտօնը կը վարեն, 16 սանդիմէտր է։ Կազմին ետեւի ծածկութին վրայ կեցած է Աստուածածին, Յիսուս մանուկը գիրկը՝ բոլորովին ճառագայթներով շրջապատուած։ Ծածկութին ծայրերը, փառաւոր զարդեր կան՝ հրեշտակաց պատկերներով։

Մատթէի աւետարանն սկսելէն յառաջ կայ՝ տասը, այլեւայլ գոյներով աւետարանացոյց տախտակ կամ կանոնագլուխ եւ յառաջաբան աւետարանաց։ Իւրաքանչիւր էջին պատկերները հաւասար չեն։ Զանազան պատկերաց ու զարդուց մէջէն ամէնէն աւելի աչքի կը զարնեն

գոյնզգոյն ներկերով ծրագրուած թռչունները՝ բերաններին ձուկերով. պառկած եղջերուները. ծաղկանց վրայի իպիս(թռչուն)ները. աղուէս՝ կամ ուրիշ անասուն մը, ձեռքը փառած ճրագով, գլուխը երկճղի թագի նման գլխանոցով (անշուշտ սատանայի երեւեցուցիչը). որ իբր թէ աւետարանին ճրագ կը բռնէ: Մատթէոսի աւետարանն սկսելէն յառաջ, կայ աւետարանչին պատկերը (16+12 սանդիմ. մեծութեամբ), կապոյտ կրկնոց ու կարմիր վերնազգեստ հագած՝ մէկ ձեռքը գրիչ ու մէկալը գիրք: Վերի դին կեցած է հրեշտակ մը, որ իբրեւ թէ իրեն կը հաղորդէ գրելիքը: Դիմացն՝ երկրորդ էջին վրայ, գոյնզգոյն զարդերու մէջ կը սկսի աւետարանը: “Գիրք„ բառին Գ գիրը հրեշտակ մըն է 8 սանդ. երկայնութեամբ: — Գրքին լուսանցքներուն վրայ ալ, այլեւայլ զարդեր կան, զանազան գոյներով: Ամէն մէկ գլխուն սկզբնագիրը փառաւոր մեծ զարդագիր է: Մատթէի աւետարանին վերջերն, ուր գրուած է թէ իւղաբեր կանայք կ'երթան Յիսուսի մարմինը զմռսելու, կայ լուսանցքին վրայ իւղաբեր կնիկ մը՝ վարդագոյն զգեստով ու արիւնագոյն վերարկուով, երկայնութիւնն ինը՝ իսկ լայնութիւնն $2\frac{1}{2}$—3 սանդիմէտր է:

Մարկոսի աւետարանն ալ, աւետարանչին մեծ պատկերովը կը սկսի: Պատկերին դիմացի էջը ուր կը սկսի աւետարանը՝ բոլոր զարդ է. եւ “Սկիզբն„ բառին Ս գիրը ոսկեզօծ առիւծ մըն է: Յարութեան մասին վրայ խօսած

*տեղերը՝ ալեւոր ծերու մը գեղեցիկ պատկերը կայ լուսանցքին վրայ։ Կարծեմ Յովսէփ Արիմաթացին կը ներկայացընէ։*

*Ղուկասու աւետարանչին պատկերն ալ, նախընթացներուն պէս է։ “Քանզի„ (բազումք եւ այլն) բառին Ք գիրը անասուն մը կը կազմէ որ թեւեր ունի, անշուշտ իւր եզն է։ “Յամսեանն վեցերորդի„ին դիմացը լուսանցքին վրայ սիրուն հրեշտակի մը պատկերը կայ, որուն մեծութիւնը թեւերովը մէկտեղ $11^{1}/_{2}$ սանդիմէտր է։ “Յարուցեալ Մարիամ„ին դիմացն ալ կեցած է գեղեցիկ կնոջ մը պատկերը՝ գլուխը քօղով ծածկած $5^{1}/_{2}$ սանդիմէտր կիսամարմինը (որ սեան մը վրայ է, կամ սիւնէ մը կ'ելլէ) անշուշտ Աստուածածինը կը ներկայացընէ։ Նոյնպէս Քրիստոսի յարութիւնը պարունակող պատմութեան կողմերը՝ Յովսէփ Արիմաթացւոյն կիսամարմին պատկերը նկարուած է $5^{1}/_{2}$ սանդ. երկայնութեամբ։*

*Յովհաննու աւետարանչին պատկերն ալ կայ իր աւետարանին սկիզբը. բայց ինք չէ գրողը՝ մէկալ աւետարանիչներուն պէս, այլ պզտիկ տղու կերպարանքով մէկը՝ որ գրիչը ձեռքը՝ տան մը մէջ է։ Իսկ զՅովհաննէս կը ներկայացընէ ալեւոր ծեր մը՝ կապոյտ պարեգօտով ու դեղին կամ ոսկեզօծ վերնազգեստով։ Ա՛ս է աւետարանիչն, որ տուն կու տայ սննեկին միջի տղուն (պզտիկ հրեշտակի մը) իւր աւետարանը, ինչպէս որ իրեն կ'ազդէ վերեւն աներեւոյթ ձեռք մը։ —*

Թէ երբ գրուած է՝ Աւետարանս, ճշգրիտ բան մը չի կրնար ըսուիլ: Շատ մաքուր ու միօրինակ գրուած է: Գրողն է Յովհաննէս երէց, որ քանի մը տեղ նշանակուած է. բայց շատ կծծութեամբ ու համառօտիւ: Նախ՝ Մատթէի Աւետարանին սկզբէն յառաջ եղած էջին վրայ. ուր գրուած է այսպէս. "զմեղաւոր գրիչս ըզյովաննէս էրէցս յիշեա„ նոյնպէս "զանարժան գրիչս յովաննէս էրէցս յիշեա: Ուրիշ տեղ ալ. "զովաննէս էրէց յիշեա ի տ̃ր յ̃ս ք̃ս:„ Գրքիս մէջ ուրիշ յիշատակարան չենք գտներ: Լուսանցներուն վրայ 219 կտոր պատկեր, զարդ, թռչնոց եւ ուրիշ մտացածին բաներու գծագրութիւն կայ. որոնք կենդանի գոյներով նկարուած են: Ամէն մէկ գլուխը մեծ՝ գոյնզգոյն զարդագրով կը սկսի:

Մատենին նիւթը հաստ՝ ամուր ու փայլուն մագաղաթեայ թուղթ է, բայց ոչ մագաղաթ. միօրինակ, գեղեցիկ ու մաքուր գրուած: Երկսիւն էջերուն երկայնութիւնն է 23×19: Մատենադարանն ասոր պէս հարուստ ու ճոխ կազմուած գիրք չունի:

**ԺԱ. Աւետարան.** Նախընթացին նման պատկերազարդ. բայց անհամեմատ աւելի մաքուր, բարակ ու գեղեցիկ գծագրութիւններով զարդարուած: Կազմը՝ կանանչ թաւիշ: Առջեւի ծածկութին վրայ կիսաքանդակ արծաթի մեծ խաչ մը 21 սանդիմէդր երկայնութեամբ. խաչին մարմնոյն լայնութիւնը չորս սանդիմէդր է՝ վրան Յիսուսի պատկերովը: Բիւզանդեան ոճով

շինուած խաչելութեան չորս ծայրերը մէյ մէկ մեծ սուտակն կայ։ Ասոնց մէջէն մէկը կը պակսի։ Խաչին թեւերուն մէջ չորս հրեշտակ կան ծնկի վրայ. ձեռուընին դէպ ի երկինք վերցուցած։

Աս մատենին մէջ ամենէն զարմանալի բանն է պատկերաց աղնուութիւնն ու բարակութիւնը եւ գունոց՝ ոչ այնչափ կենդանութիւնը՝ որչափ գծերուն արտաքոյ կարգի մաքրութիւնն ու փափկութիւնը։ Մանաւանդ մարդու՝ հրեշտակաց ու անասնոց պատկերաց գեղեցկութիւնն ու բարակութիւնն զմարդ կը զմայլեցընէ։

Աւետարաններուն սկսելէն յառաջ, ինչպէս ընդհանրապէս սովորութիւն է՝ ունի գիրքը՝ տասը սիւներէ կամ կանոններէ կազմուած յառաջաբան կամ տուփ։ Ասոնք՝ սիւնազարդ տնակներ են ու կը պարունակեն մատենին յառաջաբանն ու աւետարանաց գլխակարգութիւնը։ Աս տնակաց կամ տուփերուն զարդարուն վերնամասին վրայ թափած է գծագրողն իր բոլոր ճարտարութիւնը։ Ասոնց մէջ մտացածին զարդերը, մարդու՝ անասնոց եւ թռչնոց մանրանկար պատկերները շատ են։

Սիւնակաց տփերուն միջի պատկերներն ասոնք են։ Ա. սեան կամ գմբէթին մէջ կայ գուցէ Ս. Յովհաննու Ոսկեբերանի, կամ մանաւանդ Եւսեբիոսի պատկերը՝ յունական եպիսկոպոսական զգեստով։ Անկից կը մակաբերեմ որ Եւսեբիոսինը պիտ'որ ըլլայ, վասն զի եպիսկոպոսին ձախ դին, անունն ալ կայ. բայց

այնչափ պզտիկ է, ու այնպէս աւրուած, որ չի տեսնուիր, և գիրը միայն կրնամ հանել։ Երկ-



ԿԵՐԼԱՑԻ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԷՋԷՆ. ԽՈՐԱՆԻ ՄԸ ՎԵՐԻՆ ՄԱՍԸ

րորդ պատկերը անմորուս կերպարանք մըն է։ Կապոյտ յատակի վրայ, ճերմակ գրերով կը կար-դացուի այս խօսքը կար(պիան)ոս։ Մէկալ ութը

*պատկերագմբէթներն ալ հաճոյական կապոյտ յատակի վրայ են՝ մին քան զմիւսը բարակ ու գեղեցիկ։**

---

* Երրորդ տփին կամ կանոնին պատկերն է՝ Յիսուս, որուն անունը կապոյտ յատակին մէջէն ճերմակով դուրս ցցուած կամ երկուան հանուած է այսպէս, դէպ ի ձախ՝ | յ͞ս. |, դէպ ի աջ՝ | ք͞ս. |։ Ձախ թեւին վրայ գիրք մ'ունի, որուն մէջը գրուած է. | եսեմ | լոյսա | շխ |.։ — Չորրորդ տփին պատկերն է Աստուածածին, մուժ կանանչ հագուստով ու խաւհուեգոյն վերնազգեստով, պատկերին ձախ դին գրուած է. | Մայր | ա͞յ. |։ Հինգերորդ տփին պատկերն է Ս. Յովհ. Մկրտիչ։ Կապոյտ յատակին մէջէն՝ միայն այս ճերմակ գրերը կրնամ հանել, | ովան |. բուլթ մօրուքով ու խառնափնթոր մազերով՝ բայց ազնիւ կերպարանքով, ձեռքը թղթի գալար մը կը բռնէ. որուն վրայ գրուած է | ձայն | բար | բառ | ոյ։ Վեցերորդ կանոնին պատկերը կը ներկայացընէ զՋաքարիա մարգարէն, Յովհաննու հայրը. կարմիր գլխանոցով, երկայն ճերմակ մօրուքով։ Կապոյտ յատակին տակէնյայտնի կ'երեւայ ճերմակ գրերով՝ զաքարի։ Երկու ձեռացը մէջ կը բռնէ թղթեայ ճերմակ գլան մը, վրան այս խօսքերը գրուած, | աւրհ | նեալ | տ͞րած. | իղի որ. | այցէ | ալ |։ Եօթներորդ տփին պատկերն է Դաւիթ մարգարէն՝ գլուխը թագով. իր ձախ դին ճերմակով գրուած | դաւ | իթ |։ Ձեռքն ունի մագաղաթեայ գլան մը՝ վրան այս խօսքերով՝ | աստց | տ͞րց. | տ͞րիմ | նիստ | ընդա | ջմէի |։ Ութերորդ տփին պատկերը Սողոմոն թագաւոր պիտ'որ ըլլայ, միայն աս չորս գիրը կրնամ հանել | սո | ... | ոն | Ձեռացը մէջ բռնած մեծ թղթին վրայ կայ յաջորդը. | ճան | աչէլ | զիմա | ստու | թիւն | եւզխ | րա | ստ | մա | եւզ | բան | սհան | ճար ||։ Իններորդ եւ տասներորդ տափերուն գմբէթներուն մէջ երկերկու՝ մէկալներէն աւելի պզտիկ մանրանկար կայ։ Իններորդ տփին վերեւը կան Մովսէսի ու Եղիայի մանրանկար պատկերները։ Դէպ ի ձախ՝ կեցած է Մովսէս, իր երկու կողմը անունը գրուած է, այսպէս. մովս | էս։ Մէկ ձեռքը կը բռնէ թուղթ մը, վրան այս գրուածքով. | իսկ | զաս | նէա | րար | ա͞ծ. |, Իւր դիմացը՝ կամ գմբէթին աջ դին է Եղիա մարգարէն, անունը գլխուն վերեւը՝ դէպ ի աջ կեցած՝ այսպէս. | Եղի | այ |։ Ձեռքն եղած թղթին վրայ այս խօսքը գրուած է. անախ | անձ | եցա | զն |։ Տասներորդ կանոնին մէջ կայ՝ ձախ դին Դանիէլ, անունն ալ կեցած է քովը. ճերմակ գրերով այսպէս. | դան | իէլ |։ Ձեռքին մէջ բռնած գալարին վրայ այս կայ, ես | դա | նիէ | լտ | եսա ||։ Անոր դիմացը՝ կամարին աջ դին՝ Երեմիայ մարգարէն է, երկայն ճերմակ մօրուքով ու մազով, նկարին վերի դին դէպ ի աջ՝ ճերմակ գրերով գրուած է | երե | միայ |։ Ձեռքը բռնած թղթին վրայ կայ | Պատ | գամ | ͞յոր. |։ Յետ պատկերը։

Այս տասը տուփերուն պատկերները, ինչպէս ըսի, շատ սիրուն ու բարակ նկարուած գծագրութիւններ կամ մանրանկարներ են։ Մարդապատկերներէն ու սիւներէն զատ՝ կան անասնոց ու թռչնոց շատ ճիշդ ու չափակցութեամբ գծագրուած աղուոր պատկերները։ Այսպէս օրինակի աղագաւ եօթներորդ տուփին մէջ Դաւիթ մարգարէին կենդանագրէն զատ, կայ՝ երկու վայրի գազան՝ որ իրենց բերնէն ջուր կը թափեն, եւ ինը թռչնոյ մանրանկար, արտաքոյ կարգի բարակ գծերով։ Մէկալ տուփերուն գծագրութիւններուն համար ալ նոյնն ըսելու ենք։ —

Չորս աւետարանչաց մեծ պատկերները Ֆ. ձեռագրին պատկերներէն անհամեմատ աւելի մաքուր ու բարակ են։ Յովհաննու աւետարանին վերջը՝ ինչպէս ուրիշ շատ ձեռագրաց մէջ, շնացեալ կնոջ պատմութիւնը կայ։ Լուսանցքին վրայ եղած նկարը զարմանալի է իր դիւթիչ գեղեցկութեամբը։ Շատ են մատենիս մէջ եղած գծագրութիւնք։ Բոլոր գրքին լուսանցքին վրայ եղած զանազան նկարները ճշդիւ 202 կտոր են. մէկը քան զմէկալը բարակ ու մաքուր։ Ամենէն գեղեցիկները՝ սիրուններն եւ մասնաւորապէս յիշուելու արժանի են ի մէջ այլոց՝ Պետրոս առաքեալ (կամ Յիսուս՞) քարաժայռին վրայ կանգնած, կեցած։ Փրկիչը՝ որ մանուկները կ'օրհնէ։ Տղաքը՝ արմաւենիներու վրայ ելած՝ ձեռուընին ոստերով. շատ տեղ իպիս թռչունը. երկու տեղ պե-

տրոսին աքաղաղը, որ գլուխը բարձրացուցած՝ սիգալով կը խօսի. եւ այլն։

Ձեռագրիս գրին միօրինակութիւնն ու մաքրութիւնը ճ.ին պէս աղուոր ու գեղեցիկ չէ։ Բայց ինչպէս զանիկայ կրնանք նախադասել իւր միօրինակ ու կանոնաւոր գրութեանը համար, անանկ ալ զասիկայ պէտք ենք առաջին դնել՝ իւր գծագրութեանց փափկութեանը համար։ Կրնանք ըսել թէ ասիկայ քաջ գծագրող՝ բայց ոչ գեղեցիկ ընդօրինակող էր. մինչդեռ մէկալը՝ գեղեցիկ ընդօրինակող՝ բայց ոչ լաւ գծագրող էր։

Աւետարանս 1346ին գրուած է Կիրակոս սարկաւագէն։ Աս բանս կը ստուգենք յաջորդ յիշատակարանէն։ "Փառք ամենասուրբ երրորդութեանն հաւր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Ցամի եւթնհարիւրերորդի նուներորդի հինգերորդի. թուաբերութեանս հայոց նոր տումարիս։ Ի գաւառիս խրիմի, ի մայրաքաղաքիս սուրխաթ կոչեցեալ։ Ընդ հովանեաւ սուրբ աստուածածնի եւ սուրբ գրիգորի լուսաւորչի։ Ի հայրապետութեան տն̄ մխիթարայ; եւ յեպիսկոպոսութեան ամենայն հիւսիսային կողմանցս. տր̄ ստեփաննոսի արհի եպիսկոպոսի։ Ի յայսմ ժամանակի գրեցաւ ամենագովելի եւ գերհռչակելի եւ գերապանծ, պաշտելի եւ երկրպագելի սուրբ աւետարանս։ Ձեռամբ մեղօք լցեալ եւ անպիտան հոգւոյ։ Կիրակոս սարկաւագի, յամսեանն աւգոստոսի ի ժե. ի փառս Քրիստոսի աւրհնելոյն յամենայն



*ԿԵՐԼԱՑԻ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԷՋԷՆ. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ ՄԸ*

*բերանոյ յաւիտեանս, ամէն: Արդ աղաչեմ
զամենեսին զդասս լուսերամիցդ որք հանդիպիք
այսմ աստուածախաւսութեան սուրբ աւետա֊
րանիս յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր
զկիրակոս աւագ սարկաւագ եւ զծնողս իմ զկա֊
րապետ քահանայ եւ զմայր իմ զաննայ զփո֊
խեցեալն առ Քրիստոս, եւ զկուսակրօն քահա֊
նայ զմինաս զեղբայրն իմ, եւ զսոցին հարսն
զխայաթ զփոխեցեալն առ Քրիստոս. զուգակից
իմ: Արդ կրկին աղաչեմ զձեզ սրտի մտաւք
յիշել զվերոյ գրեալսդ եւ դուք յիշեալ լիջիք
առաջի Քրիստոսի Աստուծոյ մերոյ որ է աւրհ֊
նեալ յաւիտեանս ամէն: Նայեւ զգրիգոր քա֊
հանայ յիշեսջիք ի տէր մեր, որ զօրինակն շնորհեաց
եւ անմեղադիր լերուք ո՛վ սուրբ հայրք վասն
անարուեստ գրոյս եւ սղալանացս որ ի սմա զի
կայր իմ այսչափ էր եւ չէի տեղեակ այսմ ար֊
հեստի, այլ հարկ է եւ փափաքանաց սրտիս
համարձակեցայ ի սմա եւ նոյն ինքս պարգեւեաց
ինձ ի կատար ելանել սմա, ի փառս սուրբ
երրորդութեան որ է աւրհնեալ յամենայն բե֊
րանոյ, ամէն„:*

*Եթէ առաջիկայ մատեանը՝* 795*ին, կամ Քրիստոսական թուականի* 1346*ին գրուած է, Նախընթացն ստուգիւ անոր ժամանակակից է, եթէ ոչ աւելի հին:*

*Աս Աւետարանն ալ Նախընթացին պէս քառածալ դիրք ունի. երկու սեան բաժնուած. իւրաքանչիւր սեան մեծութիւնը* 19×5 *սանդ.*

նիւթը՝ հաստ, մագաղաթեայ թուղթ է, գիրը՝ բոլորգիր։

Առաջիկայ աւետարանն անշուշտ մեծ մարդու մը եղած պիտ՛ որ ըլլայ։ Առ այս մտածել կու տայ, ոչ միայն գործոյն ազնուութիւնն ու բարակութիւնն, այլ մանաւանդ շքեղ ու թանկագին կազմը։ —

ԼԱ. Աւետարան, կարմիր թաւշեայ կազմով՝ կաշիէ կապով կամ բանալիներով։ Մեծութիւնն է 16×12½ սանդ.։ Թէ առջեւի ու թէ ետեւի ծածկութներուն վրայ դամուած խաչեր։

Այս գործքն երկու գրող ընդօրինակած է։ Աս բանս յայտնի կը տեսնուի, նախ՝ գրին որպիսութենէն ու երկրորդ՝ նիւթէն, որուն վրայ գրուած է։ Վասն զի մինչդեռ առաջինը՝ սպիտակ մաքուր մագաղաթ է, մէկալին նիւթը՝ հասարակ թուղթ է։ Գործքը ճակատ չունենալով՝ անմիջապէս կը սկսի Մատթէի աւետարանը, շատ գեղեցիկ զարդերով, զարդագրերով ու ոսկեզօծ գրերով գծագրուած։ Աս աւետարանին նման հարուստ ոսկեզարդ գրեր կը գտնենք միայն մատենադարանիս ԼԲ. գրքին մէջ։ Մատենիս մագաղաթեայ մասը կ'երթայ միայն մինչեւ Մարկոսի աւետարանին վերջը։ — Մարկոսի աւետարանին սկիզբը կեցած է աւետարանչին գեղեցկազարդ՝ բայց ոչ մաքուր կենդանապատկերը։ Պատկերին յատակը ոսկի է։ Նոյնպէս աւետարանին առաջին գրերը, շատ բարակ ու գեղեցիկ զարդերով զարդարուած

ու տեղիս տեղիս ոսկւով գրուած ու գրուագուած են։ Մարկոսի աւետարանէն սկսած հինգ թուղթն, ետքէն լեցուած է երկրորդ գրողէն, ոչ եթէ



ԿԵՐԼԱՑԻ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԷՋԷՆ. ՔՐԻՍՏՈՍ՝ ՄԱՆՈՒԿ ՄԸ ԿՕՐՀՆԷ

մագաղաթի՝ այլ հաստ թղթի վրայ ու գիրն ալ ոչ այնչափ ազնիւ ու բարակ, ինչպէս մագաղաթին վրայինը։ Աս հինգ թղթէն ետեւ կու գայ նորէն մագաղաթն. ու լաւ գրիչը՝ մըն-

չեւ Մարկոսի աւետարանին վերջը: — Ղուկասու աւետարանը կը սկսի ուրիշ թղթով եւ ուրիշ գրով: Յայտնապէս կը տեսնուի թէ պակսած երկու մագաղաթեայ քարտէսը կամօք կտրուած փրցուած է պատկերովը հանդերձ. որովհետեւ գեղեցիկ ու աչքի զարնող բան էր: Ասկից ետքը մագաղաթեայ թուղթն ու աղուոր գիրը նորէն կը շարունակուին մինչեւ Ղուկասու Ե. գլուխն ուր կայ թէ "Եւ թողեալ զամենայն յարեաւ եւ գնաց զկնի նորա:„ Ասով աւետարանիս մագաղաթեայ մասը կը լմննայ: Թէ որ դարուն գրուած է գրքիս այս գլխաւոր ու գեղեցիկ կտորը, չենք կրնար ըսել, վասն զի թուական չկայ: Կայ իրաւ Մատթէի աւետարանի լմննալու տեղը յիշատակարան մը, բայց ասկէ՝ ան կը հասկընանք միայն որ այս աւետարանը Վարդան եպիսկոպոսին ստացուածն է եղեր, եւ թէ ընդօրինակողն — Յովհաննէս անուն մէկը — ի սէր եպիսկոպոսին իւրոյ գրեր է: Ահա յիշատակարանը. "Զստացաւղ սուրբ աւետարանիս զվարդան եպիսկոպոս եւ զհայրն իւր՝ զվասիլ քահանայ, եւ զեղբայր իւր՝ զստեփանոս քահանայ: յիշեցէք ի տէր: ծնողաւ եւ զարմիւք: եւ թողութիւն յա̃յ խնդրեցէք: Եւ որք յետոյ ժառանգէք զառաջնոցն անուն մի ջնջէք եւ զձերն գրէք: Զի անթողի մեղք է: Եւ որք յիշէքդ՝ եւ տէր զձեզ յիշէ, եւ որ ասեն, ամէն„: Ասոր յաջորդ "գլուխք Մարկոսի աւետարանին„ տակը գրած կայ „Տէ՛ր Վարդան՝ չգիտեմ թէ այնե՛ն է՝ թարկիք, թէ չայնեն:

չունիմ լոյս յաչքս„: Այս բանս — տարակոյս չի վերցըներ — մատեանն ընդօրինակող Յովհաննէսէն գրուած է: Յաջորդ նախադրութեան վերջը նորէն յիշատակարան մը կայ նոյն լաւ տեսակ գրով: "Տառապեալս յովհաննէս, եւ յաշխարհիս ծով անթիւ մեղաւորս, հրամանաւ վարդան եպիսկոպոսի՝ գրեցի զաստուածաւանդ աւետարանս: Թէպէտ եւ անարժան էի այսմ ձեռնարկութեան, այլ կանխագոյն գրաւեաց զիս պատուական սէր վարդան եպիսկոպոսի: եւ ստացաւ զսա ի ներկեալ մեղօք ձեռաց. որում տէր վայելել տայ, եւ հանդիպողացդ մաղթեմ, չդնել աւելի մեղ՝ այլ ներել իբր կուրի, զի հարկէ գերագունիս յաղթեալ սկսայ՝ եւ ոչ կարեմ ծընկէց լինել, յաստուած յուսով աւարտել փութամ„:

Աւետարանիս մէջ ասդին անդին մարդու պատկերներ ալ պակաս չեն: Այսպէս օրինակի աղագաւ Ղուկասու աւետարանին առջի գլխուն մէջ, լուսանցքին երկու կողմը կայ, մէկ դին՝ Աստուածածին ու մէկալ դին՝ Գաբրիէլ հրեշտակապետը, որ զԱստուածածինը ձեռօքը կ՚օրհնէ: Երկու երկայնաձեւ պատկերներն ալ արտաքոյ կարգի գեղեցիկ ու փափուկ գծագրուած են: Հրեշտակապետը ձախ ձեռքը շուշան կը բռնէ ու մէկալ ձեռքովը զԱստուածածինը կ՚օրհնէ: Իսկ զուարթ Աստուածածինը՝ ոտքի վրայ կեցած, դիմացը գտնուող հրեշտակապետին կը նայի, մէկ ձեռքը՝ ծոցին, մէկալը՝ կուրծքին վրայ դրած:

Ինչպէս ըսի, Ղուկասու Ն. գլխէն ուրիշ տեսակ գիր ու թուղթ է։ Գիրն առաջնոյն (մագաղաթին) պէս ոչ կանոնաւորեալ եւ ոչ անոր պէս բարակ ու մաքուր է։ Լուսանցքներուն պարզերը թէպէտ աւելի շատ են թուով, բայց հասարակ բաներ են։

Վերին արդէն ըսուեցաւ թէ, գործոյս ընտիր մասը Յովհաննէս օրինակած է։ Բայց ե՞րբ։ Թէպէտ կայ գործոյն վերջն ընդարձակ յիշատակարան մը, սակայն ասիկայ ոչ թէ միայն մէկ գրչէ եղած չէ, այլ եւ ոչ մէկ տեսակ թղթի վրայ է. որով բուն գործոյն ընդօրինակութեանը ժամանակին վրայ աւելի լուսաւորութիւն մը չենք կրնար առնալ։ — Յիշատակարանը յաջորդն է։ "Փառք ամենասուրբ երրորդութեան հաւր եւ որդոյ եւ հոգոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Ի Թուաբերութեան հռոմայեցոց ՌՃԸ եւ օգոստոս ամսոյն ը̃ըն գրեցաւ ընդ հովանեաւ առ դուռս սուրբ խաչին ի հայրապետութեան տեառն տեառն յակոբին եւ առաջնորդութեան սահակին եւ թագաւորութեան կիգային։ (Ասկից ետքը ուրիշ տեսակ գիր) Ի յայսմ ժամանակի գրեցաւ։ Զկէս աւետարանն երկու գլուխքն ամենագովելի եւ հռչակելի գերակատար եւ գերապանծ պաշտելի եւ երկրպագելի սուրբ աւետարանս ձեռամբ մեղաւք լցեալ եւ անպիտան ոգւոյ աւետիք սարկաւագի եւ իմ՝ որդի մինաս եպիսկոպոսի սեչովցի որ զինքն ղաղախնին սպանեցին։ Եւ զերկու գլուխ աւետարանն ի ղաղախի ձեռաց

ի գերութենէ ազատեցին։ Այս տասն եղբարքս, որ են անուամբք այսոքիկ։ Տէր սիմոն աւագերիցոյ որդի։ Մանուկ վաղաՀ։ Սիւրեղ վաթաՀ։ Ասվատուր վաթՀ։ Մանուկ գրիգոր վօթին։ Խութլուշ գրիգրին. Միտքան դաւիթին։ Յովանէսն էնպէկին։ Խաչատուրն յովանէնսին։ Պուկտանն Նիկօլին"։ — Ասկից ետքը բոլորովին տարբեր, երրորդ տեսակ ողորմելի գիր մը։ "Ես անարժան մեղօք զառածեալ միքայէլ երէցս երզնկացի եկա ի պուղտանաց երկիրն ի սէչով քաղաքն։ Թվ ՌՃԺԳին, զսուրբ աւետարանս կազմել տվին։ Այս տասն եղբարքս եւ եդին յիշատակ ի դուռն սուրբ աւգսէնդի վանացն իւրենց ծնողացն Հոգոյն Ամէն։ Զկազմող միքայէլ յիշեցէք միով Հայր մեղայիւ յորժամ ընթերնուքն զսուրբ աւետարանս եւ աստուած ըզյիշէ (անշուշտ ըզ-ձեզ-յիշէ ըլլալու է) իւր միւսանգամ գալստեանն, Ամէն։ Հայր մեր որ"

Իրարու յաջորդող չորս ու թերեւս Հինգ կտոր յիշատակարաններէն, որչափ Հասկըցայ, ան կրնանք Հետեւցընել թէ, բուն Աւետարանն սկզբնապէս մագաղաթի քարտէսի վրայ գրած է ծեր ու տկարաչեայ ՅովՀաննէս՝ Վարդան եպիսկոպոսին խնդրելովն։ Ետքէն գիրքը գաղաւներէն կողոպտուած ու ետքի կէս մասը կորսուած ըլլալով, պակսած կտորն — այսինքն Ղուկասու եւ ՅովՀաննու աւետարանը — շարունակած է Աւետիք սարկաւագն ու իր որդին Մինաս եպիսկոպոս, սուչավացին՝ ՌՃԸ կամ 1659ին.

Տէր Յակոբի Հայրապետութեանն ու Կիգայի Թագաւորութեանն ատեն: Ղազախներուն առած, տարած ամենագովելի ... երկրպագելի ... ու սուրբ աւետարանը փրկանաւորեցին տասը (բարեկամ) եղբարք՝ հինգ տարի ետքը (1664): Կաղմել տուին Միքայէլի (երէցի°). ու Ս. Աւքսենտիոսի վանքը յիշատակ դրին:

Եթէ ուղիղ հասկըցայ, կամ եթէ այս է յիշատակարաններուն բովանդակութիւնն, այս ինքն թէ որ յիշատակարանը գրողին համեմատ աւետարանիս երրորդ ու չորրորդ մասն (ոչ մագաղաթեայ կտորը) Հայոց ՌՃԸ. (1659)ին գրուած է, այն ատեն մագաղաթի վրայ գրուածն (Մատթէի ու Մարկոսի աւետարանները. դարձեալ՝ Ղուկասու աւետարանին չորս առաջին գլուխները) պէտք ենք գոնէ երեք դար յառաջ դնել: Եւ ստուգիւ ալ կը կարծեմ որ ամենէն ուշ 1350ին գրուած ըլլալու է գրքիս այս առաջին մասը. ինչպէս ետքէն պիտի տեսնենք՝ եթէ համեմատելու ըլլանք այս աւետարանն՝ ասոր յաջորդ յար եւ նման եղող Գործոց առաքելոցին կամ Ճաշոցին հետ, որ գրուած է Քրիստոսի 1310 թուականին: —

Գործոյն սկիզբը, անգիր թղթի մը վրայ գրուած է յաջորդ լատիներէն յիշատակարանը որ անտարակոյս Զաքարիա վարժապետին գործքն է. „Uti patet ex hujus libri, fine anno Dni 1108 Membranae est scriptus, sed quia possessor hujus a Barbaris est occisus (: Nempe Minas Episcopus): etiam liber in possesionem Bar-

barorum pervenit ubi major pars ejus est lacerata. Verum anno a Michaele Sutsavaiensi est repertus, reparatus et compactus.“ *Այս լատիներէն յիշատակարանը գրողն — Հայերէն լեզուն աղէկ չհասկընալուն ու պատմութեան քիչ տեղեակ ըլլալուն — ամէն բան իրարու խառնած է։*

ԼԲ. Գործք Առաքելոց. *կամ մանաւանդ* Ճաշոց Գիրք — (*սակայն Զատկէն սկսեալ մինչեւ Պենտեկոստէ բաղառաբար* —)։ *Նախընթաց գործոյն ըստ ամենայն մասանց յար եւ նման. նոյն զարդեր, նոյն գիր, նոյն մագաղաթ, նոյն դիրք, կազմը միայն տարբեր է։*

*Մատթէոսի աւետարանին վերջին գլխէն մնացած մէկ թղթէն ետեւ կու գայ յաջորդ ստանաւորը։ “Զտեառն հրամանքն ըզգուշալիք | պարտ է ունել զամէն ի միտք. | Թէ Մի դատիք՝ ոչ դատիցիք. | Պոմանս (այսպէս) ահեղ քստմնելիք | տիրունական է սպառնալիք. | ’ւիմ գիտելով զայս արհաւիրք | կամաւ նիւթեմ ես ինձ չարիք„։ Ասկից ետքը կու գայ “Յառաջաբան գրոցս Գործոց Առաքելոց„. որ կը սկսի այսպէս, “Ոլք միանգամ ճշմարիտ եւ կարեւոր աստուածամերձ եւ աստուածասէր„ եւ այլն. ու* 15 *էջ է։ Ասոր կը յաջորդէ “Յառաջագիր. գլխոց գործոց առաքելոց„։ Ետքէն կու գայ “Գլուխք գործոց առաքելոց„։ Աս ալ* 18 *էջ կամ* 9 *թուղթ է։ Գլխոց համառօտութեան կը յաջորդէ “Նախադրութիւն. Գործոցս կարճ,*

այլոյ ումեմն„, եւ վերջապէս "Ընթացքն Պաւղոս Առաքելոյ„:

Գործոյն, աս ընդհանուր մուտքէն ետեւ, կու գայ փառաւոր զարդերով ու ոսկեզօծ զարդերով Գործոց Առաքելոց սկիզբը: Զ. սկզբնագիրը վերջի աստիճանի գեղեցիկ բան է: Կը ներկայացընէ իրարու փաթթուող երկու սիրամարգ, որ մէկզմէկ կը համբուրեն ու որոնց պոչը, կը կազմէ Զ գրին վարի երկու մասը: "Բանն առաջինն զոր արարի վասն ամենայնի՝ ո Թէոփիլէ„, բոլոր ոսկի է՝ մեսրովպեան գրերով գրուած. եւ այս քանի մը բառը կը բռնէ բոլոր էջը:

Գործոց Առաքելոցէն յաջորդաբար եւ իրարու կցած գլուխներ չկան. հապա Գ. գլխոյն մինչեւ այն տեղը միայն կայ, ուր կ՚ըսէ Պետրոս թէ "զի ոչ այլ անուն գոյ ի ներքոյ երկնից, տուեալ ի մարդիկ որով արժան իցէ կեալ մեզ„: (Ա. չորեքշաբթի յետ Զատկին:) Վասն զի ասոր կը յաջորդէ "յառաջաբան եւթանեցունց թղթոցն կաթուղիկեայց„. եւ կը սկսի Յակոբայ թղթոյն առաջին գլուխը: Ասկից ետքը փոխն ի փոխ, ըստ աւուր պատշաճի, կայ մէյ մը՝ կաթուղիկեայց թղթէն, մէյ մը՝ Գործոց Առաքելոցէն կտոր մը. ինչպէս որ սովորութիւն է հիմայ, պատարագին մէջ՝ տարւոյն այս միջոցները կարդալու:

Գործոյս գրեթէ մէջտեղերը այս կարճ յիշատակարանը կայ. "զմեղաւոր գրիչս յիշեսջիք ի Քրիստոս, եւ ինքն զձեզ: ամէն„: —



ԿԵՐԼԱՑԻ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԷՋԷՆ ՔՐԻՍ-
ՏՈՍԻ ՆԿԱՐ ՄԸ

Գրքին մէկալ — վերջին — կէսը կը պարունա-
կէ Յովհաննու Աւետարանն։ — Ինչպէս որ
առաջին կէսը (Գործք Առաքելոց) փառաւոր
ճակտով մ'սկսած է, անանկ ալ փառաւոր
ճակտով մը կը սկսի այս երկրորդ մասը. որուն
մէջ ոսկւոյ զարդարանքները կը վխտան։

Ամբողջ գործքը մագաղաթի վրայ գրուած
է։ Թէպէտ գիրը միօրինակ է ու աղուոր, բայց
ոչ այնչափ գեղեցիկ, ինչպէս Նախընթաց (Լ.Ա.)
գործոյն։ Սակայն ասոր մէջ ոսկւոյ առատու-
թիւնն ու սկզբնագիրներուն գեղեցկութիւնն եւ
մանաւանդ լուսանցքներուն վրայի զարդերուն
հարստութիւնը, սիրունութիւնն ու գունոց զա-
նազանութիւնն եւ կենդանութիւնը՝ արտաքոյ
կարգի է։ Լուսանցքներուն, ինչպէս նաեւ ամէն
սկզբնագիրներուն եւ գլխագիրներուն վրայ ոսկին
չէ թէ գծագրուած է, այլ դրուած, ու առա-
տութեամբ ծեփուած. եւ անանկ կենդանի ու
մաքուր, որ մարդ կը կարծէ թէ մեր օրերը
գծագրուած են։ Կ'երեւայ թէ ոսկեզօծողն՝ իր
արհեստին մէջ շատ հմուտ է եղեր։ Ամէն մէկ
գլխուն սկզբնագրերը մեծ են եւ երփներփն գոյ-
ներով ու ոսկւով զարդարուած։ Բաց ասկէ մար-
մնոյն մէջ՝ — ամէն վերջակէտէն ետեւ եկող
գլխագիր՝ ոսկեզօծ է։

Վերոյգրեալ փոքրիկ յիշատակարանէն
զատ՝ քանի մը յիշատակարան ալ ունի մա-
տեանը։ Նախ. Պենտէկոստէի տօնին երկրորդ
օրէն ետեւ ու երրորդ օրէն յառաջ՝ յաջորդ
յիշատակարանը կը կարդանք. "Փառք ամենա-

սուրբ երրորդութեան յաւիտեանս յաւիտե-
նից ամէն: Գրեցաւ պրակք սուրբ առաքելոցն
կաթուղիկէիւքն հանդերձ, հրամանաւ աստուա-
ծասէր եւ բարեպաշտ պարոնին տիկին ալիծին,
մաւրքաւր թագաւորացն հայոց, ի մխիթարու-
թիւն կենաց իւրոց, եւ ի յիշատակութիւն հոգ-
ւոյ իւրոյ, ի ձեռն իմոյ նուաստիս ստ" [եփանին]
գըներիրեցանց: Արդ յերեսս անկեալ աղաչեմ
զհանդիպաւղսդ՝ յիշել զարժանին յիշատակի
զԱստուածասէրն եւ զբարեպաշտուհին հան-
դերձ ամենայն նախնիւքն իւրովք եւ ծննդովք:
այլեւ զտառապեալ եւ զբազմամեղ գրիչս եւ
աստուած՝ առհասարակ ձեզ եւ մեզ ողորմեսցի
որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից:
ամէն„:

“Ի թու: ՉԾԹ գրեցաւ ի բազմա-
թշուառ ժամանակի, որոց տարակուսելոցն՝ այց
արասցէ մարդասէրն Աստուած բարեխաւսու-
թեամբ սուրբ աստուածածնին: ամէն„:

Յովհաննու Աւետարանին վերջին գլխէն
ետեւ, ինչպէս շատ աւետարանաց մէջ, հոս ալ
շնացեալ կնոջ պատմութիւնը կայ: Լուսանցքին
վրայ՝ նշանակուած է պզտիկ գրերով՝ այսպէս.
“իբր կնոջն շնացելոյ„: Ասոր պատմութիւնը
լմըննալէն ետեւ կը շարունակէ գրողն. “Զայս
յիշատակ բանին ընկալաւ եկեղեցի յասորւոց
աւետարանէ բանիւ պապիասայ ումեմն՝ յոհան-
նու աշակերտի, որ եւ յետոյ հերձուած խաւ-
սեցաւ եւ խոտեցաւ: Եւ է կարգ բանին յութ-
սուն ուվեց համարն, զկնի այնմ բանի որ ասէ

*քննեա եւ տես զի մարգարէ ի գալիլէէ ոչ յառնէ: Եւսեբի է ասացեալ„:*

*„Փառք ամենասուրբ երրորդութեանն յաւիտենից ամէն: Գրեցաւ աստուածաբան աւետարանս յոհաննու ի հրամայական խնդրոյ աստուածասէր եւ բարեպաշտուհի պարոնին տիկին ալիծի սինէջալէսի կիպրոսի, որ էր դուստր պարոն հեթմոյ որ տէր էր լապրունին՝ յիշատակն նորա աւրհնութեամբ, եւ ողորմեսցի նմա քս̃ ա̃ծ: ամէն:*

*Արդ՝ վերոյգրեալ բարեպաշտուհի պր̈ բագու՛ ամս խնամարկեաց զիս բազում եւ մեծ գթով. գրեթէ որպէս որդեսէր ծնաւղ՝ զանդրանիկ իւր, այնպէս գթաց ի նուաստս եւ յանարժանս: Եւ ես յետնեալս յա̃(մենայն) բարեաց սուտ անուն ստեփ'', որ ամաչեմ ի գերագունէ քհ'' անուամբ կոչիլ, այլ մականուամբ՝ գոներերիցանց: Վասն որոյ որպէս յոյժ՝ պարտական նորա անճառ բարեացն՝ Ցերեսս անկեալ աղաչեմ՝ զառհասարակ հանդիպաւղսդ յիշել ի բարին զվերոյ գրեալ բարեպաշտուհի պր̈ ծնողիւք իւրովք եւ ամենայն զարմիւք: Այլեւ զմեղաւոր հողս զտառապեալ գրիչս ծնողիւք իմովք եւ ա̃ զարմիւք: Եւ քս̃ ա̃ծ որ առատն է ի տուրս առհասարակ ողորմեսցի ձեզ յիշողացդ եւ մեզ յիշելոցս: ամէն: Գրեցաւ ի թու'' ՉԿԱ ի դեկեմբ. իթ. ի կիպրոս կղզի ի մաղուսայ ընդ հովանեաւ սուրբ աստուածածնին: Արդ՝ աղաչեմ, որ ոք հանդիպեսցի սմա՝ մի եպերեսցէ զիս վասն ճապաղ ցանկիս, թէ երբ զայլ*

աւետարանն չէ գրեալ, նա ոչ էր պիտոյ սմա ցանկ ճապաղ: այլ ես՝ ոչ կամեցայ յիմ ձեռահիւսս պակաս իրք թողուլ, զի ի գեղեցկութիւն՝ պակասն է նախատելի եւ ոչ առաւելութիւնն:



ԿԵՐԼԱՅԻ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԻՋԻՆ. ՀՐԵՇՏԱԿ ՄԸ

ահա յայտնի է որ ուղիղ մտաւք որոնէ բաւական է իմաստնոց:

Այլ յինէն ծերացելոյս՝ մարմնով եւ մտաւք՝ հազիւ այսչափս ծրագրեցաւ, զգեղե-

ցիկն՝ վեհքն գծագրեն. զտեսանաւղքդ աղաչեմ, մեր յանցանացն թողութիւն շնորհել եւ աստուած ձեզ. ամէն»։

Գրքին վերջերը կան քանի մը տօներ. ինչպէս Յովհ. Մկրտչին, Աւետեաց Աստուածածնին, Աշխարհամատրան առաւօտուն, Երեւման սուրբ խաչին, Համբարձման. եւ այլն։

Ամենէն վերջը՝ Համբարձման պատարագին աւետարանէն ետեւ կայ «Թելադրութիւն։ Այսինքն խրատ, Որպէս թէ գիրքս խրատէ զստացաւղն։ Գլխաւոր եմ եւ աստուածեղէն կրաւնիցն վարդապետ։ Եթէ ումեք զիս յանաւթ տայցես՝ աղնիւ աւրինակ գրաւական փոխանակ իմ առնուցուս։ զի հատուցանաւղքն՝ չարք են։ Պատասխանի։ Գանձուն իմով քեզ հոգեւոր բարութեանց՝ եւ ամենայն մարդկան ցանկալի։ յաւրինուածովք եւ պէսպէս զարդուք զարդարեալ. այո, Ասեմ ճշմարտութեամբ։ Ոչ տաց զքեզ վայրապար ումեք յանաւթ։ Եւ ոչ դարձեալ նախանձեցայց ընդ աւգուտ ուրուք։ Այլ յորժամ տայց զքեզ յանաւթ սիրելեաց իմոց՝ աղնիւ աւրինակ՝ քո փոխանակ առից, այսինքն գրաւական մեծ։ Կամաւք բարեպաշտուհւոյ եւ աստուածասէր պր"ին հետուիհետ գծագրեցաւ պատշաճաւոր գրկունքս։ Արդ աղաչեմ մեղաւոր հողս գրիչ՝ ստեփ" գոյներերից, յիշել զբարեպաշտուհի պր." զվերոյ գրեալն տիկին աղիծ՝ բարեպաշտ ծնողիւքն իւրովք եւ ամենայն զարմիւք զի աստուծոյ շնորհաւքս արժանի է յիշատակի ինքն եւ ծնաւղքն իւր եւ

զաւակք իւր։ Եւ որ յիշէ բարեաւ աստուածողորմի ասելով, քն̃ ա̃ծ իւր ողորմի։ ամէն։ այլեւ մեղաւոր հողս գրիչ՝ երես ի կործ երկրահուպ դիմաւք եւ արտասուաւք աղաչեմ յիշել զտառապեալս ծնաւղիւք իմովք եւ ամենայն զարմիւք, (աղէկ չի կարդացուիր. կարծեմ պիտ՚որ ըլլայ) | իմովք ուսուց | չաւք եւ նախախնամողաւք, եւ որք յիշէք ի բարին՝ յիշեալ լիջիք առաջի քն̃ ա̃յ, մերոյ որ է աւրհնեալ յաւիտեանս։ ամէն„։

Ուրիշ տեսակ գրչագիր։" Զսարգիս անարժան ծառայս աստուծոյ եւ սուտանուն քհ̃՛. եւ զծն. իմ ազգայնօք իմով յիշեցէք ի տէր ա̃ծ յն̃ քն̃, զի յոյժ բազում աշխատեցա ի կապած գիրքս, եւ ոսկով զարդարեցի զն̃ մինչեւ ի վերջքն եւ դուք յիշէք ի տեառնէ, ամէն„։

Ըսել է թէ ոսկեզօծութիւնն ետքէն այս սարգիս քահանան ըրած է։

Նախընթաց (ԼԱ.) աւետարանին գիրն, ինչպէս ըսի այնպէս յար եւ նման է ասոր գրին, որ կարծել կու տայ, թէ միեւնոյն մարդն է գրողը. եթէ ստուգիւ չգիտնայինք թէ, ԼԲ.ը գրած է Ստեփ. Գոյներիցանց ի Կիպրոս կղզի, Լամբրոնին տիրոջը Հեթմոյ դստեր, Ալիծի տիկնոջ համար. ուր որ ԼԱ.ը գրած է Յովհաննէս անուն մէկը՝ Վարդան եպիսկոպոսին համար։ Թէպէտ մագաղաթն, ըստ ամենայն մասանց անոր բարակութիւնը, փայլունութիւնն ու սպիտակութիւնը չունի. բայց թերեւս անոր համար, որ շատ գործածուած ու նոյն իսկ ջրէ

անցած կամ ջուրի մէջ ինկած է։ Ասկից զատ, մատենիս առաջին ու վերջին մասին մէջ՝ բաւական բազմութեամբ ցեցեր մտած ու կերած են. մանաւանդ վերջին թղթերն անընթեռնլի են։

Թէ այնչափ ոսկւոյ առատութիւն կայ գործոյն վրայ, զարմանալու չենք. վասն զի թագաւորական ցեղէն, թագաւորաց մօրաքոյրը, Կիպրոսի սինէջալէսն (gubernator) է* ընդօրինակել տուողն։

Հայաքաղքիս մատենադարանին մէջ ասկից աւելի հին ձեռագիր չկայ։ ԺԱ. թուանշան ունեցող գեղեցկակազմ Աւետարանը 1346ին գրուած ըլլալով, ասկից 36 տարի ետք է։ Նախընթաց — ԼԱ. — Աւետարանին մագաղաթեայ մասն ալ — նկատելով իր գրութիւնն ու մագաղաթին որպիսութիւնը — ասոր կամ ժամանակակից եւ կամ ասկէ քիչ մը ետքը գրուած պէտք ենք համարիլ։ Բայց հարըստութեան եւ ոսկւոյ առատութեան կողմանէ, վերջի երկուքը իրարմէ շատ կը տարբերին։ Ուր որ ԼԱ.ը՝ գեղեցիկ գծագրութեամբ՝ ու գրով եւ գործքին մաքուր պահուած ըլլալով՝ անշուշտ մեծ յարգ ունի՝ ԼԲ.ը ոսկւոյ մեծ ճապաղութեամբը՝ գունոց գեղեցկութեամբն ու երփնութեամբը եւ թանկ զարդուց պանազանութեամբն առաջինը շատ կը գերազանցէ։



*Ալիցին եւ Ստեփ. Գոյներերիցին վրայօք տես Ալիշանի Սիսուանը, էջ 85, 272, 519. դարձեալ 96—97։ 102, 516, 532 — 33։

# ՄԵՐ ՊԱՏԿԵՐՆԵՐԸ

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍՆ

## ՀԱՅԱՔԱՂՔԻՆ ՆԵՐԿԱՆ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես՝ 50 (պատկերազարդ:) Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաճի, Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալպէր Տըվլէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնուփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես՝ 232 (Լուսանկարով): Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: 1893: 8 Երես՝ Ժ+533 (1 զննկատիպ.): Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: 1894: 8° Երես՝ 103 (6 տախտակ՝ 55 պատկերով): Ֆր. 2.—

ԺԴ. Գարբիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտ. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա. Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ. Փրոբէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ. Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտ. Ա. Ա—Զ: 1895: 3° Երես՝ ԺԲ+294: Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Ֆր. 2.50

ԺԸ. Տիւրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը. 1895: 8° Երես՝ 192: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8° Երես՝ Թ+352: Ֆր. 3.60

